

ԱՌՁԵՌՆ

# ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ

ՀԱՄԱՌՕՏԵԱԼ

Ի Հ. ԵԴՈՒԱՐԴԱՅ
ՎԱՐԴԱՊԵՏԷ ՀԻՒՐՄԻՒԶԵԱՆ
ՄԽԻԹԱՐԵԱՆ







Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՍՈՒՐԲՆ ՂԱԶԱՐ

1867

ԱՌՋԵՌՆ

# ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ

---

## ԴԱՍ Ա

*Ընդհանուր տեղեկութիւն զտաղաչափութենէ. — Կազմութիւն չափուց ոտիցն:*

Հ. Զի՞նչ է տաղաչափութիւն.

Պ. Բան բաղկացեալ չափմամբ ոտից կամ վանկից:

Հ. Առ ի՞նչ հնարեցաւ այս.

Պ. Յօժանդակութիւն խանդից քերթողին:

Հ. Արդեօք լեզուն քերթողական 'ի չափ ոտի՞ց և եթ կատարի.

Պ. Ոչ. այլ այնչափ այլ ևս խորութիւնք են ընդ չափեալ և ընդ արձակ բան ըստ գլխաւոր հանգամանաց լեզուին, ըստ հոլովոց, ըստ բայից խոնարհմանց, ըստ խնդրառութեանց, ըստ համաձայնութեան, և ըստ բառից ազատութեան, մինչև ըստ նիւթակա-

նին ևս կազմութեան զանազանել ամենևին քերթողական լեզուի 'ի ճարտասանականէն։ Զոր օրինակ զդիմելոյ զօրացն քրիստոնէից յարևելս մարթի ճարտասանին ասել. Գան սրտմտեալ բարկութեամբ հանգոյն կուտակելոց ալեաց ծովու, բազմութիւն յոյժ որպէս զաւազ առ ափն ծովու, և որպէս զաստեղս երկնից բազմութեամբ. և ծածկեն զերեսս երկրի որպէս զձիւն՝ սպիտակ իբրև զասր։ Բայց Շնորհալին զնոյն զայս բացատրէ այսպէս.

« Իբր ըղծովու ալեաց կուտակ
Բորբոքելով զան խիստ ու բարկ.
Ափան ծովու աւազի գունակ,
Կամ զերդ աստեղս երկնից 'ի կարգ.
Լընուն զամէն երկրի ատակ,
Որպէս ըղձիւն ասրաքատակ »։

Հ. Ո՞րպէս կազմի չափ ոտիցն կամ վանկից.

Պ. Անդամատութեամբ, այսինքն բաժանեալ թուով զանդամս, ուր չեշտքն անկանին։ Եւ քանզի առ մեզ սովորաբար 'ի վերջս բառից կայ չեշտն՝ անդհատանի և անդամն, զի չեշտն ըստ կարգի պատահեսցէ. ուստի անդամքն վասն չեշտին են, և չեշտիւն բաժանին. զոր օրինակ.

«Չի է պարծա՛նք ըստոյգ, և թանգ
արքունական։
Որպէս գըրէ Պօղոս, անձօթն այն ընտ-
րութեան.
Տիմոթէոս որդեակ, լիցիս 'ի խրա-
խուսթեան,
Անամօ՛թ քարող խաչին վըկայու-
թեան»։

Ցորս, որպէս տեսանի, չեչտն է որ յարմարէ զիմաստն և զչափս, կալով 'ի վերջ այնպիսի բառի՝ որ հարկաւ կապակցեալ է ընդ յաջորդին, և սքանչելի փոփոխութիւն ածէ 'ի տողսն, քան զոր չիք ինչ կարևոր առ 'ի զուարճացուցանել։ Վասն որոյ որչափ ըստ բնական չեշտից հաստուածեալ իցեն անդամքն, այնչափ քաղցր և բնական լինի կազմած տողին, և յայսմ է ճարտարութիւն տաղաչափին, և այսմ ուշ ունին քաջ քերթողք մեր հինք և արդիք. թէպէտ և մարթի լինել ուրեք ուրեք ազատութիւն ինչ կամ համարձակութիւն որպէս և յայլ լեզուս։

Սովին օրինակաւ պարզին և իմաստք բազում տողից, զորս ըստ բառիցն շարակարգութեան մարթ էր յայլևայլ միտս առնուլ։ Օրինակ իմն յընթեռնուլ ուրուք

« Այսօր անձայն լուսոյն ծագումն...
Գըլխոյն ընտրեալ հօտին փոքու »... ոչ ինչ տարակուսեալ երկմտեսցի՝ զի անձառ ածական է լուսոյն, և ոչ ծագման. և ընտրեալ ածական է հօտին, և ոչ գլխոյն։

Հ. Այս ուրեմն բառք յարաշեշտք և նախայարաշեշտք, որոց շեշտք ոչ 'ի վերջ բառիցն անկանին, չմարթին կազմել անդամս.

Գ. կազմեն իսկ, այլ զմասն մնացեալ զկնի շեշտին՝ տալով յաջորդ անդամոյն. զոր օրինակ առնէ Շնորհալին

« Որպէս և յայնժամ ըզնոսին։
Վարեն մինչ յայնկոյս անբընակ։
Որպէս և անդանօր տեսեր »։

Վերջինս այս, և հանգոյն սորին կատարեալ ածանցք, քանզի և 'ի վերջին վանկըն շեշտին հանգստեամբն, յաճախ և անդ գործեն զանգամ։ Բայց ընդ յարաշեշտ և ընդ նախայարաշեշտ բառս նկատելի են ամենայն սերտ կըցորդութիւնք բառից ընդ միմեանս՝ որք շեշտիւ միշտ կցորդին. զոր օրինակ Հա՛յր մեր, ըզհայրսն մեր. դիմեա՛լ զան, ա՛յսրր զան, բերեր և, ոչ եբէ. Ձեզ տամ, յանձն առնեմ, և այլն. վասն որոյ խորթ և անարուեստ կազմի տող՝ որոյ ան-

դամք 'ի վերջն անկանիցին փոխանակ 'ի շեշտն անկանելոյ բառից յա՛յնժամ, յա՛յնկոյս, իւրաքանչի՛ւր ոք, թո՛ղլ տալ, տե՛ղի տալ, մի՛ լինիր, ո՛չ գիտես, բազո՛ւմ անգամ, և այլն ։ Վասն որոյ ասելի է ըստ Շնորհալւոյն .

« Տարրըն տեղի տայր և լըռէր ։
Թէ և բազո՛ւմ անգամ ջանայ ։
Զի յորժամ ո՛չ գիտես, կոչիս ։
Զարեացըն մի՛ լինիր նըման ։
Իւրաքանչի՛ւր ոք ըստ կարգին ։
Եւ ըզմեզ ո՛չ թողուլ հայցէր » ։

Իսկ 'ի վերջ վանկից՝ որ ը ձայնաւորաւ բաղկանան՝ բաժանել անգամ, ոչ միայն խորթ է և անարուեստ՝ այլ և վրիպակ մեծ և ոչ ուրեք երբէք գտանի առ Նախնիս ։ Եւ պատճառն յայտնի իսկ է . զի ոչ երբէք վանկն այն ընդունակ է շեշտի . վասն որոյ բաժանելի է ըստ Շնորհալւոյն

« Բամեալ 'ի քերըս տարրապէս ։
Որպէս ըզտո՛պսըն բիբ ակին ։
Երրորդութեա՛նըն միաբուն ։
Յորժամ մարմնո՛վըն մերունակ ։
Արեամբ և ջրո՛վըն զիս լըւա » ։

# ԴԱՍ Բ

## Չափ անդամոց և տողից :

Հ. Իցե՞ն ինչ սահմանեալ Թիւք վանկից անդամոցն և տողից.

Պ. Թիւք վանկից միոյ միոյ 'ի տողից զտանին առ նախնիս մեր 'ի հնգէ մինչև ցվեշտասան 'ի կիր արկեալ։ Հինգոտնեանն չբաժանի սովորաբար յանդամս. զոր օրինակ

« Ի քէն տէր հայցեմ
Ի մարդասիրէդ
Ինձ բըժըշկութիւն.
Լեր կեանք մեռելոյս,
Լոյս խաւարելոյս
Լուծանող ցաւոյս » ։

Իսկ զայլոցն անդամս ազատ է քերթողն հատանել ըստ կամի և ըստ ճարտարութեան իւրում յազգս ազգս գեղայարմար ներդաշնակութեանց։ Սովորաբար 'ի հաւասար անդամս բաժանին որք մարթինն. զոր օրինակ

« Ոչ կարօտի | աշխարհ առ տիւ | արեգական,
Եւ կամ լուսին | ուաստեղք 'ի լոյս | գիշերական,

Ցորժամ ծագէ | լոյսն անմատոյց | աստուածութեան » ։

Բայց և անհաւասար անդամոց բաղում են օրինակք 'ի նախնեաց ․ զոր օրինակ նոյն ինքն Շնորհալի զնոյնաչափ տողս բաժանէ այսպէս ․

« Ի դաւաղանէն | Յեսեայ | ատեղնեալ Աստեփանոս ,
Առաջին պտուղ | ծառոյն | որ 'ի Գողգոթա ․
Երփնազարդ պըճնեալ | գեղով | նման հրեշտակի ,
Յուրուառ ոսկեղէն | խընկոց | զհոտ անոյշ բուրեալ ․
Նմից ստահճան | գործեալ | զհարկանող քարինս ,
Ընդ ինքեան հանեալ | զբազումս | յերկնային խորանս » ։

Հ ․ Ի թիւս վանկից անդամոցն իցէ՞ ինչ ազատութիւն քերթողին ․

Պ ․ Այո , քերթողք մեր երբեմն զատ ղից ոմանց զառաջին անդամս միով կամ երկուք և աւելի ևս վանկիւ պակաս առնեն , և լնուն զթերի չափոյն կամ զամանակին՝ երկարելով զձայնաւորն , մանաւանդ 'ի հրամայական բայս , 'ի կոչական անուանս , 'ի միջարկութիւնս , կամ ուր ուրեք զօրաւորագոյն անկանի շեշտ ։ զոր օրինակ

«Ողբացէ՛ք եկեղեցիք,
Հարսունք վերին առագաստի։ —
Թէն տառ չէ՛ բանի սկըսուած,
Այլ ակամայ բըռնագըբօսած։ —
Բարձրացուցէ՛ք ըզտէր Աստուած մեր միաբան,
Մարգարէ՛ն յառաջ ձայնեալ տայ ձեզ հրաման։ —
Դուք որդի՛ք Նոր Սիոնի Նորոյ ծնընդեան,
Օրհներգութեամբ պատուել ըզսա է՛ք պարտական։ —
Քանզի ո՛չ նայիմք 'ի սոսկ փայտ եղական,
Այլ որ 'ի սա է Բանն անեղ մեզ յանդիման։ —
Տիմոդէոս որդեակ լիցիս 'ի խրախութեան,
Անամօ՛թ քարոզ խաչին վըկայութեան։ —
Բարձրագո՛չ ձայնիւ գոչէր տէրն 'ի խաչին»։

Հ. Հա՛րկ իցէ անգամոց ամենայն տողից զօլ հաւասարաթիւ.

Պ. Ո՛չ. այլ վայելուչ և կարևոր ազատութիւն է քերթողին շարախառնել տո՛ղս այլաչափս 'ի քնարական քերթութիւնս, որպէս և առ 'ի նախնեաց մերոց բազումք են մեզ օրինակք.

### Եօթնոտնեան և տասնոտնեան խառն:

7. « Համբառնալով զաչըս մեր,
7. Կարդամք առ քեզ մարդասէր,
10. Որ յահեղակերպ աթոռըդ նըս-
տիս ։
7, « Ընդ հովանեաւ աջոյ քո
7. Պահեա ըզմեզ բազմագութ,
10. Որ յանմարմնական զօրացըդ գո-
վիս » ։

### Եօթնոտնեան, ութոտնեան և վեցոտնեան խառն:

7. « Ահաւոր ես թագաւոր,
8. Քրովբէական ձայնիւ օրհնեալ,
6. Ի յերկինս 'ի յերկրի
8. Եւ յամենայն ժամանակի ։
7. « Ահաւոր ես թագաւոր,
8. Որ նորոգես զքո զարարածս.
6. Հաստատես 'ի հաւատս,
8. Ի գիտութիւն ճըշմարտութեան » ։

### Եօթնոտնեան ութոտնեան և տասնոտնեան խառն:

Ես ասացի, Տէր, ողորմեա
Հոգւոյ իմոյ բազմամեղի,

Որ բընակեալդ ես 'ի յերկինս
Եւ յանմարմնոց փառաբանիս .
Ցիս մարդասիրեա բազմագութ փըր-
կիչ,
Եւ փարատեցո զցաւս անձին իմոյ ։
Պակասեցայ յազգատոհմէ ,
Լըքեալ թողի զկեանս աշխարհի .
Եւ մարմին ունայնութեան
Դարձաւ 'ի հող ուստի ստեղծաւ .

Ըստ այսմ օրինակի մարթ է քերթողին զամենայն խառնս ներդաշնակաւորս յօրինել յազգի ազգի այլաչափ տողից ։

## ԴԱՍ Գ

### Ցանգ տողից :

Հ . Օրէ՞ն իցէ առանց հանգստի իմաստիցն աւարտել զտողս .

Պ . Սովորաբար ոչ է օրէն սկսանել իմաստ ինչ 'ի միում տողի., և աւարտել զայն 'ի միւսումն , և մանաւանդ 'ի մասին ինչ միւսոյն , այլ 'ի յանգս տողից զհանգիստ իմաստիցն պատկանել . զոր օրինակ

« Բաշխեալ սըրբոցըն լուսավառ ,
Գնացեն յերկինս 'ի տունն անճառ.

Սա միջակին է խրատ մարդոյս,
Ցորժամ շարժի ախտիցըն քոյն»։

Շնորհ։

Բայց մարթ է հանճարով և ճարտարութեամբ զհակառակն ևս վայելչապէս 'ի կիր արկանել, շարայարելով առանց հանգըստեան զտողս ընդ իրեարս, որպէս ուրեք ուրեք առնէ Շնորհալի.

« Եւ ոչ յերկրորդ կամ յերրորդին
Պահու, սպասեմ գալոյ քոյին ։ —
Երկըրպագեալ յանմարմնական
Զօրացն, ընդ Հօր և սուրբ Հոգին ։ —
Ըստ լի ամաց քոյ երեսնից
Գրեցան և տունքըս զովեստից
Ի հիւանդոտ և ցաւալից
Անձնէ, յաւուրըս քառասնից ։ —
Երուսաղէմ քաղաք մեծի
Թագաւորին երկնաւորի ։ —
Ի յԱբգարէ Թագաւորէ
Նոցունց՝ չինեալ ես լինէի ։ —
Թէ չիք հընար 'ի փորձանաց՝ ոք մարդոյ գան՝
Փըրկիլ ումեք, քան աղօթիւքըն մաքրական ։ —
Բարձրագոչ ձայնիւ գոչէր տէրն 'ի խաչին
Զէլիէլին, և աւանդէր առ Հայր ըզհոգին ։ —

Այլ և ըղձանր և ըղնըսեմ կիրս մար-
մնական
Եղեալ՚ի բաց, Թռիցուք այսօր յերկ-
նից կայան ։ —
Տէր իմ, ընդէ՞ր վէրք՚ի քո ձեռս ան-
պարտական . . .
Պատասխանէ . Ցիմ սիրելեացն ՚ի
Հրէաստան
Ես ընկալայ, և զայս պահեմ ՚ի յա-
պագայն » ։

Հ. Զի՞նչ և յանգն.

Պ. Նմանավերջութիւն երկուց կամ բազում տողից ոտանաւորաց ։

Հ. Օրէ՞ն իցէ անյանգ յօրինել տաղս.

Պ. Եւ կարի իսկ քաջ, մանաւանդ առ մեզ, զի ոտանաւոր մեր և առանց յանգից իսկ նմանութեան զանազանի բաւականապէս ՚ի հետևեալ բանէ ։ Առ այս և ՚ի շարականս մեր և այլուր բազումք են օրինակք. զոր օրինակ

« Նորահրաշ պըսակաւոր
Եւ զօրագլուխ առաքինեաց,
Վառեցար զինու Հոգւոյն
Արիաբար ընդդէմ մահու.
Վարդան քաջ նահատակ,
Որ վանեցեր ըզԹըշնամին,
Վարդագոյն արեամբըդ քով
Պըսակեցեր զեկեղեցի » ։

Ուր, որպէս քաջ՝ տեսանի, ներդաշնակութիւն մեծ առանց յանգիցն նմանութեան յօրինէ քերթողն որպէս և յամենայն տաղին։ Բայց գեղեցկութիւն մեծ և առաւելագոյն յոյժ ներդաշնակութիւն յօրինեն յանգք, մանաւանդ ճարտարութեամբ և ըստ կանոնաց 'ի կիր առեալ։

Հ. Ո՞ր իցեն կանոնք յանգիցն նմանութեան.

Պ. Եթէ 'ի պարզ ձայնաւոր յանգիցի տողն, այն ևեթ ձայն բաւական է. զոր օրինակ

« Ո՞ւր են գահոյք Թագաւորի
Վաղարշապատ քո քաղաքի.
Կամ նախարարքն ո՞ւր արքայի,
Այրարատեանըդ գաւառի,
Ո՞ւր զօրականքն յասպարիզի
Կամ լեգէոնքն 'ի ճակատի.
Ո՞ւր մեծամեծքն 'ի բազմոցի,
Կամ ո՞ւր սեղանն ամենայլի ». Շնորհ։

Բայց լաւ ևս յօրինի յանգն և ճոխ, եթէ գէթ և նախադաս բաղաձայնն՝ որ զվերջին վանկն գործէ՝ նոյն իցէ կամ լծորդ. զոր օրինակ

« Որ քեզ հասին յայնըմ վայրի
Բոլոր ամէն մասունք չարի։ —
Վասն իմ 'ի լա՛ց նիստ ու 'ի սըգի »

Շարժեա 'ի յոյզ զամէն հոգի։ —
Էն էապէս մեզ քարոզէ
ԶՈրէնն ուսեալ 'ի Մովսիսէ »։

Իսկ եթէ 'ի բաղաձայն յանգիցի տողն, հարկ է զի նախադաս ձայնաւորի նոյն իցէ ամենեւին, և բաղաձայնն՝ որ զկնի՝ կամ նոյն և կամ գէթ լծորդ. ապա թէ ոչ, չէ բաւական։ Լաւ ևս և ճոխագոյն գործի յանգն, եթէ բաղաձայնն ևս՝ որ յառաջէ քան զձայնաւորն զայն՝ իցէ նոյն կամ լծորդ, այսինքն եթէ վերջին վանկն ողջոյն նոյն իցէ. զոր օրինակ

« Շըրջին կոծով գնացողքըն գարչ,
Կապար մեղացն անկցին 'ի քարչ։ —
Հանգչել ասէ 'ի չար ախտէն,
Ծանի՛ր թէ մերձ է որ դատէն։ —
Նորոգ, ասէ, երիտասարդ
Զիմաստութիւն զգեցիր քեզ զարդ։ —
Մատուցանէ քեզ օրինակ
Զօրս 'ի մանկանց բարեաց ունակ,
ԸզԴանիէլ մանուկ յըստակ,
Որ և ցանկայր նըմա հրեշտակ »։

Համառօտ ասել, որչափ առատագոյնք իցեն նոյնատառք յանգից, այնչափ ես առաւել գեղեցիկ է յանգն. որպէս զի եթէ կրկին վանկք 'ի յանգս դիպեսցին նմանք, ախորժելի յոյժ գործի ներդաշնակութիւն. զոր օրինակ

« Լիւն լուր, ասէ, հօր քո խրատու,
Ցորմէ չահիս բան լուսատու : —
Եւ թէ-մըտօք ես բութ և գուլ,
Ջանիւ զիմաստըս կեր և կուլ : —
Լուր և անսա իմում բանիս,
Երանելի և մեծ լինիս
Եթէ զերկիւղ տեառն ուսանիս : —
Նըմանաբար խորհուրդ խորին
Ցայտնէ և միւս անուն նորին : —
Մերժէ 'ի բաց զախտըս տարտամ,
Գործով բարեաց առնէ փարթամ» :

## ԴԱՍ Դ

Հ. Խիստ թուի այդքան երկիւղածութիւն 'ի յանգս, ուր Շնորհալին մեր քաջ տաղաչափ 'ի գեղեցկագոյն տաղս իւր 'ի յանգ ածէ զբառքս որք ընդ զօրաւոր, սակաւ ընդ ցերակայ, անեղբ ընդ անպարարբեր, այլովքըն հանդերձ. զոր օրինակ

« Որպէս զայգի մեծ տաշտաւոր . . .
Կամ բարունակ ողկուզաւոր,
Իբր 'ի յանկեան տունկ սորեկ որթ
Տեղւոջ պարարտ և զօրաւոր : —
Թէ և մեռայ.ք այժմ 'ի մարմնի,
Կեանք առ Քրիստոս ծածկեալ ու-
նիք : —

Եւ այս 'ի յամս էր ոչ սակաւ
Այլ քառասուն կամ գերակայ: —
Ապա զաւանսըն պարագայ՝,
Որ շուրջ զինեւ կային 'ի ճահ,
Աւերեցին եւ քանդեցին,
Հողաբլուր թողին զնոսա: —
Այլ անվախճան է եւ աներբ
Եւ յաւիտեան անպարաբեր: —
Անյաղթելի սուրբ զօրութիւնք
Ի յարարչին փառատրութիւն »:

Գ. Վեր 'ի վերոյ հայեցեալ 'ի տողսդ, թուի ազատութեամբ վարեալ քերթողին, այլ յընթեռնուլն զնոսա ուշիւ, կատարեալ նոյնայանգութիւն ազդի լսելեաց: Քանզի յառաջնումն թ որք բառին խառնեալ ընդ յաջորդ տիւնն՝ մնայ որ. յերկրորդումն 'ի մարմնի զկնի ունելով զ կ բառին կեանք, գործէ ընդ նմա զյանգս իկ նոյն ընդ իք. իսկ յերրորդումն, 'ի չորրորդումն եւ 'ի հինգերորդումն տառքս ց, հ, ր, ք, կցին ընդ ձայնաւորս յաջորդ տողիցն, եւ միան յանգքն նմանաձայն:

Ապաքէն երեւի ուրեք ուրեք եւ առ նախնի քերթողս մեր կարի իմն ազատութեամբ զանբաղաղզոյգս 'ի յանգից 'ի մի լծորդել. որպէս ալ ընդ ար, եղ ընդ եր, արդ ընդ ատ, աս ընդ այս, ուց

ընդ ուրց, ունց, ու ընդ ոյ, որ ընդ ուր. և այլ այսպիսիք. բայց այսորիկ չեն հետևելի, այլ մանաւանդ զգուշալի են, բաց 'ի լծորդ տառից՝ որ վայելչապէս կազմեն զնմանաձայնութիւն յանգից. զոր օրինակ

« Նայեաց և տես, ասէ, զՑովսէփ
Ըզհրեշտակաց նըմանն 'ի դէպ:
Ում թէ սըրտիւ լինիս 'ի յոյզ
Եւ տաս աճել իբրև ըզբոյս,
Ջհոգիդ մաքուր պահէ և լոյս: —
Ջի մի կրեսցես զոր ասաց տէր,
Ջտանջելն 'ի հուրըն մահաբեր: —
Ճէն ճառագայթ առ 'ի սըրտէդ.
Ասէ, ծագեա լուսոյ հանդէտ: —
Ցեկեղեցիսըն խաւարած
Ցայնժամ վառի լոյս կանթեղաց: —
Սէր աշխարհիս այն ախտաշարժ
Ատել խրատէ զաղտեղի գարշ»:

÷ Այսպիսի յանգք կազմեալք 'ի լծորդաց գեղեցիկք են, որպէս ազդումն իսկ լսելեաց վկայէ:

Հ. Իցէ՞ ինչ այլ նկատելի 'ի յանգս բաց 'ի նմանաձայնութենէ:

Պ. Այո ամենևին. զի թէպէտ և ամենևին նմանաձայնք իցեն, այլ ոչ այնպէս զուարճացուցանեն զմիտս՝ եթէ իցեն նոյն մասունք բանի նոյնահոլովք,

կամ յար և նման միմեանց ածանցեալք. զի ոչ է ճարտարութիւն քերթողի յօրինել տողս հանգոյն այսոսիկ.

« Զքանս բարիս հեղ 'ի լեզուէդ,
Զողորմութիւն 'ի ձեռանէդ: —
Մինչդեռ յիշեմ զօրն ահագին,
Եւ զատաւօտըն մըթագին: —
Որպէս այգի մեծ տաշտաւոր
Կամ բարունակ ողկուզաւոր: —
Զայնս ահագինըս հընչէին,
Մինչ զի զերկիր դըղըրդէին: —
Մի՛ տըրտմիցիք այլազգաբար.
Զերդ հեթանոս կամ հրէաբար »:

Զի թէպէտ և գեղեցիկք են՝ տողքս, այլ ոչ որպէս այլուր նոյն քերթող յայլ և այլ մասանց բանի և յայլ և այլ հոլովոց յօրինէ յանգս. զոր օրինակ

« Բայց և ծնողաց մեր հանդերձ քերբ
Լիցի յիշումն յաւուրն անբեր: —
Սա միջակին է խրատ մարդոյս,
Յորժամ շարժի ախտիցըն բոյս: —
Բարունական սիրոյն ափար
Կացուցանէ անմիջաբար: —
Մեծին ծագմամբ չփայլեն այլում,
Մինչ փայլակէ լոյսն անպատում: —
Լայն ճանապարհըն հետևել
Տանի 'ի գուբ խորին ու անել: —
Նըմանաբար խորհուրդ խորին

Ցայտնէ և միւս անուն նորին։ —
Սիրոյ 'ի բաց լեր աշխարհէս,
Եւ յԱստուծոյ սէրըն վառիս։
Ի ցասմանէ դու 'ի բաց լեր,
Եւ մի ըղքանըս թունաբեր
Առ 'ի սըրտէդ յառաջ բերեր։ —
Պըրտուեալ տապանն, աստ, զՄով-
սէս
Եւ Յակովբայ զարմին հանգէս »։

Ցայսմ ամենայնէ 'ի միտ առնուլ է, զի տաղքն այնոքիկ միաձայնք յանգեալք ծայր 'ի ծայր 'ի սեռական անուանս խորանին, վիմին, Ցիոնին, նոցին, կատակարանին, և այլն, կամ 'ի բայս անկատարս տագնապէին, փնային, գոչէին, որոտային, հնչէին, դղրդէին, խիզախէին և այլն, ձանձրալի են, թէպէտ և 'ի քերթողաց առաջնոց 'ի կիր առեալ. զի նոքին իսկ ուր առաւելագոյն ուշիւ և արուեստաբար տաղաչափել կամին, փոխեն զյանգս, և զեղեցկայօրէն կազմեն տաղս նախանձելիս քերթողաց։

Իսկ զնոյն բառս, կամ զբարդեալս 'ի նոցին բառից, կամ զբարդս ընդ արմատս իւրեանց յանգել, բնաւ և հակառակ է արուեստի. վասն որոյ ոչ են ըստ օրինի տողքս.

« Ծովուն հրաման Մովսէս քեւ տայ ,
Բայց տէրըն քեւ խրախոյս մեզ տայ ։ —
Փոխէ 'ի ցօղ զըւարթարար ,
Որ անյուսիցն է տըրտմարար ։ —
Զիմաստութիւն զգեցիր քեզ զարդ ,
Մի՛ զպատմուճանըս բազմազարդ ։ —
Որպէս այգի ողկուզալի ,
Կամ ձիթենի պըտղով'ի լի » ։

Բայց նոյն բառ ըստ ամենևին այլ և այլ *նշանակութեան , կամ որոյ բար-դութեամբ փոխեալ իցէ նշանակու-թիւն , և կամ բայ ընդ անուան՝ յօրմէ ածանցեալն իցէ՝ կազմեսցէ գլանգ , ըստ վարուեստի է . զոր օրինակ

« Թագաւորըն կամարար .
Որ զՄարեմանսն ուրախ արար ։ —
Զի մերկ յայտնեաց զայն միածին Որ
դին և բան ,
Արդ ժողովուրդ սարսափեսցին՝ լը-
ւեալ զայս բան ։ —
Րամեալ'ի քերըս տարրապէս
Սուրբ հոգևոր բանըս պէսպէս » ։

# ԴԱՍ Ե

## Քանակ բառից :

Հ. Զի՞նչ է, և ո՞րպէս չափի քանակ բառից.

Պ. Քանակ բառից է երկարութիւն և սղութիւն ը ձայնաւորի, յորմէ չափի թիւ վանկից: Զի ուր երկարի սա 'ի մէջ բաղաձայնից, վանկ գործէ. իսկ ուր սղի, չհամարի 'ի վանկ. վասն որոյ մի 'ի կարևորագոյն հմտութեանց տաղաչափին է գիտել՝ ուր ձայնաւորս այս սղի կամ երկարի, և ուր ազատ է առ երկաքանչիւրսն:

Արդ ըստ գեղեցիկ կշռութեան չափուց Շնորհալւոյն, ուր 'ի վերջս բառից զկնի բաղաձայնի յաջորդէ ս դիմորոշ կամ յոքնակի, չսղի՝ եթէ ոչ զհետ դայցէ ձայնաւոր՝ կամ տառքս յ, հ: Այլ եթէ բաղաձայնն նախադաս ս տառին՝ իցէ մի 'ի նայից և, ը, ռ, ղ, շ, մ, մարթի սղիլ և առաջի բաղաձայնի, մանաւանդ եթէ նայ իցէ և բաղաձայնն այն յաջորդ: Այս ամենայն երևի յօրինակդ.

« Ընդ սանդղաձև բանըս քոյին:
Զանկեալս 'ի մեղս անդընդային:

Երանեցեր զորս 'ի բարին ։
Առ դրունս լուսոյ առաւօտին ։
Մինչ 'ի յականջս հընչեալ ուժգլին » ։
Զայսն է իմանալ և վասն դիմորոշին
դ, որ չսղի՝ թէ չյաջորդէ ձայնաւոր ․
իսկ զկնի միոյ նայ տառի մարթի սղիլ
զոր օրինակ ․

« Զներող բնութիւնըդ շարժեցին ։
Ցորդեգրութիւն Հօրըդ վերին ։
Անապական ազգ երկնային ։
Քանզի ըզտէրդ իւրեանց տեսին ։
Ըզքեզ որ գանձդ ես երկնային ։
Զնորս ուսուցեր բանդ 'ի մարմին ։
Բացեր զբերանդ աստուածային ։
Այլ որ նըստիսդ յերկնից երկին » ։

Իսկ եթէ սղելոյն գուցէ վտանգ շփո֊թելոյ ընդ այլ բառս՝ չսղի ․ որպէս մար֊թին չփոթիլ թանըդ , շանըդ , մարդըդ ընդ թանդ , շանդ , մարդդ ։ Զայս չփոթումն բառից ըստ տեղւոյն գիտելի է և 'ի ս և ն որպէս մարթին չփոթիլ վարըս , պարըս , զօրըս , թոռըն , ոչըն ընդ վարս , պարս , զօրս , թոռն , ոչն ։

Հ ․ Զիա՞րդ փոփոխէ զքանակ բառից տառս կամ նախդիրս զ ․

Պ ․ Ընդ բաղաձայնս , մանաւանդ բազմավանկ բառից , սղի սովորաբար՝ եթէ նախադաս բառն յանգի 'ի ձայնա֊ւոր ․ զոր օրինակ

« Լուսաւորեա զխաւարս անձին ։
Զի զԹագաւորդ ընդունիցին ։
Զի զզուշացայց աւազակին ։
Ինձ պարգեւեա զքեզ ծիր շնորհի » ։

Իսկ եթէ նախադաս բառն յանգի 'ի բաղաձայն , ազատ է 'ի սղիլ կամ 'ի վանկ կազմել ։ Զնոյն է ասել և ևս , եթէ զ ընական իցէ . զոր օրինակ

« Կոչել զդրացիս գերաշխարհին ։
Զի կատարեալ էառ զընութիւն ։
Նարդոս քըրքում զմուռ ընդ հա-
լուին ։ —
Զգեստ արկանէ տղայոց բեհեզ ,
Զհնազանդ լինելըն հօր և հեզ » ։

Բայց ընդ միավանկ բառս , և յորժամ զկնի ունիցի կրկին բաղաձայն սղելի , սովորաբար չսղի , եթէ ոչ միավանկիցն սկզբնատառք իցեն յ կամ հ . զոր օրինակ

« Ծածկեալ ըզգլուխըդ կըռափէին ։
Գեր 'ի վերոյ քան ըզընութիւնս ։
Եւ տաս՞անել իբրև ըզքոյս ։
Մերժել ըզչարն ատելութեամբ ,
Գըրկել զբարին սիրելութեամբ ։ —
Եւ ըզսնապարծ բան յիմարին » ։

Ուրեք ուրեք չսղի և ընդ ձայնաւորի . զոր օրինակ

« Անոն ըզԹագն և զգաւազան ։

*Հիւսէ ըզմեզ ընդ նոյն սիրով։*
*Խրատէ ըզքեզ մի յաչաղել։*
*Կամ պետութիւն իշխանական*
*Թէ ընկալցիս դու ըզմարդկան »։*

*Բայց հասարակաբար գիտելի է, զի ուր ուրեք ազատ իցէ ամենեւին սղելն կամ երկարել, լաւ է երկարելն քան զսղել. զի որովհետեւ բաղաձայնք լեզուիս յոլովք են, պարտ է քերթողին զգուշանալ 'ի յաճախելոյ և զնոսին, զի մի դժուարալուր լիցին տաղքն լսելեաց։*

## ԴԱՍ Չ

*Նայ տառք. — Զուգադրութիւնք բաղաձայնից :*

*Հ. Զի՞նչ կանոնք իցեն երկարելոյ և սղելոյ ը ձայնաւորի առաջի նայ բաղաձայնից.*

*Պ. Յորժամ նայ բաղաձայնքս ն, ր, ռ, լ, ղ, մ, հանդիպին 'ի սկիզբն բառից զկնի այլոց նայ կամ թաւ բաղաձայնից, որպէս բն, բր, գն, գր, գլ, դր, բռ, խր, կր, հն, հր, շն, սն, սր, տն, տղ, սղ, վր, մն, մր, նր, լր, սովորաբար սղին. զոր օրինակ*

« Վրիպեաց սնապարծ իւրով բանիւ ։
Զինչ յանբնականն որ ախտաասցին ։
Զեղէ՛նմանող քո՛ւմ ծառային » ։

Բայց եթէ յաջորդ ձայնաւորն իցէ երկբարբառս ուա, ուէ, ուի, ոչ ևս սղի. զոր օրինակ

« Այլ Իբըր ճրագ ընդ գըրուանին ։
Ըզգըրգռութիւն կըռուասիրին » ։

Իսկ 'ի միավանկ բառս եթէ ունիցին զ կամ 'ի նախադիր, յայնժամ սղին սովորաբար, ապա թէ ոչ, կարեն լինել երկար կամ սուղ ըստ փափկութեան կամ թանձրութեան նախադաս վանկին ։ Զի եթէ նախադաս վանկն իցէ թաւ ինչ կամ խիստ, չսղին . իսկ եթէ պարզ իցէ ձայնաւոր կամ յանգեալ 'ի բաղաձայնքս և, ր, վ, հ, յ, զ, մարթին սղիլ ։ Նոյնպէս եթէ նախադաս բաղաձայնն իցէ նոյն ընդ սկզբնատառ սղելի բառին . զոր օրինակ

« Եւ ոչ տըհաս տըղայն 'ի նմին ։
Որք անագան գընել գնացին ։
Պահանջեցեր զկնի նորին ։
Ծածկեալ ըզգըլուխըդ կըռափէին ։
Զի հնար լիցի ոգւոյս ստորին ։
Մի՛ արտաքոյ մնար հեզգութեամբ ։
Խորասուզեալ մանկանցն 'ի յուխ
Խրատ ընծայէ սա հոգեբուխ » ։

Հ. Զի՞նչ ապա եթէ 'ի վերջին վանկ բառից դիպիցին նայ տառքդ.

Պ. Ի յառաջել նայիցն՝ զկնի ունելով զայլ բաղաձայնս, սղին. որպէս բանտ, գունդ, զարդ, արբ, կեղտ, ամբ, տունք, ելք, և այլն։

Իսկ 'ի հետևել նայիցն՝ յառաջոյ ունելով զայլ բաղաձայնս, ոչ սղին՝ եթէ չյաջորդեսցէ անմիջաբար ձայնաւոր, կամ տառքս յ, ի. զոր օրինակ։

« Յօղէր արտօսըր ցաւագին
Մայր տեառն՝ որ կայր մերձ առ խաչին։ —
Բայց ինքն ինքեան անտեսանայ։
Եւ ինքըն զուլ և ոչ սրանայ։ —
Դուստրն բանայ քեզ գիտութեան։
Եւ հրէական ազգըն կոծին։
Ըզչափ մեղացն որով ստեցին։ —
Երբեմն էաք մեք ըղձալի,
Բայց այժմ եղաք յոյժ եղկելի։ —
Աւլ մատն եղէ անձամբ անձին։
Որք զեզն յառաջ պատրաստեցին »։

Եթէ զկնի վերջին նայիցն կայցէ դիմորոշ ինչ ս, դ, ն, նայքն սղին, և դիմորոշքն ոչ. որպէս այժմըս, համբըդ, ձեռնըն, աստղըն. զոր օրինակ.

« Բախեմ ըզդուռնըդ երկնային։
Բուստն հարից տեառնըդ ոտին »։

Հ . Իցեն և այլ զուգադրութիւնք բա֊
ղաձայնից սղելիք .

Պ . Սղին սովորաբար և բառք , որոց
սկզբնատառք իցեն ստ , սք , սկ , սպ , սբ ,
սփ , սխ , կտ , պս , քս . զոր օրինակ .

« Լուսոյ սկըսաւ ասէ ստեղծուած ։ —
Մի՛ դատեցայց ընդ սպանողին ,
Ընդ փայլականըն ստորանկին ։ —
Կտաւոց մահուն մարմնապատար ։
Զքան հին և նոր կտակարանին ։
Սխալեաց կամաւ 'ի յերկրորդին » ։

Բայց այսոքիկ 'ի միավանկս ոչ սղին ,
եթէ անմիջապէս չիցէ նախադաս ձայ֊
նաւոր ինչ կամ նայ և կամ բաղաձայն
ինչ նոյն ընդ սկզբնատառ սղելի բա֊
ռին . զոր օրինակ .

« Քանզի է սկիզբն իմաստութեան ։
Եւ քսակըն հին փոփոխեսցին » ։

Այսպէս և բառքս կըտակ , պըսակ ,
ըսփիւռ , և այլն , սղին , 'ի կտակ , 'ի
պսակ , 'ի սփիւռ , 'ի սպառ , և այլն ։

Ի զուգադրութեանց աստի այնոքիկ՝
որ 'ի սկիզբն իւրեանց ընդունին զձայ֊
նաւորն ը , եթէ զկնի երկուց բաղաձայ֊
նիցն յաւելցի միւս ևս նայ՝ տակաւին
սղին . զոր օրինակ , 'ի ստանալ , 'ի
ստրուկ , և այլն ։ Իսկ եթէ զձայնաւորն
ը ոչ 'ի սկիզբն՝ այլ 'ի մէջ երկուց բա֊

ղաձայնիցն ընդունին, ոչ սղին. զոր օրինակ կտրատել, սրխրալ, և այլն։

Այսպէս և այլ ամենայն զուգադրու-թիւնք երից բաղաձայնից ոչ սղին, և պահանջեն զձայնաւորն ը։

Իսկ զուգադրութիւն կրկին թաւ բա-ղաձայնից՝ի սկիզբն բառի ոչ սղի, բայց եթէ նախադաս տառն իցէ ձայնաւոր կամ նայ՝ ընդ որ հեշտեաւ կցեսցի մին ՚ի բաղաձայնից անտի. որպէս ՚ի վկա-յութիւն, ՚ի մտանել, ՚ի շկահել զինուց, ՚ի դժոխոց, ՚ի գթի, յիմանալի վտակաց։ զոր օրինակ

« Այլ գյարութեան պտուղս առաջին։
Մինչև քակել շտեմարանին։
Ի մարտ մըտելն ընդդէմ տկարին։
Շինեալ՚ի գիրկս իմ չքեղաւոր։
Եւ վասըն թքոյն ՚ի յիս գըթա »։

Այլ յոյժ զգուշութեամբ, և դուն ու-րեք առ հարկի ևեթ վարելի է ազա-տութեամբքս, զի դժուարին իսկ է ան-սայթաք հնչել զայնս։

## ԴԱՍ Է

*Սղութիւն նախադասութեանցս Ընդ, Ընտ :*
*— Սղութիւն ձայնաւոր տառից :*

Հ. Ո՞ւր օրէն իցէ սղել զնախադասու-
թիւնքս Ընդ և Ընտ.

Պ. Անդ միայն, ուր առաջի կամ
զկնի ունիցին ձայնաւոր. զոր օրինակ

« Ձի ընդ փեսայիդ 'ի յառագաստ ։
Ընդ առաջ նորա թռուչիս ամպով ։
Դարձեալ ասեմք ըստ անառակին ։
Ըստ արարչութեան երեց որդին » ։

Կայ սղել և առ հ և մ տառիւք, զոր
օրինակ

« Ըստ հոգւոյն չնորհացըն եօթնար-
փին ։
Առեր մարմին ըստ մերոյ բնութեան ։
Միւն՝ յոր ընդ հանուրըս հաստա-
տեալ » ։

Զորս առ հասարակ գրելի է ըստ նախ-
նեաց այսպէս.

« Ձի 'նդ փեսայիդ 'ի յառագաստ ։
'Դ առաջ նորա թռուչիս ամպով ։
Դարձեալ ասեմք 'ստ անառակին ։
'Ստ արարչութեան երեց որդին ։
'Ստ հոգւոյն չնորհացըն եօթնարփին ։

կան կազմութիւն տողից, և տաղից,
և իբր մարմին քերթուածոցն. իսկ բա֊
նաստեղծութիւն՝ իբր շունչ իմն և հոգի
նոցա, այսինքն են իմաստքն և տիպք
կերպարանց բանիցն՝ որ 'ի տողս անդ
և 'ի տաղս բովանդակին. վասն որոյ
մարթի գոլ ումեք քաջ տաղաչափ, ա֊
ռանց գոլոյ բանաստեղծ. և ընդ հա֊
կառակն իսկ մարթ է բանաստեղծել
առանց տաղաչափութեան, թէպէտ և
ճահաւորագոյն և բնիկ լեզու քերթո֊
ղին իցէ տաղաչափելն։

Հ. Ո՞րպէս ապա սահմանի բանաս֊
տեղծութիւն.

Պ. Ոմանք ըստ Արիստոտէլի և ըստ
Պղատոնի սահմանեն զայն 'ի կեղծիս.
այլ կեղծիք ոչ յամենայն քերթութիւնս
ունին զտեղի. որպէս ահա 'ի նկարագ֊
րական քերթուածս ինչ կեղծիք և ոչ
մի ինչ գտանին։ Այլք սահմանեն զայն
'ի նմանութիւն բնութեան. այլ նմա֊
նութիւնս այս չէ ինչ բանաստեղծու֊
թեան ևեթ պահեալ, այլ և արուես֊
տից բազմաց և արձակ շարագրածոց
սեփական է նմանել բնութեան։ Ապա
ուրեմն ճշգրիտ ևս այսպէս սահմանի
բանաստեղծութիւն. Հոգեշարժ բար֊
բառ երեւակայութեան և սրտի, յաճա֊

խաղողյնս չափով և թուով արտայայտեալ։

Հ. Ո՞րպէս սկիզբն եղև բանաստեղծութեան.

Պ. Յոյնք համարին զՈրփէոս՝ զԼինոս և զՄուսէոս գտիչս քերթութեան, զի սոքա առաջին քերթողք անուանիք յԵլլադա կացին, բայց քերթողութիւն յառաջ իսկ էր յոյժ քան զնոսա։ Քանզի բանաստեղծութիւն բնածին է 'ի մարդ. և հոգիահրաշ լինել նորա և 'ի յուզել խանդիցն՝ ոչ ևս բաւէ նմա սովորականն բարբառ, այլ արտաբերեալ իւր յանձնէ, և 'ի բերումն կրիցն թողեալ, յաճախէ իմաստս վսեմս և գեղեցիկս, ձևս մեծավայելուչս և ազնուականս, պատկերս և նմանութիւնս կենդանատիպս, անցանէ ընդ էքս առհասարակ, և զամենայն մեծութիւնս բնութեան 'ի կիր առնու առ 'ի նկարագրել զկիրս իւր. և այս իսկ է բանաստեղծութիւն։ Եւ վսեմականիս այսմիկ և անսովոր կերպարանաց բանի ոչ ևս 'ի ճահ գալով արձակ բարբառոյ, բազում այն է՝ զի բանաստեղծն զթիւ և զյանգ առնու իւր 'ի զօրավիգն, և կամ գէթ զչափ ինչ վեր 'ի վերոյ։ Զայս ամենայն է տեսանել յերգս բազումս վաղեմիս։

Օրինակ իմն. Մովսէս յանցս կարմիր ծովուն հիացեալ ընդ աստուածահրաշ սքանչելիսն, և մանաւանդ 'ի նկատել հոգւովն զազատութիւն ազգի մարդկան 'ի գերութենէ դիւին՝ որոյ օրինակ և եթ էին սքանչելիքն, տես որպիսի իմաստս և ձևս բանից առ յոյժ հիացմանն 'ի կիր արկանէ:

« Օրհնեսցուք զՏէր, զի փառօք է փա-
« ռաւորեալ, զերիվարս և զհեծեալս
« նոցա ընկէց 'ի ծով... խորք ծածկե-
« ցին զնոսա, ընկլան յանդունդս իբրև
« զվէմս:... Աջ քո Տէր փառաւորեալ
« է զօրութեամբ իւրով, աջ քո Տէր
« խորտակեաց զթշնամին. առաքեցեր
« զբարկութիւն քո, և եկեր զնոսա իբ-
« րև զեղէգն. և հողմով սրտմտու-
« թեամբ քո պատառեցան ջուրք, պա-
« ղեցան որպէս պարիսպ ջուրք, պա-
« ղեցան ալիք 'ի մէջ ծովուն:... Ա-
« սաց թշնամին. հալածեցից և հասից,
« բաժանեցից զաւարն, և լցուցից 'ի
« նոցանէ զանձն իմ:... Առաքեցեր
« զհողմն քո, և ծածկեաց զնոսա ծով.
« ընկղմեցան որպէս կապար 'ի ջուրս
« սաստիկս: Ո՞վ իցէ նման քեզ յաս-
« տուածս Տէր; և կամ ո՞վ նմանիցէ
« քեզ փառաւորեալդ 'ի սուրբս սքան-

« չելի փառօք, որ առնես զնչանս. ձգե֊
« ցեր զաջ քո, և եկուլ զնոսա եր֊
« կիր... Լուան ազգք, և բարկացան,
« և երկունք կալան զբնակիչս քանա֊
« նացւոց... Անկցի ՚ի վերայ նոցա
« ահ և երկիւղ. մեծութեամբ բազկի
« քո քարասցին, մինչև անցցէ ժողո֊
« վուրդ քո տէր, մինչև անցցէ ժողո֊
« վուրդ քո այս՝ զոր ստացար: Տա֊
« րեալ տնկեսցես զնոսա ՚ի լեառն ժա֊
« ռանգութեան քո. տէր թագաւոր յա֊
« ւիտեան և յաւիտեան և ևս. զի մտին
« երիվարք փարաւոնի կառօք և հեծե֊
« լովք նորա ՚ի ծով, և ած ՚ի վերայ նո֊
« ցա տէր զջուրս ծովուն. և որդիքն
« Իսրայէլի գնացին ընդ ցամաք ՚ի մէջ
« ծովուն »:

Արդ տես ինձ որպիսի գեղով զնա֊
խերգանան առնէ, յորդորելով օրհնել
զգործող սքանչելեացն, և քանի՛ ճար֊
տարութեամբ զսքանչելիսն վեր ՚ի վայր
յեղյեղէ, մինչև բացատրել զամենայն
հանգամանս հրաշիցն՝ առանց պատ֊
մութեան: Մերթ առ ժողովուրդն բար֊
բառի, մերթ առ Աստուած. է զի ՚ի
դիմաց թշնամեաց առնէ սպառնալիս,
և է զի բացադարձութիւն առ Աստուած
և բացագանչութիւն: Իսկ փոխաբե֊

րութիւնք և նմանութիւնք և այլ ևս ձևք խիտ առ խիտ ամենայն ուրեք յաճախեն. խորոց ծածկել զթշնամիս, ընկըլնուլ թշնամեաց յանդունդս իբրև զվէմս կամ իբրև զկապար: Առաքումն բարկութեանն Աստուծոյ, և իբրև հուր զեղէգն՝ ուտել բարկութեան նորա զթշնամիս: Ի սրտմտութենէ տեառն որպէս 'ի հողմոյ պատառել ջուրց, և պաղել ջուրցն որպէս պարիսպս:

Զայրոյթ ազգաց հակառակորդաց, և իբր յերկուղս ըմբռնել նոցա առ ցաւացն, այլ մեծութեամբ բազկի տեառն քարացեալ որպէս զվէմս անշարժս՝ չկարել նոցա զդէմ ունել ժողովրդեան նորա յանցանել նոցա ընդ ծովն Կարմիր:

Տանել տնկել զնոսա տեառն 'ի լեառն ժառանգութեան իւրոյ, որպէս ոք տընկագործ զի զծառս տեղի 'ի տեղւոջէ փոփոխիցէ: Երիվարացն և կառաց փարաւոնի մտանել դիմառնաբար 'ի ծով, և տեառն ածել 'ի վերայ նոցա և հեծելոց նոցա զջուրս ծովուն, և որդւոցն Իսրայէլի ընդ հրաշաշաւիղ ուղին գնալ ընդ ցամաք 'ի մէջ ծովուն:

Արդ ահաւասիկ այս ամենայն կատարէ զքանաստեղծութիւն: Զայս ամե-

նոյն և յօրհնութիւնսն Դեբովրայ և այլոց և 'ի մարգարէութիւնսն առ հասարակ է տեսանել. իսկ 'ի դաւթեան աստուածօրհնութիւնսն քանի՛ պայծառ և կենդանի, գեղեցկութիւնք մեծավայելուչք և իմաստք վեհք և վսեմք ոչ ղեղեալ յորդեն. գտցես ընդ կըրունկն նահանջել, ծովու հերձանել և 'ի փախուստ դառնալ, բլրոց խայտալ և ցնծութիւն զգենուլ, լերանց հալիլ որպէս զմոմ և սպառիլ, երկնից և երկրի ահիւ և լռութեամբ լսող լինել պատգամաց. և ամենայն էից դղրդեալ սասանել յերեսաց տեառն: Համառօտ ասել, գեղեցիկն և վսեմ՝ որ են երկոքին կարեւորագոյն մասունք բանաստեղծութեան՝ երեւին 'ի նոսա ամենայն շքով:

## ԴԱՍ Թ

*վսեմութիւն իմաստից և ասացուածոց :*

Հ. Զի՞նչ է վսեմն.

Պ. Չէ ինչ դիւրին սահմանել զազդումն վսեմին 'ի մեզ, զի է սա մի յիրաց՝ զորս դիւրագոյն է զգալ քան բացատրել: Է զգացումն իմն ախորժելի,

Հուպ ահաւորին. և ճշմարտին ընդ նորոյ մեծավայելչապէս խառնումն: Ցուցանէ զհոգի և 'ի վեր քան զինքն ամբառնայ. և այնպիսի է նորա ազդումն, զի դժուարին է և գրեթէ անկարելի զդէմ ունել զօրութեան նորա, և տիպք ազդեցութեան նորա երկարատեւք են 'ի միտս և դժուարաջինջք. Գեղեցիկ ինչ զուարճացուցանէ զմիտս, այլ վսեմն յափշտակէ. ընդ վտակ փոքրիկ և ականակիտ և պիտանի զարմանամք, այլ առանց հիացման. բայց հիանամք 'ի տեսանել զԴանուբ, զՆեղոս, զՀռենոս, և զայլ յաղթաջուր գետս, և զՈվկիանն լայնածաւալ:

Ըստ այսմ օրինակի ամենայն ընդարձակութիւն անսահման ներգործէ 'ի մեզ զազդումն վսեմին. տեսիլ լայնատարր դաշտի, ամբաւ տարածութիւն երկնից, լերինք բարձրաբերձք, մայրիք երկնածայրք, այլովքն հանդերձ: Նոյնպէս և հզօր զօրութիւն ազդէ 'ի մեզ վսեմապէս. զոր օրինակ ճայթմունք շանթից, որոտընդոստ բոմբիւնք որոտմանց, մռնչիւն հողմոց, խոխոջք ուղխահոս հեղեղատից, ժայթքել հրաբուղխ լերանց, ճարճատել բոցածաւալ հրդեհութեանց, ալեկոծել լեառ-

նաձև կոհակաց ծովու, բաղխել ընդ միմեանս սպառաղէն հակառուց, այլովքն հանդերձ։

Հ. Եւ որպէս մարթ իցէ քերթողին վսեմ յարդարել զքերթուածն.

Պ. Պարտ է նմա ոչ միայն զպայծառն և զսոցին սակի իրս վսեմս 'ի կիր առնուլ 'ի բնութենէ՝ վայելչապէս մուծանել 'ի քերթուած իւր, այլ և հանդոյն սոցին իմաստս վսեմս և մեծավայելուչ առաքինութիւնս 'ի բարոյականէն առնուլ 'ի կիր։ Օրինակ ի՛նչ. վսեմ է, և յոյժ վսեմ, սրբոյ հօրն մերոյ Գրիգորի լուսաւորչի երթալ մտանել 'ի ծառայութիւն Տրդատայ 'ի հաստուցումն հայրենի անիրաւութեան։ Դարձեալ և ըստ աշխարհի առաքինութեան՝ վսեմ է այրել Սկեւոլայ իւրովի զձեռնն սխալեալ 'ի հարուածն. և Կեսարու ասել ցնաւապետն ահաբեկեալ 'ի մրրկէ. «Զի՞ զանգիտես, զԿեսար տանիս»։

Հ. Եւ իցէ՞ բաւական առ 'ի վսեմութիւն քերթուածոյ՝ բովանդակել նեթ իրս և իմաստս վսեմս.

Պ. Ամենևին ոչ. այլ պարտ է շարադրութեանն իսկ և եղանակի ասացուածոյն զոլ համեմատ վսեմութեան իրացն և իմաստիցն պարզ և ինքնա-

զարդ։ Այսպէս Ովրատիոս զանհրա֊
պուրելի և զանխռով միտս առաքի֊
նւոյն նկարագրէ․

« Ձայր անարատ և անյողդողդ և
անդոյր
Ոչ բնակակցաց առ 'ի չարիս հըրա֊
պոյր ,
Եւ ոչ բըռանց սաստ․հրամանի բըռ֊
նաւոր
Ի հաստատուն մըտաց շըրջէ 'ի խո֊
տոր։
Եւ ոչ հարաւ շընչեալ ուժգին ․'ի
մեանդրի ,
Ոչ շանթընկէց ձեռնըն մեծին Դիո֊
սի ,
Եւ ոչ աշխարհ թէ քայքայեալ կոր֊
ծանի ,
Զաներկեանըն զայն արկցեն յեր֊
կեղի »։

Եւ Վիրգիլիոս նովին պարզութեամբ ,
փոխանակ ասելոյ առ հռոմայեցիս՝ թէ
դուք ոչ քաջ անդրիագործք ՚էք , ոչ
ճարտար ձուլիչք , ոչ աստեղաբաշխք ,
ոչ ճարտարախօսք , այլ միայն քաջ իշ֊
խեցողք , ասէ (Են․ Զ․ 847)․

« Կոփեսցեն այլք ըզկենդանի դէմս
'ի վէմ,
Ձուլեսցեն քաջ շընչող պըղինձըս ,
գիտեմ․

Գըծագրեսցեն ցըպով ըզծիրս եթերաց,
Գօզցեն զարփիյց ելս, իջեն զու զա-
տասաց ․
Իսկ դու իշխել աշխարհի կալ քեզ
պահեստ ,
Հռոմայեցիդ դու , այդ լիցի քո ար-
հեստ » ։

Ընդ պարզութեան ասացուածոցն խըն-
դրի և կորով և սաստկութիւն 'ի վսեմն․
և այս յաջողէ 'ի բարւոք ընտրութենէ
համգամանաց իրին՝ զորս քերթողն 'ի
ներքս ածէ ։ Օրինակ իմն ․ 'ի նկարա-
գրել զմըրրիկ՝ չէ բաւական 'ի մէջ բե-
րել զտատանումն ծառոց , զամբառ-
նալ ալեաց և այլն , այլ որպէս Վիր-
գիլիոս նկարագրէ զայն ․

« Իսկ ինքըն հայրն 'ի ստուեր ծոցոյ ամ-
պրոպաց
Հրափայլ աջով թափէ շանթիս կայ-
ծականց ․
Ահեղ թընդմամբ դողայ երկիր վիթ-
խարի ,
Եւ խուճապեալ սուզին գազանք 'ի
մորի ։
Մահկանացու սիրտք 'ի յերեր տա-
տանին ,
Եւ յարհաւրացն ազինք բոլոր խո-
նարհին ։

Հրավառ նետիւ նա կամ զԱթեա
Հարկանէ,
կամ զԿերաւնեան բարձունս և կամ
զԽորդոպէ։
Տեղ և տարափ հրհրոդ մըրրիկ շա-
ռաչեն,
Մերթ ծովափունք և մերթ մայրիք
մըռընչեն»։

Եւ Հոմերոս վսեմաբար զհրամայել Ա-
ռամազդայ բացատրէ այսպէս ըստ հին
թարգմանութեան. (Իղիական. Ա. 228).

«Եւ կապուտակային յօնօքն ակնար-
կեաց Զրուանեանն.
Եւ սքանչելի աստուածային վարսքն
շարժեցան յանմահ
Գլխոյ Թագաւորին, և մեծապէս
շարժեցաւ տատանեցաւ Ողիմպոս»։

Ցոլովք են յոյժ 'ի սուրբ գիրս օրինակք
առ այս. որպէս 'ի Սաղմ. (ԼԶ. 35)
նկարագիր արագարագ կործանման
ամպարշտաց. «Տեսի զամպարիշտն
վերացեալ բարձրացեալ որպէս զմայրս
Լիբանանու. անցի, և ահա ոչ էր.
խնդրեցի, և ոչ գտաւ տեղի նորա»։

Եւ 'ի գիրս իմաստութեան (Գլ. ԺԷ.)
այսպէս նկարագրի ահ և գողումն անօ-
րինաց. «Քանզի միով խաւարային
«Շղթայիւ ամենեքեան կապեցան. և

« թէ հողմ շնչէր, և եթէ թանձրախիտ
« ոստոց քաղցրաձայն հաւուց բարբառ
« հնչէր, եթէ յորդութիւն ջրոց հոսե-
« լոց բանութեամբ, և եթէ բոմբիւնք
« սպառնալեաց վիմաց հոլովելոց, և
« եթէ ընթացք աներևոյթք անասնոց
« կայտառելոց, և եթէ բարբառ ահագին
« գազանաց գոչելոց, կամ անդրէն
« յանձն բեկելոյ 'ի քարանձաւաց լե-
« րանց ձայնից որձագանգաց, լքոյց
« զնոսա զարհուրեցուցեալ»:
Եւ Յոբ. (գլ. ԻԶ. 6) այսպէս զմեծու-
թիւնն Աստուծոյ նկարագրէ. «Մերկ
« են գժոխք առաջի նորա, և չիք
« զգեստ կորըստեան. ձգեաց զհիւսի-
« սի զոչընչիւ, կախեաց զերկիր 'ի վե-
« րայ ոչընչի. ծրարէ զջուրս յամպս
« իւր և ոչ պատառեցաւ մէգ 'ի ներքոյ
» նորա:... Հրաման պատեաց զերե-
« սօք ջրոյ. սիւնք երկնից թռեան և
« զարհուրեցան 'ի սաստէ նորա: Զօ-
« րութեամբ հանդարտեցոյց զծով, ի-
« մաստութեամբ նորա տարածեալ է
« համատարածն: Աղխք երկնից սար-
« սեցին, հրամանաւ իւրով սպան զվի-
« շապն ապստամբ»:
Եւ Եսայի (գլ. Ե. 28) այսպէս նկա-
րագրէ զազգս՝ զորս սպառնայ յարու-

ցանել տեառն 'ի վերայ Իսրայէլի.
« Որոց նետք իւրեանց սրեալ են, և
« աղեղունք լարեալ. սմբակք երիվա-
« րաց նոցա իբրև զվէմ հաստատուն,
« համարեցան անիւք կառաց նոցա իբ-
« րև զմրրիկ »։
Յաճախ են յոյժ և այլ ևս հանգոյն սո-
ցին օրինակք վսեմութեան յաստուա-
ծաշունչ գիրս։ Եւ յետ սրբազան մա-
տենագրացն վսեմախօս է 'ի քերթողս
և Հոմերոս, մանաւանդ 'ի քսաներորդ
գիրսն 'ի նկարագրել զԱպողոն. և
Վիրգիլիոս 'ի հրկիզութեան Տրովա-
դայ, և յէջն Ենէասայ 'ի դժոխս.
և Թասսոյ 'ի նկարագրել զժողով
դիւացն, և 'ի պատերազմունս ուրեք.
յորոց Հոմերոս (Իղիական. Ա.) այս-
պէս նկարագրէ զվրէժխնդրութիւն Ա-
պողոնի 'ի բողոքել Քրիսեայ քրմի նո-
րա զգրկանացն և զարհամարհանաց՝
զոր Ագամեմնոն զօրավար աքայեցւոց
արար ընդ նա.
« Լուաւ Փեբոս զալևորին ըզբողոք,
Եւ դիցընկէց 'ի բարձանց էջ անողոք.
Աղեղն 'ի յուս իւր և կապարճ ամրա-
փակ,
Նըսեմաստուեր ինք դիչերոյ 'ի քա-
տակ.

Եւ յընթանալն հսկայաքայլ 'ի սառ-
րէջ,
Ծառաչէն նետք 'ի գըժգըմելոյն թիկ-
նամէջ:
Կառեաւ ապա հանդէպ նաւացն 'ի
բացէ,
Եւ գլայնալիճն ուղղեալ ըզնետն ար-
ձակէ.
Արծաթափայլ աղեղն ուժգին ճար-
ճատեաց,,
Նախ ըզգրաստուցըն ջոկ հարեալ և
շոյտ շանց,
Ապա զմարտկաւն ըզնետն էած մահ-
առիթ,
Խարոյկք մահուն այրին անշէջ խիտ
առ խիտ:
Եւ զինն արփի նետք աստուածոյն
անդադար
Ցաքայեցւոցըն տեղային 'ի համ-
բար»:

Բազումք են յոյժ և 'ի շարականս մեր իմաստք և ասացուածք վսեմք, մանաւանդ 'ի կանոնս սրբոյ խաչին, որպէս օրհնութիւն եօթներորդի աւուրն.

« Անապական սուրբ գխաչն օրհնեա-
» ցուք, որ եդև առաջնորդ աւազակին,
» և յօրինեաց մեզ ճանապարհ, որ
« ձևացոյց մեզ սովաւ մտանել ընդ

« դուռն անեզաչէն դրախտին տեառն։
« Բանալի արքայութեան տուաւ հողա֊
« ծին մարդոյն. ուստի յառաջին նա֊
« չակմանէն արտաքս անկեալ 'ի յաւէժ
« կենդանութեանն. որ ձևացոյց մեզ, և
« այլն։ Գաւազանաձև երևեալ եգիպ֊
« տական ազգին, ցուցանելով զզօրու֊
« թիւն սրբոյ խաչին, յափշտակելով
« զգաւազանսն դիւթական, որ ձևա֊
« ցոյց մեզ, և այլն։
« Դրօշմ զգայութեան օրինակեալ 'ի
« վերայ սեմոց դրանց նոցա, աներ֊
« կիւղ պահելով զժողովուրդն յանդ֊
« րանկածախ սատակմանէն. որ ձևա֊
« ցոյց մեզ, և այլն։
« Երևեալ աղիւսանման ակն պատուա֊
« կան 'ի ձև խաչին. հերձանելով զծովն
« կարմիր, առաջնորդելով ժողովըր֊
« դեանն սեամբ ամպոյ լոյսն անմեկ֊
« նելի, որ ձևացոյց մեզ. և այլն»։

# ԴԱՍ Ժ

## Թերութիւնք վսեմին :

Հ. Ցորմէ թերութեանց պարտ իցէ զգուշանալ, որոց 'ի վսեմն ջանան թևակոխել.

Պ. Նախ առաջին յերկայնաբանելոյ. և երկայնաբանել իմա ոչ միայն ըստ եղանակի ասացուածոյն և ըստ սեթևեթից և զարդուց, այլ և ըստ իմաստիցն: Քանզի միտք չկարեն ընդ երկար սաւառնեալ կալ 'ի բարձու. և 'ի յերկարել անդ քերթողին, քանզի ոչ է մարթ նմա շարայարել անընդհատ իմաստս վսեմս, ինքնին ստորանկեալ վայրաբերին միտք: Վասն որոյ պարտ է շատանալ քերթողին՝ երբեմն երբեմն յափշտակելով զմիտս, և փայլակնաձև զիմաստան վսեմս յօրինելով. վասն որոյ ընդլայնումն այն շքեղ իմաստից անկարևորաց, ևս առաւել բառից այնպիսեաց, ոչ վսեմախօս յարդարէ զքերթողն՝ այլ ճամարտակ: Չմարթէր Մովսեսի վսեմագոյնս պատմել, զստեղծումն լուսոյ, քան զոր անզարդ պարզութեամբն պատմէ. «Ասաց Աստուած.

Եղիցի լոյս . և եղև լոյս » : Որքան վսեմ է և ազդու համառօտս այս ասացուած, այնքան նուաստ և անզօր գտանէր՝ եթէ այսպէս զնոյն երկայնաբանէր . « Իշխեցողն և տէր ամենայն էից , միով ևեթ բարբառով անդարձ իւրոյ հրամանին ասաց եղանել լուսոյ . և 'ի մըշտագիշեր խաւարային անդնդոց եկն լոյս 'ի գոյ » :

Երկրորդ զգուշալին է՝ չնուաստացուցանել զիրս վսեմս գծուծ իմաստիւք կամ ասացուածով, որպէս ստըրտեալն յՈվրատեայ ասացուած. Մարկոսի զծիծնաբերաց , թէ

« Ի լեառն Ալպեայ բարձրադիտակ
Եթուք Հերմէս ձիւն ըսպիտակ » :

Եւ որպէս ոմն զՋրհեղեղէն մտաբերեաց անճահս այլաբանել, աստուածաստատ բարկութեանն 'ի թուրջ արկեալ զտիեզերս : Արդ 'ի տարապայման անտեղութենէ օրինակացս 'ի միտ առնուլ է համեմատաբար և զնուազ անտեղիսն՝ յորս ստէպ զառածանին քերթողք հեռևակք :

Իսկ երրորդ զգուշալին է ընդ հակառակն երկրորդին , մի զանարգ ինչ և զնուաստ հնարել ճոռոմութեամբ ասացուածոյ ամբառնալ 'ի վսեմութիւն :

Քանզի վսեմութիւն 'ի վեհ իմաստս է,
և հնարք վսեմախօսութեան 'ի պարզ և
'ի սակաւ բանս ։ Վսեմագոյնք 'ի քեր֊
թողաց և 'ի մատենագրաց բազում այն
է զի պարզախօսք են գտանին. և որ
հնարի ոք հանդէս առնել բառից և յա֊
ճախէ մակդիրս շքեղս, սովորաբար
թափուր գտանի յիմաստից. մանա֊
ւանդ 'ի մերս բարբառ որչափ մե֊
ծավայելուչ և վսեմ՝ յօրինին իմաստք
վեհք ընտրութեամբ բառից և բար֊
դութեանցն ըստ պատշաճի և զգոյշ
պիտառութեամբ, այնչափ ցուրտ և
տաղտկալի է յաճախութիւն համանշա֊
նակ և աւելորդ բառից։ Որպէս Յո֊
հաննու կաթողիկոսի ասելն. «Այլ և
«հեղձամղձուկ յարկածածուկ հողա֊
«թաւալ հողահեղձոյց սատակումն
«դիակոյտ բազմութեանն, որ կար֊
«ծրագոյն քարեղէն և անկարեկիր
«մտօ էր ստացեալ՝ յորդորէր զնա 'ի
«բազում ողբս և յարտօսրաթոր կա֊
«կանմունս»։ Զոր վայելչագոյն յոյժ
մարթէր յօրինել համառօտիւ այսպէս.
«Եւ սատակումն դիակոյտ բազմու֊
«թեանն զանկարեկիր մտօ 'ի բազում
«ողբս յորդորէր»։

# ԴԱՍ ԺԱ.

Սահման Գեղեցկին. — Զանազանութիւն քերթողական լեզուին 'ի հասարակականէն:

Հ. Զի՞նչ է գեղեցիկն.

Պ. Ամենայն որ հաճոյն է և զուարճացուցիչ։ Զանազանի յոյժ ազդումն սորա յազդմանէ վսեմին. քանզի նորայն սաստիկ է և սորայս հեզիկ. և թէպէտ ոչ իբրև զվսեմն ամրառնայ սա 'ի վեր զմիտս, այլ զուարճացուցանէ զնա. և յետ վսեմին սա պատրաստէ երևակայութեան առաւելագոյն բերկրանս։ Ոչ է մարթ յերկարաձգել զիմաստս վսեմս. իսկ գեղեցիկն ոչ միայն երկարաձգի՝ այլ և յանպարոյր զանազանութիւնս իրաց տարածանի։ Վասն որոյ ամենայն իմաստք և ձևք և բացատրութիւնք քերթողական լեզուին պատշաճք և վայելուչք, որ չիցենն վսեմք. գեղեցիկք են։

Հ. Տուր ինձ օրինակս ինչ գեղեցկին.

Պ. Գեղեցիկ է յոյժ խօսակցութիւնս ընդ անցաւոր ոք և ընդ տատրակ որոյ վարուժանն 'ի վարմս անկեալ.

Անց. « Զի՞ գործես 'ի տըխուր անտառիս,
Ո՞վ տատրակդ ողբերգու, աստ ցիս:
Տատր. Հեծեմ աստ, զի աւա՜ղ կորուսի
Զվարուժանն իմ միակ ցանկալի:
Անց. Զերկընչի՞ս դի հաւորսն և ըզքեզ
Թակարդեալ ըսպանցէ նայապէս:
Տատր. Եթէ ոչ նա դահիճ արիւնուուշտ,
Սակայն ցաւք իմ լիցին ինձ անշուշտ »:

Տիբուղ առ 'ի բացատրել զքաղցր ընկերութիւն սիրելւոյ բարեկամին իւրոյ, այսպէս գեղեցիկ յօրինէ զբանն.

« Մենացելումս իսկ յանապատ անմարդի,
Բազմամբոխ դու ինձ ակումբ ցանկալի »:

Եւ Կատուղ այսպէս առ սիրելին իւր բարբառի.

« Ոչ ևս ըզքեզ տեսից եղբայր իմ սիրելի քան զարև,
Բայց սիրեցից ըզքեզ և յայսմ հետէ 'ի սէր մըշտատև »:

Գեղեցիկ յոյժ և ամն յարդի քերթողաց յօրինէ այսպէս զդրուատիկ եղա-

կին և զմանուշակի ըստ իմաստից և ըստ բացատրութեան.

« Լըրթագոյն մանուշակ
Եւ ելակ կարմրորակ,
Նազելիք երկոքին
Ցածք համեստք երկոքին։
Երկոքին իսկ մանունք,
Ըզգեստով են սողունք։
Եւ այնպէս պատկառող,
Զի զդիմըք ունին քող.
Մինչ զոգցես գեղ նոցա
Դալարեօք չըքանայ։
Միշտ 'ի վայր կան թեքեալ
Պարանոցք վաստակեալ,
Բայց սակայն այր և կին
Մեծագին յոյժ լինին
Ըզսիրուն մանուշակ
Եւ զելակ անուշակ »։

Հ. Ի՞ւ զանազանի լեզուն քերթողական 'ի հռետորականէն և յայլոց.

Պ. Քանզի քերթողաց գլխաւորագոյն ուշ նպատակին է զուարճացուցանել, խանդաղատել, ազդել զգացմունս վեհս, և 'ի բաց մերժել զյոռութիւնս, որէն է նոցա 'ի կիր առնուլ իմաստս և ձևս անսովորս՝ և յանդգունս, կրկնութիւնս յաճախաւորս, մակդիրս նորաձևս, և նկարագրու-

թիւնս բազմազարդս և ընդարձակա-
գոյնս: Քանզի բանաստեղծութիւն է
նկար խօսուն, և այս ամենայն որպէս
դեղք երանգոյ են նմա առ 'ի նկարա-
գրել կենդանատիպս՝ զորոց խօսի.
վասն որոյ պարտ է համբակաց նկա-
տել զայսոսիկ 'ի քերթուածս:

Հ. Տուր ինձ օրինակս ինչ քերթո-
ղական գեղեցիկ բացատրութեանց.

Պ. Առցուք յօրինակ զսաղմոսն ՃԳ
յաղագս արարչութեան: Փոխանակ ա-
սելոյ՝ թէ ալիք ծովու մերթ ամբառնան
և մերթ խոնարհին, ասէ. «Ելանեն
լեռնանան, և իջանեն դաշտանան»:
Աստանօր միով բառիւ լեռնանան ցու-
ցանէ զլեռնաձև կոհակաց ծովուն
զկոծմունս, և միով դարձեալ բառիւ
դաշտանան զգեղեցկածաւալ հանդար-
տութիւն ծովու իբրև զդաշտ:

Փոխանակ ասելոյ՝ թէ բղխեցուցեր
աղբիւրս ընդ ծործորս, ասէ. «Առա-
քեցեր զաղբիւրս ընդ ծործորս»: Ուր
բառիւս առաքեցեր շունչ իմն և կենդա-
նութիւն աղբերցն ընծայի, հնազան-
դել հրամանաց արարչին, և գնալ ընդ
ծործորս:

Փոխանակ ասելոյ՝ թէ դու ստեղծեր
զծառս, և աճեցուցանես զնոսա ան-

ձրեռվք, և պատրաստեա զնոսա 'ի դադարս Թռչնոց, ասէ. « Ցագեացին « ծառքն տեառն, և մայրքն Լիբանա- « նու՝ զորս դու տնկեցեր. անդ Թըռ- « չունք երկնից ձագս հանցեն »: Ուր բառս յագեացին ցուցանէ զծարաւ ծառոց իբրև զկենդանեաց պապքելոց. և ձագս հանել անդ Թռչնոց՝ զգեղեցկագոյն մասն բնակութեան Թռչնոց բացատրէ:

Փոխանակ ասելոյ՝ Թէ սահմանեցեր զժամ մտից արեգական, ասէ. « Արեգակն ծանեաւ զժամ մտանելոյ իւրոյ »: Ուր բառիւս ծանեաւ, առաւել ինչ քան զկենդանութիւն ընծայի արեգական, այսինքն է ճանաչել զկարգ իւր բանաւորապէս, և հպատակել այնմ:

Առցուք դարձեալ յԵզեկիէլէ (գլ. ԻԷ.) զնկարագիր նաւացն տիւրացւոց, ուր մարգարէն կամի ևեթ ասել՝ Թէ նաւք վաճառականք Տիւրոսի էին ամբակառոյցք և մեծաշուք, և ուղղիչք նոցա քաջահմուտք: « Մայրք 'ի Սա-
« նայիր լեռնէ շինեցան քեզ պահանգք,
« և տախտակք նոճիք 'ի Լիբանանէ
« առան առնել քեզ կայմս եղևնափայ-
« տեայս. 'ի Բասանէ արարին զղեկս

« Նաւաց քոց....: Բեհեզ ընդ դիպակի
« գործեցաւ քեզ 'ի պաստառս. յԵգիպ֊
« տոսէ արկանելիք քեզ 'ի փառս, և
« հանդերձ ծիրանի և կապուտակ 'ի
« կղզեացն յելիմացւոց եղեն 'ի զարդ
« պաճուճանաց քոց: Եւ իշխանք քո
« բնակիչք սիդոնացւոց, և եղեն ա֊
« րադացիք նաւավարք քո. և իմաս֊
« տունք քո՝ Տիւրոս՝ որ եղեն 'ի քեզ,
« նոքա եղեն քեզ նաւապետք »:

Տես ինձ քանի վսեմագոյն յօրինէ քեր֊
թողն զթուումն մասանց. և ապա փո֊
խանակ ասելոյ թէ մասունքն այնոքիկ
իւրաքանչիւր, այսինքն պահանգքն,
կայմք, թիակք և այլն, յազնիւ փայ֊
տից շինեալ էին, և առագաստքն և
դրօշք յազնիւ կտաւոց, առանձնաւորէ
ոչ միայն զորակ փայտիցն և զկտաւոց,
այլ և զքաղաքաց՝ որ բերեն զազնուա֊
գոյնս 'ի ծառոց անտի և 'ի բեհեզաց:
Նոյնպէս և զթիավարս և զուղղիչս նա֊
ւացն առանձնաւորէ ոչ միայն յարըս
երևելիս և 'ի հմուտս՝ այլ և 'ի սիդո֊
նացիս և յարադացիս և 'ի տիւրացիս,
յորս հմտագոյնք 'ի նաւավարաց էին:

# ԴԱՍ ԺԲ

## Մակդիրք և շրջաբանութիւն:

Հ. Ո՞ր իցեն սեփականագոյն քերթողաց ձևք.

Պ. Քան զամենայն ձևս յաճախեն առ նոսա մակդրաց պիտառութիւն, և շրջաբանութիւն։

Հ. Զիա՞րդ 'ի կիր առնուն քերթողք զմակդիրս.

Պ. Երրակի. Նախ զհանգամանս իրաց ծանօթս, զորս ճարտասանն 'ի բաց թողու, քերթողն վայելչապէս բացատրէ մակդրօք։ Զոր օրինակ զմանգաղ ասել կոր, զոպնիազ՝ սեաւ, զխաչինս՝ գեղմնաբարձս, զթռչունս՝ երգեցիկս, զեղեամն՝ ցուրտ, զցորեան՝ խարտեաշ, զսղոց՝ խռնաւոր, զկարապ սպիտակ, զբահ՝ կարծր, զհիւսիսի՝ ցուրտ, զհարաւ՝ խոնաւոտ, զձիւն՝ սպիտակ, այլովքն հանդերձ, որպէս է տեսանել զայս ամենայն 'ի չքնաղ քերթուածս Վիրգիլեայ։ Երկրորդ առ 'ի բացատրել զսաստկութիւն հանգամանաց իրացն, զոր այսպէս իսկ պահանջէ սահման բանաստեղծութեան, զոլով

բարբառ երևակայութեան և սրտի․ վասն որոյ քերթողն երևակայէ միշտ զմրջակ՝ խնամող, զհողագործ՝ հուժկու, զբրիչ՝ ծանր, զյօտոց՝ սուր, զերիվար՝ ահիպարանոց, զառիւծ ամեհի, զհովանի մեծատարած, զանտառ՝ նսեմատուեր, զբաղեղն՝ սեաւ, զվարազ՝ թաւաստև, զօձ՝ երկայնաձիգ, զկին՝ պարունեան, զծիրանի՝ տիւրացի, և այլն։ Համառօտ ասացեալ, զամենայն ինչ չար և բարի ստուարացուցանէ յաչս նորա երևակայութիւն։

Եւ երրորդ՝ ազնուագոյն եղանակ պիտառութեան մակդրաց, որովք քերթողն 'ի մի միայն բառ բովանդակէ նրմանութիւնս, փոխակերպութիւնս և այլ ձևս և իմաստս բազումս։ Առցուք գարձեալ օրինակս 'ի Վիրգիլեայ․ զլուսին կոչէ նա ուրեք ուրեք արծաթի, և ոսկեղինիկ զարեգակն, յայտ առարեալ զփայլումն միոյն իբրև զարծաթ, և զմիւսոյն իբրև զոսկի։

Կոչէ նա յամր զամիսս ամարայնոյ և զգիշերս ձմերայինս, և երագընթաց զաբև աշնանային, ակնարկելով յերկայնութիւն տուընջեան ամարայնի և գիշերաց ձմերայնի, և 'ի կարճութիւն տունջեան յաշնայնի։ Նոյլս կոչէ նա

զծառաստանս և զարտորայս անբերս և ազատ զԱխերոն, զբոյս իմն մարդ-կեղէն տալով նոցա նմանութեամբ։

Կոչէ բանձրախիտ զԹեւս ագռաւուց զբազմութիւն երամոյ նոցա յայտ առ-նելով։

Կոչէ փայլուն զխոփ, յանդուղ վաս-տակս արօրադրին ակնարկելով։

Կոչէ լուռ զանտառս, և համր զծառս, զամայութիւն միոյն յայտ առնելով, և և զմիւսոյն չլինել դադար երգեցիկ թռչնոց։

Կոչէ ամպարիշտ զդարս, յորս կացին ամպարիշտ մարդիկ։

Այսէ ոգորել նոխաղաց ընդ իրեարս ու-խերիմ եղջերօք, մասին տալով զհան-գամանս բոլորին։

Եւ այսպէս ամենայն ուրեք ճարտար մակադրութեամբքն հրաշազան գեր-թուածս իւր յօրինէ քերթողն։

Է և այլ ազգ պիտառութեան մակդրի կամ յատկացուցչի, յաճախեալ առ քերթողս, որ ոչ սակաւ յաւելու կեն-դանութիւն և գեղ'ի քերթուածս։ Եւ է առանձնաւորել զիրս․ զոր օրինակ զխէչակ՝ որ մարթի անխտիր յամենայն փայտից գոլ՝ կոչել հացենաց․ և ուռենիս կոչել պկողովս՝ զոր յազգի ազգի ճիւ-

ղոց անխտիր մարթ է հիւսել։ Այնպէս և զվայրս առանձնաւորել յատուկ անուամբ, և զերս, մանաւանդ ուր ազնիւքն իցեն. զոր օրինակ Իդումական կոչել զարմաւենի, Հիպլեան զմեղր, զոսկի՝ Սոփիրայ, զայգի՝ ՚ի Բեղմաւոն, զմայրս՝ Լիբանանու, և այլն։ Տես ՚ի Նկարագիր նաւացն տիւրացւոց (Դաս ԺԱ)։

Հ. Տուր ինձ օրինակս շրջաբանութեան քերթողականս։

Պ. Սաղմոսերգուն փոխանակ ասելոյ (Սղմ. ՀԷ.) թէ որդիք Եփրեմայ քաջ պատերազմողք փախեան ՚ի պատերազմէ, ասէ. « Որդիք Եփրեմի, լա-
« ձիգք և պնդաձիգք, յաւուր պատե-
« րազմի կապարճս դարձուցին »։
Յոբ փոխանակ ասելոյ՝ թէ ծաղր եղէ աղքատ և սինլքոր մարդկան, ասէ (գլ. Լ.) « Որք պատէին խարշափուն բան-
« ջարով, և զարմատս փայտից ծամէին
« ՚ի սաստիկ սովոյ, որոց տունք իւ-
« րեանց էին ծակք վիմաց, որք ընդ
« խոռովք վայրենեօք բնակեալ էին,
« արդ քնար եմ ես նոցա »։
Նոյն ինքն դարձեալ (գլ. ԼԹ.) փոխանակ ասելոյ ՚ի դիմաց տեառն՝ թէ ես ստեղծի զձի, այսպէս շրջաբանէ. « Ե-

«Թէ դո՛ւ ազուցեր ձիոյ զօրութիւն, և
«զգեցուցեր զրահ զպարանոցաւ նո֊
«՚րա, արկեր զնովաւ սպառազինու֊
«թիւն, և զփառս լանջաց նորա զյան֊
«դգնութիւն»։

Նոյն ինքն դարձեալ և 'ի նկարագրել
զվիշապն, փոխանակ ասելոյ՝ թէ ա֊
հարկու են ատամունք նորա, պարա֊
նոց նորա հզօր, և կորուսանէ զամե֊
նեսին՝ որ ընդ առաջ պատահին նմա,
ասէ (գլ. ԽԱ.) «Յուրջ զատամամբք
«նորա ահ, 'ի պարանոցի նորա զօրու֊
«թիւն բնակէ, առաջի նորա կորուստ
«ընթանայ»։

Եւ Սողոմոն յերգս երգոց (գլ. Բ. 11)
փոխանակ ասելոյ՝ թէ եհաս գարուն,
այսպէս հրջաբանէ. «Ահա ձմեռն
«էանց, անձրևք անցին և գնացեալ
«մեկնեցան, ծաղիկք երևեցան յերկ֊
«րի մերում, ժամանակ եհաս յատա֊
«նելոյ. ձայն տատրակի լսելի եղև
«յերկրի մերում»։

Ղուկանոս քերթող փոխանակ ասելոյ՝
թէ Կադմոս փիւնիկեցի եղև գտակ
գրչութեան, ասէ.

«Փիւնիկեցիք նախկին իշխեալ,
Եթէ լըսեմք համբաւոյ,
Անհարթ ձևովք կայումըն տալ

Անցանելի բարբառոյ »։
Զոր գեղեցիկ ևս այսպէս շրջաբանէ ոմն 'ի գաղղիացի քերթողաց.

« Ի նմանէ հանճարեղս այս արուեստ
'ի լոյս ել,
Ներկարել ըղբարբառ, և ընդ աչըս
խօսել.
Եւ 'ի գիծըս պէսպէս և 'ի ձև բազ-
մազան,
Խորհըրդոց անմարմնոց տալ երանգ
և իրան »։

Եւ ոմն 'ի քաջացն մերոց արդի քերթողաց փոխանակ ասելոյ՝ թէ մինչ մերազնեայ մանկտին ողբերգէ 'ի տեսարանի, վայելուչ իմն այսպէս շրջաբանէ.

« Ի չափ տաղի մինչ Թորգոմեան
մանկանց պար
Ի սոփոկղեան սօլերս ագոյց գարշա-
պար »։

Եւ Ովրատ (Տաղերգ. Ա. Ի.) փոխանակ ասելոյ՝ թէ դու ազնիւ ըմպես գինի, իսկ ես ոչ, այսպէս շրջաբանէ.

« Դու զԿեկուպեանն ըմպես ըղհոյզ,
Եւ զ'ի հընձանըս Կաղէնեան ճըմլեալ
ողկոյզ.
Ոչ Փաղերնեան որթք յիմ բաժակ
Եւ ոչ Փորմեան խառնեն բըլուրքըն
զանապակ »։

# ԴԱՍ ԺԳ

*Զանազանութիւն քերթողական ձեւոց ՚ի հռետորականաց: — Ձև նկարագրութեան:*

Հ. Ի՞ւ զանազանին ձեւք քերթողականք ՚ի հռետորականացն.

Պ. Առաջէն քերթողական արուեստին ձեւք բազում իւիք յար և նման հռետորականացն գտանին, բայց գրեթէ և ամենայն ուրեք զանազանին յայնցանէ սաստկութեամբն. քանզի բազում ինչ օրէն է քերթողի, որ հռետորի առաւելազանցն է, և է ուրեք՝ զի ծաղրելի իսկ: Օրինակ իմն. գեղեցիկ է շրջաբանութիւն շարականին, ուր փոխանակ ասելոյ՝ թէ սուրբ լուսաւորիչն մեր զամս հնգետասան ՚ի խոր վիրապին բնակէր, ասէ. «Երեք հնգօք « ամօք ՚ի մէջ թունաւորացն բնակէր « անդնդային տանջանօքն ՚ի վիրա« պին»: Այլ եթէ զոյն ասացուած ոք ՚ի ճառս կամ եւս առաւել ՚ի հետեւակ բանս ՚ի կիր արկանիցէ, որպէս ասել՝ երեքցս երրեակ որդիս ուրուք ծնեալ, կամ երիս հնգեակ ճառս յօրինեալ և այլն, կարի յոյժ ծաղրելի գտանի:

Դարձեալ և Սողոմոն 'ի ձև փոխաբերութեան աղօրիս կոչէ զատամունս. և ոչ անդ զկայ առեալ, այլ և տկարութեամբ ձայնի աղօրւոյն այլաբանէ զտկարանալ ատամանց ծերոց, որ անցանէ անդր քան զսահման ճարտասանին :

Եւ Ովրատիոս դժգոյն կոչէ զմահ, 'ի ձև փոխանունութեան տալով մահու զհանգամանս մեռելոյ կամ զդիական. և ոչ անդ զկայ առեալ, յաւելու 'ի ձև դիմառնութեան քերթողաբանել՝ զի նովին ոտամբ հարկանէ դժգոյն մահ զարքունիս և զհիւղ. զոր 'ի ճարտասանական ճառս արուեստակութիւն համարելի է :

Նմանապէս Վիրգիլիոս և Ովիդիոս և այլք 'ի քերթողաց 'ի ձև խելամտութեան եղեւին կոչեն զնաւ բազում ուրեք, զնիւթն փոխանակ իրին առեալ. որ կարի իմն է ճարտասանին :

Նոյն ինքն Վիրգիլիոս բազում ուրեք 'ի կիր արկանէ շրջաբանութիւնս գեղեցիկս յոյժ, որք 'ի ճարտասանական ճառս անյարմարք թուին. զոր օրինակ փոխանակ ասելոյ՝ թէ մինչև սառուցեալ իցեն ջուրք՝ պարտ է աւանդել երկրի զսերմանս, ասէ. « Մինչև

« տխուր ձմերայնոյն սանձահարեալ « զուղխս սառամանեօք » ։ Եւ զկարճութենէ աւուրց ձմերայնոյ ասէ՝ թէ արեգակունք ձմերայինք ճեպին մտանել յՈվկիան ։ Եւ այլուր փոխանակ ասելոյ հովուի առհովուակիցն թէ յիշեսցի անուն քո մինչև ՚ի սպառ, ասէ. « Ցորչափ ծաղկամբք մեղուք և ցօղով « պարարեսցին ճպռունք, յիշեսցի ա֊ « նուն քո առ հովիւս » ։ Եւ այլ սոցին հանգոյն շրջաբանութիւնք անթիւք, զորս ոչ է օրէն ճարտասանի ՚ի կիր արկանել ։

Նոյն ինքն դարձեալ ՚ի ձև նմանութեան առ ՚ի բացատրել թէ որով կարգաւ զծառս ՚ի բլրի պարտ իցէ տնկել, ածէ յօրինակ զբանակ զօրաց, որպէս ՚ի մեծի պատերազմի երկայն զգումարտակսն տարածանէ լեգէոն, և յընդարձակ դաշտի զեռայ ճամբար, կարգին ռազմք, և ծածանի փայլուն պղնձով երկիրն ամենայն, մինչչև ահագին մարտիցն խառնեալ և մինչ վարանեալ ՚ի մէջ զինուցն թափառի Արէս ։ Արդ ըստ կարգաց այսպիսւոյ ճակատու պատուիրէ տնկել զծառս ՚ի զառ իվայրի. ուր թէպէտ և գեղեցիկ է նմանութիւնն, և բացատրութիւնքն ամենայն

ճարտասանականք, մանաւանդ յարձակ թարգմանութեանս, այլ ո՛ ոչ տեսանէ զի ձև նմանութեանն 'ի վեր է քան զսահման ճարտասանութեան, և անպատկանաւոր հռետորական ճառից :

Նոյն ինքն դարձեալ 'ի ձև չափազանցութեան փոխանակ ասելոյ՝ թէ անհընար է զազգս այգեաց թուել և ուսանել զանուանս նոցա, ասէ. « Զոր թէ
« Գիտել ոք կամիցի, կամիցի նա գի-
« տել եթէ քանի՛ք յաւազուտս Լիբիոյ
« մրրկին զեփիւռիւ հատք, և կամ քա-
« նի՛ք զծովափունս Յոնիոյ բաղխեն
« ալիք, յորժամ խստաշունչ 'ի վերայ
« նաւաց անկանի Եւրոս » : Ահա և աստ չի՛ք ինչ 'ի բացատրութիւնսն օտար 'ի ճարտասանութենէ : Բայց գլխաւոր մասինն զեղ և վայելչութիւն՝ որ է ձևն չափազանցութեան՝ փոխի 'ի ճամարտակութիւն՝ թէ ոք 'ի վարդապետելն հետևակ բանիւ զմշակութենէ և կամ 'ի ճարտասանելն կամիցի 'ի կիր արկանել զնոյն :

Նոյն ինքն դարձեալ 'ի ձև բացադարձութեան այսպէս միում 'ի հովուաց տայ բարբառել. « Թուփք դալարա-
« դեղք, լերուք հովանի զառանցս ի-

« մոց »: Արդ գեղեցկութիւն բացա-
գարձութեանս այսորիկ փոխի 'ի պերճ-
րանս ընդ գրչաւ հռետորին:
Զնոյն գրեթէ և զայլ ամենայն ձևոց ասելի է, մանաւանդ զնկարագրականէն՝ որ առաւել քան զամենայն ձևս թուի հասարակաց քերթողին և ճարտասանին: Վասն որոյ ոչ է պարտ վեր 'ի վերոյ հայել յօրինակս ձևոց, այլ նկատել 'ի նոսա զհանգամանս և զոճիս յատուկս քերթողականին, զի մի արուեստք երկաքանչիւր ընդ իրեարս խառնակեալ շփոթեսցին. իբր այն թէ հեծելոյն հետևակելով, և հետևակին պեգասօրէն ճախրելով:

Հ. Կարևոր իցէ քերթողի նկարագրութիւն:

Պ. Նկարագրութիւն ոչ միայն կարևոր է յոյժ քերթողի՝ յամենայն ազգս քերթութեանց խառնեալ, այլ և ցոյց մեծ է հզօր երևակայութեան նորա, և նովաւ հանճարք մեծամեծք զանազանին 'ի չափաւորացն: Հետևակ քերթող առաւել ինչ քան ըղձացեալսն և զընթերցեալս չգտանէ յիմքը 'ի նկարագրել, և թուի նմա ամենայն ինչ ասացեալ յայլոց և սպառեալ: Իսկ քերթող քաջ ամենայն ուրեք գտանէ տիպս

անսպառելի, և ճշգրտահան գրչաւն առաւել քան զճարտար նկարիչ կենդանատիպ յանդիման առնէ զիրս, պատշաճ ընտրութեամբ հանգամանացն։ Քանզի յայսմ իսկ է արուեստ նկարագրութեան.

Նախ՝ զի մի իցեն 'ի նմա տիպք նուաստք և սովորականք, այլ ամենայնն ընդոստուցիչ մտաց.

Երկրորդ՝ զի իցեն տիպքն յստակք և սեփականք նկարագրելոյ իրին, և առանձնաւորեսցեն զայն.

Եւ երրորդ՝ զի իցեն համաձայնք իրերաց տիպքն, այսինքն ուր զվսեմութիւն իրին առաջի կայցէ ցուցանել ընտրեսցին հանգամանք վսեմք, իսկ ուր զգեղեցկութիւն՝ հանգամանք գեղոյ, և ամենայն իսկ ուրեք ըստ պատշաճի առաջարկութեանն։ Ի վերայ այսոցիկ պարտ է քերթողին պարզ և անսեթևեթ առնել զնկարագրութիւնսն, մանաւանդ 'ի վսեմ իրս. որպէս զի մի ճապաղ ընդարձակութեամբն տկարասցի ազդեցութիւն բանին։ Դարձեալ և 'ի նկարագրութիւնս անկենդան իրաց խառնել զկենդանութիւն և զկիրս, որպէս Վիրգիլիոս 'ի դաշտային նկարագրութեան առնէ՝ զգեղ֊

ջէիցն առաքինութիւնս 'ի ներքս ա-
ծեալ.

« Ո՛վ երջանիկք յոյժ, թէ մըշակք
Բաղդին իւրեանց իցեն գիտակք.
Ոյց ճաշ դիւրին տայ չնորհապարտ
Ի խաղմարար զինուց զերծ արտ։ ...
Այլ է անդորր անդ անկասկած,
Խաղաղութիւն համատարած.
Կենցաղ անփորձ խաբէութեան,
Փարթամ 'ի յինչըս բազմազան.
Անձաւք և լիճք ականակիտք,
Եւ դաշտք Տեմպեայ հովանախիտք.
Է բառաչող անդանօր կով,
Եւ քաղցրախորժ նինջ ընդ ծառով.
Անդ գազանաց որջք և անտառք,
Եւ ժիրաժիր մանկըտւոյ պարք,
Սովորք 'ի կեանըս խըստամբեր,
Դից և ծնողաց պաշտօնասէր։
Արդարութիւն զվերջին զիւր հետ,
Ի գնալն յերկրէ, առ նոսա եդ »։

Ճարտար է յոյժ քերթողս յամենայն
ուրեք 'ի նկարագրել՝ քաջակիրթ ախոր-
ժակօքն յընտրութիւն հանգամանաց,
և մանաւանդ 'ի նկարագիր առմանն և
հրկիզութեան Տրովայ յերկրորդ գիրս
Ենէականին։

Բայց Հոմերոս գերազանցէ զամենե-
քումբք 'ի նկարագրականին, մինչև

կոչել նմա վեհագոյն նկարիչ նախ-
նեացն յիշատակաց։ Օրինակ իմն 'ի
պատերազմական նկարագրութեանց
նորա. (Իշխական. Ը.)։

Բանին գրունք ողջոյն, թափ 'ի
  դուրս ոստչի հրոսակ ամբոխին
Հետի ւայրուձի, և շառինդըն ճայ-
  թեաց ամպրոպ ահագին.
Մինչ ռազմ արարեալ 'ի մի համա-
  գունդ դըրդէին 'ի վայր,
Ճակատ առ ճակատ միմեանց 'ի դի-
  մի բաղխէին գուպար,
Նիզակ և վահան, և սըրտմըտու-
  թիւն քաջաց կորովեաց
Կուռ կարծրածածկոյթ սպառազէն
  վառեալ բուռն ախոյանաց։
Անդ զըմբեթազէն ասպարաց կո-
  փիւն ընդ իրեարս խեթկէր,
Եւ որոտընդոստ բոմբիւն խազմա-
  րար թընդայր դըղըրդէր.
Անդ գոյժ խառնաձայն, անկելոց
  հեչիւն, գոռք նահատակաց,
Եւ յատակք երկրին վիժեալ լոխո-
  ջէր յապաժոյժ արեանց։
Ցառաւօտին պահ մինչ այն ինչ աճէր
  տիւըն դիւցական,
Զերկոսին կողմանս հարկանէին
  նետք, տապալէր խուժան։

Իսկ իբրեւ արեւն յերկնից միջակին
ելեալ սաւառնէր ,
Զոսկեղէն կըշիռսն առեալ յայնժամ
Հայրն ամբառնայր 'ի վեր » ։
Եւ 'ի քսաներորդ գիրսն 'ի նկարա֊
գրել զտրոյական պատերազմն .
« Այլ այն ինչ և դից անմահիցըն
պար
Խառն ընդ մահացուաց իջին 'ի գու֊
պար ,
Աշխոյժք երկուստեք զարթեան ա֊
րութեան ,
Շըռինդն և զայրոյթ , ճապաղիք ա֊
րեան ։
Աստուա՛ծ 'ի ցասումն Աթենաս Պալ֊
լաս
Զիւրոց ելլադեանց բորբոքէր ըզ֊
դաս ,
Եւ անդուստ Արէս ահեղաբարբառ ,
Ի խիտ մառախուղ և յամպրոպ խա֊
ւար ,
Ցեղիոնական ամրին 'ի բարձանց
Խրախոյս տայր անդուլ տեւկրեան
պատանեաց ։
Այսպէս 'ի ճակատ արիւնոտ կը֊
ռուոյն ,
Գըրգիռ քա՛ջալերք անմահից պարուն
Զաքայեանց զընդին և զտեւկ֊
րեանցն աշխոյժ



Վառեալ բորբոքեն յեռանդն ապաժոյժ ։
Որոտաց ահեղ յՈղիմպեայ բարձանց
Անմահիցըն հայր և մահկանացուաց .
Եւ յանդընդախոր 'ի հիմանց անտի
Շարժեաց Պլուտոն զերկիր վիթխարի ,
Ըզբարձրածայրեալ լերանց ըսպառուած
Ցիւր երեքժանուոյն գըրգռուեալ 'ի հարուած ։
Շարժէին խորաձոր Իդեան դաշտավայրք ,
Գագաթունք բըլրոց ճօճին երկնածայրք .
Պատնէշք աքայեան գըրգռուին նաւակերտք ,
Պարիսպք և պատուարք տատանէին և բերդք ։
Սոսկացաւ Պղուտոն , և երկիւղալից
Ոստուցեալ 'ի վեր յիւրոց գահոյից ,
Դադարեաց , գոչէ առ շարժմանն առիթ ,
Զըգեւ զերկրաշարժ քո զերեքժանիդ .
Գուցէ պատառես արդ զերկիր համակ

Եւ հաստատկառոյցդ այդ բացեալ յա-
տակ
Անմահից պարուն և մահկանացուաց
Գիտեսցեն վերուստ աչք 'ի ստորեր-
կրայս։
Ի նըսեմաստուեր տեսիլ ահարկու
Տարտարոսական մըթապատ դահու.
Ի տըխուր ոգւոց կայս մըշտագիշեր,
Եւ դիցն անմահից գոլ գըժոխըմ-
բեր »։

Բայց նկարագրական ճարտարութիւն Հոմերոսի առաւել ևս երևի յՈդիսականին իւրում, մինչև ընթերցողին որպէս յանդիման աչաց զամենայն անցս դիւցազինն նկատել։

Գեղեցիկ է նկարագիր Թռուցից հաւուն 'ի դիրս իմաստութեան. (գլ. Ե.) « Իբ-
« րև զհաւու թռուցելոյ յօդս, որոյ ոչ
« գտանին նշմարանք գնացից. բաղխե-
« լով մագլացն պատառեալ զհողմն թե-
« թև և հերձեալ բռնութեամբ, ընդ
« ոլորտս մտանէ. յածել թևոցն՝ յառա-
« ջադէմ սլանայ, և յետ այնորիկ ոչ
« գտանի նշանակ ամբառնալոյն 'ի
« նմա »։

Դարձեալ և 'ի գիրս Յոբայ վսեմ է յոյժ նկարագիր ձիոյն. (գլ. Լթ.)։ « Որո-
« տայ 'ի դաշտի և դափր հատանէ. ե-

« լանէ 'ի դաշտ զօրութեամբ. 'ի պա-
« տահել նետից՝ արհամարհէ, և ոչ
« դարձցի յերկաթոյ։ Ի վերայ նորա
« շողան աղեղն և սուսեր, և շարժիւն
« վահանի և նիզակի, և բարկութեամբ
« ապականէ զերկիր, և ոչ հաւատայ
« մինչև փող հարկանիցի։ Եւ իբրև
« փող հարկանի, նա վաշվաշ կարդայ.
« 'ի հեռաստանէ առնու զհոտ պատե-
« րազմի, վազս առնլով և փռնչելով»։

Միւս ևս կարևոր պայման նկարագրութեան է ընտրութիւն ածականաց, զի մի՛ վայրապար առ 'ի լնուլ զթիւս ոտից յաւելցին մակդիրք՝ լոյծ կոչելով զաղբերս, ցուրտ զսառն, ջերմ զամառն, և այլն. այլ զի իմաստս նորս և կամ զօրութիւն յաւելցեն 'ի գոյականն. որպէս Սողոմոն յԵրգս երգոց խնկաբերս կոչէ զլերինս, կռածոյս զվարսս, ձախարակեայս զոսկիս, և այլն. և որպէս Վիրգիլիոս յուռս կոչէ զանտառս, ոգորող զերինջս, ուռուցիկ զողկոյզս, ծխամած զձեղունս զեղջերիցն տանց, ճարճատող զբոց, և այլ այսպիսի մակդիրք իմաստալիցք՝ յատուկք քերթողական նկարագրութեանց։ Տես 'ի Դաս ԺԲ։

## ԴԱՍ ԺԵ

### Զեղք նմանութեան, այլաբանութեան, և փոխաբերութեան:

Հ. Տո՛ւր ինձ օրինակս նմանութեան քերթողականս.

Պ. Ի Շարականէ. «Եւ դիակունք «սուրբ մանկանցն իբրև զծաղիկս նոր-«նշնեաց հարեալ ’ի կարկտէ, և ան-«կեալ ’ի սուրբ Բեթղեհէմ. և հոգիք «սուրբ մանկանցն որպէս զերամս ա-«ղաւնեաց թռուցեալք ’ի յերկինս, և «գասեալ ընդ զուարթունս երկնից»:

Ի Շնորհալւոյն.

«Ես ոչ եմ վէմ յեզր ’ի ծովին,
Որ ’ի յալեացն անշարժ պահին.
Եւ ոչ արմատ ծառոց խորին,
Որ ’ի հողմոց ոչ տապալին.
Այլ եմ նըման բեկեալ նաւին,
Տարաբերեալ միջածովին.
Կամ հողմահար խըռիւ խոտին
Ի ժամանակս աշնանային»:

Եւ յՈսկիանէ.

«Որպէս մըռայլ մըրրիկք աշնան
Շղթայազերծ ’ի դուրս սուրան,
Ցերկուց լերանց հանդիպակաց

Խրոխտ դղրդնդմամբ խառնին յի-
րեարս.
Սապէս երկու այն դիւցազունք
Յոլոր պատրին զերթ գալարունք:
Եւ որպէս ուխք կըրկին պըղտոր
Բարձր 'ի ժայռից գըլին 'ի գլոր,
Բախին յիրեար՝ ժայթքեն փըրփուր,
Ի մի ձուլեալ վազեն 'ի գիւր,
Մեծ դըղրդչմամբ առ 'ի թաւալ
Ծածկեն ըզմարգ մանուածաւալ.
Այսպէս 'ի կռիւ ահեղասաստ
Մըրըրկալից և ստուերամածք
Ինիսֆէլա ւ արին Լոքլին
Ահեղ գոռմամբ 'ի դաշտ լիճին:...
Որպէս գոչէ մեծ ովկիան
Երբ թաւալէ զալեաց խուժան,
Որպէս ճայթէ շանթ 'ի յերկնէ,
Նոյն էր թամբիւն յայնըմ մարտէ »:
Եւ յումեմնէ յարգի քերթողաց 'ի վերջաքանի ճարտար եղերերգութեանն 'ի մահ սոխակին.
« Աչք գեղեցիկ ցօղագին,
Լացէք ըզմահ սոխակին.
Աչք լուսալիր աստեղաց,
Ըզսոխակին հարէք լաց:
Նըման եղև սոխակին
Որ սըրսկապանքն աւարին.
Անգութ սըրտիւ և ափով

Հովուին մանուկ առ մեղմով:
Որս 'ի բերան մայրըն գայ,
Ոչ տուն գտանէ, ոչ տըղայ,
Աւարառուն զամենայն
Տարաւ, եթող զինքն ունայն:
Միտք իւր 'ի սիրտըն բորբոք,
Գութ որդենկացն 'ի մորմոք,
Բուռ զոր եբեր ըստընտու
Ըզկնի որդւոցն ընկենու,
Երթայ մըտէ 'ի խաւար,
Ողբոց առնու ճիչ երկար:
Այսպէս 'ի հետ սոխակիս
Զըգեմ և ես ըզգործիս
Ի վիհ խըրթնի դըժոխոց,
Ոչ բըժըշկի սըրտիս խոց.
Աչք շողշողուն աստեղաց,
Ըզսոխակին առէք լաց.
Աչք գեղեցիկ ցօղագին,
Լացէք ըզմահ սոխակին.
Լացէք լացէք սուրբ մանկտի
Եւ օրիորդք նազելի »:

Հ. Տուր ինձ օրինակս այլաբանութեան քերթողականս.

Պ. Եսայի (գլ. ԽԲ.) գեղեցիկ յոժայլաբանէ զգալուստ փրկչին անձայն և առանց աղմկի 'ի մեղմիկ և 'ի թեթև ընթացս մանկան՝ ընդ որոյ ոտիւք եղէգն ջախջախ կայ անբեկ, և նուազ

բոց պատրուկի անշէջ. « Ջեղէգն
« ջաղխջախեալ մի բեկցէ, և զպատ-
« րոյկն առկայծեալ մի շիջուսցէ »:
Եւ Կոմիտաս կաթողիկոս այսպէս այ-
լաբանէ զՀռիփսիմեանց.

« Ղեկավարըք ճարտարք, հոգևոր
հմտութեամբ
Թեթևաբեռըն մարմնով և մըտօք
սըլացեալք
Ընդ երկայն ասպարէզ ծովածուփ
կենցաղոյս,
Անվընաս նաւեցիք և հասիք առ
Քրիստոս »:

Օրինակ 'ի Շնորհալւոյն.

« Նոր ծաղիկ պայծառ ցուցաւ
Այսօր 'ի նոր գերեզմանէն.
Երփնազարդ հոգւոցըն տունկք
Կանաչացան կենդանութեամբ.
Բենական լուսոյ սաղարթք
Ի հոգևոր գարնան փըթթեալք:

Վսեմ է և այլաբանութիւն աւագ օրհ-
նութեանցն դարձեալ 'ի շարականի.
« Ձիաւորեալ ոչ միայն 'ի վերայ բու-
« սաբեր արմատոյն, այլ քրոբէական
« կառօքն ստորիջեալ 'ի դժոխս՝ կենա-
« գործեաց հզօրեղապէս զերամն ար-
« դարոց »: Ուր ձիաւորելն 'ի վերայ
բուսաբեր արմատոյն՝ այլաբանէ զԵլա-

նելն Քրիստոսի 'ի խաչ, որ և յայլ կա-
նոնս աւագ օրհնութեանցն այլաբանի
այսպէս. « Հեծելութեամբք քով ազա-
« տեցեր զգերեալսն ։ Հեծելութիւնք
« քո փրկութիւն եղև ազանց. յեղա-
« նելն քո 'ի կառս, զուարճացան արա-
« րածք » ։ Եւ է աղբիւր այսոցիկ ամե-
նայնի այլաբանութիւն Ամբակումայ,
ուր ասի. « Միթէ գետո՞ց բարկացիս
« տէր, կամ սրտմտութիւն քո 'ի վե-
« րայ գետո՞ց, կամ սասպատակք քո 'ի
« վերայ ծովո՞ւ. զի ելցես յերիվարս քո,
« և հեծելութիւն քո փրկութիւն է » ։

Հ. Տո՛ւր ինձ օրինակս փոխաբերու-
թեան.

Պ. Վիրգիլ և Ովրատ փոխանակ ա-
սելոյ յենուլ զորթ 'ի ծառս, փոխաբե-
րութեամբ ասեն ամուսնաւորել կամ
հարսնացուցանել զորթ ծառոց. զոր
օրինակ.

« Ջանումնամիրգ այգին ուռոցն 'ի ճա-
պաղ,
Մերթ հարսնածէ առ բարձրուղէշ
կաղամախ » ։ Ովրատ, վերերգ. Բ:
Նոյն ինքն Ովրատիոս (Տաղերգ. Բ.
ԺԵ.) այրի կոչէ փոխաբերաբար զծառս,
'ի ցամաքել որթոցն յեցելոց 'ի նոսա.
« Եւ մերթ այրեաց ծառոց կըցորդ
Տընկագործէ առընթեր զորթ » ։

Իւ այլ ուրեք (Տաղերգ. Բ. ԺԵ.) ա֊մուրի կոչէ զծառ, առ որում չեն են անկեալ որթք.

« Սօսն 'ի բաց ամուրի
Հալածէ ըզկընձնի » ։

## ԴԱՍ ԺԶ

Ձեւք խելամտութեան, դիմառնութեան, բացադարձութեան, անիծից, կրկնութեան, և անուանաստեղծութեան:

Հ. Տուր ինձ օրինակս խելամտութեան քերթողականս.

Գ. Սաղմոսերգուն (Սղմ. ԼԵ.) զմասն փոխանակ բոլորին առեալ, ասէ ։ « Մի « եկեսցէ 'ի վերայ մեր ոտն ամբարտա֊« ւանից, և ձեռք մեղաւորաց մի դո֊« ղացուսցեն զմեզ » ։
Նովին խելամտութեան ձեւով և քեր֊թողահայրն մեր զքաոս կոչ 'ի կիր ար֊կանէ փոխանակ Նախամօրն. « Քանզի « կողիւն վիրաւորեալ Նախահայրն, 'ի « քո յանարատ 'ի կողդ ընկալեր զխո֊« յումն գեղարդեանն » ։
Իւ Կոմիտաս կաթողիկոս զտեղի փո֊խանակ բնակչացն առեալ, երգէ.

« Արեմուտք յարեւելս ընթացեալք
Հասին, »

Քարոզել յայտնապէս ըզչըքնաղ տե֊
սութիւն »:

Ուր արեւմուտք նշանակէ զբնակիչս արեւմտից:

Ընդ հակառակն Շնորհալին զպարունակեալն փոխանակ պարունակողին առեալ, երգէ (Տաղ. 383.):

« Խոր խաւարին սաստէր Յիսուս լու֊
սով լաչին,
Խնդիր առնէր լուր ծառայիցն անդ֊
գերելոց »:

Ուր խոր խաւար նշանակէ զդժոխս:

Եւ Վիրգիլիոս սովին ձեւով զգործ փոխանակ պատճառի առեալ, զերկայնել ստուերաց եւ զծխել հիւղից գեղջէիցն 'ի կիր արկանէ փոխանակ տարաժամելոյ աւուրն: (Ծաղկաքաղ Ա. 83.):

Հ. Տո՛ւր ինձ օրինակս զիմաստնութեան քերթողականս.

Պ. Իմաստունն փոխանակ ասելոյ՝ թէ հուրն ոչ եւս այրէր, ասէ. « Երբեմն
« ընտանենայր բոցն, զի մի՛ այրիցէ »:
Եւ Եսայի փոխանակ ասելոյ՝ թէ մի՛ եւս զօ՛րք թագաւորին բաբելացւոց հատցեն զանտառս Լիբանանու՝ հորդան տալ ընդ այն, ասէ. « Փայտքն Լիբանանու
« ուրախ եղեն քեզ, եւ մայրքն Լիբա֊
« նանու ասեն՝ թէ յորմէ հետէ դու

« դաղարեցեր , ոչ ելին 'ի մեզ փայտա-
« հարք » ։
Գիմառնական ձև է և Ամբակումայ ա-
սելն ցանէր . « Զարթեաւ աղեղն քո .
« զնետս կապարճից քոց արբեցուցեր »։
Եւ Գեբոմրայ ասելն . « Ցերկնից նա-
« կատեցան աստեղք , յիւրաքանչիւր
« յօրինուածոց եռուն պատերազմ ընդ
« Միսարայ . հեղեղատն կիսոնի մեր-
« ժեաց զնոսա » ։
Հ . Տուր ինձ օրինակս բացադարձու-
թեան քերթողականս .
Պ . Երեմիա (գլ . ԽԵ .) այսպիսի առ-
նէ բացադարձութիւն առ սուր վրէժ-
խնդրութեան տեառն . « Մինչև յերբ
« կոտորեսցես սուրդ տեառն , դարձիր
« 'ի պատեանս քո , դադարեա և վե-
« րացիր » ։
Եւ Յոբ (գլ . ԺԶ .) առ 'ի ցուցանել զա-
ղետալի վէրս իւր , նովին ձևով առ եր-
կիր բարբառի . « Երկիր , մի ծածկեր
« զարիւն մարմնոյ իմոյ » ։
Եւ սաղմոսերգուն (Սղմ . ՃԺԳ .) այս-
պիսի յօրինէ բացադարձութիւն առ
ծովն կարմիր բաժանեալ , և առ Յոր-
դանան գետ նահանջեալ . » Զի՞ է քեզ
« ծով , զի՞ տեսեր և փախեար . կամ
« դու Յորդանան , զի՞ դարձար անդ-
« րէն » ։

Հ. Տո՛ւր ինձ օրինակս անիծից քերթողականս.

Պ. «Լերինք Գեղբուայ, մի իջցէ ՚ի «ձեզ ցօղ, և մի եկեսցէ ՚ի վերայ ձեր «անձրև՝ անդաստանք պտղոց, զի անդ «ապականեցաւ ասպար զօրաւորաց»։ (Բ. Թագ. Ա.)։

«Եթէ մոռացայց զքեզ Երուսաղէմ,
«մոռասցի զիս աջ իմ»։ (Սղմ. ՃԼԶ.)։

«Եթէ հեծեաց երբէք երկիր վասն իմ, «եթէ ակօսք նորա լացին առհասա-«րակ, և եթէ զզօրութիւն նորա կերայ «միայն առանց գնոց..., ապա փոխա-«նակ ցորենոյ բուսցի եղինձ, և փոխա-«նակ գարւոյ մորենի»։ Յոբ. ԼԱ. 40.

Վսեմ է և սքանչելի յարդի քերթողաց մերոց յողբսն ՚ի մահ Ներսէսի մեծի անիծանել զգաւիչ մահադեղոյն.

«Երկիր, շընչոյ կենդանութեան մայր
դայեակ,
Սակրատամ միշտ ծնանիս ՚ի քէն զեղ
վրիժակ։
Ա՛յ զիւաքախ զըլուխ և սիրտ մահա-
ցուի,
Որ առաջին ցուցեր ըզթոյն աշխար-
հի։
Եթէ քո չէր շընչեալ ըզսիւք եթե-
րաց,

Ներսէս այժմիկ շընչէր և տայր շունչ
կենաց.
Դու, դու եղծեր զպատկերըն զայն
վայելուչ,
Որբացուցեր զազգն 'ի հօրէն անտե-
րունչ:
Խաւարեցին բիբք աչացս, ահ, մի
տեսցեն
Զայս աններշոյլ կափոյց աչաց յա-
րևէն.
Մի՛ զայն երես մահու գեղին և կա-
պոյտ,
Կարմիր վարդից վառեալ երբեմն ե-
րևոյթ »:

Հ. Տո՛ւր ինձ օրինակս կրկնութեան
քերթողականս.

Պ. Կրկնութիւնք յաճախագոյն վա-
րին 'ի քերթութիւնս, և յաւելուն շուք
մեծ թէ 'ի տաղաչափութիւնն նիւթա-
կան և թէ յիմաստսն և 'ի բացատրել
զկիրս հոգւոյ:

Այսպէս ողբայ Դաւիթ զորդեակն իւր.
(Բ. Թագ. ԺԸ.) « Որդեա՛կ իմ՛ Աբե-
« սողոմ, Աբիսողոմ որդեակ իմ. ո՞ տայր
« զմահ իմ՛ փոխանակ քո. ես փոխա-
« նակ քո, Աբեսողոմ որդեակ իմ՛, որ
« դեակ իմ՛ Աբեսողոմ: »
Դարձեալ նոյն ինքն 'ի սաղմոսն (ՀԶ.)

երգէ . « Տեսին զքեզ Ջուրք Աստուած,
« տեսին զքեզ Ջուրք և երկեան » ։ Եւ
'ի գիրս Յուդիթայ (գլ. ԺԶ.) Եկն Ա-
« սուր 'ի լերանցն հիւսիսոյ, եկն 'ի բիւ-
» րաւորս զօրօք իւրովք » ։
Մովսէսյօրհնութեանն . « Մինչև անց-
« ցէ ժողովուրդ քո տէր, մինչև անցցէ
« ժողովուրդ քո այս՝ զոր ստացար » ։
Եւ Դեբովրա յօրհնութեանն . « Կա-
« պուտ երանգոցն Սիսարայ, կապուտ
« երանգոցն դունագոյն նկարուց, այն
« էր պարանոցին նորա կապուտ » ։
Ի մերոցս քերթողաց ճարտար է 'ի ձևս
այս Նարեկացին . զոր օրինակ

« Երփին երփնունակ ծաղկին
Շողշողէր պլտուղն 'ի ճըղին .
Շուշանըն շողէր յովտին
Շողշողէր դէմ արեգականն .
Շուշանըն շաղով լըցեալ
Շող շաղով և շար մարգարտով » ։

Եւ դարձեալ .

« Ես ձայն զառիւծուն ասեմ,
Որ գոչէր 'ի քառաթևին .
Ի քառաթևին գոչէր,
Զայն առնէր 'ի սանդարամետսն » ։

Եւ այս ամենայն կրկնութիւնք, որպէս
է տեսանել յօրինակսդ, մերթ զգեղ
միայն յօրինեն, մերթ յաճախեն զագ-

դռուռութիւն, և է զի կարի քաջ բացատրեն զկիրս։

Յայտ վայելուչ բազում ուրեք զձևս զայս ՚ի կիր արկանէ Վիրգիլիոս, մանաւանդ յԵնէականն և ՚ի Հովուականսն, յորոց քանի մի ածցուք ՚ի մէջ յօրինակ, թէպէտ և անհնար է զնոյն գեղ բնագրին պահել ՚ի թարգմանութեան այսպիսի ձևոց։ Կրկնութիւնք՝ որք պերճ յօրինեն զբանն.

« Եւ չքնաղագեղն ընդհետ գայր Աստուր,
Աստուր քաջաձին ».

Ենէական. Ժ. 118։

« Գեղածաղիկք երկաքանչիւրն իսկ տիօք,
Երկաքանչիւր արկադացիք հայրենեօք ». Ծաղկաքաղ. Ե:

Կրկնութիւնք՝ որք տան զազդութիւն.

» Եւ ինքն ինձ Պան թէ յատեանի կացցէ ոսոխ յանդիման,
Եւ ինքն իսկ Պան ընդպարտութիւն անդ լինիցի խոստովան «. Ծաղ. Դ։

« Զի ոչ պառնասեան ձեզ լերինք բնաւին,
Զի ոչ և պինդեանք խափան ինչ արկին ». Ծաղկաքաղ. Ծ:

« Պատերազմ ահեղ, ահեղ պատերազմ նըշմարեմ ընդ հուպ,

Եւ ըզՏիբերեայ 'ի յարիւն ներկեալ
կոհակացն ըզծուփ » . Ենէ . Զ . 86 ։
Նոյն ինքն Վիրգիլիոս 'ի վեցերորդ
գիրս Ենէականին առ 'ի ցուցանել զի
Դեդալ չկարաց առ վշտին դրոշել
զանկումն Իկարեայ որդեկին իւրոյ ,
կարի վայելչապէս 'ի կիր արկանէ զձեւս
զայս .

« Եւ դու մասըն մեծ գրաւէիր արդեօք
'ի վէհ քանդակին ,
Եթէ զայն դառինք նըմս , Իկարէ ,
ցաւքըն թողուին .
Երկիցս 'ի յոսկւոջ ջանացաւ զար-
կածն ածել 'ի նըկար ,
Երկիցս հայրենի դողդոջեալ անկան
ձեռքն անզօրք 'ի վայր » ։

Կրկնութիւնք որ քաջ բացատրեն ըզ-
կիրս .

« Դու միակ իմոյն Աստիանակտեայ
մնացեր ինձ պատկեր .
Այսպէս զաչս այսպէս նա զշըր-
թունս այսպէս նա զձեռսըն շար-
ժէր » . Ենէական Զ . 489 ։

« Զուր ընդ երկինս ամբառնայր զաչսըն
գեղափայլ ,
Զաչսըն զի ձեռք նորա մատաղք կայ-
ին կապեալ » . Անդ . 405 ։

« Անգիտից ըզքեզ մայրիկ ,

Ըզքեզ վրձիտ լինք, և բիւրղեայ
Զքեզ փոկինեան լացին ալիք ».
Անդ. Է. 739։

Հ. Տո՛ւր ինձ օրինակս ինչ անուանաստեղծութեան քերթողականս.

Պ. Գեղեցիկ է Նարեկացւոյն մերոյ գիւտն 'ի բացատրել զձայն անուոց սայլին.

« Ի գիլ գայր 'ի գիլ սայլիկն 'ի գիլ
Ի Մասեաց յաջ կողմանէն,
Սայլիկն 'ի գիլ գայր 'ի գիլ,
Ճռընչալով գայր մըտանէր յԵրու-
սաղէմ »։

Եւ ուրումն յարդի քերթողաց մերոց 'ի նկարագրել զհովիւ քաջ.

« Ինքն 'ի սոյլ սուր սըրընգի
Մարգ 'ի ծործորս կարկաջուն
Դուոյթ տայ սպիտակ իւր խաշին
Եւ մակաղէ միշտ արթուն »։

Որ և 'ի ցուցանել զյօրինուած Հայկական բարբառոյս՝ խիտ առ խիտ բաղաձայն տառիւք, տես քանի գեղեցիկ նմանութեամբ զձայնս նոցին բացատրէ.

« Բարբառ Հայկին Արամայ
Գոռ կաքաւչաց Արիսի
Ի դաշտ ռազմից խազմարար
Հընչէ նուագ սոսկալի.

Եւ խիտ առ խիտ լուռ փաշտից
Բաղխէ գուպար ՚ի բանակ,
Կոփէ մըկունդ ընդ ասպար
Դոփիւն ոտին ընդ սըմբակ »։

## ԴԱՍ ԺԷ

### Զափազանցութեան ձև, և տեսութիւն ՚ի ձևս քերթողականս առ հասարակ:

Հ. Տուր ինձ և օրինակս ինչ չափազանցութեան քերթողականս.

Պ. Զափազանցութիւն ՚ի բանաստեղծութեան վարի յաճախ, ոչ միայն ըստ իմաստից, այլ և յօրինակս և ՚ի նմանութիւնս։ Ըստ այսմ օրինակի բացատրէ Հոմերոս զզօրութիւն Արամազդայ. (Իղիական. Ը. 18)։

« Հա՛պա ՚ի հանդէս ծն արիք ամ դիք ՚ի
փորձ ձեզ հանուրց,
Շըղթայ ոսկեձոյլ առեալ կախեսջիք
՚ի վայր ՚ի յերկնուստ.
Բուռն ՚ի նա արկէք աստուածք հա-
մերամ և աստուածուհիք.
Այլ ոչ ինչ ըրնաւ, թէպէտ գուն
սաստիկ եդեալ նըկըրտիք,
Զհանճարեղն Որմիզդ յերկնից ընդ
երկիր բաւեսջիք դըրդել.

Իսկ թէ ես ինձէն յօժարեալ երբէք
կամիցիմ քարշել,
Ջերկիր զըլխովին և զծով միալուծ
ձիգ ընդ քարշ ածեմ.
Ապա ըզշըղթայն յՈղիմպեայ կատար
ոլորեալ պըրկեմ,
Եւ այն ամենայն օդային եղեալ կա-
խի երկնաքերձ.
Այսքան վեհագոյն եմ դից և մարդ-
կան և բնաւին տարերց »։

Եւ ոմն 'ի քաջացն մերոց արդի քեր-
թողաց 'ի գովեստ խաչնդեղին յաւե-
լեալ 'ի բանս իւր՝ ասէ.

« Շէկ արմատդ անմահութեան առ հա-
ւատչեայ
Ջուլամբ խաչին որ 'ի Կարէզ ճեմ
գընայ
Բուրագուարճ զանգեալ հովաաց
ծաղկանց 'ի բոյլ
Քան չար ոսկի տայ նըշոյլ.
Թոյր ևեթ բերեալ զոսկւոյն խար-
տեշագեղ,
Այլով չէ հուպ 'ի նըզովեալ հող զու-
նեղ.
Այլ աւա՜ղ, նա տիրեալ էր, դու ան-
ծանօթ.
Ցամր է բարին գալ յանօթ։
Թէ խոհեր ժանտին փոխման էր սա
'ի գիւտ,

Ոչ Մեդեայ ձեռք մահ յօրինէր չա-
րադիւթ ,
Ձենոն ոչ Սպարտուհին զօշոտ
այրէր ,
Եւ ոչ մեզ մի զոյր Հոմեր » :
Հիւրք և եկք , զի՞ զարմանայք թէ յիմ
աշխարհ
Հոյլ գեղեցկին իբրև զաստեղս է 'ի
պար .
կենաց բոյսն առոյգութեան ըղնա
սիրեաց ,
Անդ է կարէզ Բղնունեաց » :

Հ. Զի՞նչ կարևորագոյն յօրինակս յայտուսիկ քերթողական ձևոց առ հասարակ իցէ նկատելի .

Պ. Զայն զի առ 'ի լինել քաջ քերթող՝ հարկ է լինել քաջ ճարտասան . քանզի ուր սա կատարէ , անտի սկսանի քերթողն , և 'ի նորայն զիւրն յաւելու : Զի պարտ է բանաստեղծին ոչ միայն զձևս զայսոսիկ հռետորականս և զայլսն ամենայն զբառից և զիմաստից յօրինել քերթողաբար , այլ և զմասունս հռետորական ճառից , և զհասարակ տեղիս , և զյոյզս կրից , այլովքն հանդերձ : Օրինակ իմն՝ յիղիականն Հոմերի Քրիսէս քուրմ Ապողոնի 'ի խնդրել զդուստր իւր գերեալ յա-

քայեցւոց, համառօտ ինչ առնէ աղերս. բայց 'ի նմա քերթողն բովանդակէ զամենայն հնարս հռետորականս 'ի համոզել: Նախ յանդիման առնէ զքուրմն սպասուք պաշտամանն՝ առ 'ի պատկառելի առնել զնա, և ընծայիւք՝ առ որսալոյ զսիրտ աքայեցւոց. ապա դնէ 'ի բերան նորա մաղթանս հասանելոյ նոցա ցանկալւոյն իւրեանց, այսինքն առնլոյ զՏրովադա և դառնալոյ ողջամբ 'ի հայրենիսն, և յաւելու մեծարանաց բանս առ 'ի յորդոր. ապա զաղերսն առաջի արարեալ կնքէ ահիւ սպառնալեաց աստուածոյն՝ եթէ չլսիցեն քրմի նորա:

« Քանզի Քրիսէս 'ի գրաւաթափ դըստերն իւր,
Աղերսաւոր գայր ընդ փրկանս բազմաբիւր.
Եւ զդիպաղեղն Ապողոնի վարսակալ
Գաւազանաւն ոսկւով 'ի ձեռըն կալեալ,
Աքայեցւոցն յերագաթև նաւատորմ
Եւ իշխանացն Ատրորդւոց ձայն տայր ողորմ.
Ո՛ Ատրորդիք, տացեն աստուածքն երկնաբնակք
ԸզՊրիամու առնուլ մարտիւ ձեզ քաղաք,

Եւ գնալ ողջամբ 'ի հայրենիս ձեր անդրէն ,
Աքայեցիքդ 'ի գարշապար քաջազէն։
Այլ դարձուցէք ինձ միրկանաւ զիմ դըստրիկ
Ի քաջաղեղն որդւոյն Դիւայ ակն ած֊ ջիք » ։

## ԴԱՍ ԺԷ. (*)

*Հովուաբանութիւն. — Քնարերգութիւն. — Անակրէոնեան տաղ. — Արձանագրութիւն. — Դամբանագիրք. — Նուագ:*

Հ. Տուր ինձ համառօտիւ տեղեկութիւն զազգի ազգի քերթութեանց. զի՞նչ է հովուաբանութիւն ։

Պ. Հովուական կենաց և դաշտնային գեղեցկութեանց քերթողաբար նկարագրութիւն ։ Ախորժելի է յոյժ քերթուածս , այնու զի զնկարագիրս հովուաց և զմշակաց և զգեղջէից՝ զորոց

(*) Ի վարժս յայսոսիկ , որ յաղագս ազգի ազգի քերթութեանց , բազում ինչ 'ի կիր առնում 'ի դասուց՝ զորս Հ. Գէորգեայ վարժապետի Հիւրմիւզեան 'ի հրահանգս մանկտւոյ ի վարժապետելն իւրում յօրինեալ է ։

ղամփեղ և զանխռով կեանս նկարա-
գրէ 'ի նմա քերթողն՝ բաղդատեալ մեր
ընդ քաղաքականին, զուարճանամք։
Բայց երրակի զհովուականն մարթ է
նկատել կենցաղ. մի՝ որպէս այժմեանս
գծուծ և արհամարհ. երկրորդ՝ որպէս
նախնեացն բարեկեցիկ և զուարճալի,
զի ամենայն մեծութիւնք յայնժամ էին
'ի հօտս և յանդեայս. և երրորդ՝ մտա-
ցածին իմն ընդ նախնի պարզութեան
և անմեղութեան կցորդեալ այժմու
կիրթ ախորժակք և բարեձև տարազ
կենաց։ Ի սոցանէ առաջինն կարի իմն
խիստ է և անախորժ, իսկ երրորդն ան-
բնական. վասն որոյ Թէոկրիտոս ուրեք
ուրեք առաջնոյն ստգտանի, իսկ զաղ-
ղիացիք երրորդաւս։ Ապա պարտ է վա-
րել միջնոյն կարելեաւ և բնականաւ,
ածելով 'ի ներքս 'ի քերթուածն հովիւս
հեզաբարոյս, զուարթս և սիրելիս, և
ոչ բիրտս և անհեթեթս, և խօսակիցս
զնոսա առնել ընդ միմեանս, և վիշտս
և կիրս յաւելուլ 'ի նոսա առանց ատե-
լի առնելոյ զհովուականն կենցաղ։

Նկարագրութիւնք դաշտային և շի-
նական տեսարանաց անհրաժեշտ կա-
րևորք են 'ի սմա։ Այլ այս ծաղկանց
ևեթ անուամբք, կամ քաղցրաշունչ

օդոց յիշատակաւ, կամ 'ի շրջիւն տե-
րեւոց, կամ առուաց կարկաջանօք ;
կամ Թռչնոց երգովք ոչ վճարի: պարտ
է քաջի քերթողին այնպէս 'ի մանունս
իջանել հանգամանս, մինչեւ մարթել
նկարչի հանել զայն 'ի նկար: Քանզի
յաճախ ուրեք հանգամանք ինչ եւեթ
պատշաճապէս 'ի ներքս ածեալ, կեն-
դանատիպ զնկարագիրն գործեն, որ-
պէս Վիրգիլիոս բազում ուրեք 'ի հո-
վուերգութիւնսն առնէ. զոր օրինակ.

« Ալիք համայն, ոչ տեսանես, այժմ
հանդարտեալ քեզ լռեն,
Եւ սաստկաշունչ դադարեալ կան
հողմոյ հընչմունք համօրէն.
Ի դէմ եդեալ ուղւոյն 'ի կէս աստ
աւասիկ եմք ժաման,
Բիանորայ աստի հազիւ արդ նըշմա-
րի գերեզման.
Աստ, ուր մըշակք ըղթանձրախիտ
սաղարթս 'ի բաց յապաւեն,
Աստ, ով Մերիս, եկ երգեսցուք.
զխաշն 'ի ճարակ թող աստէն: »

Ծաղկ. Թ. 57:

Պարտ է դարձեալ ըստ առաջարկու-
թեան քերթուածոյն պատշաճել զտե-
սարանս, ուրախական ընդ ուրախա-
լիս, եւ տրտմական ընդ տրտմալիս. որ-

պէս նոյն ինքն դարձեալ Վիրգիլիոս առ 'ի բացատրել զտրտմութիւն Կորիդոնի 'ի խնդիր Ալեքսեայ նկարագրէ .

« Այլ Թաւամուր նա 'ի սոսիս անդրյաճախէր ,
Ոյց գագաթունք ամբառնային նըսեմաստուեր .
Եւ առ լերինս և առ անտառս 'ի ճիգն ընդ վայր
Զայս մենաւոր հեղոյր բողոք յերգ անյարգար » ։ Ծաղկաքաղ . Բ . 3 ։

Հովիւքն կամ գեղջէք 'ի ներքս մուծեալք Թէպէտ և պարզամիտք պարտին գոլ և անմեղք , այլ մարթ իսկ է նոցա հանճարեղս գոլ և ուշիմս , աշխոյժս , զուարթս , դիւրագորովս . և քերթութեան պարտ է ըստ կարի պարզ լինել և անսեթևեթ , և դէպք 'ի նմա հոգեշարժք ուրախալիք և տրտմալիք վայելուչ յոյժ և զմայլելի գործեն զքերթուածն ։

Դէպքս այսորիկ առ բազումս 'ի քերթողաց ցուրտք են և անախորժք , որպէս ողբք և գանգատք հովուի զսիրուհւոյն , կամ հովուաց ընդ միմեանս մըրցութիւն յերգս , և այլ ևս սոցին սակի դէպք առանց հանճարոյ ։ Բայց Կեսներ քերթող հելուետացի եբաց սա-

պարէզ նոր յայս ազգ քերթութեան, մուծանելով անդր դէպս բարացուցականս՝ որ գործէն զսիրտ։ Իսկ Իտալացիք և ես յառաջադէմ լեալ, զթատերականն հնարեցան հովուերգութիւն. յորում կարգի հռչակաւոր են յոյժ հաւատարիմ հովիւն Կուարինեայ, և Ամինտայն Թասսոյի։

Բայց Թէոկրիտոս 'ի Յունաց և Վիրգիլիոս 'ի Հռոմայեցւոց օրինակագիրք կացին յայս ազգ քերթութեան, առաջնոյն յարքունիս Պտղոմեայ եղբայրասիրի, և երկրորդին 'ի դրան Օգոստեայ կայսեր գրեալ զքերթուածն։

Հ. Զի՞նչ է քնարերգական քերթութիւն։

Պ. Այն՝ զոր քնարաւ կամ այլովք նուագարանօք մարթ է երգել. և կոչի սա տաղ կամ գանձ. և քառեակ ազգք են սորա։

Ա. Օրհնութիւնք կամ սրբազան երգք, որպիսիք են Մովսիսին, Դեբովրայն, Եզեկիէլին, և սաղմոսք Դաւթի։

Բ. Երգք կամ տաղք ներբողականք, որպէս Պինդարեանքն առ հասարակ, և կէսք յՈվրատեանցն, և բազումք 'ի չարականաց մերոց։

Երկոցունց այսոցիկ ազգաց քնա֊

երգութեան սեփական տիպք են վսեմութիւն, որպէս է տեսանել յօրհնութիւնն Մովսեսի. զի անդստին 'ի նախերգանացն լի զարմացմամբ և գոհութեամբ ընդ սքանչելի ազատութիւնն յորդորէ զժողովուրդն յօրհնել զազատարարն՝ այսպէս սկիզբն առնելով երգոյն, « Օրհնեսցուք զտէր, զի փառօք » է փառաւորեալ. զերիվարս և զհե« ծեալս նոցա ընկէց 'ի ծով » ։ Եւ ապա համեմատ նախերգանացն մերթ առ ժողովուրդն և մերթ առ Աստուած ուղղելով զդէմս բանին, առանց պատմութեան բացատրէ զամենայն հանգամանս սքանչելեացն վսեմաբար, լի վեհ իմաստիւք և ձևովք յօրինեալ զերգն. որպիսիք են տեառն խորտակել զպատերազմունս, խորոց ծածկել զընտիրս հեծելոց Փարաւոնի և զսպառազէնս, ընկլնուլ նոցա յանդունդս իբրև զվէմս, և սոցին սակի ձևք և իմաստք ։ Հանգոյն իմն և Դեբովրա վսեմաբար սկիզբն առնէ երգոյն. « Ի սկսանել « զօրավարացն Իսրայելի, մտադիւրու« թեամբ ժողովրդեանն օրհնեցէք ըզ« տէր » ։ Եւ ապա ընդ ամենայն երգն սփռէ իմաստս և ձևս վեհս և վսեմս. երկրի շարժել յերեսաց տեառն, երկ֊

նից խռովել, ամպոց ցօղել ջուր, և լերանց շարժել, յերկնից ճակատել աստեղաց և յիւրաքանչիւր յօրինուածոց տալ պատերազմ ընդ Միսարայ, հեղեղատին Կիսոնի մերժել զթշնամիս, կարթակոտոր լինել փարշապարաց երիվարացն Մագդարովթայ, ձգել Յայելի զձեռն իւր ձախ 'ի ցիցն, և զաջ իւր 'ի սպառապուռ ջաղխջախանս, և վարսել ընդ ծամելիս Միսարայ և անցուցանել ցից ընդ գլուխ նորա. մօրն Միսարայ հայեցեալ դէտակն ունել 'ի վանդակապատ պատուհանէն և տեսանել զդարձեալսն 'ի Միսարայ, և յետանիլ կառաց նորա 'ի գալոյ, և մօրն վարանել թէ ընդէ՞ր յամեցին հետք կառաց նորա, և կանանց իմաստնոց տալ նմա պատասխանի, և նորա ինքնին անձամբ անձին առնել իւր պատասխանի. և աւարտ երգոյն՝ թէ «Այս-
«պէս կորիցեն ամենայն թշնամիք քո
«տէր:» Այս ամենայն տան ըստ բաւականին զնկարագիր վսեմութեանն՝ որ խնդրի յերկուսին վերոյ ասացեալ ազգս քնարերգութեան:

Գ. Երրորդ ազգ՝ բարոյական և իմաստասիրական տաղք, յորս ներքողին առաքինութիւնք, որպէս յոլովք 'ի

տաղից Ովրատեայ և քաղջաց արդի քերթողաց։ Սոցա տիպք բանիցն ոչ իբրև զառաջնոցն պարտին զող վսեմք, այլ միջին իմն և յորդորական։

Դ. Իսկ չորրորդ ազգ՝ տաղք կամ երգք Հանդիսից և խնջոյից առ ՚ի զուարճութիւն եւեթ քերթեալք, որպէս Անակրէոնի տաղք, և Ովրատեայ տակաւք, և բազմաց յարդի քերթողաց տաղք։ Եւ նոցա սեփական տիպք են պերճութիւն, քաղցրութիւն և զուարճալի իմաստք և ձևք։ Քանզի քնարերգութիւն զամենայն այլ և այլ գեղեցկութիւնս ազգի ազգի քերթուածեանց յինքն ժողովեալ, ՚ի վերայ այնոցիկ և զիւրն յաւելու յատուկ նկարագիր՝ որ են խանդք։ Որ իբրև ազդի ՚ի քերթողն՝ ջերմանան միտքն, վառին ցնորքն, և ամենայն զօրութիւնք հոգւոյն զարթուցեալ՝ օժանդակեն ՚ի քաջ քերթողութիւն։ Մերթ իմաստք ազնուականք և պերճք, և մերթ խանդաղատելի և վայելուչ պատկերք ընդ առաջ լինին. իմաստք բարոյականք վսեմք, վէպք քաջայարմարք, և դրուագք գեղեցկագոյնք յոյժ տան զնիւթ քերթութեան։ Բայց թէպէտ և ազատութիւն է քերթողին ՚ի սմա յիմաստից յիմաստս

վազս առեալ անցանելոյ առաւել քան յայլ ամենայն քերթուածս, սակայն ոչ առանց իրիք կցորդութեան. ապա թէ ոչ, զառանցելոց բանք թուեցին քան առն խոհականի։

Պինդարոս, քնարերգակ քերթութեան Հայր 'ի Յոյնս, զոմանս 'ի հետեւողաց իւրոց զառածեցոյց յայս թերութիւն։ Բայց Ովրատիոս հռոմայեցի զպինդարեան թռիչս մտաց չափաւորեալ, գիտաց զկցորդութիւն իմաստից ընդ վսեմ գեղեցկութիւնս լծորդել. Նմին իրի և պատուեցաւ նա, և պատուեսցի միշտ առ կիրթ ախորժակս։ Բազումք եղեն հետեւողք սորա անուանիք առ գաղղիացիս և առ անգղիացիս իսկ, որոց տաղք մարթին օգնել յոյժ լեզուագիտաց։ Եւ առ մեզ իսկ ոչ պակասեն զարդիս հետեւողք տաղիցն Պինդարեայ և Ովրատեայ. առ որ և վսեմութիւն հայկականս բարբառոյ օգնէ ոչ սակաւ։ Օրինակ իմն յարդի տաղերգուացն մերոց երգն 'ի Նահատակութիւն սրբոց Վարդանանց.

« Հրաշունչ վիշապաց
Բոցբոքեալ մեծ գազան,
Խամրել ըզդրախտ քրիստոսեան.
Զանխոտոր հաւատոց

Աշխարհիս Հայաստան
Ցայտէ հուր լափող պարսկադեն․
Ո՞վ արդ կացցէ կիզմանն ընդդէմ։
Արի՛ 'ի զէն, մեծ Գրիգորէ,
Ա՛ռ դու զասպար քո 'ի հօրէ․
Արի՛ 'ի մարտ, տո՛ւր մեզ խրախոյս,
Լռքելոց պարիսպ մեծայոյս․
Զարթի՛ ընդնոր Մակաբէ,
Զվարդան 'ի քոյդ զաւակէ։
Ամբարձիր Մամգոնեան
Զօրագլուխ հաւատոյ,
Տո՛ւր ձայն գընդին Աստուծոյ,
Սպառազէն քաջազանց
Վառելոց 'ի հոգւոյ,
Դիմել առ խուժան որերոյ,
Ոչ 'ի պարծանս 'ի կռիւ մարմնոյ։
Առէ՛ք խրախոյս դուք 'ի հանդէս,
Առիւծաբար յայս ասպարէս․
Առէ՛ք խրախոյս արիաղէս,
Յաղթութիւն անշուշտ հասեալ ձեզ։
Ահա պըսակ աւետչեայ,
Ահա յերկնից ցոլանայ։
Հընչեցին 'ի յերկնից
Սօսափիւնք աստեղաց
Յահ 'ի կորուստ Սասանեանց․
Ամաչեաց բեղխար
Ի քանդուած կրակատանց․
Արիւն ձեր ցօղեալ նորոգեաց

Ջօղ և զերկիր Ակքանազեանց։
ՓուԹայք ելէք պըսակաւոր,
Բարձր 'ի յեԹեր ժառանգաւոր.
Ելէք բազմեալ յանմահ աԹոռ,
Գահակից առ սուրբ Թագաւոր։
Հրեշտակք պարեն զերգըս նոր,
Օրհնել ըզտէր մեզ յորդոր։
Ախոյեանք երկնըՆԹացք
Արամեան աշխարհի,
Սիւնք հաստատեալ լուսարփի.
Տօնական ձեր հանդէս
Մեզ տուեալ յերաշխի,
Կանխեմք միշտ յաղերս ցնծալի,
Տուք մեզ Թիկունս 'ի վըտանգի։
Օրհնեմք ըզտէր անհատական
Ի քո անուն քաջըդ Վարդան.
Պըսակ 'ի մէնջ ձեզ գովուԹեան
Խըմբակից զօրուդ միաբան.
Յաղթողք յերկրի աննըման,
Երկինք յաւէրժ ձեզ կայան »։

Բազում և այլ ազգք են քնարերգական տաղից, որպէս Անակրէոնեանն՝ որոյ տողք 'ի սուղ ոտից բաղկանան, և իմաստք 'ի նմա չքնաղք և գեղեցիկք պարտին գոլ՝ քան վեհք և վսեմք։ Որպէս՝ արձանագրուԹիւնք և գամբանագիրք, յորս խնդրի ամենևին ճշդուԹիւն՝ առանց աւելորդաց, և իմաստք

'ի Նոսա վսեմք քան բաղմազարդք ։ Որպէս և Նուագն՝ գիւտ իտալացւոց, որ յերկուց քառատողից և յերկուց եռատող տանց բաղկանայ․ յորում բառ մի աւելորդ, և իմաստ ինչ օտար յառաջարկութենէն գրուագեալ յայն՝ խանգարէ զգեղ նորա ։ Զափաբերութեան ստից նորա պարտ է գոլ անսայթաք և դիւրասահ, և յանգիցն յար և նման ։ Նիւթոյն ամենևին մի ինչ, և ոճոյն տակաւ զօրաւորագոյն, աւարտեալ յանակնկալ իմն և 'ի հանճարեղ իմաստս ։ Գարձեալ և համառօտ երգք բաժակաց, և այլ այսպիսիք քնարերգականին են ազգք ։

Օրինակ ոճակրէօնեան տաղի, երգեալ յումեմնէ յարդի քերթողաց 'ի հանդէս ուխտի երկոցունց ինքնանուէր կրօնաւորաց․

« Զոյգ տատրակ յանտառէն
Փըրկեցան յորսողէն․
Ուխտ 'ի սիրտ մընչեցին,
Զօնի եմք փըրկողին ։
Զի մ՚ցին անարատ,
Սաւառնին յանապատ
Ի կարկաջ խոխոջանս
Հեզասահ վըտակաց ։
Թօթափեն ըզհին թևս,

Ողորմութիւնդ իսկ քո սպասէ զի
ես 'ի սպառ կորիցեմ:
Կատարեսցին յիս կամք քոյին, զի փառ-
քըդ ըղնոյն պահանջեն.
Մի՛ յարտասուս իմ ողորմիր աղբերա-
ցեալ ուղխօրէն.
Որոտա, հա՛յր զիս շանթընկէց, որ
ընդդէմ՝ քո առի զէն:
Երկերպագեմ 'ի կորընչելն իմում ձե-
ռին քո վրիժակ.
Այլ զո՞ր յիս կէտ հարկանիցեն ա-
հեղ շանթից քոց սըլաքք,
Որ Յիսուսին քո յարենէ չիցէ ծած-
կեալ այն համակ»:

## ԴԱՍ ԺԲ

Վարդապետական քերթութիւն. — Թուղթ. — Երգիծաբանութիւն. — Առակք:

Հ. Զի՞նչ է վարդապետական քեր-թութիւն.

Պ. Խրատք կամ ուսմունք քերթողաբար աւանդեալ, նմին իրի և քան զամենայն ազգս քերթութեանց օգտակար. զի ձևով բանից ևեթ զանազանի 'ի բարոյական և յիմաստասիրական ճառից, և քաղցրութեամբ տա-

ղաչափութեան և քերթողական լեզու֊
ին՝ ախորժ և դիւրընկալ ընձայեցու֊
ցեալ զուամունս և զխորատս, և կեն֊
դանատիպ նկարագրութեամբք և պէս֊
պէս գեղեցիկ դրուագօք յափշտակէ
և զրաւէ զմիտս ընթերցողաց, ազդո֊
ղագոյն յարդարեալ զբանսն: Բազում
ուրեք յաստուածաշունչ գիրս գտանին
առ. այս օրինակք. որպէս ահա ժողո֊
վողն նկարագրութեամբ ծերութեան
մարմնոյ և կորստական հենացս և յիշա֊
տակաւ մահուն՝ այսպէս քերթողա֊
բար յորդորէ զմարդիկ յաստուածպաշ֊
տութիւն. (գլ. ԺԲ.) «Եւ յիշեա զու
«զայն՝որ հաստատեացն զքեզ՝ յաւուրս
«մանկութեան քո, մինչչև հասեալ
«իցեն աւուրք չարութեան, և հասցեն
«ամք՝ յորս ասասցես, ոչ են կամք
«իմ 'ի դոսա: Մինչչև խաւարեալ ի֊
«ցեն արեգակն և լոյս և լուսին և
«աստեղք, և դարձցին ամպք զկնի
«անձրևաց: Յաւուր յորում շարժես֊
«ցին պահապանք տանն, և թիւրես֊
«ցին արք զօրութեան, և դատարկաս֊
«ցին աղօրիք՝ զի նուազեցան, և խա֊
«ւարեսցին որք տեսանեն ընդ ծակս,
«և փակեսցեն զդրունս 'ի հրապարակս
«'ի տկարութենէ ձայնի աղօրւոյն. և

« յարիցեն 'ի ձայն հաւուն, և նկուն
« լիցին դստերք երգոց, և 'ի բարձունս
« հայեսցին, ևապշութիւն 'ի ճանա֊
« պարհին. և ծաղկեսցի նշին, և
« թանձրասցի մարախն, և տարածես֊
« ցի կապարն. զի գնաց մարդ 'ի տուն
« իւր յաւիտենից, և շուրջ եղեն կո֊
« ծողք 'ի հրապարակս ։ Մինչև կոր֊
« ծանեալ իցէ լար արծաթոյն, և խոր֊
« տակեալ մանեակ ոսկւոյն, և ման֊
« րեալ սափորն յաղբիւրն, և ընկըր֊
« կեալ անիւն 'ի գուբ. և դարձցի հողն
« յերկիր՝ որպէս և էրն, և հոգին
« դարձցի առ Աստուած՝ որ ետն զնա» ։
Արդ տես ինձ քանի՜ վսեմ և գեղե֊
ցիկ այլաբանէ յամպս և 'ի խաւարումն
արեգական և լուսնի և աստեղաց
զնուազել մտաց և զգայութեանց մար֊
դոյ. 'ի պահապանս տան զբազուկս.
յարս զօրութեան զբարձս ոտից. յաղօ֊
րիս զատամունս, 'ի պատուհանս զաչս,
և 'ի դրունս զշրթունս ։ Քանի՜ գեղե֊
ցիկ բացատրէ զանանդորր քուն ծերոյ՝
զարթնուլ նորա առէպ 'ի ձայն հաւուն,
զտկարութիւն լսելեաց նորա՝ նուա֊
ղումն երգեցկաց, զկորանալ նորա՝
հայելն 'ի բարձունս, զտկարութիւնն
'ի գնալ՝ ապշութիւն 'ի ճանապարհին,

զալևորել նորա՝ ծաղկել նշենւոյ, թանձրանալ մարախոյ և տարածանել կապարի. զմեռանել նորա՝ գնալ 'ի տուն իւր յաւիտենից, և շուրջ լինել կոծողաց 'ի հրապարակս. և զխանգարումն գործարանաց որովք կեայն և շնչէ՝ կործանումն արծաթեայ լարին, խորտակել մանեկի ոսկւոյն, մանրել սափորին յաղբերն, և ընկրկել անւոյն 'ի գուբն։

Զսոյն հատուած ժողովողի 'ի խորհըրդական միտս առեալ Շնորհալւոյն, այսպէս վայելուչ տաղաչափէ, տալով զնկարագիր վախճանի աշխարհիս.

« Խորասուզեալ մանկանցն 'ի յուղի
Խրատ ընծայէ սա հոգեբուղխ...
Հայել վերջին օրն և 'ի մահ,
Եւ 'ի սպառնալեացն երկիւղ և ահ։
Զայնըն հաւուն յոյժ գերապանծ,
Որով զայցեն մեռեալքն 'ի դարձ.
Ղօղեալ սարսեն դըստերքն 'ի խաղ,
Ողբան տըկար ձայնիւ նըւաղ.
Ճառագայթից լուսոյն ճաճանչ,
Լուսին ուաստեղք ճեմեալ զըւարճ,
Մեծին ծագմամբ չփայլեն այլում
Մինչ փայլակէ լոյսն անպատում։
Յայնժամ Թըռչին 'ի կառս ամպոյ
Արդարք նըման խիտ մարախոյ։

Նշենին ծաղկէ գուշակ գարնան,
Գունով պըճնին վըկայքն արեան ։
Ծըրջին կոծով գնացօղքըն գորշ,
Կապար մեղացն անկցին 'ի քարշ։
Որք 'ի բարձունս հային լուսոյ.
Աշխին գողան յահեղ բոցոյ.
Չէ պիտանի արծաթըն յինչ,
Եւ ոչ ոսկւոյն գեղ զարդարիչ։
Պարօղն անուսոյ հասցէ 'ի վրէպ,
Պատկեր եօթանց դարուցս 'ի դէպ.
Ջըրոյն կենաց սափորն 'ի մէնջ
Այն խորտակի յաղբերըն մէջ։
Ռահեալ սըրբոցըն լուսավառ,
Գնասցեն յերկինս 'ի տունն անճառ ։։

Բայց կատարելագոյն 'ի վարդապետական բանաստեղծութեան են քերթուածք կանոնաւորք զկարևոր և զօգտակար ինչ իրաց. որպիսիք են' առ Յոյնս՝ Գործք և աւուրք Եսիոդեայ, Աստեղաբաշխականքն Արատոսի. և առ Լատինս՝ քերթողական արուեստն Ովրատեայ, որ ըստ կարգաւորութեանն ևեթ ստգտանի. թէպէտ և այլք աղաւաղութեան գրչաց տան զայս թերութիւն. քանզի փոփոխմամբ կարգի ևեթ տողիցն բառնայ թերութիւնն։ Քանզի յայս ազգ քերթութեան կարևոր է յոյժ կարգաւորութիւն, թէպէտ և ոչ որչափ

յուսումնական և 'ի ճարտասանական ճառս, այլ որչափ խնդրի առ 'ի դիւրա֊ հաս առնել զբանսն ։ Վասն որոյ մշա֊ կականքն Վիրգիլեայ ամենակատար օրինակք են առ այս, յորս փայլէ կարգ սքանչելի, հրահանգք արուեստին ճըշ֊ գրիտք, ոճ քերթողական, պերճութիւն և ս և 'ի նուաստ և 'ի դուզնաքեայ իրս, կենդանատիպ նկարագրութիւնք յե֊ ռեալք ըստ պատշաճի, և հրաշագեղ ճարտարութիւն 'ի յերիւրել զդրուագս. որպէս զսքանչելիսն լեալ 'ի մահուն Կեսարու, զներբողս Իտալիոյ, այլովքն հանդերձ ։ Թանգի այս ամենայն բառ֊ նան զառաջակութիւն հրահանգաց և զվարդապետական ոճոյ, և մանաւանդ դրուագքըն յեռեալք ստոյգն զպար֊ տասուցն մտաց ։ Տես ինձ զառաջակայլ հրահանգս անկարգանելին որպէս դեղե֊ ցիկ 'ի հաստատծո յայտուսիկ քերթողա֊ բանէ, ըստ դեղեցիկ թարգմանութեան ուրումն 'ի ծերունեաց մերոց հարց.

« Եւ ոչ կողմանք երկրի համայն
Բերեն ըզգոյսս զամենայն.
Այլ առ գետովք լինի ուռի,
Եւ 'ի ջրաբբի վայրըս բարտի.
Անքեր ուամուլըն ծառ Որնի
Յապառաժուտ լեռնավայրի.

Ի գետեզերս է մըրտենի ,
Սպանդարապետ բոյս 'ի բըլրի ·
Եւ սըմիզակ 'ի հիւսիսի ,
Իւրաքանչիւր յիւրում բընի ·
Ի հատանել ըզճիւղս որթոյ ,
Ուռ իւր արտօսր հեղու լալոյ ։
Ի սկըզբանէ արարածոց
Բնութիւն պէսպէս տըւաւ ծառոց ,
Որ և լընուն ըզդաշտս համակ ,
Եւ զգետեզերս առ հասարակ ։
Որպէս փափկիկ Թուփըն Միւղար ,
Եւ Կենխստայն մորչ և դալար ։
Կէսք 'ի սերմանց են բուսական ,
Ջերդ շագանակն ամբարձական ·
Նոյն և մեծ շօճըն վարսաւոր ,
Ցանտառըս դիցն որմըզդական ·
Այլ և կաղնիք՝ զորս Հոռոմոց
Պատգամատեղ կարծեալ կըռոց ·
Եւ այլք մայրի մացառախիտ
Շառաւիղեն 'ի յարմատոց ·
Որպէս պըտեղն և կեռասի ,
Եւ Պառնասեայ լերին դափնի՝
Այն որ զփոքումբքըն Թևարկէ
Մայրօրինակ լեալ հովանի ։
Արդ եղանակ զայս երեքկին
Կարգեաց բնութիւն նախ առաջին ,
Որով մայրիք Թուփք դալարին
Եւ ամենայն ծառք անտառին ։

Է և այլ ազգ տընկոց սերունդ,
Գործածութեանըն զոլով գիւտ։
Ոմըն կորզեալ տունկ փանաքի
ի Մօր մարմնոյ՝ տընկէ յառուի.
Եւ ոմն 'ի հող վարէ ողջոյն
Զկըտրօն ըստուար ցից հաստաբուն.
Ուր ոստաքանց փայտ ձիթենի
Արմատանայ ըսքանչելի։
Եւս և փոխեալ ծառոց ըղձիւղ,
Այլ ընդ այլոյ բերեն պըտուղ։
Զի պատուաստեալ խընձորենի,
Պըտղաբերէ լեռ ըզտանձի.
Եւ 'ի յանբուն չըլորենի
Արիւներանգ չում շառագնի»։

Իթուղթս խնդրի ընտելական ոճ, հանդերձ քերթողական նկարագրութեամբք, և համեմարեղ զարդուք և գրուագօք։ Ովրատեայ թուղթքն լիցին վարժապետ լեզուագիտաց։ Բայց և մերոյս Շնորհալւոյ երկոքին թուղթքն քերթողականք, որ առ իշխանն արևելեան, և միաբանեալ որ առ Ապիրատ եղբօրորդին իւր, ոչ սակաւ արուեստիւ են գրեալ։ Գեղեցիկ է 'ի նմա համառօտ նկարագիր զինուորական կարգի նորին.

« Ապիրատիդ գըրեմ զայս բան,
Եղբօրորդւոյդ իմ ըղձական,

Պանծացելումդ արիական
Ձիավարժից ներհըմտական.
Ի տեղ նիզակ շարժողական.
Որպէս ծըղօտ մի եղեգան,
Բամբեալ յանհեակ կըրօղ վահան
Իւրր սանձով անշեղական.
Արիութեանց պարառական
Նախնեաց քաջացըն գոլ նըման »։

Եւ 'ի սկիզբն իսկ Թղթոյն, և ուրեք ուրեք սիրալիր բանքն, հոգի և գորով մուծանեն 'ի նմա.

« Արեգական լուսոյ ծագման
Սէր քո առ իս համանըման,
Ուետին քաղցու բըժըշկական
Յագեցուցիչ որ քեզ բաղձան...
Տենչանք սիրոյդ սըրտի տարփմամբ,
Մինչ զի կիզուլ տեսոյդ յիշմամբ.
Էից վեհ երանական
Զքոյդ տեսութիւն քայքըլա վարկան »։

Եւ ապա յուսով գալստեան նորա զուարթութիւնն և խնդրել 'ի նմանէ գրել զիւրացն ստուգութիւն՝ եթէ արդարև գալոց իցէ. և ապա հայրենի խրատքն հանդերձ օրինակօք և անձին իւրոյ հանգամանքն նկարագրեալ՝ մի 'ի գեղեցկագոյն քերթութեանց նորա յօրինեն զթուղթն։

Բայց Թղթոց իսկ այլ և այլ ազգք են

ըստ իմաստից․ է որ բարոյական և քննադատական, է որ խառն ընդ եղերերգակ և ընդ սիրային քերթու-թիւնս, որպէս Ովիդեայ Նասոնի Թուղթք մեծուհեացն՝ հին և նոր 'ի մասունք և գործականք․ և է որ խառն ընդ երգիծաբանութիւն, որպէս Ովրա-տեանքն։

Ակիզբն երգիծաբանութեան անյայտ է, և թուի մնացորդ 'ի հին նախնոյ կա-տակերգութեանն՝ որ ըստ մասին ոտա-նաւոր և ըստ մասին արձակ բանիւ էր քերթեալ, և լի շաղակրատանօք։ Էննիոս և Լուկիլիոս հարթեցին զայն, և Ովրատիոս էած յայժմու կերպա-րանս։ Եւ է երգիծաբանութեանն գործ՝ ուղղել զբարս, նմին իրի և պարսաւել զյոռութիւնս․ այլ չէ օրէն նշաւակել 'ի նմին զոք, և ոչ լռելեայն։

Ովրատ, Յոբենալ և Պերսիոս, երե-քին ևս լատինք, այլազգ 'ի միմեանց յօրինեցին զերգիծաբանութիւնսն։ Ովրատ զանմտութիւն մանաւանդ և զակարութիւն մարդկան առնու կշտամ-բել քան զյոռութիւնս․ և զայն՝ զուար-ճաբանութեամբ, և ընդ նուրբ իմաս-տասիրութեան կցորդելով զբարեկիրթ քաղաքավարութիւն։ Զոր օրինակ առ

’ի խրատ որդւոց ’ի հնազանդութիւն հայրենի խրատուն, զօգուտ այնոցիկ այսպէս առաջի առնէ.

« Սոքիմքք ես յայնց ողջ լեալ յախտից
Որոց կորուստ ընթանայ կից,
Դուզնաքէիւք փորձիմ կարեօք,
Եւ ոյց դիւրաւ ներես արդեօք » ։
Երգիծ ։

Եւ առ ’ի խրատ անտրտունջ զոհու֊թեան անտոհմից՝ընդ բախտ իւրեանց, այսպէս քերթողաբանէ.

« Ջեմ ես անմիտ զի ընդ իմս հայր ա֊
մաչեմ,
Նա՝ և ոչ յայն ինչ անքասիր զիս առնեմ
Որպէս բազումք, թէ ոչ այն իմ ինչ է մեղ՝
Զի չեն ծընօղքս ազնըւական և հըքեղ.
Իմ միտք և ձայն յոյժ են ’ի սայց երկպառակք.
Զի թէ յամս ինչ՝ հրաման տացեն ախտարակք
Դարձ ընդ կըրունկն առնել կենացս յասպարէզ,
Եւ այլս ընտրել իւրաքանչիւր մէն՝ մի մեզ
Զոր ոք ցանկայր ծընօղս անձին պեր֊
ճափառ,

Ես զո՞հ իմովքս՝ ոչ զորս 'ի խուրձն
են պայծառ
Եւ 'ի վըսեմ զա՞հ կամէի առնուլ
ինձ »։ Երգիծ. Ա. Զ. 89։

Ցոբնաղ Թէպէտ և ազգողագոյն քան զՈվրատ, այլ զեղով և կիրթ ախորժակօք ստորև քան զնա, բուռն և զկծեցուցիչ բանիւք կշտամբէ զյոռութիւնս. և մանաւանդ ուրեք ուրեք նըշաւակէ և զանձինս ոմանց։ Որպէս զՊարիս կատակերգու, վասն խառնելոյ նորա յարքունիս 'ի բաշխս աւագութեանց, այսպէս երգիծանէ.

« Նա և յոգունց ընձեռէ զօրականին բարձ և պատիւ.
Եւ զքերթողաց կիսամեայ պըճնէ
զմատունս ոսկի օղիւ.
Եւ զոր աւագք ոչ կարեն, զայն
խեղկատակըն տայ պարգև »։
Երգիծ. Է. 88։

Բայց պերճք են տիպք կերպարանաց բանից նորա, և հանճարեղ բացատրութիւնք. որպէս կշտամբել նորա զեգիպտացին՝ վասըն պաշտելոյ նոցա զկենդանիս և զբոյսս.

« Բիւթանացիդ Վոլուսիէ,
Ո՞ր երբէք ոչ գիտիցէ,
Թէ յետսամիտն եգիպտացի

Որոց հրէշից պաշտօն տանի ։
Կեալք տխտեռան երկրպագեն ,
Ազգ յօժարակուլ ցեծոյն սարսեն ։
Ծողեալ կապկին սըրբանըւէր
Ոսկեճաճանչ փայլէ պատկեր ․
Ուր հինաւուրց Թեբէ քաղաք
Հարիւր դըրամբք կայ հաղթյատակ ․
Եւ 'ի Մեմնոն կիսակործան
Հընչեն քընար լարք դիւթական ։
Անդ ըզծովու սատ ըզգետոյ
Զաշտեն լուղակ մի առ միոյ ․
Անդ ամենայն քաղաք ըզշուն ,
Իսկ զԱնահիտ ոչ ոք համբուն ։
Ըզպրաս և սոխ մեղք են խըլել
Եւ ատամամբք պատառոտել ։
Ո՛վ սուրբ ազանցն , որոց պարտէզ
Բուսուցանէ աստուածս այսպէս » ։

Երգիծ ․ ԺԵ ։

Իսկ Պերսիոս ազգութեանն Յոբնազայ քան ընտիր ախորժակացն Ովրատեայ նմանազոյն գտանի ։

Յայտոսիկ ամենայնի եթէ 'ի Թուղթս և եթէ յայլ վարդապետական քերթութիւնս կարևոր է յոյժ ովրատեան կանոնն՝ Համառօտ պատուիրեա ․ քանզի համառօտութիւն յաւելու 'ի սոսա կորով և զօրութիւն ։ Եւ դարձեալ նկարագրութիւն բարուց և բնաւորու-

թեանց, կարճառօտ պատմութիւնք են առասպելք և զուարճալի հանճարաբանութիւնք՝ պատշաճագոյն գործեն զարդ յայս ազգ քերթութեան, որք այլուր զուն ուրեք գտանեն տեղի։

Առ գաղղիացիս գերազանցեաց յայս ազգ քերթութեան Պուալօ. և Քերթողական արուեստ նորա և Թուղթք և երգիծաբանութիւնք մեծարեցին միշտ ըստ հանճարեղ իմաստից և ըստ քերթողական լեզուին։

Իսկ առ անգղիացիս անուանի են Բոբ և Իունկ։

Յիտալացւոց Մենծինի եկաց հետևող Յոբնաղայ. իսկ Արիոստօ, Սալուաթոր Ռօզա, Վենինի, Քիապրէրա, Կոցցի և Փարատինի կացին հետևողք Ովրատեայ։ Հանճարեղ է յոյժ և պերճ Փարինեայ երգիծաբանութիւնն, որ զմեծատանց աշխարհի զառօրեայ զբաղանացն։ Իսկ քերթողական թղթոց դրիչք կացին առ նոսա Ֆռուկոնի, Ալկարոթթի, Պեթթինէլլի և Փինտեմոնթէ։

Առակք կամ առասպելք ազգ ինն վարդապետական քերթութեան են, յորս քերթողն 'ի ձեռն կեղծեալ օրինակաց կենդանեաց և անշունչ իրաց

հրահանգէ զմարդիկ ։ Կարի յաճախեալ էր առ արևելեայս այս ազգ քերթութեան , յորում Եսովպոս 'ի Յունաց անուանի քան զամենեսեան եկաց , և առ Լատինս՝ Փեդրոս և Աւիանոս՝ որք զԵսովպայ առակսն յեղեալ 'ի լատին բարբառ , բազում ինչ և 'ի հանճարոյ իւրեանց յաւելին յայնս , մանաւանդ Փեդրոս այնպէս վայելուչ զնոսա յօրինեաց , զի ոչ ինչ սորա քան զօրինակագիրն ժառանգէ փառս ։

Օրինակ իմն առակ ամբարտաւան ճային և սիրամարգի .

« Մի՛ օտարբն պանծալ բարեօք ցան-
կալեաց ,
Իւրըն գոյնք կեալ միշտ զաւուրըս
կենաց ,
Զայս Եսովպոս քաջ յարացոյց մեզ
երգեաց ։
Յաւակնութեամբ զուր յօրացեալ վէ-
րըն ճայ ,
Թափեալ փետուր սիրամարգի զիւ-
րեաւ արկ ,
Պըճնեալ զարդուք ընչաց քերէր իւր
դասուն ,
Երթեալ խառնէր սիրամարգաց յազ-
նիւ տարմ ,
Նոքա հանեալ թափին ըզզարդ լիրբ
հաւուն .

Եւ չարագան կըտցօք տանջեալ վը-
  տարեն .
Ճայն անշընորհ յազգ իւր դառնայր
  կորակոր ,
«Անտի վանեալ լինէր տըխուր նը-
  շաւակ ։
Անդուստ մի ոմն յորոց երբեմն ըմ-
  պահկեաց ,
Թէ գոհ էիր ասէ ընդ մեր աստիճան ,
Եւ ըզգընութեան տուրս հանդուրժել
  ընտրէիր ,
Ո՛չ այնընդ քեզ բասիր ձաղանք
  անցանէր ,
Ոչ յաղէտ քո և այս աքսոր դիզա-
  նէր » ։

Եւ շանն ագահի միս 'ի բերան անցք ընդ-
գետ .

« Աւելազանց տենչ զայր ագահ
Առնէ 'ի խաբըս դիւրասահ ։
Ցինչս օտարին որկորուստ ,
Զիւրըն մատնէ 'ի կորուստ ։
Ընդ գետ 'ի լող անկեալ շուն ,
Միս 'ի բերան յիւր 'ի չուն ,
Ցառեալ ետես զըստուեր իւր
Ի հայելւոջ անդ 'ի ջուր ։
Եւ համարեալ այլ իմն որս
Ցորկոր այլոյ ջուրցն 'ի խորս ,
Գրաւել և զայն ցանկացաւ .

Այլ ցանկութիւնն ինքնագաւ
Լիք զոր ունէրն 'ի բերան ,
Եւ ոչ միւսումըն ժամանն » :

Գեղեցիկ է և ուրումն 'ի մերոց քերթողաց ըստ պատեհի առակեալն գլխուան ձգտելոցն 'ի նմանել վեհագունից .

« Շամբոյշ է որ ընդ վեհագունին քան զինքն բերէ հակառակութեան վէճ :

(Պիտ. յեսոփեայ . 41):

« Ընդ ձի վարգեալ քառասըմբակ՝
Ցատքըն հուր թօթափելով ,
Նախանձեցաւ զօրտ լըճաբնակ՝
Ջափոյն անգէտ անձին զօլով :
Եւ յոստոստելն անճահ ու 'ի զուր ,
Մինչ համարէր նա թէ առ հանգոյն
Տեսանողացն ընծայել իւր ,
Եղև 'ի ծաղր ամենեցուն » :

Իտալացւոց անուանի են Պազլիլոյ Կռացիողոյ , Բինիոթթի , Տէռամսի , Բասսեռոնի , Պէռթոլա և Բեռնեկոյ : Իսկ 'ի գաղղիացւոց անուանքն և հռչակաւորն յոյժ Լաֆոնթէն :

# ԴԱՍ ԺԹ

## Դիւցազներգակ քերթութիւն:

Հ. Զի՞նչ է դիւցազնականն քերթութիւն.

Պ. Դէպք ինչ մեծագործ քերթողաբար վիպագրեալ, առ ՚ի սէր և ՚ի զարմացումն առաքինութեան ձգելոյ զընթերցողս: Վեհագոյն քան զամենայն ազգս քերթութեանց է սա, այլ դժուարին յոյժ ՚ի կատարումն. քանզի հզօրագոյն ճգանց քերթողական հանճարոյն պէտք են առ ՚ի յօրինել վէպս քերթողականս զուարճալի և ախորժալուր ամենեցուն, ՚ի ներքս ածելով դէպս պատշաճաւորս, և նկարագրութիւնս կենդանատիպս բնութեան և բարուց, հանդերձ պերճութեամբ և վսեմութեամբ իմաստից և ասացուածոյ, որք դիւցազնականին ՚ի դէպ գան առաւել քան այլ ամենայն քերթութեանց, և որովք զանազանի սա ՚ի պատմութենէ:

Առաւել քան զթատերական քերթութիւնս երկայնէ սա զչափ ժամանակի. և հակառակ նորին՝ զընաւորութիւնս անձանց փոխանակ իմաստիւքն

և կրիւք նոցա ցուցանելոյ, գործովքն ցուցանէ ։

Հ. Որպիսի՞ ինչ պայմանք խնդրին 'ի վէպս դիւցազնականս.

Պ. Առաջին պայման, որ առաւել քան յայլ ամենայն ազգս քերթուածոց պահանջի 'ի դիւցազնականսն, է միութիւն. զի առանց այսորիկ մեծագործութիւնք խառն 'ի խուռն անկցորդք ընդ միմեանս՝ ոչ ինչ ազդեն յընթերցողն ։ Վասն որոյ յամենայն դիւցազնական քերթութիւնս անուանիս մի ինչ է գըլխաւոր վէպն . յԵղիականսն Հոմերի՝ քէն Աքիլլեայ, յՈդիսականսն՝ դարձ և հաստատութիւն Ոդիսեայ 'ի հայրենիսն, յԵնէականսն Վիրգիլեայ՝ եկաւորութիւն Ենէասայ յԻտալիա և հաստատութիւն նորա անդ, և 'ի դիւցազնականն Թասսոյի՝ ազատութիւն Երուսաղէմի 'ի ձեռաց անհաւատից ։ Իսկ այլ ամենայն դէպք որպէս մասունք 'ի բոլոր անդր բերին . վասն որոյ միութեամբ վիպացն ոչ արտաքսին 'ի դիւցազնականէն դրուագք կամ յարակից դէպք, որք թէպէտ և չիցեն կարևորք յոյժ 'ի բովանդակութիւն առաջարկութեանն՝ այլ քաջ ընդ այնմ կցորեալք իցեն. որպէս տեսութիւն և գրոյցք Հեկ-

տօրն ընդ Անդրոմաքեայ յԵղիականին, և իբր Կակոսի և Նիսոսի և Եւրիալեայ յԵնէականին :

Վասն որոյ նախ առաջին խնդրի 'ի գրուածս անբռնազբօս կցորդութիւն ընդ վէպսն, զի իցեն որպէս անդամք նորին մարմնոյ՝ և մի ագուցիկք. որպիսի ստգտանի գրուածն երկայնաձիգ Ողինդեայ և Սոփրոնեայ յԱզատութեանն Երուսաղէմի : Եւ երկրորդ՝ քանզի գրուածք առ 'ի զարդ յաւելուն, պարտ է նոցա գոլ նոր ինչ առ 'ի փոփոխութիւն տեսարանաց, և մի համաձեռ ընդ գլխաւոր վէպսն կամ ընդ այլ գրուածս. վասն որոյ 'ի վէպս պատերազմաց անյարմարք են գրուածք դարձեալ պատերազմականք, այլ կարի քաջայարմարք վերոյասացեալ գրուածքս Եղիականին և Ենէականին, և Երմինեայ ընդ հովուին դէպք յԱզատութեանն Երուսաղէմի :

Առ միութիւն վիպացն խնդրի դարձեալ ամբողջութիւն, որպէս զի ըստ Արիստոտելի՝ իցէ նորա սկիզբն՝ մէջ և կատարած : Վասն որոյ պարտ է քերթողին կամ իւրովի և կամ 'ի ձեռն ուրուք 'ի դիմաց՝ զորս 'ի ներքս մուծանէ՝ տեղեակս առնել ամենայնի զըն-

թերցողս, ոչինչ 'ի կարեւորաց թողեալ 'ի բաց մինչեւ յանթերի կատարումն վիպացն ։

Չչափ ժամանակի վիպացն ոչ է մարթ ճշդիւ սահմանել ։ Եղիականին Հոմերի վասն բուռն սաստկութեան ցասմանն Աքիլլեայ, չանցանէ չափ ժամանակին քան զաւուրսն քառասուն. իսկ Ոդիսականին 'ի կործանմանէն Տրովայ մինչեւ ցխաղաղութիւնն Իթակայ՝ որ են ամք ութ եւ կէս. բայց յելիցն Ոդիսեայ 'ի կղզւոյն Կալիփսեայ լինին աւուրք յիսուն եւ չորք ։ Նոյնպէս եւ Ենէականին առեալ 'ի հրակիզմանէն Տրովայ՝ լինին ամք վեց. իսկ յետ մրրկին մինչեւ ցմահ Տուրնոսի, ամ մի եւ ամիսք ։

Երկրորդ պայման վիպացն է, զի իցէ զմեծ ինչ եւ զկարեւոր իրաց, արժանի վաստակոց քերթողին եւ արժանալուր ։ Առ այս կարեւոր է եւ հնութիւն իրացն. քանզի նորք եւ արդիք դուզնաքեայք թուին, իսկ հնութիւն որպէս ստուերաւ քօղարկեալ՝ վեհ երեւեցուցանէ զամենայն, եւ տայ համարձակութիւն քերթողին՝ պաճուճել զայն պատշաճ կերպիւք ։ Վասն որոյ Վոլթէռ եւ Լուկանոս ոչ յաջողեցան 'ի քերթուածս

իւրեանց, զմէնպս իւրեանց ժամանակին երգելով. քանզի Լուկանոսի չհամարձակեցաւ յաւելուլ կեղծիս՝ ի ծանօթ իրսն, անպաճոյճ և ցամաք զքերթուածն արար. իսկ Վոլթեռի կամեցեալ յաւելուլ կեղծիս, չկարաց պատրել զընթերցողս, և եպերեցաւ:

Վասն ցանկալի լինելոյ վիպացն օգնէ յոյժ յազգային իրաց առնուլ զայն, որպէս արարին Հոմերոս և Վիրգիլ, և Թասսոյ. և մուծանել 'ի ներքս իրս զարմանականս և աղդոյս. զի չաչիւն զինուց և պայծառ արութիւնք զաչս ևեթ շլացուցանեն, այլ պարտ է և զսիրտ ընթերցողաց շարժել 'ի սէր՝ 'ի բարեկամութիւն և 'ի կարեկցութիւն, յոր առաւելապէս հաստատեալ է յարգ քերթութեանն: Վասն որոյ պարտ է այնպէս ճարտար զգլխաւոր դիւցազինն յարդարել զնկարագիր, զի ընթերցողացն ոգիք կապեալ ընդ նմա՝ յամենայն խոշս և 'ի վտանգս կարեկից լիցին նմա:

Այս խոշք և վտանգ կազմեն զհանգոյց քերթութեանն, և 'ի ճարտար մանուած նոցա հաստատի արուեստ մեծ քերթողին: Պարտ է նմա մտադրուտ և անճողոպրելի վտանգօք զարթուցանել

զմիտս ընթերցողաց, տակաւ առաւելուլ զդժուարութիւնս և զվտանգս, և յերկար 'ի վարանս և յերկբուղի կալեալ զընթերցողս՝ ապա հաւանական դիպօք անակնկալ լուծանել զկնճիռն, և հանգուցանել զմիտս ։ Նմին իրի և յաջողութեամբ պատշաճագոյն թուի աւարտել զդիւցազնական քերթուածս, զի մի ընթերցողք աղէտալի կատարածիւն ընկճեսցին տրտմութեամբ ։

Հ. Որպիսի՞ ինչ խնդրին բարք 'ի դէմս իւրաքանչիւր 'ի դիւցազներգութեան ։

Պ. Քանզի վէպս ճշմարտատիպս յօրինէ քերթողն 'ի դիւցազնականին, պարտի դիմաց իւրաքանչիւր որ 'ի նմա՝ տալ բնաւորութիւն և բարս սեփականս և հանգունատիպս ճշմարտին ։ Ոչ է հարկ ամենեցուն նոցա առաքինիս գոլ և անըստգտանելիս բարուք, այլ և զդէմս ախտաւորս և զմոլիս մարթի ըստ պատշաճի 'ի ներքս մուծանել, բայց միայն զի աւագագոյնք 'ի նոցանէ և առաքինիք ևեթ սիրելիք ընծայեսցին ։

Ոչ է բաւական առաքինիս և իմաստունս զդէմսն յօրինել, այլ պարտ է և զանազանել զառաքինութիւնս նոցա ըստ իւրաքանչիւր հանգամանաց և ըստ

րուածոյ բարուց, յորում առաւելապէս փայլէ հանճար քերթողին. և զբարս և զնկարագիր իւրաքանչիւրոց անյեղլի և անփոփոխ ունել մինչև ցվախճան։ Յայսմ մասին գերազանցէ Հոմերոս զամենեքումբք. զի դիմաց իւրաքանչիւր՝ զօրս 'ի մէջ ածէ, այլ և այլ բնաւորութիւնք են, և ըզնոյն մինչև 'ի սպառ պահեն անթերի։ Եւ Վիրգիլ զԴիդէի բարսն քաջ նկարագրէ, և անյեղլի պահէ զայն։ Բայց ճարտար քան զՎիրգիլ գտանի Թասսոյ 'ի նկարագիրս բարուց. և Գոփրեդոս դիւցազն նորա գտանի արդարև խոհեմ իմաստուն և արի մինչև ցվախճան։

Ցամենայն՝ իսկ դիւցազնական քերթուածս խնդրի որ դիւցազն առաջնորդ իրացն մեծ և երևելի քան զայլս, որում պարտ է առաւել քան զայլս զարմանալի գոլ առաքինութեամբ և սիրելի. նմին իրի մի ինչ ատելի և արհամարհ իցէ 'ի նմա։ Այսպէս յԵղիականին Հոմերի դիւցազն է Աքիլլէս, յՈդիսականի նորին՝ Ոդիսեւս. յԵնէականին Վիրգիլեայ՝ Ենէաս, և Գոփրեդոս յԱզատութեանն Երուսաղէմի։

Ի դիւցազնականն քերթութիւն

խառնրին և հոգեղէն էակք. և 'ի ճար-
տար խառնութեան նոցին է բարւոք
կազմածն որ մեքենայն կոչի: Բայց
պարտ է քերթողին յայտնի զչափ
պահել, և մի՛ հրաշս 'ի մտաց ստեղծա-
նել. այլ զոր կրօնք և աւանդութիւն
ընկալան՝ նոքօք ևեթ վարել, զի հաւա-
նականք իցեն: Հոմերոս ստգտանի որ-
պէս կարի նուաստացուցեալ զդիս.
Վիրգիլիոս պահէ զպատիւ նոցա. Տաս-
սոյ փոխանակ դ.ից զԱստուած և զհրեշ-
տակս մուծանէ, բայց 'ի յաճախել
զդիւթական կախարդութիւս՝ անստ-
գտանելի է: Գամոէնս այլանդակ խառ-
նմամբ զդիցաբանութիւն ընդ ճշմարիտ
կրօնիցս կցորդեալ՝ ընդ սուրբ Կուսին
'ի ներքս ածէ զԱրամազդ և զԱստղիկ.
Տարաբանագոյն ևս է զանենթակայ
իրս անձնաւորել, որպէս զհերձուած
և զատելութիւն, և առնել նոցա դէմս և
խօսս, որպէս առնէն Վոլթէռ և Ա-
րիոսթոյ. քանզի դիւաք այսպիսիք 'ի
նկարագրութիւնս ևեթ ուրեք վայրին
առ 'ի պարդ:

Հ. Որպիսի՞ ինչ խնդրի ոճ 'ի վէպս
դիւցազնականս.

Պ. Եթէ բազմաժամանակեայ իրք
քերթութեանն իցեն, և չիցէ մարթ

քերթողին անդստին 'ի սկզբանէ իւրացն սկիզբն առնել, զմասն ինչ վիպացն տացէ պատմել ուրեք 'ի դիմաց՝ զորս 'ի ներքս ածէ. որպէս առնեն Վիրգիլ յԷնէականին, և Հոմեր յՈդիսականին։ Իսկ եթէ կարճժամանակեայ իցէ, մարթ է քերթողին ուրովի վիպել զամենայն։

Յառաջի առնել գիրսն, 'ի կարգալ զՄուսայն և յայլ նախաշաւիղ պատրաստութիւնս, ազատ է քերթողն առնել որպէս և հաճոյ թուի նմա. բայց միայն պարզ և բացայայտ պարտ է նմա յայտնի առնել զառաջարկութիւն, առանց ճոռոմ ճամարտակութեանն և մեծամեծս խոստանալոյ. վասն որոյ իմաստութեամբ պատուիրէ Ովրատիոս. (Արհ. Քերթ. 136)։

«Մի՛ լիցի քեզ առնել ըսկիզբն իբր
 ըզքերթող սինլըքոր,
Թէ զՊրիամու երգեմ ըզբախտն և
 զքաջայաղթ մարտին զոռ։
Զի զի՛նչ ապա ածցէ չըքեղ նախեր-
 գանացն արժանի,
Ցերկունս զոլով գոչեն լերինք, և
 չընչին մուկըն ծնանի։
Իսկ քանի՞ն բարւոք երգէ, որ ոչ
 ոգեաւ ինչ անճահ,
Պատմեա ինձ զայրն, ասէ, Մուսա՛
 որ յետ քակմանըն Տրոյայ

Զյողուեց նոուս բարբառ մարդկան և ընդ
քաղաքըս շրջեալ ·
Սա ոչ ըղձուխ 'ի փայլմանէ այլ 'ի
ծըխոյ տայ ըզփայլ» ։

Երկոքին յետին տողքդ նօտրագիր՝ են ըսկիզբն Ոդիսականին Հոմերի, որոց համեստ նախերգանք զպոռոտախօս երգաբանին առաջնոյ նշաւակեն զճա֊մարտակութիւն ։

Ընդ բացայայտութեան և աշխոյժք և եռանդն 'ի վէպս, և զարդք առաւել քան յայլ ամենայն քերթութիւնս, նը֊կարագրութիւնք վսեմք, կիրք հոգե֊շարժք և ազդոյ բացատրութիւնք ։ Բայց ամենայն ինչ վեհ և վայելուչ, և մի ինչ ծեքծեքեալ և արուեստակեալ. վասն որոյ հանճարեղք և որոց կիրթք են ախորժակք՝ ստգտանեն 'ի Հոմերոս զդժպատեհ թշնամանս Աքիլլեայ ընդ֊դէմ Ագամեմնոնի, զսաստ Արամազ֊դայ առ Հերա, զըսպառնալիս Ոդի֊սեայ առ Թերսիդէս. և յԵնէականին Վիրգիլեայ զՀարպեայցն առասպելս. և յԱզատութեանն Երուսաղէմի զան֊համեստ նկարագրութիւնսն ։

# ԴԱՍ Ի

*Դիւցազներգակ քերթողք անուանիք , և քերթուածք նոցա :*

Հ. Ո՞րք եղեն քերթողահարք դիւցազնականին .

Պ. Հոմերոս առ Յոյնս , և Վիրգիլիոս առ Լատինս զառաջին մրցանակն դիւցազնականին կալան քերթութեան: Հոմերոսի մեծ են փառքն վասն առաջնութեանն և վասն կրկին գեղեցկահիւս և երկայնածիգ քերթութեանցն , ընդ որս զարմացին միշտ ազգք իմաստունք : Վիրգիլեայ կանխեալ մահուն , ոչ ժամանեաց զվերջին կատարումն տալ գործոյն . սակայն գեղեցկութիւնք հրաշալիք են 'ի նմա , մինչև ոմանց վերադասել զնա քան ըզՀոմերոս :

Հոմերոս եռանդեամբն և կորովով և վսեմութեամբ գերազանցէ , բայց և ուրեք ուրեք անփոյթ գտանի , և զանց առնէ զկանոնօք : Իսկ Վիրգիլիոս թէպէտ և կարգաւորութեամբ գերազանց , այլ զՀոմերոս ունի իւր նախատիպ , և բազում ուրեք թարգմանիչ նորին է քան թէ նմանող : Արդ ըստ զիւտոյն գերա-

զանցէ Հոմերոս. իսկ ըստ դատման և ըստ կարգաւորութեան բազումք Վիրգիլեայ տան զգերազանցութիւնն, թէպէտ և չև ևս սահմանեալ է վէճն։

Հ. Զի՞նչ են Եղիականին վէպք.

Պ. Քուրմն Ապողոնի աղաչէ զզօրավարն Յունաց զԱգամեմնոն, դարձուցանել յինքն զդուստր իւր՝ որ յաւարէ միոյ 'ի քաղաքաց անկեալ էր նմա բաժին։ Մերժէ զնա Ագամեմնոն. և Ապողոն աղաչանօք քրմին արկանէ ախտ ժանտ 'ի բանակն Յունաց։ Հարցանին իղձք, և տան պատգամ, զի չէ հնար դադարել ախտին՝ մինչչև դստեր քրմին առ հայրն դարձ արարեալ։ Ցասնու Ագամեմնոն ընդդէմ քրմին, և թէպէտ յանձն առնու վասն փրկութեան բանակին տալ 'ի բաց զգերին՝ զոր առաւել սիրէր քան զԿլիտեմնեստրա զկին իւր, սակայն փոխանակ նորա պահանջէ զօրիորդն Բրիսիտէ ըզգերին Աքիլլեայ։ Ծանրացասումն լինի ընդ այն Աքիլլէս և թշնամանեալ զԱգամեմնոն վասն յափշտակասիրութեանն և հարստահարութեան, երդնու ընդդէմ զօրավարին՝ նահանջել զօրօքն իւրովք 'ի բաց, և ոչ ևս նպաստ 'ի կռիւ լինել Յունաց ընդդէմ տրովացւոց. և ար-

դեամբք զանպատնալիսն կատարէ: Եւ աստուածուհին Թետիս մայր նորա աղերսէ զԴիոս յօգնութիւն որդւոյն, և Դիոս 'ի վրէժխնդրութիւն զրկանացն Աքիլլեայ ընդդէմ դառնայ Յունաց՝, և Թողու յաղէտս ծանունս տառապել նոցա ընդ երկար, մինչև ցածուցեալ Աքիլլեայ 'ի ցասմանէն, և հաշտեալ ընդ Ագամեմնոնայ, դարձեալ Յոյնք 'ի ձեռն Աքիլլեայ յաղթեն տրովացւոց:

Հ. Զինչ են վէպք Ոդիսականին.

Պ. Ոդիսեայ յետ պատերազմին Տրովադայ՝ դէմ եդեալ դառնալ յԻթակա 'ի կղզի իւր, զամս բազումս հալածի 'ի մրրկաց յայլ և այլ կողմանս երկրի զանազանեալս ըստ բարուց, ըստ սովորազու կենաց և ըստ քաղաքավարութեան: Յարկածսն, ընդ որս հարկ լինի նմա մաքառել, կորնչին ընկերք նորա՝ սատունզանել խրատուց նորա: Մինչդեռ նա 'ի բացեայ էր, ճոխք և հզօրք կղզւոյն զարքունիս նորա վէր 'ի վայր աղմկեն, զարան գործեն որդւոյ նորա Տելեմաքեայ, և զկին նորա հրապուրեն լինել կնութեան միում յինքեանց՝ ընդ մեռեալս համարելով զայր իւր: Բայց Ոդիսեայ հասեալ անդր, յայտնէ զանձն որդւոյ և եթ իւրում՝ և ոմանց 'ի բարե-

կամաց իւրոց, որք մինչև'ի սպառ հաւատարիմ կացեալ էին ընդ նմա. և ականատես իսկ լեալ ստահակութեան հրապուրողաց զկին իւր, պատուհասակոծ առնէ զնոսա. ապա յայտնէ զանձն իւր կնոջ և հօր իւրում, և յառաջին կարգն և'ի խաղաղութիւն դարձուցանէ զկղզին։

Հ. Զի՞նչ են վէպք Ենէականին.

Պ. Ենէաս տրովացի որդի Անքիսեայ և Աստղկան, որոյ զԿրեւսա դուստր Պրիամու առեալ էր կնութեան, և ծնեալ'ի նմանէ զՅուլոս Ասկանիոս. յետ կործանման հայրենեացն առ 'ի Յունաց, կորուսեալ զկին իւր, քսան նաւօք անցանէ 'ի Թրակիա, անտի 'ի Դեղոս և ապա'ի Կանդիա։ Անդ սկսանի շինել քաղաք. բայց հալածեալ 'ի սրածութենէ, անցանէ'յԵպիրոս՝ ուր իշխէին ազգականք իւր Ելլենոս և Անդրոմաքէ. և Ելլենոս գուշակէ նմա զհանդերձեալ արկածսն։ Անտի անցանէ 'ի Սիկիլիա, և անդ մեռանի հայր նորա։ Եւ վանեալ 'ի մրրկէ, զոր Եւողոս աղաչանօք Հերայ յարուցանէ ընդդէմ նորա, անկանի'ի Կարքեդոն և հիւրընկալի յարքունիս դշխոյին Եղիսայ կամ Դիդէի։ Եւ յանդիմանեալ'ի Հերմեայ, նաւարկէ անտի.

ճոկ Դիդէ Թողեալ 'ի նմանէ, առ վշտին գնայ զիւրովին: Ենէաս հասեալ 'ի Սիկիլիա, ըզտարեդարձ մահու հօրն կատարէ: Անդ կանայք տրովացիք պատրեալ յԻրեայ ըստ սադրանացն Հերայ, և տաղտկացեալք 'ի բազում երկայն ուղևորութենէն, հըրձիգ առնեն զնաւս նորա. վասն որոյ շինէ անդ զԱկեստա քաղաք, և թողու անդ զկէսս յուղեկցացն՝ որ կամէին կալ անդ: Ապա 'ի գնալն յԻտալիա՝ կորուսանէ զՊալինուրոս. և հասեալ 'ի Կումա, առաջնորդութեամբ Սիբիլլային իջանէ 'ի սանդարամետս՝ տեսանել զհայր իւր: Անտի անցանէ 'ի Կայետա, ուր թաղէ զդայեակ իւր. և 'ի մտանել նորա 'ի բերան Տիբերի, հիւրընկալէ զնա Լատինոս արքայ երկրին, և խոստանայ տալ նմա ըզդուստր իւր զԼաւինիա կնութեան: Ջայրանայ ընդ այն Տուրնոս արքայ Հռուտուղաց, որում Լաւինիա խոստացեալ էր 'ի մօրէն 'ի կնութիւն: Զէն առնուն. Ենէաս նիզակակից իւր արարեալ զԵւանդրոս և զԵտրուրացիս, սպանանէ նախ զՄեզենտիոս և ապա զՏուրնոս, և զրաւ առնէ մարտին և ուղևորութեան և վշտակրութեանց իւրոց:

Բայց քերթողն ոչ անդստին 'ի սկզբանէ առնու պատմել զվէպքս, այլ սկիզբն 'ի մրրկէն առնէ զոր յարոյց Եւողոս. իսկ զայլն ամենայն կարի յոյժ վայելչապէս ճարտարութեամբ տայ դիւցազին իւրում' պատմել Դիդէի տիկնոջ։ Բայց Թէպէտ և դշխոյս այս երկերիւր ամօք յետոյ եկաց քան զԵնէաս, սակայն Վիրգիլիոս փոփոխմամբ ժամանակին քերթողական համարձակութեամբ՝ զգեղեցկագոյն, զցանկալի հառմայեցւոց, զգորովական և զգերագանց դրուագն զայն 'ի ներքս մուծանէ։

Քերթուածս այս Թէպէտ և ոչ ազատ 'ի Թերութեանց անհրաժարեաց մարդկեղէն հանճարոյ, այլ այնքան բովանդակէ յինքեան գեղեցկութիւնս և այնպիսի ընտիր ախորժակս, զի ոչ է մարթ վարժապետ վեհագոյն քան զսա ընծայել համբակաց քերթողականին։ Գիտաց նա զդժուարին ճանապարհ հասանելոյ 'ի սիրտ մարդոյ, և շարժելոյ և գորովելոյ զնա ըստ կամի։

Երկրորդ գիրք Ենէականին է մի 'ի հրաշակերտից քան զամենայն քերթուածս, յորում քերթողն հանդէս առնէ ամենայն զօրութեանց հանճարոյն, մերթ տեսարանս ահարկուս և

մերթ դորովականս առաջի առնելով. զհրդեհ և զաւարառութիւն քաղաքին տրովացւոց, հանդերձ ամենայն յարակից աղիողորմ հանգամանօքն. զմահ ծերունւոյն Պրիամու, և զառատնին իւրաց հօգս զԵնէասայ, զԱնքիսեայ և զԿրեւսայ խանդաղատելի նկարագրեալ: Նոյնպէս և 'ի բազում յայլ տեղիս փայլէ բարացուցական հանճար քերթողին, օրինակ իմն 'ի չորրորդ գիրսն 'ի նկարագրել զողորմելի տարփանս և զմահ Դիդէի, և յերրորդ գիրսն զհանդիպումն Ենէասայ ընդ Անդրոմաքայ և ընդ Հելլենոսի, և 'ի դրուագսն Պալլանտեայ և Եւանդրի, Նիսոսի և Եւրիաղեայ, Լաւսոսի և Մեզենտեայ: Եւ թէպէտ վեցեակ յետին գիրք քերթուածոյս անկատար մնացեալ իցեն վաղահաս մահուամբ քերթողին, վասն որոյ և կտակաւ պատուիրեաց նա հրձիգ առնել զամենայն քերթուածն, սակայն եօթներորդ՝ ութերորդ և երկոտասաներորդ գիրքն լի են գեղեցկութեամբք:

Միութիւն ամենակատար 'ի քերթուածս յայս պահի. 'ի սկզբանէ մինչև ցվախճանն ոչ յայլ ինչ ուշ ունելով բայց 'ի հաստատութիւն դիւցազինն յիշա-

լիա ըստ դիցն պատգամաց։ Դրուագքն քաջ զօդեալ են ընդ առաջարկութեանն. և հանգոյց քերթուածոյն՝ երդումն Հերայ ընդդէմ հաստատութեան տրովացւոց յԻտալիա, որ և զամենայն խոչ և խափան արկանէ ընդդէմ յաջողութեանն Ենէասայ, և զմարդկային գործս ընդ աստուածայինս խառնէ։ Աստի մրրիկն, որ զԵնէաս վարէ յԱփրիկէ. աստի տարփանք Դիդէի, որ հնարէ արգելուլ զնա 'ի Կարքեդոն. աստի և ճիգն Տուրնոսի, որ յառնէ ընդդէմ Նորա 'ի պատերազմ. մինչև 'ի լուծումն հանգուցին 'ի մէջ անցեալ պայման դաշինն Արամազդայ ընդ Հերայ՝ կորուսանել 'ի սպառ զտրովական անունն 'ի լատինականն, զիջանի Հերա 'ի ցասմանէն, և Ենէաս յաղթանակէ։

Հ. Ո՞ 'ի քերթողաց յետ Հոմերոսի և Վիրգիլեայ 'ի դիւցազնականին գերազանցէ քերթութեան.

Պ. Թասսոյ քերթող իտալացի որ երգեաց զԱզատութիւն Երուսաղեմի 'ի ձեռաց անհաւատից։ Ըստ ամենայն մասանցն պահէ քերթուածս այս զկանոնս դիւցազնականին. մեծ է և դիւցազնական առաջարկութիւնն, և քրիս-

տոնէական ճշմարիտ կրօնք առաւելագոյն յաւելուն 'ի նա վեհափառութիւն։ Հակառակութիւն Սարակինոսանց 'ի վարանս ունի զմիտս. և ժամանակն իսկ և հեռաւորութիւն տեղւոյն տայ ըստ բաւականին ազատութիւն քերթողին յաւելուլ զկեղծիս։ Բեղնաւորութիւն յոյժ մտաց նորա ընդ միութեան առաջարկութեանն կցորդէ զանազանութիւն զուարճալի, և 'ի նկարագիրս բարուց ճարտար իսկ է քան զՎիրգիլ։ Եւ համառօտ ասացեալ, հանդերձ սոգտանելի ինչ թերութեամբքն և ուրեք ուրեք արուեստակութեամբք, զերրորդ տեղին իրաւապէս ունի 'ի դիւցազնականին։

Այլ ոմանք վերադասեն քան զնա զՄիլտոն քերթող անգղիացի, որ զնախահօրն Ադամայ զարտաքսումն 'ի դրախտէն երգեաց։ Այլ սա թէպէտ և ընտրութեամբ առաջարկութեանն և վսեմութեամբ գերազանցեալ, բայց այլովն ամենայնիւ ստորև քան զԹասսոյ դատանի։

Հ. Տուր ինձ տեղեկութիւն և զայլոց երևելագոյն դիւցազներգակ քերթողաց.

Պ. Առ գաղղիացիս դիւցազներգակ

քերթողք կային Ֆէնէլոն և Վոլթէռ։ Տելեմաքին Ֆէնէլոնի վեցեակ առաջին գիրք լաւագոյնք են քան զյետինս. և յէջըն Տելեմաքայ 'ի սանդարամետս՝ գերազանցէ իմն քերթողն և քան զքեր-թողահայրն երկուսին։ Բայց քանզի արձակ բանիւ է գրեալ քերթուածն և կարի յաճախ 'ի նմա խրատք, ոմանց թուեցաւ կոչել զայն ճառ բարոյական քան թէ քերթուած դիւցազնական։

Իսկ Վոլթեռի քերթուածն, որ յա-ղագս պաշտպանելոյ մեծին Հենրիկեայ արքային Գաղղիոյ զփարէզ, բաց յա-նընտրութենէ առաջարկութեանն և յանձնաւորելոյ զհերձուած և զատե-լութիւն, բազում ուրեք ես տկար է և հեռեւակ։ Ընտրելագոյն 'ի նմա հատու-ածն է նկարագիր անդրեւայթ աշխար-հին՝ որ յեօթներորդ գիրսն։

Քամօէնս քերթող լուսիտանացի եր-գեաց զարշաւանս Վասքոյ Կամայ յար-նելեան Հնդիկս։ Այլ քերթուածն այն բաց 'ի զժպատեհ խառնութենէ դիցա-պաշտութեան ընդ ճշմարիտ կրօնս, է ես անկանոն. բայց աշխոյժք 'ի նմա և եռանդն սաստիկ գտանին։

Քլոփշթոք քերթող գերմանացի եր-գեաց զԳալուստ Մեսիային վսեմ յոյժ.

բայց սակաւուց իմանալի վասն կարի մթութեանն և չափազանցական խմաստից։

Բաց 'ի սոցանէ են և այլ դիւցազներգակ քերթողք, Վալերիոս Փլակկոս և Լուկանոս լատինք, և Արիոսթոյ և Բեռնարդոս Թասսոյ և Գերնի և Կրացիանի իտալացիք, և այլք ոմանք, որոց քերթուածք անկատարք են յոյժ։

Են և կրկին քերթուածք վաղեմիք, Ֆինկալ և Դեմորա, որոց պարզ են հիւսք և բազմադէպ պատահարք զարդարեալ, և զօրավարկանքն 'ի նմա և ոգեշարժք ընդ ահաւորն և ընդ կորովին պատշաճապէս խառնեալ. և նկարագիրք բարուց 'ի նմա պէսպէսք և կենդանատիպք. բայց միայն հոգեղէն էակք յիշատակին ևեթ 'ի նմա։ Ոճ նոցա հանգոյն վաղեմի քերթութեանց, լի երևակայութեամբ և քաղցրայանգուցն ձևովք և նմանութեամբք։ Քերթող սոցին ճանաչի Ոսսիան որդի Ֆինկալեայ արքային կաղեդոնեանց բնակչաց հիւսիսակողման Սկովտիոյ, որ եկաց 'ի վերջ կոյս երրորդ դարու. և քերթուածք նորա աւանդեալք 'ի բերանոյ՝ պահեցան առ բնակիչս երկրին, մինչև

Մակփերսոն յանցեալ դարու հաւա-
քեալ զայնոսիկ, 'ի կեղտաց լեզուէ
փոխեաց յանգղիական արձակ բան.
ուստի Զեզարօթթի չափաբերեաց զայ-
նոսիկ յիտալական բարբառ: Վէպք
քերթուածոցն են արշաւանք Ֆինկա-
լեայ հօր քերթողին յիռլանտա, և յեր-
կաքանչիւր իսկ քերթուածսն ինքն իսկ
Ֆինկալ է դիւցազնն, իմաստութեամբ
զօրութեամբ մեծանձնութեամբ մար-
դասիրութեամբ և ազնուականութեամբ
կատարեալ, որպիսի դիւցազն ոչ այլ
ուրեք գտանի 'ի քերթուածս:

Հ. Զինչ է վիպասանութիւն.

Պ. Ազգ իմն դիւցազնական քերթու-
թեան՝ յաճախագոյնս արձակ բանիւ յօ-
րինեալ, և սահմանի՝ պատմութիւն առ
'ի հրահանգս բարուց կեղծեալ: Քանզի
ընդ սա և ընդ դիւցազնական վէպս
գրեթէ նոյն զանազանութիւն է որ ինչ
ընդ ողբերգութիւն և ընդ կատա-
կերգութիւն. զի դիւցազնականն զա-
ւագաց ևեթ արանց զմեծագործու-
թիւնս, իսկ սա առաւելապէս զհասա-
րակաց կենաց զանցս յանդիման առ-
նէ: Բայց քանզի դէպք և պատահարք
կենցաղոյս սովորականք ոչ միշտ զար-
մանալիք են և ազդողականք առ 'ի

խրատ, վասն որոյ վիպասանն առեալ հաւաքէ 'ի միասին հիւսս իմն և յաջողդութիւն զիպաց զարմանալեաց և հոգեշարժից, և փոխարէնս լաւութեանց և յոռութեանց ճշդագոյնս և արդարակշիռս քան որ սովորաբար 'ի կենցաղումս հատուցանին. որովք առաւել 'ի սմա զուարճանան և օգտին միտք քան յընթերցուածս պատմութեանց։

Առ արևելեան ազինս յաճախեալ էր յոյժ այս ազգ մատենագրութեան. և անուանեալ Գիշերքն արաբացիք հանճարեղք են և զուարճալիք, և յաճախեն 'ի նոսա խրատք։ Իսկ առ Յոյնս յոնիական և միլետացի վիպասանութիւնքն յիշատակեալք՝ որք չեն արդ 'ի միջի՝ կարի ցոփականք էին. և որ կանս այժմ՝ Ապուլէոսի և Աքիլլեայ Տատիոսի և Հեղիոդորայ վիպասանութիւնքն 'ի չորրորդ դարու գրեալք, չեն ինչ հանճարեղք։

Ի մետասաներորդ դարու հնարեցաւ նոր իմն ազգ վիպասանութեան ասպետականն անուանեալ, մոգս և հսկայս անճոռնիս 'ի ներքս ածելով, և զարս անթափանցս զինուց, և զէնս դիւթականս, ամրոցս օդականս, և զէպս սքանչելիս ըստ ոգիտութեան և ըստ

նանրահաւատ բարուց այնր ժամա-
նակի: Սկիզբն սորա եղև 'ի Փռովանս
գաւառի, ուր գաղղիացի բարբառ խօսա-
նեալ ընդ իտալականին՝ կոչէր հռո-
մէական, վասն որոյ և Ռոմանցօ վի-
պասանութիւնն կոչեցաւ: Տուրպինոս
արքեպիսկոպոս գաղղիացի համարի ա-
ռաջին գրիչ վիպասան, որ և գրեաց
զիրս Կարոլոսի մեծի և զիշխանաց նո-
րա 'ի վանել նոցա զՍարակինոսս. զոր
և Պոյարտ և Պէռնի և Արիոստոյ յետ
նորա վիպասանեցին:

Այս ազգ վիպասանութեան աճեաց
մինչև ցեօթնևտասներորդ դար, յո-
րում ժամանակի Զէրուանդէս սպա-
նիացի վիպասանութեամբն Տօն Քիշօ-
դեայ ծաղր կացոյց զասպետականն՝ յո-
րոյ ընթերցմամբ մոլեալ էին համազգիք
իւր: Ոչ ինչ նուազ օգնեցին 'ի խա-
փանումն նորին և փոփոխութիւն բա-
րուց, և անկումն դիւրահաւանութեան.
և յաջորդեաց նմին միւս այլ մերձա-
ւորագոյն բնականին, առանց հրաշալի
դիւթութեանցն և օդաթռիչ ամրոցաց
և առասպելապատում վիպաց: Բայց
տակաւին գոյր ինչ 'ի նմա զերահրաշ.
վասն որոյ երրորդ ինն ազգ վիպասա-
նութեան հնարեցաւ ընտանեկան, յո-

րում նմանութիւն բարուց, և լուսաւորութիւնք և յոռութիւնք ըստ բնականին 'ի ներքս մուծանին: Այսպիսիք են Ժիլպլաս, Մարիաննա, Եղիսաբէթ դշխոյ՝ որ և է իսկ թարգմանեալ առ մեզ յաշխարհիկ բարբառ: Պօղ և Վիրգինիա, Ռոպէնսոն, և այլն: Մարթ է և չորրորդ իմն ազգ վիպասանութեան համարել զԱնաքարսեայ ուղևորութիւնն և զհանգոյն նմին պատմութիւնս, որք թէպէտ և ամենայն մասամբք իցեն ճշմարիտք՝ այլ կեղծեալ հանգամանօք պաճուճին, առ 'ի զուարճացուցանել զընթերցողս հանգերձ առաւելագոյն օգտակարութեամբ: Օրինակ իմն. ճըշմարիտ է զի կային առ Յոյնս այն ամենայն արք երևելիք՝ զորս Պարթըլըմի 'ի ներքս ածէ, և գործեցին զպատմեալսն զամենայն. բայց Անաքարսեայ տեսանել զյոլովս 'ի նոցանէ, և որպէս ականատես և ականջալուր նոցին՝ պատմել զգործս նոցա և զբանս, կեղծիք են. և բնաւին իսկ ուղևորութիւն Անաքարսեայ մտացածին իմն է, զի և ոչ Անաքարսիս այլ բաց 'ի մեծէ իմաստասիրէն գտանի ոք լեալ: Արդ այս ամենայն կեղծիք առանց այլայլելոյ զճշմարտութիւն պատմութեանն,

զուարճալի յոյժ յօրինեն զայն , և զբարս ազգին և զբնաւորութիւն իւրաքանչիւր ուրուք ակներև յանդիման կացուցանեն ։

## ԴԱՍ ԻԱ.

### *Ողբերգութեան կանոնք :*

*Հ. Զի՞նչ է ողբերգութիւն.*

*Պ. Ողբերգութիւն 'ի սկզբանէ առ Յոյնս էր երգ իմն 'ի հանդէս սպանդարամետական տօնին , յորում նոխազ 'ի նուէր Դիոնիսի զոհէին . վասն որոյ Յոյնք կոչեցին զայն Նոխազերգութիւն ։ Թեսպիս նախ իբր 536 ամօք նախ քան զԹուականութիւն Փրկչին կացոյց զոմն 'ի պարն 'ի հանդիսա երգեցողաց , պատմել զդիւցազին ուրուք վէպս ։ Ապա Եսքիղոս 50 ամօք զկնի , երկուս ընդ միոյ կացոյց դերասանս 'ի պարն՝ խօսակցել ընդ միմեանս , և վէպս ինչ ցանկալիս և ողբաշարժս ածել 'ի տեսիլ . և տախտակամած բարձրաշէն կառոյց խաղետղ , շուրջանակի պատշաճ նկարուք զարդարեալ . և ինքն նախ 'ի յարդ և 'ի կերպարանս ած զողբերգութիւն , զոր ապա Սոփոկղ և Եւրիպիդէս ածին 'ի կատարումն ։*

Ողջերգութեան անկ է կրթել զմիտս կարեկցութեամբ ընդ թշուառացեալս, սիրով առ բարեբարոյս, և ատելութեամբ առ չարս: Նմին իրի թէպէտ և մարթ է քերթողին և հաւանական կեղծեօք շարժել զմիտս, այլ լաւ ևս յաջողեն պատրանք, եթէ հիմն ինչ ճշմարտութեան իցէ 'ի վէպսն ծանօթ ամենեցուն: Այս հաւանականութիւն կարևորագոյն մասն է 'ի վէպս ողբերգութեան. և առ այս խնդրին երրեակ միութիւնք, այսինքն է իրացն, տեղւոյն և ժամանակին.

Հ. Որպիսի՞ ինչ միութիւն իրաց խնդրի յողբերգութեան.

Պ. Խիստ ևս քան 'ի դիւցազներգութեան պահանջի աստ միութիւն, որպէս զի միտք առանց զբաղելոյ 'ի բազում՝ տացեն պարապ կրիցն յուզման: Բայց հանդերձ միութեամբն մարթ է յաճախել 'ի նմա զդէմս, թէպէտ և զգուշալի է չխուկել յոյժ զայնս, զի մի՛ բազմաչփոթ խրթնութեամբ նուաղեսցի զօրութիւն քերթուածոյն:

Ոչ միայն 'ի բովանդակ թատերերգութեան պահանջի միութիւն, այլ և յարարուածս իւրաքանչիւր՝ յորս վէպքն հատանին: Բաժանումն արարուածոց ան-

ծանօթ էր առ Յոյնս, այլ 'ի սկզբանէ մինչև 'ի վախճան անընդհատ վճարէին ողբերգութիւնք, և ոչ դատարկաբանայր երբէք թատրն. այլ յորժամ դերասանքն մեկնէին, պար երգեցողաց ըստ իւրաքանչիւր միջոց զերգսն յարմարէր. և ոչ չափ և թիւ և ժամանակ սահմանեալ էր մեկնելոյ դերասանացն, այլ ըստ պահանջելոյ միջոցն՝ մերթ երիւք մերթ եօթամբք և մերթ ութ գործիւք վճարէին ողբերգութիւնք:

Այլ արդ սովորութիւն է 'ի հինգ արարուածս հատանել զողբերգութիւն, որպէս և Ովրատիոս պատուիրէ: Բայց պարտ է քերթողին 'ի պատշաճ տեղւոջ առնել զհատուածն, ուր 'ի բնէ իսկ հատեալ իցեն վէպքն, և ուր մարթ իցէ համարել բազում ինչ 'ի միջոցի անդ ժամանակի գործեալ՝ որոց չմարթի գործել 'ի թատերն:

Յառաջնումն արարուածի պարտ է քերթողին ցուցանել բացայայտ զառաջարկութիւն ողբերգութեանն, և 'ի ցանկութիւն այնորիկ ածել զկացեալսն 'ի զնին, ծանօթս տալ զդիմաց իւրաքանչիւր՝ որ անդր 'ի ներքս մտանելոց իցեն, և զկիրս նոցա և զհանգամանաց անցիցն:

Յերկիրորդ՝ յերրորդ և 'ի չորրորդ արարչութեան տարւոյ պարտ է զծուարացուցանել զկենդանին, և ևս քան զևս յաճախել զկերակուրս տեսողաց։

Իսկ 'ի հինգերորդումն պարտ է կերպարանափոխ առնել զիրսն, և զհանգոյցն լուծանել, յորում հանճար մեծ և ճարտարութիւն քերթողին է. զի երբև ինքնին պարզեսցին իրքն, և մի փոփոխութեամբ զգեստուց, կամ ուղղութեամբ զիջերային կամ վրիպակ տեսութեան, որ ծաղրականք են։ Եւ դարձեալ զի պարզ իցէ լուծումն հանգուցին կամ յայտնութիւն իրացն, և մի բազմապէս պատահարօք և բազմութեամբ անձանց վճարեալ, որով զծուարիմաց լինի ունկնդրաց։ Անարժելի յայտ էր Յունաց լուծումն հանգուցին յայտնութեամբ անձին ուրուք՝ որ 'ի սկզբանն չիցէ ծանուցեալ. քանզի ազդէ այս մեծապէս՝ եթէ ճարտարութեամբ և բնական և անայլնկալ օրինակաւ յօրինեսցի՝ որպէս յԻդիպոսն Սոփոկղի, և 'ի Մերոպէն Վոլթերի և Մաֆֆէի և Ալֆիերեայ։

Չէ հարկ ողբերգութեան տխրութեամբ աւարտել, այլ լաւ է զի իցեն 'ի նմա հոգք և անձկութիւն և կարեկցու-

Թիւն ընդ վիշտս առաքինեաց, Թէպէտ և յաղջողեացի նոցա 'ի վախճանի. որպէս 'ի Գողողիայն Ռասինի, և 'ի Մերովպէն երեցունց ահա ասացեալ քերԹողացս։ Այլ սովորաբար անկ է ողբերգուԹեան տխրուԹիւն իմն առաքինական Թողուլ 'ի հոգւոջ։

Առ միուԹիւն իրացն կարևոր է և տեսարանաց իւրաքանչիւր ընդ իրեարս ճարտար կցորդուԹիւն. զի չէ օրէն ընաւ դատարկանալ Թատերն՝ խաղալկաց ամենեցուն 'ի բաց ելանելով, և այլոց 'ի տեղի նոցա փոխանակելով, տեսարան նոր անկցորդ ընդ նախորդին բացեալ։ Եւ ոչ օրէն է ելումուտ գերասանաց առանց յայտնի պատճառի։

Հ. Որպիսի՞ ինչ միուԹիւն ժամանակի և տեղւոյ խնդրի յողբերգուԹեան.

Պ. Առ միուԹիւն ժամանակի՝ հարկ է, զի որ ինչ յարարուածս իւրաքանչիւր կեղծին՝ չկարօտիցի առաւելագոյն ժամանակի քան զոր 'ի կեղծիս անդ անցանէ։ Բայց քանզի ընդ մէջ արարուածոց իւրաքանչիւր համարի միջոց ժամանակի առաւել կամ նուազ, մարԹ է զժամանակ իրաց բովանդակ ողբերգուԹեանն սահմանել 'ի քսան և 'ի չորս ժամս։ Իսկ առ միուԹիւն տեղւոյ՝ ոմանք

հարկ համարեցան անփոփոխ ունել զանսապատն 'ի տեղւոջ ուր սկիզբն առնէր ողբերգութեանն . վասն որոյ նախնիքն 'ի հրապարակի և յաշխարհամուտ վայրս կարգէին զանսապատն ուր մարթ իցէ ամենեցուն մատչել: Բայց բաղում ինչ օտար 'ի բնականէն վասն այնր գործէին առ նոսա, 'ի հրապարակի զաղտնածածուկս ամենայն գործեցեալ և խօսեցեալ: Նմին իրի արդիքս շատ համարին 'ի նմին ևեթ քաղաքի հաստատուն ունել զանսապատն, տեղի 'ի տեղւոջէ փոփոխելով զայն 'ի քաղաքի անդ, բայց սովորաբար յաւարտ արարուածոցն:

Հ. Որպիսի՞ ինչ դէմք խնդրին յողբերգութեան.

Պ. Գլխաւոր դիմաց ողբերգութեանն պարտ է ազնուականս գոլ և իշխանազունս, որպէս զի աղէտք նոցա ազդողագոյնք իցեն: Բնաւորութիւնք նոցա, մի բարեացն և մի չարաց ծայրացեալք իցեն. որպիսի պատուիրէ Արիստոտէլ: Քանզի միոյն ամենևին տարապարտ վշտակրութիւն դժպհի թուի, իսկ միւսոյն արժանահաս վիշտ ոչ ինչ արժանի կարեկցութեան: Այլ արդարոյ 'ի վշտակրելն տուեալ իցէ և պատճառս

ինչ յիւրմէ տկարութեամբ իւիք, որ յաճախէ 'ի մարդիկ և դժուարատարանելի իսկ իցէ։ Վասն որոյ ոչ է պարտ 'ի մարմնոյ յայսմիկ հետևել Յունաց, որք յանխորհելի ճակատագրէն և 'ի հրամանաց դից զամենայն չարիս առնեալ մուծանեն 'ի ներքս, որպէս յԵդիպոսն Սոփոկղի է տեսանել։

Քան զամենայն կիրս զօրացեալ են արդ յողբերգութիւնս սէր և տարփանք, որս առ հինսն չերևէր իսկ բնաւ։ Եւ Թէպէտ չիցէ պարտ մերժել զայն 'ի սպառ յողբերգութենէ, սակայն յաճախել զայն, և մանաւանդ երբ եկամուտ ինչ 'ի ներքս խառնել 'ի վէպսն, կարի անպատեհ է։ Պարտ է և զճշգրիտ և զսեփական բարբառ կրից ըստ դիմաց իւրաքանչիւր պատշաճել, զի զկիրս իւրեանց կարասցեն ազդել յունկնդիրս։ Կարևոր է առ այս ունել սիրտ դիւրազգաց, և 'ի նկարագրել զկիրս՝ լինել 'ի նոյին խռովազգած։ Լեզու կրից պարզ է և անպաճոյճ առանց կարի հանճարաբանութեանց և բարձր իմաստից, այլ յաճախութեամբ ձևոց՝ որ յուզելոց մտաց են ցոյցք, որպիսի են հարցուածք, բացագանչութիւնք և բացադարձութիւնք։ Դարձեալ և համառօտ

է, և ընդհանուր ըստ բանութեան կերպի։ Իմանամք բարոյականք չափով և ըստ պատշաճի 'ի կիր արկեալ 'ի մեծամեծ միջոց և յանձկութիւնս և յանտանելեկալ յեղափոխութիւնս՝ բնականք են բազում ուրեք և յաւելուն զգեղեցկութիւն քերթուածոյն, որպէս է տեսանել զայս 'ի Թատերերգութիւնս Մեթասթասիոյի։ Այլ 'ի կարի յաճախելն՝ կորուսանեն զոյժ և զազդուութիւն, որպէս յողբերգութիւնսն Սենեկայի է տեսանել։

## ԴԱՍ ԻԲ

Քերթողք ողբերգոց անուանիք.

Հ. Ո՞յք անունք կացին առ Յոյնս ողբերգուք անուանիք.

Պ. Ողբերգութիւն առ Յոյնս, որք նախածնողք եղեն այնորիկ, պարզ էր յոյժ ըստ հանգուցին և ըստ դիպացն, և միութեամբ տեղւոյ և ժամանակի ճիշդ և անթերի։ Առ նոսա և գիք 'ի ներքս խառնէին յողբերգութիւնս. և որ թերութիւն մեծ է՝ հրաշիւք ուրեք ուրեք լուծումն հանգուցին վճարէր։

Եւրիպիդես, որ հայր համարի յունական ողբերգութեան, լաւութիւնք մե-

ծամեծք ընդ Թերութիւնս խառն են՝ որպէս ամենայն սկզբնագիր մատենագրաց։ Աշխոյժք, կորով և եռանդն յաճախեն 'ի քերթուածս նորա, բայց գծուարիմաց է յոյժ. և զի ինքն այր պատերազմող էր, լի են ողբերգութիւնք նորա պատերազմական նկարագրութեամբք, և առաւել վսեմք են քան հոգեշարժք։ Ցեօթանասուն և աւելի ողբերգութեանց նորա եօթն միայն ապրեցան։

Սոփոկղ վեհ քան զամենայն ողբերգուս Յունաց, կարգաւորութեամբ հիւսուածոյն և վսեմութեամբ իմաստիցն առաւելու քան զամենեսին։ Ճարտար է'ի նկարագրութիւնս. և վէպք մահուն Եդիպեայ յԵդիպոսն իւր Կողոնէացի, և Եմոնեայ և Անտիգոնէի՝ յԱնտիգոնոսն, ամենակատար օրինակք են թատերական նկարագրութեան։

Եւրիպիդէս գորովականաւն առաւելու քան զՍոփոկղ. և իմաստք բարոյականք հոծ և խիտ են յողբերգութիւնս նորա։ Այլ 'ի հիւսուածն ոչ յոյժ ճարտար է, և ոչ ազատ'ի սադրանաց. և պարերգութիւնք նորա ոչ իբրև զՍոփոկղեայն պատշաճեալք ընդ առաջարկութիւն ողբերգութեանն։

Հ. Ո՞յք ոմանք կացին առ Լատինս և առ Իտալացիս ողբերգուք անուանիք.

Պ. Առ լատինացիս սակաւք յոյժ պահին ողբերգութիւնք, այսինքն է Սենեկայինքն ևեթ, որք թէպէտև ըստ մեծի մասին 'ի Յունաց առեալ՝ այլ յոյժ հեռի 'ի նոցայոցն գտանին, և առաւել 'ի նոսա փայլէ իմաստութիւն քան բնութիւն: Ի վերականգնել ուսմանց յԻտալիա, Իտալացիք և յայսմ մասին եղեն նախատիպ օրինակք Եւրոպայ. և յաճախեցին առ նոսա յանցեալ դարու ողբերգութիւնք ընտիրք. որպիսիք են Մերովպէն՝ որոյ քերթող Մաֆֆէի, Ոդիսեւսն՝ որոյ քերթող Լաձձարինի, Կորիոլանոսն և Դիդէն՝ որոց քերթող Յովհաննէս Պետրոս Ծանոթթի, Մանասէն և Սեդեկիայն և Դիոն՝ որոց քերթող Կրանէլլի: Բայց քերթողահայր ողբերգուաց առ Իտալացիս համարի Ալֆիէրի, որոյ են ողբերգութիւնք իբր քսան և երկու:

Հ. Ո՞յք ոմանք կացին առ գաղղիացիս ողբերգուք անուանիք:

Պ. Քոռնէյլ և Ռասին և Վոլթէռ զթատրերգութիւն 'ի Գաղղիա պանծացուցին յոյժ, գերազանցեալ և քան

զՑոյնս յանախութեամբ դիպաց և բաղձանօքն կրից, և ճշգրիտ նկարագրօք բարուց. արուեստ, կարգաւորութիւն, միութիւնք իրաց ժամանակի և տեղւոյ, ոճ պերճ և քերթողական, խիստ առ լինել իմաստք, և ամենայն օրէնք ողբերգութեան պահին 'ի նոսա։ Միայն թերութիւն նոցա է զի շատախօսք են և երկարաբան, որպէս ինքն իսկ Վոլթէր խոստովանի զայս, և բազում տեղիք նուաղ է 'ի նոսա եռանդըն և կորովն և բնիկ լեզու կրից։ Գեղեցկագոյնք և անուանիք յողբերգութիւնս Քոռնէյլի են Կիդն, Ովրատիոս, Պոլիեւկտոս և Կիննա։ Ռասինի՝ Գոթողիայն, Իփիգենիա, Փեդրա, Անդրոմաք և Միհրդատ։ Իսկ Վոլթեռի՝ Զայիրայն, Ալզիրա, Մերովպէ և Որբն Չինէացի։

Եղեն և առ անգղիացիս ողբերգուք. որպէս Շէքսփիր այր մեծահանճար, բայց առանց կիրթ ախորժակաց։ Բազումք են 'ի քերթուածս նորա հատուածք և տեսարանք ընտիրք, այլ չիք և ոչ մի 'ի նոսա ողբերգութիւն ամբողջ և ըստ կարգի. սակայն նկարագիրք բարուց և լեզու կրից պահին 'ի նոսա անթերի։ Յետ նորա կացին

առ անգղիացիս Տրայտըն, Է՛տիսըն՝ որոյ անուանի է ողբերգութիւնն Կատոնի, և այլք ոմանք ողբերգուք։

Հ. Տուր ինձ յօրինակ զհիւսուած միոյ յընտրելագունից ողբերգութեանց.

Պ. Գոթողիայի դատերն Յեզաբելայ իրըն յայտնի են 'ի սուրբ գրոց. զի սա 'ի մեռանել որդւոյ իւրոյ Ոքոզիայ արքայի՝ կորոյս զամենայն զաւակ թագաւորութեան 'ի տանէն Յուդայ և թագաւորեաց ինքն։ Բայց Յովսաբեթ դուստր Ոքոզեայ քահանայի, գողացաւ զՅովաս զորդի թագաւորին 'ի միջոյ որդւոցն կոտորելոց, և թագոյց զնա 'ի տաճարին զամս վեց. և ապա Յովիդայէ 'ի ձեռն զօրավարաց և զղևտացւոց թագաւորեցոյց զնա, տուեալ սպանանել զԳոթլիայն և զՄաթան ըղքուրմն Բահաղու։

Արդ Ռասին առեալ զիրս զայս 'ի վէպս իւրոյ ողբերգութեանն, համարի անցեալ զվեց ամս թագստեան արքայորդւոյն, և սկսանի զողբերգութիւնն այսպէս։

## ԱՐԱՐՈՒԱԾ Ա.

Տեսարանն է 'ի գաւթի տաճարին:

Տեսարան Ա. Աբեններ զօրավար ող-
բայ զաղէտս ազգին առ Յովիդայէ, և
զամպարշտութիւն Գոթողիայ և զՄա-
թանայ քրմին Բահաղու, և զոխութիւն
նոցա ընդդէմ Յովիդայեայ յայտ առնէ:
Յովիդայէ քաջալերէ զնա յուսով վախ-
ճան լինելոյ չարեացն 'ի ձեռն Նորին
իսկ Ինքեան. Նա վարանի, և քահա-
նայն յորդորէ զնա ապաւինել 'ի զօրու-
թիւնն Աստուծոյ:

Տես. Բ. Առաջարկէ Յովիդայէ Յով-
սաբեթի զխորհուրդ իւր թագաւորե-
ցուցանելոյ զմանուկն Յովաս: Յովսա-
բեթ ցանկայ իրացն, այլ երկնչի ընդ վը-
տանգ մանկանն, գորովի և արտա-
սուէ: Յովիդայէ խրախուսէ զնա 'ի զօ-
րութիւնն Աստուծոյ. և 'ի գրոյցս անդ
յայտնին պատրաստութիւնքն, և չև
ևս գիտել մանկանն զանձնէ թէ ով իցէ՝
սնանելով 'ի տաճարի անդ ընդ Զաքա-
րիայ որդւոյ Յովիդայեայ որպէս մա-
նուկ ոմն որբ և անծանօթ:

Տեսար. Գ. Զաքարիա և Սաղոմէ

քոյր նորա ընդ այսր դստերացն զև-
տացուց պատրաստին յանդիման լինել
տեառն 'ի հնչիւն փողոյ տարեդարձի
ընդունելութեան պատգամացն 'ի Սի-
նա : Ցոլսաբեթ յորդորէ զնոսա յօրհ-
նութիւնս տեառն :

Տես. Դ. Պարերգութիւն դստերացն.

Գաբն. Ըզնա երկիր լըրիւ իւրով
Ըզնա հնչէին ալիքն 'ի ծով.
Փողք և տաւիղք զանուն նորա
Հընչեսցեն միշտ անլըռելի.
Երիցագոյն պաշտեսցի նա
Եւ քան ըզծնունդ ժամանակի :
Նոցին և մեր միաշունչ
Խառնեսցին երգք 'ի մըրմունջ :
Ոհ. Ընդ վայր բըռունք անհամբոյր,
Խըռնուն զբերան օրհներգու.
Զանուն նորա օր աւուր :
Պատմէ յաւէրժ անլեզու :
Գաբն. Ըզնա երկիր. Ըզնա հընչէն. Նոցին և :
Այլ. Քև յակնապարար ներկանին 'ի գոյն
ծաղկունք երփնազարդ,
Գըծնին վարսագեղ ծանրանան կողերք
'ի պըտուղ պարարտ,
Ընդունի երկիր շող յարեգակնէ և
շող յաստեղաց,
Եւ փոխադարձէ տոկոսեօք հանդերձ
ըզբերս արմըտեաց :
Այլ. Հրաման ածէ զարեգակամբ ծագել
ըզլոյս իւր յերկիր,

Ձեռին պարգեւք են Աստուծոյ Ներշնչեալ
Նորա կենսաձիր:
Այլ քան ըզկոյս մեծ են մեզ պար-
գեւք Խուրոցն օրինաց,
Եւ անկըշիռ ընդ հանուրց աստուա-
ծատուր պարգեւաց:
Այր· Լեառըն Սինա բարձրադիտակ,
Յաւերժացո ընդ մայրիս քո
Զմեծի աւուրս այս յիշատակ,
Յոր 'ի հրադեղ քո գագաթան
Վարագուրաւ ընդ խիտ ամպոց
Շողացոյց տէր յաչըս մարդկան
Զադօտ Ներշնչ խուրոց փառաց:
Ու ե՞նչ հուրդ այդ, աղէ ասա,
Զի՞նչ այդ ցոլմունք փայլատականց·
Ծուխ թանձրամած յուղխից տե-
պար,
Փողոց հընչիւն, ձայնք որոտմանց,
Եւ շառաչող օդոց գուպար:
Թէ տապալել զտարերց սահման,
Կամ թէ զերկրի՞ եկաւորէ
Քանդել զհիմունս յաւերժական:
Այր· Ոչ, ոչ առ այդ· գայ նա միայն
Ընտրականի իւրոյ տոհմին
Օրէնըս տալ անմահական·
Գայ 'ի ծագել առ հարթըն մեր
Զխուրոցն ըզկոյս պատուիրանաց,
Եւ ըզսիրոյն տալ մեզ պատուէր:
Պար· Ո՛վ աստուածագիծ օրէնք սըրբու-
թեան,
Ո՛վ անմահարար երջանիկ հրաման,

Ի ձեզ բարութեան և արդարու-
թեան,
Եւ ոչ այլ ուրեք իցէ օթևան։
Ո՛վ, զի՞ գեղեցիկ և զի՞ վայելուչ,
Սիրոյն Աստուծոյ գոլ վերընկա-
լուչ։

Ոտ. Ըզվիշապն եգիպտական
Թունաւոր 'ի ջուրսըն Նեղոսի,
Զախոյախեաց մեր յանդգնեան'
Ըզլուծն 'ի մէնջ բարձ ըզնորին.
Ած ըզմեզ ընդ անապատ
Հայցիւ ջամբեալ 'ի հրեշտակաց.
Պարգևեաց, ո՛վ Տէր առատ,
Զանձն և զօրէնըս սըրբութեան.
Այլքաննեաց փոխան բարեաց
Ոչինչ խընդրեալ՝ սիրոյն 'ի բաց։

Նոյնն. Յաղթս ծովուն արկ նա հեղձուած,
Ջուր յանձրևոյն փառացոյց վիմաց,
Զանձն և զօրէնըս սըրբութեան,
Ո՛վ Տէր առատ, մեզ պարգևեաց։

Այլ ոտ. Զի՞ ծառայաբար հարկանիս 'ի դող
Ո՛ ապաշնորհ յերախտիս.
Յայսքան բարութեանց Աստուածըն
տըւող
Զի՞ որդեակս ոչ հայիս։
Այսպէս պըտղաւորա՞ւ սիրով քո բե-
կանի,
Ա՞յսչափ անմէտ ես 'ի սէր.
Գերեացն է ընաւթիւն պատուել ա-
ահի,
Լէր դու որդեացըն պատկեր։

## ԱՐԱՐՈՒԱԾ Բ.

*Տեսար . Ա. Դառնայ Յովսաբեթ առ պարն, 'ի միասին ընդ նոսա յանդիման լինել սեղանոյ տեառն :*

*Տես . Բ. Զաքարիա հասեալ տագ-նապաւ գուժէ զմուտս Գոթողիայ 'ի տաճար անդր, և զՅովիդայեայ մեր-ժել զնա 'ի բաց 'ի սրբութեանցն :*

*Տես . Գ. Գոթողիա տագնապեալ խնդրէ զՄաթան :*

*Տես . Դ. Աբեններ հնարի ցածու-ցանել զցասումն նորա ընդ Յովիդայէ :*

*Տես . Ե. Գոթողիա պատմէ զտեսիլն ահաւոր երևութացեալ նմա 'ի քուն, յորմէ կասկած առեալ զմանկանէն՝ հե-տազօտէ զնմանէ : Աբեններ փարատէ զերկիւղ նորա : Մաթան գրգռէ զդշ-խոյն բառնալ զմանուկն 'ի կենաց :*

*Տես . Զ. Մաթան յաճախէ զերկիւղ դշխոյին բանսարկութեամբ, իբր . թէ Յովիդայէ թագաւորեցուցանել խորհի զմանուկն՝ թէպէտ արքայորդի թէպէտ իւր որդի իցէ նա :*

*Տես . Է. Գոթողիա հարցփորձ առնէ զՅովսաբեթ և զմանուկն . և 'ի խօսից մանկանն 'ի գութ շարժեալ, յորդորէ*

զնա զալ յարքունիս իւր. մանուկն հրաժարէ. դշխոյն 'ի բաց գնայ արտմտեալ ընդ դաստիարակիչս նորա ընդդէմ իւր։

Տես. Ը. Զրոյցք Յովսաբեթի ընդ Յովիդայեայ զիրացն։

Տես. Թ. Պարերգութիւն դստերացն.

ՈՃ. Ցընծա՛ երկիր յուսապատար,
Նոր շողեաց աստղ յերկնից կամար։
Թէ ճառագայթ սըփռէ այսպէս,
Նորանշոյլ եկեալ 'ի տես,
Զխորդ չըքնաղ և անպատում
Փայլեսցէ սա յաւուր միում։
Թէ զպերճութիւն ատից կոխան
Անձնէ մանուկ անտախական,
Թէ չտայ այժմէն ունկն 'ի հրապոյր,
Զի՞նչ լիցի սա յաւուր միում
Ծաղկեալ ալեօքըն ձիւնաթոյր։
Ա.ռ. Մինչդեռ 'ի բազմին գողդողեան կըռոց
Ճեպին խուռնընթաց նուիրաբերք
խընկոց,
Արի պատանեակ ըզրդի 'ի նախանձ,
Քարոզ անմեհեր անմահին փառաց.
Սատանէ ապաշնալից՝ իբր առ Յեզաբէլ
Հրաղէն մարգարէն երբեմն սատակէր։
Ա.ր. Մարգարէ՛ արդեօք լիցես դու շառա-
ւեղ,
Ո՞վ զազգատոհմըդ պատանեակ՝ զա-
ւակ անմեղ։

Այլ. Միւս Սամուէլ դու սրբասուն պատա-
նեակ,
Աստուածութեան սեղանոյն զարդ և
սպասեակ.
Իսրայէլին յուսոյ եղև նա նեցուկ,
Մինչ 'ի զո՞ւր և մեք 'ի քեզ յուսաս-
ցուք:

Այլ. Զո՛ր երանի քեզ կարդամ
Սիրեցելոյդ յանմահէն,
Զոր 'ի պարգևըս փարթամ
Ծընեան երկինք և պահեն:
Զուր թագուցին քեզ թակարդ
Անպարըշտաց ժողով ժանգ.
Զոր տէր խրատէ՝ ոչ է մարթ
Վարմից նոցին գալ պատանդ:

Գործ. Քեզ երանիք անըսպառ,
Երկնից քարոզ անպատակառ.
Քեզ երկնայնոցն օրհնաց
Աստուածաւանդ խորագըգաց:

Ոհ. Առաքինութեան դեռ բողբոջ մատաղ,
Է՞ր յայսքան վըշտաց նեղի 'ի գըմբաղ.
Ա՜ւ խիղճ, ով տէր, 'ի խըղճալի սիրոյդ,
Դիպին ընդ առաջ մարդոյ խոչք և
խութ.
Ընդէ՞ր ըղձալաւ պատրին տարապարտ
Թշնամիք ահեղ տալ ճակատամարտ:
Ծածկեցին զերկիր ժողովք ամպա-
րիշտք,
Ո՞ւր արդ սուրբք քոյին թաքիցեն ան-
վիշտ:

Այլ. Լեառըն Սիոն աստուածաբնակ,

փախիցեն անհետ ,
Եւ զի՞նչ 'ի նոցունց թողայցի մարդկան...
Այն զոր ցայգական անուրջք խաբեբայք
Թողուն 'ի ցերեկ
Պատկեր անէակ ,
Մինչ ըղձեա քնոյ թռուչին փախըս-
տեայք :
Ո՜վ անօրինին արթնութիւն տխուր .
Ի խորախուժս անձառ
Աղքատին թշուառ.
Ընդ քեզ զուարճակից մինչ բազմի ան-
գութ ,
Քամեսցեն նոքա մինչև 'ի յատակ
Զոր պղծախըմբեր
Նոցին խառնեցեր
Յաւուր քո ցասման դառնութեան բա-
ժակ :
Պար. Ո՜վ քուն վաղանցիկ ,
Արթնութիւն ահեղ ,
Աշխարհ խաբուսիկ :

## ԱՐԱՐՈՒԱԾ Գ.

Տես. Ա. Մաթան և Նաբաղ մտե-
րիմ նորա խնդրեն խօսել ընդ Յովա-
բեթի :
Տես. Բ. Մանուկն Զաքարիա ազդ-
առնէ նորա չմտանել 'ի վայրն անմա-
տոյց անսրբոց :
Տես. Գ. Դստերքն զարհուրեալ ե-

լանեն 'ի բաց ։ Մաթանայ ընդ Նաբաղայ խոստակցութեամբն յայտնին վարանք և տագնապ դշխոյին, և պատճառք ոխերիմ թշնամութեան Մաթանայ ընդ Յովիդայեայ, և այլ կարևորք։

Տես. Դ. Մաթան խնդրէ խոստամամբք 'ի Յովսաբեթէ զմանուկն. կասկածելի։

Տես. Ե. Հասանէ Յովիդայէ, մերժէ զնոսա 'ի բաց։

Տես. Զ. Դարձեալ սկսանի Յովսաբեթ երկնչել վասն մանկանն. Յովիդայէ քաջալերէ զնա 'ի հաստատումն իրացն։

Տես. Է. Պարերգութիւն դստերացն։

Պարն. Առ քեզ գոչեն, տէր տէր, անձինք
ծարաւեաց,
Ինչեն, 'ի սիրտ մեր բանք քոյոց պատ-
գամաց,
Իբր 'ի գարնան կանաչագեղ 'ի դալար,
Այգուն այգուն ծաւալի ցօղ զովա-
րար։
Յովէդ. Զայնի խմբում երկինք լերունք ունկնդիր,
Աստուածախօս լուիցէ բանիս և եր-
կիր։
Մի՛ ասասցես զաւակըդ դու յակո-
բեան,
Եթէ նիրհէ երբէք քոյին պահապան։

Գործ. Մերթ ըղձարեաց զուարթէ Նա
սպառնալիս,
Եւ մերթ բարեաց զուշակէ մեզ աւե-
տիս.
Բարբէ, զիարդ ձեռին ամոլք միալուծ,
Սէր այսպիսի ընդ այնքանեայ ցասման
ցոյց:
Ոճ. Հուր 'ի Սիոն ճարակեսցէ մոլեգին,
Եւ տարագարդ հիմունք Նորա քան-
դեսցին:
Այլ. Յաւերժացին հիմունք Նորա. անխա-
խուտ.
Ո՞ւր անմահին խոստումն երբէք գի-
պաւ սուտ:
Առաջ. Անշըքեացի զերծ 'ի զարդուէն և Թա-
փուր.
Երկ. Գըձնեալ զարդուք շուք առցէ Նա ընդ
հանուր.
Առաջ. Տապալեցի՛ իջցէ 'ի վիհս անգընդոց.
Երկ. Բարձր 'ի ճակատ կըցեսցի Նա ընդ
ամպոց:
Առաջ. Նախատինք մեծ.
Երկ. Ո՛վ պերճութիւն անպատում.
Առաջ. Գործք արտասուաց.
Երկ. Ո՛վ ցընծութիւն անտրտում:
Երրդ ոճ. Մի՛ խռովեսջիք աստուածընտիր ժո-
ղովուրդ,
Յաւուր միում լուսասցի քեզ այդ խոր-
հուրդ:
Երեքին. Համբոյր մատո ձեռին Նորա մեծա-
սաստ.

Քաղջալերեաց սիրոյն 'ի յոյս բարե-
բաստ ։
Այլ. Ո՛վ երջանիկ սիրտ որ հարաւ քեզ 'ի սէր,
Եւ 'ի հրամանս քո, տէր, կայ զտիւ և
զգիշեր ։
Ամպարըշտաց մինչ ծըփին սիրտք իւր
ըղձով,
Խաղաղութիւն ամբրէ 'ի նմա անվըր-
դով.
Ոչ 'ի ստորև ոչ 'ի վեր քան զարփին,
Երանութիւն չիք քան ըղձոյն մտհա-
ցուքն ։

## ԱՐԱՐՈՒԱԾ Դ.

*Տես. Ա. Յովսաբեթ պատրաստէ զթագն և զմատենանս սուրբս. մանուկն զարմանայ ընդ իրսն ։*

*Տես. Բ. Յովիդայէ թագաւորեցուցանէ զՅովաս, և անկեալ երկրպագէ մանկանն. նա այլ յայլմէ լինի, և քահանայն յայտնէ նմա զամենայն զգաղտնիսն ։*

*Տես. Գ. Յովիդայէ յանդիման առնէ ղևտացւոց զընիկ թագաւորն, պատմելով նոցա զամենայն անցսն ; և յորդորէ զնոսա և երդմնեցուցանէ մարտնչել հաւատարմութեամբ 'ի վերայ նորա. երդմնի առնէ և զթագաւորն 'ի*

պահպանութիւն օրինաց, և տայ նմա խրատս խանդաղատելիս ։

Տես. Դ. Ցայտնի Ցովլաս պարուդստերացն, և ամենեցուն որ 'ի տաճարին ։

Տես. Ե. Գուժկան գալոյ դշխոյին զօրօք 'ի վերայ տաճարին ։ Զարհուրի Ցովսաբեթ. Ցովիդայէ կարգէ 'ի դաւրանի զղևտացիս զինեալս, և խրախուսէ զամենեսին ։

Տես. Զ. Պարերգութիւն դստերացն ։

Սաղմոս և պար դստերաց.

Պար. Մատիք մատիք, որդիք Ղևեայ,
Տիրահրաւէր 'ի պատերազմ.
Եղծցի բանակն աստուածամարտ,
Թէպէտ ահեղ և պընդակազմ ։
Ա՛հ, ոչ ուրեք մարտ փառաւոր
Քան զոր բացաւ քեզ ընդ առաջ.
Ըզնախահարց ձերոց սուսեր
Ի վրէժխնդիր շողացոյց աջ ։
Մատիք մատիք որդիք Ղևեայ,
Տիրահրաւէր յայս ասպարէս.
Եւ արքայիդ և Աստուծոյ
Ձեօք փայլեսցէ փառացն հանդէս ։
Ոգ. Ո՞ւր են, Աստուած Իսրայէլի,
Տարափք նետից քոց վրէժխընդիր,
Զոր 'ի յամպոցդ աղեղանէ

Ի քում ցասման տեղաս յերկիր։
Թէ փոխեցար 'ի բնութենէդ.
Ո՞չ ևս էցես տէր նախանձոտ.
Թէ թուլացա՞ւ աղեղըն քո,
Ո՞չ ևս ճայթէ նետ մահահոտ։
Այ. Դա՛րձ, գըթութեանց տէր, դարձ առ
մեզ,
Ո՞ւր են խնամք քո մըշտաղեղ.
Որ շուրջ ըզմեզ են՝ յարհաւրաց
Փըրկեալ զորդիս քո բազմամեղ։
Մինթէ մեղա՞ց ևեթ մերոց
Յունկըն քոյին ազդէ բողոք.
Ո՞չ և խընամք քո որդեսէր
Ի մաղթանաց զիջցի յողոք։
Այւ. Ահա 'ի քեզ լարեաց զաղեղն
Ամպարըշտաց ժողով ժըպիրհ,
Եւ 'ի քեզ տէր ուղևորէ
Յանդուգն ըզնետ իւր գըհալիր։
Անյիշատակ լիցին, ասէ,
Տօնք անմահին 'ի յերկրէ.
Ըզլուծ նորա թօթափեսցուք,
Ազատեսցին մահացուք.
Ի սայր սըրոյ մեր 'ի տապաստ
Անկցի սըրբոցն իւր երաստ.
Յաւեր դարձցին սեղանք խընկոց,
Եւ խառնակոխ 'ի փողոց.
Փառաց ու անուանն առ հասարակ
Բարձցի յաւէրժ յիշատակ.
Ոչ ինքն և ոչ օծեալ նորա,
Մի՛ տիրեսցեն մեր վերայ։
Պար. Ո՞ւր են, աստուած Իսրայէլի,

Տարտամիք նետից քոց վրէժխընդիր ·
Թէ թուլացած աղեղըն քո ,
Ո՞չ ևս տեղայ նետս 'ի յերկիր ։
Ոռ. Ո՛վ հրաշագեղ բընի զարմիդ ,
Դու վերջահաս փըթթեալ ծաղիկ ,
Թագաւորաց մերոց նըշխար
Պահեցար դու չարաբաստիկ ։
Ա՛հ թէ 'ի սուր անկարեկիր
Խորթացելոյ քոյոց ծնողքդ ,
Տեսցուք ըղջեղ խոց միանգամ ,
Քամեալ զյետին արեան քո շիթ ։
Թէ յանմահից ոք երկնաւոր ,
Եկաց պաշտպան քեզ առընթեր ,
Եւ մահացու 'ի հարուածոց
Ըղթըրճամայն վրիպեաց սուսեր ·
Կամ յանմըրչուլ 'ի դամբանէն ,
Ձայն 'ի յերկնից կենդանանալիր ,
Զանձին քոյին վերկենցաղեաց ,
Ի մեռելոց դող կենսակիր ·
Այլ. Մի՛ տէր մի՛ սմա գրեսցես զոճիրս ,
Ըզհեստելոցն 'ի քէն իւր հարց ·
Մինթէ 'ի սպա՞ռ թողցես ըզսա ,
Սըմա զնոցա՞յն տաս փոխադարձ ։
Պարհ. դարձ. Ու՞ր են.. Որ շուրջ.. Փրկեա՛ ։
Ոռ. 'ի Ըն. Ա՛հ , ո՞չ լըսէք քորք սիրուհիք ,
Ըզձայն փողոյն տխուրացի ։
Սաղ. Այլ և վայրապ զօրականին
Գըրդռի արմուկ 'ի բազկի ։
Ա՛հ , 'ի շաչիւն զինուց նոցա
Սիրտ իմ 'ի դող հարկանի ։
Օ՛ն , փախիցու՛ք 'ի տեղւոջէս ,

Տեղի տացուք փոյթ առնի,
Պատրաստարել 'ի սրբութեանցն
Ամրածածուկ հովանի ։

## ԱՐԱՐՈՒԱԾ Ե.

Տես. Ա. Զաքարիա և քոյր նորա և պար դստերացն զարհուրին ընդ շաչիւն զինուցն, և ընդ խուճապ զևտացւոց ։

Տես. Բ. Հասանէ անակնկալ Աբեն֊ներ զերծեալ 'ի բանտէ ։ Յովիդայէ յայտնէ նմա զգաղտնիսն ցայնվայր ան֊ծանօթս նմին ։ Աբեններ խրախուսէ 'ի պաշտպանութիւն արքայորդւոյն ։

Տես. Գ. Յովիդայէ տայ զկարևոր հրամանս ։

Տես. Դ. Յովիդայէ բազմեցուցանէ զՅովաս յաթոռ ընդ վարագուրաւ, և հրաման տայ մուծանել 'ի ներքս զդըշ֊խոյն հանդերձ թիկնապահօքն իւրովք, և փակել զդրունսն ։

Տես. Ե. Դշխոյն մտեալ 'ի ներքս սպառնալեօք և սրտմտութեամբ պա֊հանջէ զմանուկն ։ Յովիդայէ բանայ զվարագոյրն, և ահա Յովաս բազմեալ 'ի գահոյս, և Աբեններ առ նմա, և բազմութիւն ղևտացւոց սուսերաւորք շուրջ զնովաւ. և յայտնէ զազգ և զի֊

րաւունս մանկանն ։ Դչխոյն զարհու֊րի ․ բանին խորք տեսարանին , և դև֊տացիք սպառազէնք խուժեն յամենայն կողմանց 'ի թատրն ։

Տես ․ Զ ․ Ազդ լինի ցրուել զօրաց դշխոյին 'ի լուր թագաւորութեան Յո֊վասայ և ըմբռնելոյ դշխոյին 'ի ծուղակ ։ Յովիդայէ հրամայէ քարշել զդշխոյն արտաքս 'ի սուրբ տեղւոյն , և սպանա֊նել զնա ։

Տես ․ Է ․ Յովիդայէ ձայն տայ ղևտա֊ցւոց՝ածել զժողովուրդն յուխտ հաւա֊տարմութեան ընդ բնիկ թագաւորին ։

Տես ․ Ը ․ Լուր հասանէ կատարելոյ սպանութեան դշխոյին և Մաթանայ ։ Յովիդայեայ յորդորական խրատուն առ թագաւորս վախճան առնի ողբեր֊գութեան ։

Այսօրիկ են որպէս թէ կմախք ող֊բերգութեանն , զորս ապա քերթողն վեհ և գեղեցիկ իմաստիւք , և զորովա֊կան և հոգեշարժ կրիւք , որպէս ջլօք և մարմնով պատեալ , և քերթողական ձևովքն և ասացուածովք վայելչա֊ցուցեալ , և առանց խոտորելոյ 'ի բնա֊գրէ սուրբ գրոց՝ յաւելեալ զկեզծիս , և ճարտար հանգուցիւ անծանօթու֊թեան մանկանն 'ի վարանս կալեալ

զմիտս մինչև ցվախճան, և ընդ բազմափոփոխ տեսարանս պահեալ զպարզութիւն, ամենակատար ընծայէ օրինակ ողբերգութեան։

## ԴԱՍ ԻԳ

### Կատակերգութեան կանոնք :

Հ. Զի՞նչ է կատակերգութիւն.

Պ. Հանգոյն ողբերգութեան ձևացութիւն ՚ի տեսարանի, զուարճաբար հրահանգելով զտեսօղս, և ծաղր կացուցանելով զմոլորութիւնս և զյոռութիւնս։ Նմին իրի վէպք ՚ի սմա ոչ զաւագաց արանց, այլ զհասարակաց կենաց զանցս յանդիման առնեն։ Կատակերգութիւն կրտսեր է ժամանակաւ քան զողբերգութիւն, բայց ՚ի նոյն ՚ի սպանդարամետական տօնս երևի ծնեալ։ Միութիւն իրի տեղւոյ և ժամանակի, տեսարանաց ընդ միմեանս անընդհատ կցորդութիւն, խաղետեղն չմնալ դատարկ, դերասանացն չելանել և չմտանել անպատճառ, և այլ ևս կանոնք ողբերգութեան նոյնք և ՚ի սմա պահանջին։

Ամենայն ազգաց և ամենայն ժամա-

նակաց իւրք մարթին 'ի դէպ գալ ողբերգութեան, այլ ոչ և կատակերգութեան. զի յոռութիւնք մեծամեծք և առաքինութիւնք և բռնագոյն կիրք նոյնք են միշտ և անփոփոխ յամենայն ազգս և 'ի դարս. այլ թերութիւնք մանունք հասարակաց կենաց՝ որ պատկանին կատակերգութեան, ըստ ազգաց և ըստ ժամանակաց փոփոխին. և ծաղրականք առ մին, ոչ նոյնպիսիք են առ այլս։ Նմին իրի որ հրահանգելն կամի զազգ իւր, պարտ է նմա զախտս և զթերութիւնս ժամանակակցացն իւրոց և զհամազգեաց նշաւակել 'ի թատեր։ Բայց զգուշալի է 'ի նկարագիրս բարուց՝ մի քան զբնականն ստուարացուցանել զծաղրելին, այլ որպէս յամենայնի՝ հետևել և 'ի սմա բնականին։ Եւ ոճ բանից պարզ խնդրի 'ի սմա և ընտելական և եռանդուն, առանց նուաստ երգիծանաց և զազրաբանութեան։

Ըստ փոփոխել ժամանակաց՝ երիցս կերպարանափոխ եղև կատակերգութիւն առ Յոյնս։ Վաղեմին էր երգիծաբանութիւն իմն յայտնի և անպատրուակ, որոյ վէպս ճշմարիտս 'ի տեսիլ ածեալ, զոր ոք կամէրն՝ ծաղր կացուցանէր ամբոխին յանուանէ՝ հան-

դերձ ձեւովն և շարժուածով, և դիմակաւն իսկ հանդուռնատիպ։ Այսպիսիք են կատակերգութիւնք Արիստոփանեայ, յորոց կան ցարդ մետասանք։

Յետ Արիստոփանեայ արգելլին օրէնք զվնասակարն զայն ազգ կատակերգութեան, և յարեաւ միջինն։ Այլ սա ևս վեր 'ի վերոյ պահեալ զօրէնսն, ընդ կեղծ անուամբք պատկերս ճշմարիտս ճանաչելիս տեսողաց կենդանագրէր։ Եւ սա տևեաց մինչև ցաւուրս Աղեքսանդրի. առ որով ստեղծաւ այժմուս կատակերգութիւն որ վէպս և անուանս կեղծս 'ի տեսիլ ածէ 'ի պատկեր հասարակաց կենաց։ Մենանդր 'ի Յունաց անուանի գտաւ յայս ազգ կատակերգութեան. այլ իբր յերկերիւր կատակերգութեանց նորա, զորս աւանդեն Թարգմանեալ Տերենտեայ 'ի լատին բարբառ, պատառիկք ևեթ հասին առ մեզ։

Ի լատինացւոց Պղաւտեայ միայն և Տերենտեայ կատակերգութիւնքն պահին։ Պղաւտեայ ազդու է ոճն և ոգի ծաղրաբանութեան. այլ ուրեք ուրեք թերի է և անհարթ ըստ արուեստին. եւ խեղկատակութիւնք եւս տգեղք գտանին 'ի քերթուածս նորա։ Իսկ Տե-

րենտեայ ընտիր է ոճն ողորկ և քաղց-
րալուր, գրուցատրութիւնք նորա պատ-
շաճք և վայելուչք, և վէպք աշխու-
ժիւքըն և պարզութեամբ ախորժելի.
միայն պակասեն 'ի նմա դէպք և փո-
փոխմունք անակնկալք։

Հ. Ո՞յք եղեն յարդի քերթողս կա-
տակերգուք անուանիք.

Պ. Առ Իտալացիս Փաճիօլի, Նեյլի,
և անուանի ևս քան զնոսա Կոլտոնի.
որ ճշգրտատիպ նկարագրութեամբք
բարուց և ընտելական զրուցատրու-
թեամբք գերազանցեաց։ Բայց միու-
թեան տեղւոյ ոչ զգուշանայ, ևս և 'ի
միում արարուածի. և ոճ նորա կարի
հետևակ է, և յաճախեն 'ի նմա անարգ
խեղկատակութիւնք։

Յետ նորա կացին կատակերգուք ա-
նուանիք Ալպերկա́թի, Աւոգա́թոյ, և
Նո́թոյ։

Գաղղիացւոցն կատակերգութիւնք
կանոնաւորք են և անստգտանելիք։
Բազումք կացին առ նոսա կատակեր-
գուք անուանիք. Ռընեար, Տիւֆրեւ-
նի, Տանքուռ, Տէթուշ, և Մարիվոյ.
այլ գերազանցեաց զամենեքումբք Մո-
լիէռ քերթողահայր կատակերգուաց։
Սա գիտաց զյոռութիւնս մարդկան և

զմոլորութիւնս արդարև ծաղր կացուցանել, և զծաղրելի բնաւորութիւնս կենդանատիպ նկարագրել հանդերձ զուարճախօսութեամբ: Այլ ուրեք ուրեք յաճախէ բանս դժպհիս և վնասակարս պարկեշտ լսելեաց, և զհանդոյցս վիպացն բռնազբօսելով լուծանէ:

• Ի սոյն կարգ կատակերգութեան դասելի են և զաւեշտական քերթութիւնք, զորոց զնախկին օրինակ ետ Հոմերոս 'ի պատերազմն մկանց և գորտոց: Նմին նմանողք եղեն յիտալացւոց Լիբբի 'ի Մալմանթիլն, Թասսոնի 'ի Դոյլն յափշտակեալ, Պրաչիօլլինի 'ի Կադդիցն, և Բասսէրոնի 'ի վարս Կիկերոնի: Ի գաղղիացւոց Պուալօյ 'ի Գրակալն. և յանգղիացւոց Բոփ 'ի Գիսակն յափշտակեալ:

Ընդ սովաւ բովանդակին և այլ ազգի ազգի քերթուածք և երգք ծաղրականք:

Այս ազգ քերթութեան դժուարին է յոյժ՝ որոց չիցէ 'ի բնէ հանճար ծաղրածութեան. և չէ պարտ այնպիսեաց 'ի վեր քան զկար և զբնաւորութիւն իւրեանց ձեռնարկել 'ի գործ,՝ զի մի փոխանակ ծաղրածութեան ինքեանք ծաղր կացցեն ընթերցողաց:

Հ. Զի՞նչ է թատերգութիւն երաժշտական.

Պ. Ողբերգութիւն կամ կատակերգութիւն երաժշտօրէն հանդերձ նուագարանօք արտասանեալ: Ի տալացւոց է գիւտս այս, և ազգոյ յոյժ՝ բանաստեղծութեան և երաժշտութեան իրերօք 'ի սմա օգնեալ: Բայց դժուարին է յոյժ քերթողին յաջողել 'ի սմա. զի պարտ է 'ի համառօտութեան պահել զամենայն կարգս թատերգութեան, և ստէպ ևս 'ի սմա փոփոխել զկիրս առ 'ի փոփոխումն երաժշտութեանն, մի՛ երկարել երբէք զխօսս, և քան զխօսս յաճախել զգործողութիւնս. վասն որոյ և կոչի սա յիտալացւոց Օ՛բերա, որ թարգմանի Գործողութիւն կամ Արարուած:

Երկուք միայն մինչև ցայժմ գտան առ իտալացիս անուանիք յերաժշտական ողբերգութեան, այսինքն են Ծէնոյ և Մէթասթա՛զիոյ. և սոքին իսկ ոչ են զերծք ամենևին 'ի ստգտանաց: իսկ 'ի ծաղրականն չև ևս ոք եկաց անուանի հաւասար սոցին:

Հ. Ո՞րք են ազգերք ծաղրածութեան.

Պ. Յամենայն ծաղրականս անյարմա-

րութիւն ինչ ըմբռնեն միտք մեր․ զոր օրինակ եթէ ժմարն պանծացի որպէս գիմաստուն, և վատն իբրև զարի։ Եւ այս անյարմարութիւն որչափ անակըն֊կալ իցէ, նոյնչափ և առաւել շարժէ՛ի ծաղր։ Վասն որոյ՛ի լարախիլս և՛ի ստո֊ւերաշարժ խաղս առաւելապէս ծիծա֊ղին մանկունք և տխմարք, և կամ որք զառաջինն՛ի զնին այնոցիկ կան։ Իսկ գիմաստունս և զբազմահմուտս կարի իսկ անակնկալ իրք շարժեն՛ի ծաղր։

Ծաղր՛ի զուարճալի ևեթ իրս և յա֊խորժ զգացմունս ունի տեղի․ իսկ՛ի դիպել անհաճոյ իրաց՝ դադարէ։ Զոր օրինակ եթէ այր գէր և դանդաղ գլ֊թեալ անկանիցի,՛ի ծաղր շարժէ․ իսկ եթէ յանկանելն վնասիցի, կարեկցու֊թիւն փոխանակէ ընդ ծաղու։ Արդ՛ի ծաղր շարժէ

Ա․ Նկարագրութիւն անտեղի գոր֊ծոց մարդկան, մանաւանդ եթէ ան֊տեղութեան իրացն չզգայցեն արա֊րօղք․ զոր օրինակ եթէ ստապատողն գնայցէ իբրև զուղիղ, և կամ զնմանն իւր ծաղրեսցէ։

Բ․ Այլ ընդ այլոյ իմանալ զբանս իրերաց, մանաւանդ եթէ յերկարեսցէ վրիպակն․ որպէս է տեսանել յԱգահն

Մոլիէռի, ուր զանձն իմանայ ոմն ըդդուստրն իւր, և այլ ոմն զդրամսն:

Գ. Ներհական պատահարք հակառակ կամաց գործողին. զոր օրինակ եթէ յաճապարել ուրուք՝ առ շտապ տագնապին և ևս յամեսցէ, կամ 'ի ջանալ ծածկել ինչ՝ և ևս յայտնեսցէ:

Դ. Նենգք և պատրանք անմտաց նիւթեալք այլում. մանաւանդ որ խորագէտ զանձն համարիցի, և 'ի խուսել 'ի պատրանաց անկցի 'ի նոյն. և կամ 'ի ծուղակ՝ զոր այլոցն պատրաստէր՝ ինքն ըմբռնեսցի:

Ե. Պանծացուցանել զչնչին և զչքոտի իրս, որպէս Հոմերոս 'ի ճակատամարտն մկանց և գորտոց մատուցանէ զնոսա իբրև զդիւցազունս Յունաց և տրովացւոց 'ի կռիւ:

Զ. Պերճ և ճոռոմ բանիւք որպէս զմեծ ինչ և զկարևոր իրաց յառաջաբանել, 'ի չնչին ինչ կատարել զճառսն:

Է. Զմեծամեծս և զանարգս, զգեղեցիկս և զանգեղեայս խառնել 'ի մի որպէս արդարև նմանս, զոր օրինակ առնէ Թասսոնի յասելն. « Ընդ ծագել արշալուսոյն « Երգէին Թռչունք և էշք զունչային զերգս « սիրոյ »:

Ը. Զհետ երկար վարդապետութեան՝

հակառակ ինչ ամենեւին ստացելոցն 'ի մէջ բերել:

Թ. Երագ և անակնկալ պատասխանի հանդերձ հանճարաբանութեամբ. զոր օրինակ պանծացելոյ ումեմն անձին յալլիս իւր՝ պատասխանեաց ոմն, զի և այծու մօրուք են, այլ ոչ իմաստութիւն: Եւ այլում ումեք պանծացելոյ 'ի հասակ իւր՝ պատասխանեաց ոմն 'ի հասակակցացն, զի և մոլախոտն աճէ արագ:

Ժ. Զմեծաբանութիւն այլոյ մեծ ևս մեծախօսութեամբ ծաղրել. զոր օրինակ առ պարծանս զօրականին՝ որ համարէր զանձն աւուրբ յառաջ քան զԴիոս ծնեալ, ետ ծառայն պատասխանի. Աւա՜ղ զի ոչ կանխեցեր աւուրբ միով 'ի ծնունդ՝ զի թագաւորէիր արդ յերկինս փոխանակ Դիոսի:

ԺԱ. Երկդիմի գովութեամբ պարսաւել զոք:

ԺԲ. Դէմս ընծայել իրաց՝ որոց ոչն պատշաճիցի, և տալ խօսել նոցա դիմաւորութեամբ:

ԺԳ. Խաղ նմանաձայն բառից, ստուգաբանութիւն, և փոփոխումն տառի, չափով և ճարտարութեամբ. ապա թէ ոչ, ցուրտք իցեն և անախորժք:

ԺԴ. Այլ ընդ այլոյ յարմարել զվերակայութիւնս մատենագրաց ծանօթս, և զիմաստնոց. բայց մի՛ երբէք 'ի սուրբ գրոց։

ԺԵ. Ծաղրալից նմանողութիւն իմաստակօրէն պերճ և վսեմ քերթութեանց, հանդերձ նովին զգուշութեամբ։

ԺԶ. Այլափոխութիւն վսեմ քերթութեանց 'ի ռամիկ և 'ի գեղջուկ բարբառ, որպէս Ենէականն Լա՛լլի քերթողին, և թարգմանութիւն Թասսոյի 'ի բարբառ վենետկեցի։

ԺԷ. Խառնումն բարբառոց ընդ միմեանս, զոր օրինակ գրաբառին և աշխարհաբառի և տաճիկ բարբառոյ որպէս դդմաճեանքն անուանեալ քերթութիւնք։

ԺԸ. Նկարագիր Թերութեանց մարմնոյ և մտաց վայելչապէս, առանց երգիծանելոյ զոք կամ նշաւակելոյ, որպէս բարեկրօնութեան և բարեձևութեան և կրթութեան հրահանգաց անհրաժեշտ պարտք են։

# ԴԱՍ ԻԴ

*Ազգի ազգի տաղից պատկանաւոր չափք ։ Կարգ զոր պարտ է ունել 'ի առեղծարա-նել ն ։*

*Հ․* Իցե՞ն ինչ *ազգի ազգի տաղից սահ-մանեալ չափք ․*

*Պ․* Զգացումն *իսկ ունկան ցուցանէ՝ զի 'ի չափս տաղից և վանկից են որք թե-թևընթացք են, և են՝ որ ծանրաքայլք․ արդ անտեղի և հակառակ կիրթ ախոր-ժակաց է զտողս ծանունս 'ի կիր առնուլ 'ի քերթուածս ուրախականս , 'ի պարս կամ 'ի գեղեցիկ ինչ նկարագիրս․ ընդ հակառակն 'ի տրտմականս և 'ի լուրջ և 'ի վսեմ քերթուածս 'ի կիր առնուլ տողս թեթևս ։ Եւ ծանրութիւնս այս և թեթևութիւն ոչ միայն յերկայնութենէ կամ 'ի կարճութենէ տողից է , այլ և 'ի բազմութենէ կամ 'ի սակաւութենէ ոտից կամ վանկից իւրաքանչիւր ան-դամոց տողին ։ Օրինակ իմն․ հնգետա-սանոտնեանն 'ի բաժանելն այսպէս* 4—4—4—3 , *թեթևագոյն է , քան 'ի բաժանելն յերիս հաւասար հնգեակս* 5—5—5 ․ *որպէս զի և տողք կարճա-*

դոյնք 'ի տրոհելն 'ի բազմավանկ անդամս, գործին ծանրաքայլք։ Օրինակ իմն՝ գեղեցիկ է յոյժ տասնոտնեան չափս այս 'ի կիր արկեալ յարդի քերթողացս մերոց, և կարի պատշաճական վսեմ իմաստիցն .

« Հիմ խարխախ արկեր գահուդ արքունոյ
Ի կըմախ զարմին Հէգ Սանատրկոյ.
Խարխուլ են գահոյք՝ Թէ և ոսկեղէն,
Որոյ պատուանդանք յոճիր յեցեալ են .
Թըռուցիկ վարանք ճախրեն հանապազ,
Ձուսկեզօծ ձեղուամբդ 'ի քոյին դարպաս »։

Ընդ հակառակն նոյն քերթող 'ի Թարգմանութեան հովուական գեղեցիկ հատուածոյս 'ի տաղիցն Ովրատեայ, այսպէս վայելուչ 'ի կիր արկանէ զչափ իննոտնեան՝ յերիս երրեակս բաժանեալ.

« Ուր երկիր անարօր ընծայէ
Տոհմական արմըտեաց ամ յամէ,
Եւ այգի անյօտոց միշտ ծաղկէ։
Ուր պըտկի և ուղէշ ոստաքանց
Ձիթենւոյն, որ երբէք ոչ խաբեաց.
Եւ գիւր ծառ պըճնէ Թուզ լըրԹազգեաց։

Ի գոգեալ սըղոցեաց մեղր հոսեն ,
Մեծասար 'ի լերանց 'ի բարձուէն
Մեղմաձայն կարկաչմամբ ջուրք ցայ-
տեն ։

Անդ այծիք զան անկոչ առ դաշտին ,
Եւ դառնայ յարօտոյ լճաստին
Գեղմնաբարձ երամակ սիրելին .
Եւ ոչ արջ քանասայր շուրջ յածեալ.
Ցերեկոյն ըղգաւթիւ մըռընչեալ ,
Ոչ այտնու հող յիժից որջայցեալ ։
Ձայն ծովափն Արամազդ զատեցոյց ,
Բարեպաշտ սուրբ ազին 'ի հանգոյց ,
Պըղըղնձեաւ զոսկի դարն երբ զեղ-
ծոյց » ։

Վերերգ . ԺՁ ։

Եւ դարձեալ նոյն քերթող յԱնակ-րէոնեան տաղիս ոչինչ նուազ քան զի-մաստն համառօտ տաղիցն չափով զըղ-ղութիւն կենացս բացատրէ այսպէս .

« Հասակ փախըստէ
Մի միայն բոպէ
Հաստատուն ոչ է .
Հազիւ թէ մեզ գայ ,
Ջոյգ հողմոյ խոյս տայ ,
Որ շոյտ թեւանայ ։
Ո՛հ մի՛ փըքասցուք ,
Մի՛ յայն յուսասցուք ,
Վնասին մահացուք ։

Վարդն առ'ի յարփւոյն,
Եւ գեղ մանկագոյն
Ցամաց 'ի ժանդոյն ։։

Հ. Զի՞նչ չափ ընտրելի իցէ քերթողին 'ի թատերգութեան.

Պ. Զմերձաւորագոյնն արձակ բանի. զի յունականին և լատինականին մեծավերջն, որով թատերական քերթուածք գրեալ են առ նոսա, այնքան մերձաւորք են արձակ բանի, զի 'միջին իմն համարի այն ընդ ոտանաւոր և ընդ արձակ բան. նոյնպէս գրեթէ և իտալականին անյանգ ոտանաւորն, որով վարին 'ի թատերգութիւնս. վասն որոյ օրէն է և մեզ կամ զանյանգ վարել ոտանաւոր 'ի թատերգութեան, և կամ բնաւ իսկ արձակ վարել բանիւ, պահելով զոճն եւեթ քերթողական ։

Հ. Զո՞ր կարգ պարտ է ունել 'ի բանաստեղծելն.

Պ. Նախ քան զամենայն պատրաստել զատաղձս շինուածոյն, այսինքն է հանճարել խոկմամբ զգիւտս և զիմաստս տաղիցն. և զէթ վեր 'ի վերոյ ինչ կարգաւորել զայն 'ի մտի՝ թէ որպէս սկիզբն պարտ իցէ տաղիցն նմա առնել, և զիա՞րդ զկատարածն ։ Եւ ապա օգնէ յոյժ ընթեռնուլ վայրիկ մի զքաջայ

քերթողաց տաղս, առ 'ի վառել զերեւակայութիւն, և զեռանդն 'ի յոգւոջ արծարծանել. և 'ի նմին եռանդեան ձեռնարկել 'ի քերթուածն. զի այսպէս խանդք ոգւոցն բազմապատկեն զգիւտսըն և զիմաստս 'ի բացատրել անդ, և թուիչք մտացն յիմաստից յիմաստս վազեալ, բնականագոյն և լաւ ևս շաղկապեն զնոսա ընդ միմեանս՝ քան զտրամաբանեալ կապակցութիւն. և նոյն խանդք յաճախեն զձևս գեղեցիկս և վսեմս, նմանութիւնս ճշգրիտս, նկարագրութիւնս զմայլականս, և դրուագըս պատկանաւորս 'ի նիւթ քերթուածոյն։ Ներդաշնակութիւն յօրինի անդ առանց քերթողին ջանիւ, և յանգք յարմարաւորք որպէս քարինք Ամփիոնի քնարաւն ինքնին 'ի կարգ անկեալ զետեղին։ Եւ պարտ է յայնժամ քերթողին սանձահարել մանաւանդ զգրիչըն, և մի՛ նախ քան զքաջ երկնելն 'ի մտի զիմաստս՝ արտաբերել զայնոսիկ 'ի գիր. քանզի բազում այն է, զի մթութիւնք և տարտամութիւնք իմաստից 'ի շտապոյ աստի և 'ի կարճմտութենէ յառաջ գան։ Եւ մի՛ երբէք սովորեցուցանել զանձն 'ի յօրինել տողս անհարթս, 'յուսով կոկելոյ զայնս յետոյ և ողորկե-

լոյ. քանզի այսպէս՝ մնասցեն միշտ 'ի նոսա հետք անհարթութեանն. այլ եթէ ուրեք զկայ առնուն միտք, և դժուարին 'ի ստեղծանել տողս ինչ, լաւ ևս իցէ թողուլ զայնս, և 'ի յաջորդսն անցանել. և ապա պարապով լնուլ զթերին: Զի թէպէտ և զամենայն ճիգն և զջանս որ 'ի կիր արկանիցէ 'ի քերթուածն, տակաւին պէտք իցեն հարթելոյ զայն և կոկելոյ վերստին տեսութեամբ. իսկ եթէ որ առանց ջանից զնախաձեռն յօրինուածն կատարեսցէ, յայտ է թէ կարկատուն միշտ քերթուածն երևեսցի բազմապատիկ փոփոխութեանցն յաւելուածովք՝ զորս յետոյ հարկ լիցի նմա առնել առանց արծարծանելոյ երբէք 'ի նմա առաջին եռանդեանն: Բայց քերթողին պարտ է գոլ հմուտ 'ի բնիկն իւր բարբառ, և շտեմարանեալ 'ի միտս իւր ունել զազգի ազգի զբազմակերպ եղանակս բացատրութեանց և զբառս ընտիրս, որպէս զի ըստ տեղւոյն զպատշաճն կարող իցէ 'ի կիր արկանել: Զի եթէ այսոքիկ չիցեն 'ի միտս նորա, խանդք քերթողականք ոչ ինչ օգնեն, որպէս համեր՝ որ բարբառելն կամիցի՝ ոչ ինչ օգնեն իմաստք մտացն: Եւ որ առանց պատրաստութեանցս այսոցիկ

բանաստեղծելն կամիցին, այնպէս է՝ որպէս եթէ ոք առանց գիտելոյ զթիւս, 'ի բարձրագոյն յաստեղաբաշխական հաշիւս թեւակոխիցէ։

Հ. Ո՞ր ազգ վարժից կարեւորագոյն իցէ 'ի հրահանգս քերթողականի առհասարակ.

Պ. Քան զամենայն կանոնաց վարդապետութիւնս կարեւոր է և շահաւէտ զընտիրս 'ի քերթողաց սակաւս յաճախ վերծանել, և քօղախնդրեալ հետազօտել զոր 'ի նոսա գեղեցկութիւնս. և վարժել նոքօք 'ի կիրթ ախորժակս մտաց և 'ի քննաբանութիւն, որք կարեւոր են յոյժ քերթողի։

## ԴԱՍ ԻԵ

*Ախորժակք մտաց. — Քննաբանութիւն:*

Հ. Զի՞նչ են ախորժակք մտաց.

Պ. Զօրութիւն ընտրելոյ զգեղեցիկն, և բերկրելոյ ընդ այն։ Այս զգայութիւն հասարակաց իսկ է ամենեցուն, այլ ոչ յամենեսին զուգահաւասար, զի են՝ յորս աղօտ ինչ հազիւ նշողեն ախորժակք, իսկ յայլս քաջակիրթ ա-

խորժակք են յընտրութիւն գեղեցկու-
թեանց: Այսպէն զանազանութիւնս
այս ըստ մասին 'ի բնութենէ է, 'ի
կազմածոյ զգայարանաց և 'ի ստեղ-
ծուածոյ իմացական զօրութեանց, բայց
և ըստ առաւելագոյն մասին 'ի դաս-
տիարակութենէ և 'ի վարժից: Վկայէ
այսմ անհամեմատ խտիր փափկու-
թեան ախորժակաց կիրթ և դաստիա-
րակեալ ազգաց և անկրթից և խու-
ժայնոց. և 'ի նմին իսկ 'ի միում ազ-
գի խտիրն որ ընդ վարժեալս 'ի բա-
նասիրութիւն և ընդ ռամիկն: Քան-
զի կրթութիւն և վարժք որպէս զմարմ-
նոյ զգայարանս՝ նոյնպէս և զիմացա-
կան զօրութիւնս մարդոյ զարգացու-
ցանեն, որպէս յայտնի երևի այս յե-
րաժշտութեան և 'ի նկարչութեան.
զի ցորչափ չիցէ ոք կրթեալ 'ի նոսա,
չընտրէ զգեղեցիկն յանարգէն. այլ
իբրև վարժի 'ի նոսին, ընդ տեսա-
նելն առնէ ընտրութիւն:

Եւ որպէս կրթին ախորժակք
մտաց.

Գ. Մտադիր վերծանութեամբ քա-
ջաց քերթողաց, և խորագնին տեսու-
թեամբ ընտիր օրինակաց. քանզի այ-
սոքիկ կրկնակի նպատակեն, մի՝ 'ի կա-

տարումն ածելով զբնատուր զգացումն իմանալի գեղոյ, և երկրորդ՝ կրթելով զբանն 'ի քաջ ճանաչել զայն: Զի վեր 'ի վերոյ գեղեցկութիւնք, օրինակ իմն՝ նկարագիրք անբնականք, իմաստք բռնազբօսեալք, ոճ արուեստակեալ, առ վայր մի զուարճացուցանեն՝ ցորչափ աննմանութիւն նոցա ընդ բնականին չիցէ նշաւակեալ, այլ ընդ յայտնելն և խոտին, և պատիր գեղեցկութիւնն ոչ ևս զուարճացուցանէ: Դարձեալ 'ի զարգացումն երկոցունցն ևս մասանց խնդրի և սիրտ գողտր և բարեբարոյ յընտրութիւն բարոյական գեղեցկութեանց. զի ուր ուրեք իղձք և ախորժակք սրտի, առաքինութիւնք, բնաւորութիւնք և նկարագիրք մարդկան 'ի ներքս մտանեն, եթէ անմասն ոք իցէ յայնցանէ՝ զիա՞րդ կարասցէ զայնոսիկ նկարագրել, կամ զնկարագրութեանցն քերթողաց իմանալ զգեղեցկութիւնս: Մանաւանդ զի գեղեցկութիւնքս այսոքիկ յոյժ գեր ի վերոյ քան զառաջինսն են. և թէպէտ բանաստեղծութեանն սահման է՝ զոլ բարբառ երևակայութեան և սրտի, այլ ուր երևակայութիւն ևեթ առանց սրտի բարբառիցի, ոչ միայն զի անկենդան

է քերթուածն այն, այլ և անօգուտ ամենևին. իսկ որ երկոքումբքն ևս պերճանան քերթուածք, կրթեն զբարս և զսիրտ և զախորժակս ընթերցողաց:

Հ. Զի՞նչ է քննաբանութիւն.

Պ. Դատել ինչ գրաւորական ըստ կիրթ ախորժակաց, և ընտրել զհանգամանս կատարելութեանց նորա և թերութեանց: Կարևոր է յոյժ քննողականս այս ընտրութիւն առ 'ի կրթել ևս զախորժակս: Ցընթեռնուլն կամ 'ի լսել ինչ, ամենեցուն է հաճել կամ չհաճել ընդ այն. բայց խտիր մեծ է ընդ հաճոյս և ընդ դատաստան: Զի որ հաճին՝ զլաւութիւն կամ զյոռութիւն իւրոց ախորժակացն ցուցանէ. իսկ որ դատին, պարտի և զպատճառսն յաւելուլ զլաւութեան կամ զյոռութեան իւրին:

Հ. Եւ ո՞ր իցեն պայմանք լաւութեան 'ի քննաբանելն խնդրելիք.

Պ. Առաջին պայման՝ միութիւն իւրին, զի մի 'ի բազումս ցրուեալ խոնջեսցին միտք:

Երկրորդ՝ բազմակերպ զանազանութիւն մասանց, զի մի տաղտկալի լիցի բանն միօրինակ իւրաց շարայարութեամբ:

Երրորդ պատշաճ բաժանումն, այս֊
րինքն համեմատութիւն և կարգ յամե֊
նայն մասունս ։

Չորրորդ՝ պատկանաւորութիւն հը֊
նարից առ ուշ նպատակին, օրինակ
իմն՝ իմաստք գործականք յեղերեր֊
գութեան, յորդորողք 'ի խրատականս,
զբօսացուցիչք 'ի հովուականս, և այլն ։

Հինգերորդ յստակութիւն և յստա֊
կութիւն ոճոյ, որ զամենայն իսկ շա֊
րագրածս ընտիր յօրինէ, և գեղեցիկս
և վսեմ առանց այնր անարգ է ։

Արդ ըստ այսոցիկ պայմանաց պարտ
է քննել զքերթուածս, եթէ իցեն 'ի նմա
պահանջեալն միութիւն և բազմակերպ
զանազանութիւն. եթէ իցէ՞ համեմա֊
տութիւն 'ի նմա և կարգ, եթէ ամենայն
մասունք նորա բերիցե՞ն առ ուշ նպա֊
տակին; և նկարագրութիւնքն 'ի նմա
իցե՞ն ճշգրիտ ըստ բնութեան, և իցե՞ն
'ի նմա կորով և եռանդն, և թէ իցէ՞
բացայայտ յստակ և վայելուչ։ Իսկ եթէ
ոք զուարճանայցէ տաղտուկ նոյնու֊
թեամբ, կամ խառն 'ի խուռն և բազ֊
մաշփոթ զանազանութեամբ, եթէ նո֊
րասիրութեան ըղձիւք վառեալ՝ տարա֊
բանագոյն և անճոռնի իմաստից լիցի
'ի խնդիր, և զանարգ և զզուեհիկ ի֊

մասատս իբր ն[illegible]ս մեծարեսցէ, եթէ անմասն 'ի փափուկ զգայութենէ՝ ընդ-թանձր և ընդ նիւթական իւրս հաճեսցի, կամ տարապայման նրբութեամբ արուեստակեալ և բազմաքանդակ իմաստից լիցի 'ի խնդիր, այնպիսույն թիւր և եղծեալ և ապականեալ է ախորժակ։ Իսկ որ քաջակիրթ իսկ ախորժակօք ճանաչելով զթերութիւնս այնպիսեաց քերթութեանց՝ դեգերեսցի յաճախ 'ի վերծանութեան նոցին, եղծանին ախորժակք նորա։

Այլ առ 'ի քաջ դատաստան առնել զքերթութեանց, հարկ է գատել զնորին և ըստ իւրաքանչիւր ազգի ազգի տաղից՝ թէ կայցեն յիւրեանց պայմանին հովուականն և քնարերգականն և դիւցազներգականն և ողբերգականն, այլովքն հանդերձ։

# ԴԱՍ ԻԶ

*Թէ երբ և յորս յազգաց զօրացան ընտիր ախորժակք:*

Հ. Իցէ՞ արդեօք գեղեցկին յատուկ բնութիւն, թէ ըստ զանազանութեան ախորժակաց ազգաց և ժամանակաց դատելի իցեն քերթուածք.

Պ. Զանազանութիւն ախորժակաց եթէ յայլևայլ իրս իցէ, մարթի ամենեցուն իսկ արդարանալ. որպէս եթէ ումն ընդ ողբերգութիւն ախորժեսցէ, այլ ոք ընդ կատակերգութիւն, սա ընդ քնարերգութիւն, և միւս ումն ընդ հովուական տաղս և այլն: Բայց եթէ զնոյն ինչ զոր գեղեցիկն համարի ոք՝ միւսն պարսաւեսցէ իբրև տգեղ, հարկ է թէ միումն յերկոցունց եղծեալ իցեն ախորժակք: Պատահէ իսկ արդարև յաճախ այսպիսի Թիւր և ապականեալ ախորժակ յայլևայլ անձինս, և մանաւանդ յայլևայլ ազգս և 'ի ժամանակս, այլ ոչ երկարատև է, զի յետոյ ապա յաղթէ բնիկ գեղեցիկն, որպէս 'ի գոթացի և 'ի յոնիական ճարտարապետութիւնսն յայտ է, և յարուեստակեալ

իմաստակ տիպս բանից՝ որ յետ օգոստական դարուն առ ժամանակ մի զօրացեալ՝ դարձեալ խափանեցաւ։

Հ. Յո՞ր ժամանակս զօրացան ընտիր ախորժակք.

Պ. Զորք դարք զանազանին կիրթ ախորժակաց առ գիտունս.

Առաջին դար պայծառանալոյ Յունաց, իբր 'ի սկզբանէ Պեղոպոնեսական մարտին ձգի մինչև ցվախճան Աղեքսանդրի մեծի, և քառեակ դարուք յառաջ քան զԹուականութիւն Փրկչին, յորում ժամանակի կացին Երոդոտ, Թուկիդիդէս և Քսենոփոն վիպագիրք. Սոկրատ, Պղատոն, Արիստոտէլ, Զենոն և Եպիկուր իմաստասէրք. Լիւսիաս, Դեմոսթենէս, Եսքինէս և Իսոկրատ ճարտարախօսք. Եսքիղոս, Սոփոկղ, Եւրիպիդէս, Արիստոփան, Մենանդր, Անակրէոն, Պինդար, Աղկէոս, Սափփով, Սիմոնիդէս, Կալիմաքոս, Թէոկրիտոս, Մոսկոս և Բիոն քերթողք։

Երկրորդ դար պայծառանալոյ Լատինացւոց յաւուրց Յուլեայ կայսեր մինչև ցՕգոստոս. յորում ժամանակի յետ Պղաւտեայ և Տերենտիոսի, որք կանխեցին սակաւ ինչ՝ կացին Լուկրե-

տիոս, կատուղղոս Տիբուղոս, Պրոպեր-տիոս, Վիրգիլիոս, Ովրատիոս, Փե-դրոս և Ովիդիոս քերթողք, Կիկերոն և Որտենսիոս ճարտարախօսք. Սա-լուստիոս, Կեսար և Լիւիոս վիպա-գիրք:

Երրորդ դար պայծառանալոյ խռա-լացուց 'ի չորեքտասաներորդ դարէ մինչև ցվեշտասաներորդ. յորում ժա-մանակի կացին Տանթէ, Փեթրարքա, Պոքաչչիօ, Պէմպօ; Քաղա, Քաւռօ, Թասսօ և այլք բազում քերթողք և ճարտարախօսք:

Իսկ չորրորդ դար պայծառանալոյ գաղղիացւոց և անգղիացւոց յաւուրց Լուդովիկոսի ԺԴ արքային գաղղի-ացւոց, և Աննայի դշխոյին անգղիա-ցւոց, 'ի ԺԷ դարու. յորում ժամանա-կի կացին 'ի Գաղղիա Քոռնէյլ, Ռասին, Մոլիէռ, Պուալօ, Լաֆոնդէն, Ժան-պաթիստ-Ռուսոյ, Պոսիւէ, Ֆէնէլոն, Պուռտալու, Մասիյլեօն, Բասքալ և այլք. իսկ առ անգղիացիս Շէքսփիռ, Տրայտըն, Բօփ, Էտիսըն, Եընկ և այլ քերթողք, Թօմ դիմաստասէրն Լօք, Նևթըն և զայլս:

Առաջնոց կրկին դարուցն մատե-նագիրք հանդերձ սակաւուքն՝ որք կան-

կեցին քան զնոսա, որպէս Հոմերոս և Եսիոդոս, առ վերջնովքն կոչին հինք կամ նախնիք, իսկ վերջնոցն դարուց՝ ընդ որս և կացեալքն առ մեօք, կոչին արդիք։

Հ. Նախնի մատենագիրք և արդիք ո՞ քան զո մեծարոյք իցեն.

Գ. Ուժգին զայսմանէ վէճք եղեն և լինին առ գիտունս ՝ և դժուարին է տալ վճիռ. բայց դարք աշխարհի հանգոյն իմն են տիոց մարդոյ. զի յաւագոյթ հասակին առաւելու 'ի հմտութիւն և 'ի խորագնին տեսութիւն. այլ յառոյգ տիս՝ առաւել են 'ի նմա աշխոյժք և եռանդն։ Նոյն խտիր է և ընդ նախնի և ընդ արդի քերթողս վիպագիրս և ճարտարախօսս. զի 'ի նոսա առաւելու ընտելական իմն պարզութիւն, բնական հանճար և վեհ և վսեմ իմաստք. իսկ 'ի սոսա՝ արուեստ և կարգ. զի թէպէտ և ամենայնիւ ստորև իցեն արդիք քան զնախնիս, այլ առաւելութեամբ 'ի բազում ինչ իւրս գերազանցեն զնոքօք։ Ապա որ զախորժակս իւր կրթել և ուղղել կամիցի, պարտ է նմա յաճախել 'ի մտադիր ընթերցումն նախնի մատենագրաց։

## ԴԱՍ ԻԷ

*Մի անխտիր ընթեռնուլ զհեթանոս քերթողս.— Առասպելեաց պատշաճ պիտանութիւն.— Օգուտք բանաստեղծութեան:*

Հ. Եւ իցէ՞ օրէն յաճախել յընթերցումն հեթանոս քերթողաց.

Պ. Թէպէտ և բազումք 'ի սրբոց հարց արգելուն զընթեռնուլ զհեթանոս քերթողս, այլ զպատուէրս նոցա իմանալի է յաղագս մնասակարացն 'ի նոցանէ և 'ի քրիստոնեայ քերթողաց, և յաղագս չզեղծանելոյ անխտիր նոցին ընթերցմամբ: Զի ահա յոլովք 'ի սրբոց հարց, որպէս Բարսեղ, Նազիանզացի, և այլն, կարի իսկ հմուտք էին հեթանոսական քերթութեանց. և սուրբն Օգոստինոս զհրաշազան գիրսն յաղագս Քաղաքին Աստուծոյ սոցին հմտութեամբն գրեաց: Եւ յորժամ ուրացողն Յուլիանոս հրովարտակաւ արգել վարժապետաց՝ մի վարժել զմանկունս քրիստոնէից 'ի գիրս արտաքնոց իմաստասիրաց առ 'ի խափանել զօգուտ նոցա, 'ի ստանալ եկեղեցւոյ անդրէն զխաղաղութիւն՝ դարձան վերս-

տին 'ի դպրոցս ուխտի մանկանց վարժք հեթանոսական քերթութեանց, այլ ըստ քրիստոնէական զգուշութեանս պայմանի ։ Եւ ո՞ր այն պայման իցէ. այս ինքն զի որպէս մեղուք ոչ յամենայն ազգս ծաղկանց զկայ առնուն, մանաւանդ զի և ոչ ուր զկայ առնունն անխտիր զամենայն հիւթս ծծեն, այլ որ 'ի գործ ցանկալի մեղերն իցէ պիտանի, այսպէս և մեզ պարտ է ընտրել զգիրս քերթողաց, և 'ի նոսին զօգտակար ևեթ մասունս ընթեռնուլ, զվնասակարսն 'ի բաց թողեալ։ Որպէս և որ զվարդ ոք քաղիցէ՝ զգուշանայ 'ի փշոցն, զնոյն զգուշութիւն պարտ է մեզ սարասել յանձինս։

Հ. Օրէ՞ն իցէ քերթողաց քրիստոնէից յաճախել զհեթանոսական առասպելս և զանուանս դից 'ի քերթութիւնս իւրեանց.

Պ. Սովորութիւնս այս, թէպէտ և յաճախեալ առ բազումս 'ի քերթողաց հաւատացելոց, ոչ է գովելի։ Զի եթէ հեթանոս ոք քերթող 'ի մրրկի տայցէ զիւցազինն իւրում կարդալ առ Պոսիդոն և առ Եւողոս, յայտ առնէ զի դաւանէ զնոսա աստուածս ծովու և հողմոց. բայց քերթող հաւատացեալ զի՞նչ իմա-

նայցէ անուամբքս այսորքիւք. ապա ու֊
րեմն նախ պարզութեան և ճշգրտու֊
թեան իմացուածոյ հակառակ է սովո֊
րութիւնս այս, և երկրորդ՝ զի ոչ շարժէ
ամենևին զսիրտ քերթողին և զընթեր֊
ցողաց զքերթուածն, որոց ծիծաղելի
են անուանքն այնոքիկ անէակք:

Ասիցէ ոք թերևս իմանալ անուամբ֊
քըս այսորքիւք զայլ և այլ ստորոգելիս
ճշմարտին Աստուծոյ. այլ վայել իցէ
արդեօք սրբոյն Աստուծոյ ընծայել
զայնոսիկ անուանսն, զորս Դաւիթ չկա֊
մէր և ոչ յիշել զանուանս նոցա 'ի
շրթունս իւր: Որչափ գեղեցիկք են
քերթուածք Սաննածարայ, այնչափ
դժպհի թուի 'ի նմա խառնուրդ անու֊
անցս այսոցիկ և առասպելեաց դից
ընդ ամենասուրբ խորհուրդ մարդե֊
ղութեան Քրիստոսի. և կոչել իսկ նո֊
րա զՄուսայս յօգնութիւն առ 'ի բա֊
նաստեղծել զփառաց տիրամօրն՝ խիստ
թուի և անհաճոյ փափուկ լսելեաց:

Այլ ոչ ընդ առասպելս ընդ այսոսիկ
է իմանալ զկեղծիս քերթողականս,
օրինակ իմն՝ ընծայելոյ թևս հողմոց,
բարբառ ոստոման, և դէմս առաքինու֊
թեանց և յոռութեանց և զայլ այսպի֊
սի ձևս: Դարձեալ օրէն է 'ի կիր առ֊

նուլ ըստ տեղւոյն և զառաջնեալ անուանս՝ որ զիրն ինքնին նշանակեն, մանաւանդ զյանճախեալսն յայնցանէ. զոր օրինակ զՀիմէն կամ զԱստղիկ փոխանակ հարսանեաց, զԱրէս փոխանակ մարտի, զԱպողոն կամ զՓեբոս փոխանակ արեգական, այլովքն հանդերձ. և կամ դարձեալ ըստ քերթողն առնու զդէմս դիցապաշտի, օրէն է նմա հեթանոսական առասպելօքն վարել. իսկ խառնուրդն կարի իսկ անտեղի է:

Հ. Եւ զի՞նչ օգուտ 'ի բանաստեղծութենէ. մի՞չ 'ի զուր իցէ ժամավաճառ լինել մանկանց 'ի վարժս նորին.

Պ. Մարգարէութիւնքն և սաղմոսք և այլ բազում աստուածաշունչ գիրք բաւական են ի ցուցանել զպատշաճ բանաստեղծութեանն օգուտս, որ զազնուական կիրս դրդէ, որ զսիրտ ողոքէ 'ի բարին, որ առանց գրգելոյ զախտս՝ զուարճացուցանէ, որ ձգէ 'ի մտադրութիւն խորատոց՝ առանց անօտի և ծաղրալից առասպելեաց, որ ուսուցանէ առանց տաղտկացուցանելոյ. և ախորժ՝ գեղեցիկ՝ վէհ և վսեմ աստցուածովքն, և կենդանատիպ նկարագրութեամբքն ձգէ յընթերցումն օգտակարաց և զկարի իսկ ծոյլս և դժե-

րեալս ախտից ։ Դարձեալ և օգուտ
մեծ է բանաստեղծութեան 'ի կրթու֊
թիւն բարուց և 'ի բարգաւաճութիւն
ազգաց, որպէս և արտաքնոցն և փորձ
իսկ ազգաց բազմաց վկայեն ։ Եւ որ֊
փէական առասպելին տաղիւք զապա֊
ռաժս շարժել և նուաճել զգազանս և
զՀեբրեայ ստնակառել զընթացս, ոչ
այլ ինչ ցուցանէ՝ բայց զի նա զվայրե֊
նի բարս ազգին 'ի զգօնութիւն ած
քերթութեամբքն ։ Վասն որոյ և կա֊
րևորագոյն ուշնպատակի ամենայն ազ֊
գի ազգի քերթութեանց զայս սահմա֊
նեցին. դիւցազնականին՝ ընծայել ծած֊
կաբար խրատս, այլաբանեալ 'ի գործ
իմն մեծ և արիական. քնարերգակա֊
նին պանծացուցանել զարի արանց
զքաջութիւն առ 'ի նախանձ այլոց. ող֊
բերգականին՝ զարհուրեցուցանել յա֊
նօրէնութեանց աղետալի չարեացն հե֊
տևանօք ; և պատկառելի առնել զա֊
ռաքինութիւն իրաւացի գովութեամբ
և վարձիւք. կատակերգութեան և եր֊
գիծանաց՝ կշտամբել հանդերձ զուար֊
ճութեամբ, և դնել մարտ անհամբոյր
ընդ յոռութիւնս և ընդ այպանելի
գործս. եղերերգութեան ողբալ 'ի վե֊
րայ գերեզմանի արանց արժանեաց ող֊

բոց . հովուերգութեան երգել զանմեղ և զնախանձելի գեղջկիցն կենցաղ , և այլոցն ես քերթութեանց՝ այլ ինչ սահմանեալ օգուտ ։ Ի վերայ այսոցիկ է սա և զբաղումն անմեղ և հանճարեղ՝ որոց յօրինեն և որոց ընթեռնուն զքերթութիւնս , և օգնէ իսկ յոյժ ճարտարխօսութեան , և ճշգրտէ և կոկէ զոճ մատենագրութեան ։

# ՑԱՆԿ

ԱՌՁԵՌՆ

# ՃԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ

ՀԱՄԱՌՕՏԵԱԼ

Ի Հ. ԵԴՈՒԱՐԴ Վ. ՀԻՒՐՄԻՒԶ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ



ԵՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՄԽԻԹԱՐԵԱՆ

1866

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Որ մինչև ցայժմ հռետորականին կանոնաց կացին անսանձելիք յազգիս, քանզի կէս առաջին եղեալ էր նոցա 'ի ծայր արուեստին ածել զհամբաւս, ոչ էր մարթ նոցա 'ի սուղ ժամանակի վարժապետել։

Այլ քանզի ստուարութիւն գրոց խրատուցանէ զբազումս՝ որք ոչ 'ի դադարմն արուեստին վերանալ ցանկան, ոչ անօգուտ թուի զկարեւորագոյնս 'ի կանոնաց նորա համառօտել, որով կիցեն դիւրեացին վերելք բարձու աստճանին, նախ 'ի գիրս յայս կրթեալ, և ապա այս 'ի վարժս բարձրագոյն զասուն անցեալ. իսկ այլոց, որք առ ստորոտովքն եւեթ զեղեւրել կամին, մարթ լիցէ գեթ աղօտաբար զգեղեցկութիւնս նորա նկատել։ Նմին իրի որպէս զքերականութեանն, նոյն փոյթ եղեմեղ և զդուռն ճարտասանութեան կազմել դիւրամատչելի ամենեցուն Առձեռն մատենիւս, առհեշտի համբակաց և վարժապետաց։

Վասն որոյ մի՛ ոք մեղադրեսցէ զմեզ իբր օտարին վաստակոց յափշտակող, առանձնելով 'ի սմա

բազում ինչ յերկուց առաջնոցն մերոց հաւատո-
րաց ժողովեալ. քանզի մեզէն իսկ խոստովանիմք, զի գրեթէ զնոյն նոցին բանս հոգացաք համառօտել. և զքերթողականին իսկ կանոնս 'ի զաղղիական քերականէն 'ի կիր առեալ, որ նախ առաջին զայնցանէ գրեաց: Զի ոչ ինչ ամօթ համարիմք զհոգեկցորդ և զուսումնակից եղբարցն մերոց և զվարժապետաց ճոխութիւնս 'ի կիր առնուլ, ըղմատենագրի անուան ոչ թեկն ածելով:

Աղաչեմք եւեթ զուսուցիչս մանկանց, ընդ զթերին համառօտութեանս, և վերլուծանել համբակաց զօրինակս ձեւոց ածեալս այսր առ 'ի նախնեաց, և տալ նոցա 'ի միտ առնուլ՝ թէ որպէս մարթէր զնոյն բանս պարզաբար առանց ճարտասանական ձեւոց ասել, և թէ յորում օրինակացն իւրաքանչիւր իցեն գեղեցկութիւնք, զոր ոչ էր մարթ առնել մեզ առանց ստուարացուցանելոյ զմատեանս:

1659

# ԱՌԱՋԵՐՈՒՆ

# ՃԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ



## ԴԱՍ Ա.

*Ընդհանուր գիտելիք զճարտասանութենէ։*

Հ. Զինչ է ճարտասանութիւն.

— Արուեստ բարւոք խօսելոյ։

Հ. Քանի՞ ինչ կարեւոր են առ բարւոք խօսել.

— Երեք. պարզութիւն, վայելչութիւն, զօրութիւն։

Հ. Զիա՞րդ յօրինի պարզութիւն 'ի խօսս.

— Պարտ է զսեփական զազգային ըղ-նախնի ընտիր մատենագրաց գրբառս ըստ ընիկ նշանակութեան, և զնոցին եղանակս բանից 'ի կիր արկանել, և մի զեկամուտս, զնորաշնարս և զանստվորս։

Նմին իրի պարտ է ճարտարախօսի յա-ճախել 'ի վերծանութիւն քաջաց մատենա-գրաց, և ներկուռ 'ի ընիկ բարբառն զօլ։

Հ. Ապա ուրեմն ոչ է մարթ ճարտարել

բառս արտաքոյ այնոցիկ՝ որ առ մատենագիրս գտանին .

— Մարթ իսկ է ըստ պատշաճի յօրինել ածանցականս և բարդել, այլ խնայելով և բազում զգուշութեամբ ըստ քերականական խիստ կանոնաց ։

Հ. Եւ իցէ՞ բաւական առ 'ի պարզութիւն երկիւղած նմանութիւն նախնեաց 'ի բառս և յեղանակս բանից .

— Ամենևին ոչ . զի այդ նիւթական ևեթ է պարզութիւն . այլ կարևորագոյն ևս խնդրի պարզութիւն իմաստից . վասն որոյ պարտ է ճարտարախօսին քաջ երկնել 'ի մտի զիմաստս , և ապա ծնանել ։ Զի եթէ որ խօսին՝ ոչ քաջ ըմբռնիցէ զիմաստս , անհնարին է թէ պարզ իմացուսցէ զայն որում խօսին ։

Առ այս կարևոր է զգուշանալ և 'ի կարի համառօտութենէ 'ի բացատրելն զիմաստս , և 'ի հակառակէն այնորիկ յաւելորդ շատախօսութենէ ։

Հ. Կարիցես օրինակաւ պարզաբանել ինձ զվարդապետութիւնդ .

— Բուզանդայ կամելով ասել ևեթ վասն եպիսկոպոսին Դանիէլի , թէ յաւուրս ձմերայնոյ խորհէր գնալ ուրեք ընդ ձիւնախաղաղ լերինս , այսպէս բազմաբանութեամբ անիմանալի առնէ զբանն . « Յաւուրս ձմերայնոյն՝ յորժամ կուտեալ դիզեալ մեծութիւն բազմութեան թանձրութեան ձեանց , կուտակեալ հիւսեալ

ձեանց 'ի վերայ ձմերային լերանց, յայնպիսի լերանց վերայ, ընդ այնպիսի ժամանակի կամէր ուրեք երթալ 'ի պէտս ճանապարհի»։

Հ. Զի՞նչ թերութիւն գտանես 'ի բանիս. Եւ հանգեան ընդ վարսագեղ ծառովն, որ շուք մեծ 'ի պարտիզի անդ գործէր»։

— Մարթի բառիցն ընտիրս գոլ և զբնիկ նշանակութիւն իւրեանց պահել, և իմաստիցն յերկաքանչիւրոց եւս ծայրայեղ խոտորմանց հեռի կալ՝ յաւելորդաբանութենէ և 'ի կարի համառօտութենէ, այլ երկդիմութեամբ միոյ 'ի բառիցն կորուսանել զպարզութիւն. որպէս բառդ շուք ստանոր՝ զվայելչութիւն և զհովանի անխտիր նշանակելով։

Մարթ է յաճախագոյն եւս 'ի յոռի շարադրութենէ բառից կորուսանել բանին զպարզութիւն. վասն որոյ պարտ է ճարտարախօսի յիշել միշտ զառ 'ի նախնեացն աւանդեալ սահման քերականութեան, զի «Քերականութիւն է հմտութիւն, որք 'ի քերթողաց և 'ի շարագրաց իբրու բազում անգամ ասացելոց». այսինքն է զի ոչ զամենայն եղանակս բանից նախնեաց օրէն է 'ի կիր արկանել, այլ զյաճախագոյն առ 'ի նոցանէ 'ի կիր արկեալս։

Հ. Զի՞նչ վայելուչ և զօրաւոր յօրինին ճառք.

— Ոչ է մարթ համառօտիւ զպատասխանի տանել հարցուածոյդ. զի դա հարկ ա-

նէ ինձ զամենայն՝ ազգս ազգս հանդիսից ճարտասանութեան առաջի առնել, և զիւրաքանչիւր նոցա պատշաճեալ ձևս առ 'ի զարդ և զօրութիւն, և զքերթողականին իսկ փոքր 'ի շատէ տալ զկանոնս:

## ԴԱՍ Բ

Երեք ազգք ճարտասանութեան. — Յառաջաբանութիւն. — Առաջարկութիւն. — Բաժանումն:

Հ. Քանի՞ ազգ են ճարտասանութեան.

— Երեքակ. ցուցադրական, բաղխոհական, ատենական:

Հ. Զի՞նչ է ցուցադրականն.

— Պարսաւ կամ՝ գովեստ զիրաց ինչ. վասն որոյ ցուցադրականք են ներբողեան և դամբանականք ճառք, և որ 'ի ծնունդս, 'ի հարսանիս, կամ որ 'ի շնորհակալութիւն և յուրախակցութիւն յօրինին:

Հ. Զի՞նչ է բաղխոհականն.

— Համոզել զոք յօգտակարն և խորշեցուցանել 'ի վնասակարէն. վասն որոյ բաղխոհականք են ամենայն խրատական և յորդորական ճառք, և որովք ճարտարախօսք երբեմն վարէին յատեանս տեսչութեան իրաց աշխարհին:

Հ. Զի՞նչ է ատենականն.

— Ամբաստանութեան կամ՝ ջատագովութեան ճառ, որպէս որ յատենի 'ի լուր դատաւորաց ճառին:

Հ. Առ ի՞նչ զանազանութիւնս այս՝ է պիտանի.

— Առ 'ի սահմանել զկէտ նպատակի ճարտարախօսին. զի 'ի կացրդականն և 'ի բաղխոհականն առաւել ջանալի է նմա զկամսն և զսիրտ շարժել, իսկ յատենականն հաւանեցուցանել զմիտս. և ըստ այնմ պատշաճի զձևս ճարտասանականս 'ի կիր արկանել, և համեմատ առաջարկութեան զոճ ճառին յերիւրել։

Հ. Իցե՞ն ինչ որ այս ամենայն ազգի ազգի ճառից անխտիր պատշաճիցին.

— Այո ամենայն իրօք. և այսոքիկ են վեցեակ մասունք ճառին, որ են՝ յառաջաբանութիւն, առաջարկութիւն, պատմութիւն, ցուցումն, յորդոր, և վերջաբանութիւն։

Իբր ոչ եթէ այս ամենայն մասունք յամենայն ճառս անհրաժեշտ կարևորք իցեն, այլ 'ի կարգաւոր ճառս այսոքիկ առաւելագոյն մասամբ մտանեն։

Հ. Զի՞նչ է յառաջաբանութիւն.

— Պատրաստել զմիտս ունկնդրաց 'ի լուր բովանդակ ճառին։

Հ. Զի՞նչ կարևոր է յառաջաբանին.

— Նախ զի անդստին 'ի բնէ ճառին առեալ իցէ, և քաջ ընդ նմա կցորդեալ. վասն որոյ խրատէ Կիկերոն՝ խորհել նախ զբովանդակութիւն ճառին, և ապա յօրինել զյառաջաբանն։

Երկրորդ՝ առաւելագոյն զգուշութեան

պէտք են 'ի յառաջաբանին առ 'ի քաջ բացատրութիւն իմաստից և 'ի բարւոք շարադրութիւն. զի 'ի սկզբան անդ ունկնդրացն միտք և լսելիք դեռ անխոնջք՝ դիւրաւ ստգտանիցեն զթերութիւն: Դարձեալ և 'ի հակառակէն առաւել քան ամենայն ուրեք 'ի յառաջաբանելն խուսելի է 'ի պաճուճանաց. զի ինքնազարդ պարզութիւն կարևոր հանգամանք են յառաջաբանութեան:

Երրորդ՝ պարտ է յառաջաբանութեան լինել հանդարտ և մեղմ, եթէ ոչ դէպք ինչ անակնկալ պատճառս տացեն յանկարծական յառաջաբանութեան. այլ յայնժամ պարտ է զընթացս բովանդակ ճառին պատշաճել նմին, ապա թէ ոչ նուաղեալ անկանի բանն:

Չորրորդ՝ մի ինչ 'ի զօրաւոր փաստից յիշատակեսցի 'ի յառաջաբանին. զի այն ապա 'ի բնիկ տեղւոջն ոչ ինչ ազդեսցէ:

Հինգերորդ՝ պարտ է յառաջաբանին համեմատել չափոյ երկայնութեան ճառին և գեղեցկութեան. որպէս զի մի դուռն քաղաքին գեղեցկագոյն քան զքաղաքն իցէ, կամ քաղաքին վտանգ առաջի կայցէ փախչելոյ 'ի բաց, ըստ ծաղրական Դիոգինեայ առակին:

Հ. Զի՞նչ է առաջարկութիւն.

— Պարտ է ճարտասանին յաւարտ յառաջաբանութեանն առաջի առնել զպատճառս ճառիցն. և այն կոչի առաջարկութիւն:

Եւ պարտ է առաջարկութեան գոլ բացայայտ և ճիշդ, որովհետև իմացուած բովանդակ ճառին յայն հաստատեալ է։

Եթէ պատճառք ճառին քաջածանօթք իցեն, մարթ է նորաձև իմն զառաջարկութիւնն առնել առ 'ի զարթուցանել զլսելիս. զոր օրինակ Սէնիէրի 'ի ճառել զաստուածութենէ Քրիստոսի, այսպիսի յօրինէ առաջարկութիւն.

«Եթէ Քրիստոս չէր աստուած, ամպարշտագոյն քան զամենայն մարդիկ գտանէր»։

Օգնէ բազում ուրեք և բաժանումն 'ի պարզութիւն առաջարկութեանն և ճառին։

Հ. Ո՞ր իցեն կանոնք բաժանման.

— Նախ՝ զի մի՛ մին 'ի մասանց բովանդակեսցի 'ի միւսն, այլ իսկապէս զանազանեսցին 'ի միմեանց։

Երկրորդ՝ զի մասունքն 'ի միասին բովանդակեսցեն զառաջարկութիւնն։

Երրորդ՝ զի մի բազմամասն իցէ բաժանումն, այլ դուն ուրեք աւելի քան զերիս մասունս։

Չորրորդ՝ զի մի՛ արուեստակեալ իցէ բաժանումն, այլ 'ի բնէ առաջարկութեանն յառաջ ածեալ։

Այս ամենայն պայմանք քաջ պահին 'ի բաժանմանն՝ զոր Մասիլլոն առնէ 'ի ճառն չարչարանաց փրկչին. զի զբնաբանն՝ «Ամենայն ինչ կատարեալ է», բաժանէ

յերիս այսպէս . քանզի կատարեցաւ արդարութիւն առ 'ի յԱստուծոյ , չարութիւն առ 'ի մարդկանէ , և սէր առ 'ի Քրիստոսէ ։

## ԴԱՍ Գ

**Պատմութիւն . — Ցուցումն 'ի ներքին տեղեաց . — Սահման . — Թուումն մասանց և Ստուգաբանութիւն ։**

Հ . Զի՞նչ է պատմութիւն , զոր երրորդ մասն ճառի ասացեր .

— Պատմութիւն 'ի դատաստացութիւնս առաւելապէս ունի զտեղի , և է մի 'ի կարևորագոյն և 'ի դժուարին մասանց ճառին . զի պարտ է անդ ճարտասանին զամենայն ինչ ասել ճշմարտութեամբ , և մի՛ ինչ յեղծումն իւրոյ դատին ։

Պարտ է նմա անդստին արկանել զհիմունս ցուցակութեանց ճառին , պարզելով զհանգամանս նպաստամատոյցս իւր , և տկարացուցանելով զհակառակորդին ։

Ի բացայայտութիւն պատմութեան ընդ նախասացեալ պայմանս խնդրին և առաւելագոյն խնամք 'ի ճշգրտապատում առնել զանձինս , զժամանակ , զտեղի և զայլ կարևոր հանգամանս ։

Պարտ է դարձեալ հաւանական յօրինել զպատմութիւնն , և համառօտ՝ առանց աւելորդ հանգամանաց ։

Ի վարդապետական ճառս զտեղի պատ-

մութեանն ունի բացատրութիւն իրացն, զորմէ ճառքն են։

Հ. Զի՞նչ է ցուցումն, զոր չորրորդ մասն ճառի ասացեր.

— Հերքել ինչ կամ հաստատել փաս-տիւք։ Քանզի պարտ է ճարտասանին յետ 'ի ներքս ածելոյ զառաջարկութիւնն՝ ցու-ցանել զայն, գտանելով փաստս զօրաւորս, և բարւոք կարգաւորելով զգտեալսն։

Հ. Ուստի՞ խնդրելի են փաստք.

— Տեղեաց, ուր փաստիցն գիւտք են, կէսք կոչին ներքինք և կէսք արտաքինք, ոմանք հասարակք և այլք յատուկք։

Հ. Ո՞ր իցեն ներքինք.

— Ներքին տեղիք են, որ 'ի բնէ առա-ջարկեալ իրացն տան ապացոյցս. որպի-սիք են՝ սահման, թուումն մասանց, ստու-գաբանութիւն, լծորդք, սեռ և տեսակ, պատճառ և գործ, նմանութիւն և աննմա-նութիւն, բաղդատութիւն, հակադրու-թիւն, նախընթաց և հետևորդ և յարա-կից հանգամանք։

Հ. Զի՞նչ է սահման.

— Սահմանն է բան բացայայտիչ բնու-թեան իրին. որ ըստ իմաստասիրաց հա-մառօտ կազմի՝ բաղկացեալ 'ի սեռէ և 'ի տեսակէ. որպէս սահման մարդոյ՝ կենդա-նի բանական։

Բայց ըստ ճարտասանից ոչ 'ի սեռէ և 'ի տեսակէ՝ այլ 'ի գործոց և 'ի պատճառաց և յայլոց հանգամանաց կազմի ընդարձակա-գոյն, և կոչի ստորագրական սահման։

Այսպէս Ոսկեբերան ստորագրէ զարծաթասէրն.

«Զիք և չիք ինչ անհիմաստագոյն քան զընչից ծառայ. թուի թէ իշխեսցէ, և իշխան 'ի գլուխ ունի. թուի թէ տէր իցէ, և ծառայութիւն հարկանէ. կապանս վարակէ զանձամբ, և ուրախ է. գրգէ զգազանն, և բերկրի. 'ի գերութեան՝ վարեալ, ցնծայ և խայտայ. շուն կատաղի տեսանէ 'ի վերայ դիմեալ ոգւոցն, և յանհոգս է. զոր պարտ էր խառանել և սովամահ առնել, առատացեալ յանխընայ՝ շանի առ կուրծսն կուտէ, զի ևս քան զևս 'ի վերայ խաղայցէ և ահագինս լինիցի»:

Հ. Զի՞նչ է թուումն մասանց.

— Զև բանի՝ որով ճարտասանն զիւրաքանչիւր մասանց իրիք ասէ որ ինչ զբոլորէն է իմանալ: Որպէս Նարեկացւոյն գեղեցիկ հատուածն, յորում զհոգւոյն նաւակոծութիւն՝ այլաբանաբար նկարագրէ. «Ուստի նաւն 'ի բաղխմանէ վայրենի ալեացն խորտակեցաւ. թևոցն ձեռնարկութիւն քայքայեցաւ. կայմն ամբարձման 'ի կայից իւրոց խլեցաւ. առագաստին թռչարան յանկարկատելի ծուէնս պատառեցաւ. շինուածոյն շուք անզարդեցաւ, առասանք ձգողականաց խզեցաւ, տեսարան գլխոյն դիտակի խոնարհեցաւ, ապաւանդակին պարան կտրեցաւ, ապաւինութիւն խարսխին լուծաւ,

լուծք ստուարք ամոլիցն կցորդութեան բաժանեցան, սամիք ուղղչացն հեռոց գալարեցան, լաստ հիմանն հաստարանի ընկղմեցաւ, ղեկացն կառուցմունք անդրէն սուզան, չուոցն յարմարութիւն պակասեցան, ողնափայտին պատսպարան խսկոյն բեկաւ, կապարանք զստին հաստուածոյ յօշոտեցաւ, գոգք ամփոփման ծոցոյն կազմածոյ անարգեցան, խելք չըրթանցն եզերաց խախտեալ ոստեաւ, պազպաջունք բազմականացն անկեալ բարձաւ, վանդակապատին վայելչութիւն յատակեցաւ, գահաւորակին հանգստարան չփոթեցաւ, մածմունք տախտակաշարք 'ի միաբանութեանց միմեանց անջատերան, հեղոյսք պնդման բեւեռացն քարշեցան. արգասիք իւրին յիշատակարան ողբոց ինձ նմանեցաւ: Նաւուղիղն հանդէպ նաւին դեգերեալ ողբայ, ձեռն 'ի ծնօտի եդեալ՝ արտասուաց գետս իջուցանէ »:

Հ. Զի՞նչ է ստուգաբանութիւն.

— Ստուգաբանութիւն է, ըստ ճարտասանից, 'ի նշանակութենէ անուան ածել զհաստատութիւն. զոր օրինակ՝ Պարտ է իմաստասիրի սիրող գոլ իմաստութեան:

Ըստ այսմ է և Աբիգեայ ստուգաբանութեամբ անուան առն իւրոյ պարսաւելն զնա. «Մի՛ դիցէ տէր իմ զսիրտ իւր 'ի վերայ առն ժանտի Նաբաղայ, զի ըստ անուան նորա և ինքն է. Նաբաղ անուն նորա, և անզգամութիւն ընդ նմա »:

Եւ Ոսկեբերան այսպէս պարսաւէ ըզխեղկատակութիւն .

« Եւ զի ուսանիցիս , մի՛տ դիր . և անուն իսկ խեղկատակութեանն յանդիմանիչ է կատականացն . յայտ է թէ չէ առողջ և կատակն . Նախ ինքն իսկ 'ի յանձնէ կատակի , զի հարկ լինի եւ զերեսն ծռել , և զբերանն և զաչսն այլայլել ։ Զի հարկ է նմա այնուհետև և զկերպարանս և ըզծաղր և զգնացս փոփոխել , և հոպտել , և ամենեցուն նմանել , և ազգի ազգի պարսաւանս հնարել իմանալ . և հեռի են 'ի քրիստոնէից գուսանական բանք » ։

## ԴԱՍ Դ

Լծորդք . — Սեռ և տեսակ . — Պատճառք և գործք . — Նմանութիւն և աննմանութիւն . — Բաղդատութիւն ։

Հ . Զի՞նչ են լծորդք .

— Լծորդք են՝ որք անդստին 'ի նմին բառէ ածանցեալ՝ իբր թէ լծորդին ընդ արմատոյն ։ Արդ որպէս 'ի ստուգաբանութենէ անուան , այսպէս և 'ի լծորդ բառից կամ յածանցականաց առնուն ճարտասանք զհաստատութիւն . զոր օրինակ « Մարդ եմ , և զմարդկայինս յինէն ոչ օտար համարիմ » ։

Ըստ այսմ և Ոսկեբերան ասէ .

« Եւ քանզի սրբութիւն արար զնա մեղաց

մերոց, կացցուք մնացուք սուրբք, և մի ինչ կալցուք աղտ յանձինս. այլ զգեղն և զվայելչութիւնն զոր զգեցոյց մեզ՝ պահեսցուք անարատ, զի ոչ ինչ գտանիցի աղտ և խորշ կամ թէ այլ ինչ այնպիսի»։

Հ. Զի՞նչ է սեռն և տեսակ.

— Սեռ կոչի բոլոր ինչ, որ պարունակէ ընդ իւր և բազում մասունս այլատեսակս. և տեսակ, որ պարունակէ ընդ իւրև բազում անհատս։ Արդ է ուրեք զի ճարտասանն զհանգամանս պատշաճեալս սեռին կամ տեսակի հասարակաբար նկատեալ, ապա զառաջարկութիւնն որ ընդ նոքօք բովանդակի՝ 'ի վերայ ածէ։ Ըստ այսմ Եղիշէ վարդապետ առ 'ի ներբողել զհրաշալի արգասիս աստուածսիրութեան 'ի սուրբ Վարդանեանս, նախ զսիրոյն Աստուծոյ հասարակաբար յօրինէ ներբող, և ապա յառաջարկութիւն մատչի.

«Մեծ է սէրն աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր. և այնպէս աներկիւղս առնէ զմարդիկ՝ իբրև զանմարմինս զօրս հրեշտակաց. որպէս անդստին 'ի սկզբանէ է տեսանել զբազումս բազում անգամ 'ի բազում տեղիս։ Մարդիկ, որ սիրովն Աստուծոյ իբրև զինու վառեալք էին, ոչ ինչ խնայեցին զանգիտելով իբրև զանարի, գոլով վատասիրտք, կամ 'ի մահ անձանց, կամ յափշտակութիւն ընչից, կամ 'ի խողխողումն սիրելեաց, կամ 'ի գերութիւն ընտանեաց, եղանել

'ի հայրենի երկրէն և անկանել 'ի ստըրկութիւն յօտարութեան։ Որպէս յայսմ ժամանակի տեսաք աչօք մերովք. զի ըզնոյն նահատակութիւն նահատակեցաւ և աշխարհս Հայոց։ Քանզի իբրև ետես մեծն Վարդան » և այլն։

Հ. Ո՞րպէս 'ի պատճառաց կամ 'ի գործոց մարթ իցէ առնուլ ապացոյց.

— Բազում ուրեք ճարտասանն 'ի հանգամանաց պատճառին զլաւութիւն կամ զյոռութիւն գործոյն առնու ցուցանել, և կամ զհակառակն։ Այսպէս Սարգիս վարդապետ կուտակութեամբ եղեռնական գործոց ագահութեան պարսաւէ զախտն. « Սակայն արմատ ամենայն չարեաց արծաթսիրութիւնն է, ըստ առաքելոյն, և ագահութիւն. վասն զի չիք և չիք ինչ չարիք, որ ոչ 'ի սոցանէ ծնանին. ատելութիւն մարդկան, խռովութիւն, և պատերազմ առ ազգակիցս, պոռնկութիւն և գողութիւն և սպանութիւնք, և այլ ևս անթիւ վնասք՝ զորս ո՞վ ոք կարէ թուել։ Զի եթէ զտէրն տիեզերաց և զարարիչն արարածոց 'ի վաճառ էած այս ախտ և ետ ըսպանանել, զի՞նչ այլ ինչ մնայ 'ի չարեաց՝ զոր ոչ կարիցէ գործել։ Եւ եթէ զառաքեալն՝ զՔրիստոսի ընտրութեանն արժանաւոր՝ այնպէս վաղվաղակի գերի առեալ տարաւ, և զթիւն պակասեցոյց, և յահաւորսն զնա յանդգնեցոյց, ապա ո՞վ ոք կարէ կալ առաջի բուռն զօրութեան նորա » ։

Դարձեալ և 'ի գիրս Իմաստութեան.
« Ընդ որոց թէ ընդ գեղն զուարճացեալք զնոսա աստուածս կարծիցեն, գիտասցեն թէ որչափ ևս նոցա տէրն առաւել լաւ է. զի որ գեղեցկութեան արարչապետն է՝ նա հաստատեաց զնոսա: Ապա թէ ընդ զօրութիւնս և ընդ ազդեցութիւնս զարմանայցեն, իմասցին 'ի նոցանէ՝ որչափ ևս որ կազմեացն զնոսա առաւել զօրաւոր է »:

Հ. Մա՞րթ իցէ և 'ի նմանութենէ կամ յաննմանութենէ ցուցանել ինչ.

— Այո ամենևին. բայց 'ի յոյզս կրից գուն ուրեք վարի ձևս այս. և ոչ երբէք օրէն է յանծանօթ իրաց առնուլ նմանութիւն կամ աննմանութիւն: Օրինակ իմն յՈսկեբերանէ վասն նմանութեան.
« Զտեսանե՞ս և զմարմնոց իսկ զաչս. յորժամ հանապազ ընդ ծուխ գայցեն, արտօսր բերեն. եւ յորժամ 'ի խաղաղ օդս և 'ի մարգս և յաղբիւրս և 'ի դրախտս զբօսնուցուն, առողջագոյնք և քաջատեսք: Նոյնպէս և մտացն ակն եթէ յեղտիւրս հոգևոր բանիցն ճարակիցի, սուրբ յստակ և քաջատես լինի. իսկ եթէ ընդ ծուխ ինչ աշխարհի իրացս գայցէ, բժաբեր արտօսրալից լինիցի, և զազգի ազգի լալիւնս լայցէ և աստ և անդ »:

Ա՛յլ օրինակ 'ի Լամբրոնացւոյն.
« Ոչ է այս արութիւն զինուորի՝ յիւր ապարանս թուր շողացուցանել, և զօդ-

հարկանել. այլ որ 'ի հանդիսի տեղին իջանէ, և ընդդէմ ախոյեանին կայ: Նոյնպէս իմա, զի չէ ուղիղ մարտ հոգևոր՝ որ 'ի Ջորոյ գետ նստի, և զիս 'ի Կիլիկիա յաչաղէ »:

« Եւ արդ ասէ ասա. ճարտարախօսն ո՛չ զվերջին բանսն փութայ առնել յօրինել, զի զովեալ դրուատեալ մեկնիցի: Եւ սպասաւորն վերջին նուագաց կարի պատկառ կայ, զի մի պարսաւ լիցի: Եւ նահատակն եթէ ոչ զվերջին մարտն առաքինագոյն ցուցանիցէ, ո՛չ ապաքէն ամենայն աշխատութիւնն անօգուտ է: Եւ նաւավարն եթէ յամենայն ծովուն ըզգուշանայցէ, և մօտ 'ի նաւահանգիստն խորիցէ զնաւն կամ բախիցէ, ո՛չ ապաքէն զառաջին վաստակն կորոյս. Եւ բժիշկն եթէ թեթևացուցանիցէ զցաւ հիւանդին, և յորժամ մօտ 'ի կատարեալ առողջութիւն ածիցէ, յայնժամ զեղծցի, ո՛չ ապաքէն զամենայն ջանն կորոյս: Նոյնպէս և որ զառաքինութեան կատարումն ընդ սկզբանն ոչ միաբանեն, եղծանին և կորուսանեն զամենայն: Նոյն և 'ի կառամարտիկսն, որք 'ի գլխոյ անպարտիզացն պնդակազմ զերիվարսն արձակեն, և յետոյ մեղկիցին ինչ և ծուլանայցեն, ոչ պարգևացն հասանեն, և ոչ 'ի տերանցն ճանաչին ». Ոսկեր:

Իսկ յաննմաննեաց այսպէս ածէ հաստատութիւն Սարգիս վարդապետ.

Զոր օրինակ առանց Քրիստոսի չկարէ ոք արդարագործութիւնս առնել, զոր և ինքն իսկ ասաց՝ առանց իմ ոչ ինչ կարէք առնել, նոյնպէս և ոչ առանց սատանայի մեղս գործէ ոք»։

Հ. Զի՞նչ է 'ի բաղդատութենէ ցուցումն.

— Յորժամ ճարտասանն 'ի մեծէ ըզփոքրն, կամ 'ի փոքուէ զմեծ և կամ 'ի հաւասարէ զհաւասար յառաջ ածէ. զոր օրինակ.

«Եթէ առ Աստուածն իւր սուտ գտաւ, առ ո՞ ոք 'ի մարդկանէ դա արդար գտանիցի». Եղիշ. պատմ։

Երկրորդին օրինակ.

«Եթէ մեք հեռագոյնս 'ի ձէնջ՝ միայն 'ի լսելն այսպիսի ընկալաք յանձինս մեր սուգ դառնութեան. ապա որչափ ևս առաւել դուք հաղորդեալքդ 'ի չարչարանս ընդ հօտից ձերոց». Յովհ. կաթ։

Օրինակ երրորդին.

«Համարիք, եթէ այն գալիլեացիքն եղեն մեղաւոր քան զամենայն գալիլեացիս, զի զայնպիսի անցս կրեցին. ոչ, ասեմ ձեզ. այլ եթէ ոչ ապաշխարիցէք, ամենեքին նոյնպէս կորնչիցիք». Ղուկ. ժգ. 12։

## ԴԱՍ Ե

*Հակադրութիւն. – Նախընթաց և հետևորդ և յարակից հանգամանք. – Արտաքին տեղիք:*

Հ. Զի՞նչ է 'ի հակադրութենէ ցուցումն.

— Ճարտասանին բազում ուրեք զներհականս առ միմեանս կացուցանելով, յաւելու զօրութիւն մեծ 'ի բանս. զոր օրինակ. «Որ ինքն իւր չար է, այլում բարի ոչ կարէ լինել, և որ ինքն ընդ խաւար գնայ, այլում ոչ առաջնորդէ ճշմարտութեան լուսով: Որպէս զի չիք յանիրաւութենէ արդարութիւն, այսպէս 'ի ստութենէ ճշմարտութիւն». Եղիշ. պատմ:

«Զեկաց դահիճ առընթեր՝ զկողս քերել առ 'ի զոհս մատուցանելոյ 'ի հարկէ. այլ հասեալ կայ 'ի վերայ սաստիկ ցանկութիւն ընչից և ագահութիւն, և փորէ զաչս: Ոչ ոք 'ի զօրականաց արկ զմեզ 'ի խարոյկ և կացոյց 'ի վերայ կասկարայից. այլ մարմնոյ բոցն բորբոքեալ առաւել քան զայս այրէ զոգիս: Զկայ մօտ Թագաւոր՝ բազում պարգև խոստացեալ առ 'ի զերծուցանել, 'ի մօտ կան մոլեկան փառք, որ չար քան զայն խտրղեն». Ոսկեր:

Եւ Եղիշէ 'ի խրատն միանձանց.

« Ու արդ ես տեսանեմ 'ի մերում աշխարհիս և ոչ զոք ազատեալ յայսպիսի աղետից ։ Յետս ընդդէմ ընթերցաք զգեղեցիկ գրեալսն. 'ի պատճառս ախտաւորութեան հեռացաք 'ի սուրբ ծնողացն, և արարաք բազում հարս ստախոսս. զորս պատուելոյ արժանի էր՝ անարգեցաք, և յորս ոչն ունէաք իշխանութիւն դնել մեծարանս, զախտ աղետից մերոց յոյժ ծախեցաք ։ Ազատեցաք 'ի հարկաց արքունի՝ զորս առանց մեղաց էր հարկիլն, և մնաք ընդ հարկաւ ստացուածոց՝ որ լի են անառակ ագահութեամբ ։ Ջելաք յանկօղինս սուրբ հարսանեաց, և արարաք մեզ բարձրագահոյն առաւել քան զաշխարհն . . ։ Կոչիկք ոտից մերոց յանդիմանեն զմեզ եթէ ոչ են սուրբ ճանապարհք մեր ։ Հանդերձք մեր աղաղակեն զգործոց ձեռաց մերոց, եթէ մերկ եմք յերկնաւոր զգեստուց ։ Երիվարք մեր ցուցանեն մեզ, եթէ ոչ եմք յափշտակելոց ընդ առաջ տեառն 'ի վերայ օդոց ։ Շինուածք ապարանից մերոց յայտ առնեն, եթէ ոչ ունիմք մեք տաճար առանց ձեռագործի յերկինս, յոր մտանելոց են ամենայն զաւք սասկացելոցն յերկրաւոր ախտից ։ Կալուածք անդաստանաց մերոց կշտամբեն զմեզ, եթէ չիք մեր բաժին 'ի վիճակին երկնաւորս ։ Մրգուզք անյագք եղաք 'ի կերակուրս, և առանց չափոյ արբաք գինի պղտորիչ խորհրդոց և մտաց ։ Խոր 'ի քուն ննջեմք ամենեքեան,

և երագ թուի մեզ ճշմարտութիւնն : Կափուցեալ են աչք մտաց մերոց 'ի տեսական խորհրդոց, և անյագ պագշոտեալ հայել 'ի կեանս աշխարհիս : Արգելեալք զլսելիս 'ի սուրբ ընթերցուածոց, և ունկընդիր եմք բառաչման խաշանց մերոց : Ոչ եկն մեզ հոտ անոյշ 'ի Հոգւոյն սրբոյ, վասն զի սիրեցաք մեք զիւղ ախտալից աշխարհիս : Ոչ ճաշակեցին քիմք ոգւոց մերոց զկերակուր երկնային, վասն զի պարարեցաք զանձինս մեր 'ի զանազան խորտիկս : Մութ է գոյն դիմաց մերոց, վասն զի ոչ զուարթացան երեսք մեր 'ի խորհուրդս սրբութեան : Ցաւալից են անդամք մարմնոց մերոց, վասն զի յառաջ քան զմարմինս՝ զոգիս ախտացուցաք : Գերեզմանաց բռելոց նմանեցաք յանձինս մեր, վասն զի ունայն եմք 'ի շնորհաց սուրբ Հոգւոյն. վասն այսորիկ և ամենայն չարիք հասին յաւուրս մեր » :

Հ. Զի՞նչ է 'ի նախընթաց և հետևորդ և 'ի յարակից հանգամանաց ցուցումն.

— Բազում ուրեք 'ի հանգամանաց աստի յայտնի կամ հաւանական ապացոյցս առնու ճարտասանն. զոր օրինակ 'ի ծագել արեգական՝ հարկ է զի լիցի տիւ, և եթէ տիւ է՝ հարկ է թէ ծագեալ լիցէ արեգակն :

Այսպէս քաջն Վարդան զյոյս օգնականութեան առ 'ի յԱստուծոյ հաստատէ 'ի նախընթաց հանգամանաց.

«Յերկուս և յերիս կռիւս առէր ինքնին մեծաւ
զօրութեամբ օգնեաց մեզ. որպէս զի զա-
նուն քաջութեան ժառանգեցաք, և զզօրսն
արքունի չարաչար հարաք, և զմոգսն ան-
ողորմ սատակեցաք, և զպղծութիւն կռա-
պաշտութեանն 'ի տեղեաց տեղեաց սրբե-
ցաք, զանօրէն հրաման Թագաւորին եղ-
ծաք ապականեցաք, զխռովութիւն ծովուն
ցածուցաք. լեռնացեալ ալիքն դաշտա-
ցան, բարձրադէզ փրփուրն սպառեցաւ,
զազանացեալ սրտմտութիւնն դադարեաց։
Որ 'ի վերայ ամպոց որոտայր, նկուն ե-
ղեալ քան զսովորական բնութիւնն 'ի վայր
գտաւ ընդ մեզ խօսելով»։

Իսկ յարակից հանգամանք Թէպէտ և
ոչ համօրէն 'ի միասին, այլ առէպ 'ի ճահ
պատահեն ճարտասանին. և են ութ այսո-
քիկ՝ Ո՞վ, Զի՞նչ, Ո՞ւր, Ի՞ւ, Քանի՞ցս, Ըն-
դէ՞ր, Ո՞րպէս, Ե՞րբ։

Զբազումս յայսցանէ վայելուչ 'ի կիր
արկանէ իմաստունն 'ի բանս յայս.

«Մինչդեռ խաղաղութեանն պատեալ էր
զամենայն, և այն ինչ գիշերն իւրով ա-
րագութեամբն ընդմիջէր, ամենազօր բանն
քո յերկնից յաթոռոց արքունեաց սաս-
տիկ պատերազմող 'ի մէջ սատակման եր-
կրին հասանէր։ Սուսեր պողովատիկ զա-
նաչառ հրամանդ քո բերեալ և 'ի մէջ ան-
ցեալ, զամենեսին լնոյր մահուամբ. անդ-
առ երկնից քերէր, և այսր յերկիր հա-
սանէր։ Յայնժամ վաղվաղակի ցնորք ան-

հնարին երազոց խռովեցուցանէին զնո-սա, և արհաւիրք անկարծք 'ի վերայ հա-սանէին։ Եւ այլ ոք այլուր անկեալ կիսա-մահ, վասն որոյ պատճառանօք մեռանէր՝ յայտ առնէր։ Զի երազոյն խռովեցու-ցեալ զնոսա, զնոյն յառաջագոյն զուշա-կէին. զի մի յանդգնեսս, վասն որոյ չարչա-րաչարն տանջէին, կորնչիցին »։

Հ. Ո՞ր են արտաքին տեղիք.

— Իսկ արտաքին կոչին տեղիք՝ Օրէնք, Համբաւ, Արձանագիրք, Երդումն, և Վկ-այք, յորոց մարթ է ճարտասանին քաջ հաստատութիւն առնել բանիցն։

Հ. Զիա՞րդ պարտ իցէ զփաստս կար-գաւորել.

— Պարտ է հզօրագոյն փաստիւ իւրք գրաւել նախ զմիտս, և ապա տակաւ 'ի տկարագունից 'ի հզօրագոյնս անցանել, յաւելեալ զիւրաքանչիւր պատշաճ օրի-նակս և վկայութիւնս։ Մի խառնակել զտարբեր փաստս ընդ միմեանս, այլ ուրոյն զպատշաճն և զօգտակարն և զի-րաւացին կարգել, հերքելով զհակառակ-ացն ։

## ԴԱՍ Զ

### Յորդոր. — Վերջաբան։

Հ. Զի՞նչ է յորդորն, զոր հինգերորդ մասն ճառի ասացեր.

— Ճարտասանին ոչ միայն պարտք են խելամտեցուցանել զունկնդիրս, այլ և զկամսն յորդորել կրիցն յուզմամբ:

Հ. Ո՞ր են գլխաւորքն 'ի կիրս, զոր պարտ է ճարտասանին յուզել ըստ պատշաճի.

— Սէր և ատելութիւն, բարկութիւն և հեզութիւն, խնդութիւն և տխրութիւն, երկիւղ և քաջալերութիւն, կարեկցութիւն և մխիթարութիւն:

Հ. Ո՞րպէս զմի մի 'ի կրից այտի մարթ իցէ զարթուցանել.

— Զսէր՝ նկարագրութեամբ գեղեցիկ հանգամանաց անձին կամ իրաց, զոր պարտն իցէ սիրելի ընծայեցուցանել. և պարձեալ յուսով առ 'ի նմանէ բարեացն և օգտից: իսկ զատելութիւն 'ի հակառակէն՝ նկարագրութեամբ յոռութեանց նորա, և երկիւղիւ առ 'ի նմանէ չարեացն:

Զբարկութիւն՝ յիշատակաւ թշնամանացն կրելոց. իսկ զհեզութիւն՝ անկեղծ խոստովանութեամբ յանցանաց, անչարութեամբ դիտաւորութեան յանցաւորին, և յիշատակաւ վաստակոց և լաւութեան նորա:

Զխնդութիւն՝ մեծութեամբ բարւոյն և բազմաժամանակեայ ակնկալութեամբն կամ անկարծելի յաջողութեամբ. իսկ ըզտխրութիւն հակառակօք սոցին:

Զերկիւղ՝ մերձաւորութեամբ վտանգին և անխուսափելի հետևութեամբ չարեացն. իսկ զքաջալերութիւն՝ յուսով յաջողութեան, զիւրին և հաւանական յաջողութիւն իրացն ցուցանելով:

Զկարեկցութիւն՝ մանրապատում առ-
նելով զաղէտս վշտացելոյն, ցուցանելով
զի չէր արժանի չարեացն, և զգթութիւն՝
ցուցանելով զվսեմութիւն և զբարութիւն։
Իսկ զմխիթարութիւն՝ թեթևացուցանե-
լով ըստ կարի զծանրութիւն չարեացն,
յուսացուցանելով 'ի փոխարէնան առ և
'ի հանդերձեալս, և զարիութեանն յաւշ
առնելով զվսեմութիւն և զօգուտ։

Հ. Իցե՞ն ինչ կանոնք առ 'ի յօդս Հա-
սարակաց ամենայն կրից ճահաւորք.

— Են իսկ. և նախ՝ զի ճարտասանն ըղ-
ձացեալ իցէ կրիւքն, զոր յայլս կամի զար-
թուցանել։

Երկրորդ՝ զի նախ համոզեսցէ զմիտս
փաստիւք և ապա ջանասցի շարժել ըզ-
սիրտ։

Երրորդ՝ զի 'ի պատշաճ տեղւոջ զյորդա-
րակն արասցէ առ 'ի շարժել զկիրս, որ
ըստ յաճախ սովորութեան 'ի վերջաբանին
'ի դէպ գայ։

Չորրորդ՝ զի մի զգացուսցէ ունկնդրացն՝
թէ ահա մտանէ 'ի յորդորակս, այլ յանըղ-
գաստից 'ի վերայ ածել զյոյզս կրից՝ տա-
կաւ պատրաստելով առ այն զսիրտս։

Հինգերորդ՝ գիտել զլեզու և զբարբառ
կրից, որ է ամենևին առանց արուեստա-
կութեան, և եռանդուն լի ձևովք՝ առանց
զարդուց և նրբաբանութեանց։

Վեցերորդ՝ մի ընդհատումն առնել յուզ-
ման կրից, այլ ինչ 'ի ներքս ածեալ. և մի

չիջուցանել զեռանդն կրից եկամուտ զարդուք կամ նմանութեամբք։

Եօթներորդ՝ մի՛ կարի յամել 'ի յորդորակս, զի եռանդն կրից չէ յերկարատև։

Յաճախ են 'ի ճառս Ոսկեբերանի չքնաղ օրինակք զարթուցիչք կրից. որպէս և ութանօր յաղագս սուրբ խորհրդոյն ճառէ. «Վասն որոյ ամենևին արթուն պարտիս լինել. քանզի և ոչ սակաւ տանջանք պահեցին այնոցիկ՝ որք անարժանութեամբն հաղորդիցին։ Զմտաւ ած որպիսի ցասումն մատնչին և խաչահանուացն եղև. զգոյշ լեր այժմ, գուցէ և դու պարտական մարմնոյ և արեան գտանիցիս։ Նոքա զմարմինն սպանին, և դու յաղտեղեալ հոգւով ընդունիս յետ այնչափ երախտեացն։ Քանզի չշատացաւ մարդ լինել և ապտակել և մեռանել, այլ և տակաւին զանձն իւր խառնէ ընդ մեզ. ոչ միայն հաւատովք, այլ և արդեամբք իսկ մարմին իւր յօրինէ զմեզ։ Քան զի՞նչ չէ պարտ սրբագոյն լինել այնմ, որ յայնմ զենմանն վայելիցէ. քան զորպիսի՞ ճառագայթս պայծառագոյն՝ ձեռինն, որ զայն մարմին հատանիցէ. և բերանոյն, որ հոգևոր հրովն լընուցու. և լեզուին, որ համակ 'ի կարմիրս յահագին յարենէն ներկանիցի։ Զմտաւ ած որպիսի պատուով պատուեցար, կամ յորմէ՛ սեղանոյ վայելես. զոր հրեշտակք տեսանեն և զարհուրին, և չիշխեն համարձակ ընդդէմ հայել 'ի փայլա-

տակաւանցն որ անտի հատանիցին, և մեք նովաւ կերակրիմք, և նովաւ զանգանիմք, և լինիմք մի մարմին և մի հոգի։ Ո՞ պատմեսցէ զզօրութիւնս տեառն, լսելի արասացէ զամենայն օրհնութիւնս նորա։ Ո՞ր հովիւ յիւր անդամոցն կերակրէ զիւր ոչխարսն. և զի՞նչ ես ասացից հովիւ, այլ և մայրք ես իցեն քաղում անգամ, որ յետ երկանց և ծննդոց՝ դայեկաց տան զորդիս։ Իսկ սա ոչ ժուժեաց զայս առնել, այլ ինքնին կերակրէ զմեզ իւրով արեամբն. և ամենայնիւ ընդ իւր զրկախառն առնէ զմեզ...։ Եւ արդ մի ծուլանայցեմք, որ այսչափ արժանի եղեաք սիրոյ և պատուոյ. չտեսանիցեմք զմանկունս մատաղս՝ որպիսի յօժարութեամբ բուռն զստեանց մարցն հարկանիցեն, որպիսի յօժարութեամբ մածուցանեն զշրթունսն ընդ մարցն շրթունս։ Այսպիսի յօժարութեամբ մատիցուք յայն սեղան և 'ի մայրենի հոգևոր բաժակն. մանաւանդ թէ ևս յոլովագոյն քան զմանկանցն ձգեսցուք մեք զշնորհս Հոգւոյն, և զմին միայն տրտմութիւն համարեսցուք, չվայելելն յայնպիսի կերակրոյ։ Քանզի չէ մարդկեղէն զօրութեան գործն, որ առաջի կայ, զոր յայնժամ յընթրեացն ժամ արար, և այժմ զնոյն գործէ. մեք զսպասաւորաց տափեան ունիմք, և որբէ և վերստին կազմէ նա»։

Հ. Զի՞նչ է վերջաբանն.

—Վերջին մասն ճառին, յորում ճարտասանն 'ի գիտաւորութիւն բովանդակ ճառին, ազդողագոյնս ջանայ հասանել։

Վասն որոյ պարտ է 'ի վերջաբանին համառօտել զամենայն զփաստս, կնիք զհզօրագոյնն դնելով։

Բայց գործ է գիտել ըստ ժամանակին ամփոփել զճառն. զի մինչչև ցուցեալ զառաջարկութիւնն՝ զհետևանսն 'ի վերայ ածել ծաղրելի է։ Դարձեալ և զպերճաբանութիւն ընդ զօրութեան բանից վայելչապէս խառնելի է 'ի վերջաբանին, զի և ճարտասանն ընդ ճառին հանճոյ լիցի լսելեաց։

## ԴԱՍ Է

*Տեղիք սեփական երից ճարտասանական հանդիսից։*

Հ. Իցէ՞ և այլ ինչ զանազանութիւն ճարտասանական տեղեաց քան զներքինսն և զարտաքինս.

—'Այո՛ ամենևին. զի զորոց ցայսվայր ասացաքն՝ հասարակ կոչին տեղիք, բայց են և սեփականք երից ճարտասանական հանդիսիցն։

Հ[illegible] իցեն կացրդական հանդիսին սեփակ[illegible] տեղիք.

— Նախ ազգն կամ հայրենիք, եթէ ազնուազգի իցէ ներբողեալն. իսկ եթէ յան-

տոհմութենէ ազնուացեալ, պարտ է զա-
ռաքինութիւն նորա և զփառաւորս պան-
ծացուցանել՝ որովք անձամբ զանձն ազ-
նուականացոյց։

Երկրորդ՝ քաջակիրթ զաստիարակու-
թիւն ներբողելոյն։

Երրորդ՝ մեծութիւնք, եթէ բարուք վա-
րեալ իցէ նոքիմբք, և 'ի գրկիլն յայնցանէ
անխռով կացեալ։

Չորրորդ՝ համառօտիւ իմն և 'ի վայելուչ
կերպարանաց առնելի է զներբող, և մա-
նաւանդ 'ի տգեղութենէ զպարսաւ։

Հինգերորդ՝ բարեմասնութիւնք բնա-
կանք և ստացականք. առաջինովքն գովե-
լի է՝ եթէ բարուք ուրուք վարեալ իցէ նո-
քօք, և վերջինովքն՝ եթէ ճգամբք ստա-
ցեալ իցէ զայնս։

Վեցերորդ՝ գործք ներբողելոյն, որ ա-
ռաքինականք և որ այլ ինչ կենցաղօգուտ
արգասիք՝ որ յաճախեն պարծանս մար-
դոյ։

Եօթներորդ՝ փառք և մրցանակք, զորս
տարեալ ուրուք իցէ։

Ութերորդ՝ հանգամանք մահուն, եթէ
վասն հաւատոց կամ յօգուտ աշխարհի
կամ 'ի վերայ հայրենեացն զմահ յանձն
առեալ իցէ։

Ըստ սմին օրինակի և զքաղաք մարթ է
ներբողել 'ի հիմնադրէն, 'ի վաղեմի հնու-
թենէն, 'ի տեղւոյն, 'ի ձևոյն, 'ի մեծու-
թենէ, 'ի գեղեցկութենէ փողոցացն և

հրապարակաց, յաշխարհամուտ շինուածոց, 'ի կամրջաց, 'ի նաւահանգստից, 'ի հին աւանդից, յանառիկ ամրութենէն, յանխռով խաղաղութենէ, 'ի բարւոք տեսչութենէն, 'ի ճոխութենէ, 'ի բարգաւաճ շահավաճառութենէ, 'ի բազմամարդութենէ, 'ի հանճարոյ բնակչացն, յականաւոր մարդկանէ՝ որ անդ կացեալ, 'ի սատածիչ օդոց, 'ի բերոց երկրին, այլովքն հանդերձ։

Որ ինչ զներբողինէն տասցաք՝ նոյնք օգնեն և առ 'ի պարսաւ, անմասն 'ի գովելեաց անտի ցուցանելով զպարսաւելին։

Հ. Ո՞ր իցեն բաղխոհական հանդիսին սեփական տեղիք.

— Նախ ցուցանել զարդարութիւն առաջարկութեանն. զի ոչ բնական օրինաց, ոչ քաղաքականին և ոչ աստուածայնոցն և մարդկայնոց դրական օրինաց հակառակի, և ոչ վաղեմի սովորութեանց կամ կարծեաց՝ որ զօրինաց ունին զօրութիւն։

Երկրորդ՝ ցուցանել զօգտակարութիւն, որ առաւել յորդորիչն է. և զոյժս՝ որ յապախտն առնելոյ զայն ծնանիցին։ Իսկ եթէ կարևոր ևս առ 'ի կեանս և 'ի բարեկենդանութիւն իրքն իցեն, հզօրագոյն ևս ցուցանելի է զայն։

Երրորդ՝ ցուցանել զփառս և զպարծանս որ անտի յառաջ գայցեն, քանզի բազումք այնոքիկ են՝ որ ցանկութեամբ փառաց և երկիւղիւ վատանունութեան ա-

ունել յորդորին քան թէ օգտակարութեամբ։

Չորրորդ՝ ոչ միայն զհնարաւորութիւն իրացն, այլ և զդիւրութիւնն ցուցանելի է։ Իսկ եթէ դժուարին իցէ, յաւելուլ պարտ է և զպատճառս յաղթելոյ դժուարութեանցն։

Այսորիկ 'ի համոզելն. իսկ 'ի հերքելն ինչ՝ հակառակօք սոցին հնարիւք վարելի է՝ անիրաւ, վնասակար, անօգուտ, անպատշաճ, դժուարին և անհնարին իսկ ցուցանելով։

Ընդ բաղխոհական հանդիսիւ բովանդակին և բարոյական խրատք և քարոզք. այլ 'ի սոսա պարտ է ճարտասանին ցուցանել զպարտս ունկնդրաց 'ի կատարումն աստուածային և մարդկային օրինաց, և սպառնալեօք պատուհասից երկեցուցանել զնոսա։ Եւ ապա վայելչականաւն ևս և օգտակարաւն և խոստացեալ վարձուքն հոգևորականօք և ապա մարմնաւորօք քաջալերել զնոսա, և զդիւրութիւնն ևս և զզուարճութիւն կատարման իրացն 'ի վերայ յաւելուլ, և յորդորակօք կատարել զճառն։

# ԴԱՍ Ը

### Տեղիք առանձնական հանդիսին։

Հ. Ո՞ր իցեն առանձնական հանդիսին սեփական տեղիք.

— Առանձնախօսին երկեակ պարագք են, դատախազի և ջատագովի։

Արդ դատախազին նախ քան զամենայն պարտ է ցուցանել զհաւաստիս յանցանաց ամբաստանելոյն 'ի հանգամանաց անտի գործոյն. զոր օրինակ զյանցանս սպանութեան յարիւնաշաղախ հանդերձիցն, 'ի զէնս կրելոյ 'ի ծածուկ, 'ի յառաջագոյն սպառնալեացն, յայլագունելոյ դիմացն, 'ի փախստենէ, և այլն։

Երկրորդ՝ յականատես վկայից։

Երրորդ՝ 'ի խոստովանութենէ պարտաւորին։

Բայց բազում այն է՝ զի ոչ յայտնի զըստանին հաւաստիք, և յայնժամ գուշակութեամբք ևեթ հարկ է վարել դատախազին, յորմէ գուշակական դատն այն կոչի։ Իսկ տեղիք գուշակութեանցն են նախընթաց և զուգընթաց և հետևորդ հանգամանք. զոր օրինակ 'ի դատ սպանութեան նախընթաց հանգամանք են՝ եթէ ամբաստանեալն թշնամութեամբ էր ընդ սպանելոյն, եթէ մահ սպառնացեալ էր նմա, եթէ զրկեալ 'ի նմանէ, եթէ սովորեալ 'ի հա-

րուածս կարեվէրս կամ յայլ ոճիրս։ Զուգընթացք են՝ եթէ պատեհ էր նմա անպատուհաս զերծանել, եթէ լսելի եղեւ աղաղակ և հեծութիւն, և այլ այսպիսի նըշանք։ Իսկ հետեւորդք են՝ խուճապել նորա զվայրօքն, փախչել, այլագունել դիմացն, զէն 'ի ծածուկ ունել, պատ 'ի պատ պատասխանիք, այլովքն հանդերձ։

Իսկ ջատագովին պարտ է նախ ժխտել զյանցանս ամբաստանելոյն՝ անդստին 'ի նոցին հանգամանաց անհնարին ցուցանելով զայն և 'ի վեր քան զկար նորա։ Բայց եթէ արդարև պարտաւոր իցէ յանցանացն, պարտ է ջատագովին թեթևացուցանել ըստ կարի զյանցանսն, ցուցանելով եթէ էին ինչ ամբաստանելոյն իրաւունք կամ պատճառք 'ի գործ անդր ձեռնարկելոյ. վասն որոյ պարտ է առաւել ևս ջատագովին հմուտ լինել օրինաց և իրաւանց և սովորութեանց։ Իսկ եթէ բնաւ ամենևին չիցէ մարթ արդարացուցանել զգործն, հարկ է զկամս յանցաւորին ցուցանել անպարտ, դիպաց ընծայելով ըզգործն, կամ ապշութեան, կամ արբեցութեան, կամ բուռն թափոյ կրից, կամ գրգռութեան թշնամւոյն, այլովքն հանդերձ։

Համառօտիւ ասել, յոյժ այլազգ են 'ի միմեանց գործ դատախազի և ջատագովի. և դժուարագոյն յոյժ երկրորդիս գործ քան զառաջնոյն։ Սմա պարտ է ցուցանել 'ի յա-

ռաջաբանի իւրում, զի ոչ շարժի յառելութենէ կամ յայլոց կրից, այլ 'ի սիրոյ ևեթ արդարութեան և ճշմարտութեան. իսկ ջատագովին պարտ է ջանալ՝ յինքն յանկուցանել զլսելիս ցածութեան բանիւք, և կասկածանս իմն և երկմտութիւն զհակառակորդէն արկանել 'ի միտս ունկնդրացն: Դատախազին պարտ է զօրաւոր և բացայայտ առնել զպատմութիւնն, իսկ ջատագովին մեղմ և ուրեք ուրեք սքօղել: Դատախազին պարտ է տակաւ սաստկացուցանել զփաստս, և կնիք զհզօրագոյնն 'ի փաստից 'ի վերայ ածել. իսկ ջատագովին զհզօրագոյնս 'ի փաստիցն նախ գրել, և մի երբէք խուսել 'ի պատասխանատուութենէ, այլ մանրախուզիւ հետազօտել զփաստս հակառակորդին և հերքել: Իսկ 'ի վերջաբանին պարտ է երկաքանչիւրոցն ևս եռանդուն յորինել ըղբանսն, միոյն 'ի վրէժխնդրութիւն և միւսոյն 'ի գթութիւն շարժելով զլսելիս, յորում զօրավիգն մեծ իցեն ջատագովին վաստակք և առաքինութիւնք ամբաստանելոյն:

## ԴԱՍ Թ

Ջեք բառից:

Հ. Ցոյս վայր զմասանց իւրաքանչիւր զազգի ազգի ճառից և զտեղեաց նոցա

պարզաբանեցեր զկանոնս. արդ ասա ինձ, Իցե՞ն ինչ որ ամենայն մասանցս յայսոցիկ առ հասարակ պատահիցին, և որ այնո-քիկ իցեն.

— Քերականին պարտք են անսխալ ըզ-բանս յօրինել՝ նիւթականին ևեթ վայել-չութեան ուշ ունելով. իսկ ճարտասանին պարտ է իմանալի իմն վայելչութիւն յա-ւելուլ 'ի նոսա: Եւ առ այս 'ի կիր արկա-նէ նա զձևս, որոց յամենայն մասունս ճառին են մուտք:

Հ. Զի՞նչ են ձևք.

— Ձևք են նորօրինակ բացատրութիւնք՝ առ 'ի տալ ազդուութիւն խօսից:

Եւ յայսցանէ են որ բառից ևեթ կոչին ձևք, որպէս փոխանակ ասելոյ՝ Չիք ոք ու-րեք, ասել՝ «Չիք ոք չիք ուրեք»: Եւ են որ իմաստից կոչին ձևք. որպէս փոխա-նակ ասելոյ՝ Բազում վիշտս կամ փորձու-թիւնս կրեալ, ասել՝ «Բազում ևս ձիւ-նաբերս յանձին կուտեալ»: Կամ փոխա-նակ ասելոյ՝ Զօմանս սրով կոտորէին, ա-սել՝ «Զօմանս բազմախողխող երկաթոյն տային կերակուր»:

Հ. Քանի՞ են ձևք բառից.

— Տիրապէս չորք. աւելադրութիւն, զեղչումն, յոգնահոլովք և նմանաձայնու-թիւն:

Հ. Զի՞նչ է աւելադրութիւն.

— Կրկնումն նոյն կամ համանշանակ բառի, պէսպէս ձևովք. զոր օրինակ կըրկ-նութեամբ 'ի սկիզբն.

« Ո՞ւր են դպիրքն, ո՞ւր են խրատտուքն, ո՞ւր է որ ունի զհամար պահակերաց զմեծի և զփոքու » . Եսայի :

Դարձեալ կրկնութեամբ 'ի վերջն .

« Իսկ արդ բնութիւնս իմ ոչ կշտամբեալ յանդիմանէ զիս՝ եթէ ստեղծայ մերկ, և եթէ եղայ 'ի դրախտին մերկ, և եթէ ելի անտի մերկ, եթէ ծնայ մերկ, և եթէ անդրէն յերկիր մերկանդամ երթամ » . Եղիշ :

Դարձեալ խառն կրկնութեամբ .

« Ողորմիմ ողորմիմ սիրելեաց ձերոց, և բազում անգամ ողորմիմ անձանց ձերոց » . Եղիշ :

Դարձեալ համանշանակ բառից կրկնութեամբ .

« Եթէ ցանկ այսպիսի միտս ունիցիս, իբրև զազատոր շրջիս հանապազ, լաս, հեծես, յողւոց հանես, աշխարես զցայգ և զցերեկ : Մի՛ մեղաւոր միայն կոչեսցուք զանձինս մեր, այլ զմեղս զամենայն մի ըստ միոջէ զմեծն և զփոքրն այց արասցուք, խնդրեսցուք, զի մի՛ մնասցէ անյիշատակ » . Սարգիս :

Հ. Զի՞նչ է զեղչումն .

— Լռութիւն մասանց ինչ բանի պէս պէս ձևովք . զոր օրինակ .

« Քննեցաւ (միաստասպարտն), դատաւ, պատժեցաւ, 'ի սուր սպանեցաւ » . Մակար :

Աստանօր լռեն շաղկապք :

« Բարկութիւն ամենահզօրն զիջաւ 'ի հաշտութիւն, զի 'ի մէնջ խաղաղութեան պա-

տարագն » . Լամբ ։ Ուր լոկ բառս Մատու-ցաս ։

« Ցետ տեսանելոյ զնա յարուցեալ, և շօշափելոյ ձեռամբ Թովմայի, զի՞նչ » . Լամբ ։ Այսինքն տակաւին յետ այնորիկ զի՞նչ առնէին առաքեալքն ։

Հ. Զի՞նչ են յոգնահոլովք .

— Կրկնումն նոյն բառի յայլ և այլ հոլովս, կամ բայի յայլ և այլ ժամանակս և յեղանակս . զոր օրինակ .

« Փառաւորեմք զԱստուած յորժամ զմիմեանց բեռն բառնամք, յորժամ միմեանց զկիրս արկանեմք, յորժամ զմիմեամբք փարիցիմք, յորժամ առ միմեանս Ջողարիցիմք, յորժամ միմեանց կարեկից և վշտակից գտանիցիմք, յորժամ ՚ի վերայ իրերաց արտասուեմք » . Սարգ ։

Ես դարձեալ . « Երիթացեալ և բըրդդղեալ առ ամենայն ոք դիմէ, զամենայն ոք աղաչէ, ամենեցուն աղերսէ » . Սարգ ։

Ես դարձեալ . « Այլ իմաստունք լացին և լան միշտ կենդանի բանիւքն իւրեանց » . Լամբ ։

Ես դարձեալ . « Ի խաւարային ժամու զխաւարային կերակուրս խաւարային մարմնոյս տացուք » . Եղիշ ։

Հ. Զի՞նչ է նմանաձայնութիւն .

— Բառք կամ յանգք նմանաւորք միմեանց . զոր օրինակ .

« Փըթթեալ վարդից նման թերթից ,
« Կամ գերունակ ճըղաց խընձոր » ։

Այլ օրինակ .
« Ծովն 'ի միջի իմ ծածանէր ,
« Քաղցրիկ օդովն ծիծաղէր » . Շնորհ :
Այլ օրինակ .
« Գոհար վարդն վառ առեալ .
« Ի վեհից վարսիցն արփենից .
« Ի վեր 'ի վերայ վարսից
« Ծաւալէր ծաղիկ ծովային » :
Այլ օրինակ .
« Ցատանին տագնապաւ աներևք անկոց եղևին ծառոց շարժեալք 'ի հողմոց ուժգին բաղխելոց » . Նարեկ :

Յետրինս այս ձև 'ի քերթուածս առաւելապէս ունի տեղի , և այն բազում զգուշութեամբ . զի խաղքս այսոքիկ բառից մանկական առնեն զշարագրածն :

# ԴԱՍ Ժ

## Ձևք իմաստից :

Հ . Ո՞ր իցեն ձևք իմաստից .

— Ամենայն բան՝ արտաքոյ սովորական ասացուածոյ բացատրեալ , եթէ փոխաբերաբար , եթէ այլաբանօրէն , և եթէ այլով որ և է օրինակաւ :

Հ . Մեկնեա՛ ինձ զգոսա մի ըստ միոջէ . և նախ թէ զի՞նչ է փոխաբերութիւն .

— Փոփոխումն նշանակութեան բառից յայլ՝ ըստ նմանութեան կամ ըստ համեմատութեան : Զոր օրինակ Լի՛ն լսայ կո-

չել զաչս, Որոմնացան զբամբասողն և զքսու, կապուտակ դաշտ զծով. Աստեղս բոցցիկս զճանճիկն փուստեալ և այլն։

« Արդարև ճշմարիտ սարդի ոստայն կամեցան անկանել՝ որ զայս այսպէսն դրոշմեցին 'ի ստոգիր գիրսն իւրեանց » . Բարսեղ։

« Ես ձայն զառիւծուն ասեմ, որ գոչէր 'ի քառաթևին » . Նարեկ։ Աստանօր առիւծ զՔրիստոս, և քառաթև զսուրբ խաչն փոխաբերաբար նշանակէ։

Բայց զգուշալի է նախ մի յանարգ իրաց առնուլ փոխաբերութիւնս ազնուագունից։ Վասն որոյ ստգտանէ Որատ ըզ-տողսն Մարկոսի,

« Ի լեառն Ալպեաց բարձրագլխեակ
« Եթուք Հերմէս ձիւն ըսպիտակ » ։

Երկրորդ՝ պարտ է փոխաբերութեան գոլ բացայայտ և մերձաւոր, և մի մթին և բռնազբօսեալ. որպէս եթէ Աշտարակ երկնաքերձ կոչիցէ ոք զայր բարձրահասակ։

Երրորդ՝ մի զքերթողականս 'ի կիր առնուլ 'ի ճարտասանելն. զոր օրինակ մարթ է քերթողի ասել զումեքէ անստգիւտ՝ թէ 'ի դալարագեղ գարնայնի տիոցն վախճանեցաւ, բայց ճարտարախօսի դուն ուրեք։

Չորրորդ՝ մի զիրն ընդ փոխաբերութեան խառնակել, ուրեք 'ի փոխաբերեալ միտս և ուրեք ըստ նկարագրին իմացեալ. զոր օրինակ փոխանակ ասելոյ թէ Արտասուք կարճեցին զկեանս նորա, ոչ է օրէն ա-

սէլ՝ Գետք արտասուաց կարճեցին զթել կենաց նորա ։

Հինգերորդ՝ մի՛ 'ի միում վայրի խուկել բազում փոխաբերութիւնս, մանաւանդ զանկցորդելիս ընդ միմեանս ։ Աստգտանելի է յայսմ մասին մերս Յովհաննէս կաթողիկոս յասելն .

« Յայնմհետէ ապա նիւթ հրաբորբոք զատնութեան մտաց զտեալ ոստիկանին զայնպիսի յաղթութիւն, հրկիզութիւնս բազումս սփռեալ տարածանէ ընդ ոլորտս երկրի մերոյ ։ և 'ի միջօրէի իբրև զիշերի մութ և մէգ և մառախուղ և խաւար աղջամղջին պատեալ պաշարէր զաչքանազեանս ազն . և 'ի լծակս կշռոց եդեալ զերկունս տագնապ տարակուսանաց, հակամիտեալ կուտեալ գտանէին 'ի վերայ մեր ծանրատաղտուկ անուր Հազարու, առաւել քան զքարինս ձորոյն Նաքովրայ ։ Վասն զի նետք հրնից և տէգ տեառն տեղացին 'ի մեզ . քանզի արմատ դառնութեան, զոր երբեմն խլեաց տէր 'ի տանէս Թորգոմայ, կրկին շառաւիզեալ անկեցաւ յիմանալի այգեստանս մեր, 'ի փշահեղձ մացառս վերընձիւղեալ յեղծումն և յապականութիւն » ։

Հ. Զի՞նչ է փոխանունութիւն .

— Փոխանունութիւն է յորժամ պատճառք դնին փոխանակ գործոյ, կամ գործ փոխանակ պատճառի, կամ պարունակեալ փոխանակ պարունակելոյն, և կամ

հակառակն նորին, կամ ժամանակն փո-խանակ անցից, և կամ սոցին սակի փո-խադրութիւնք։ Զոր օրինակ.
«Լսէր զի ընթեռնոյր զԵսայի մարգարէ». այսինքն զգիրս Եսայեայ մարգարէի։
«Ցառնել առաջի ալեաց». այսինքն ծե-րոց։
«Հնազանդեցուցանէր զամբարտաւան և զբիրտ ապստամբութիւն նոցա». այսինքն զմարդիկն ապստամբ։
«Ցափշտակեցաւ, զի մի նենգութիւն պատրիցէ զանձն նորա». այսինքն նեն-գողք։
«Մանկութիւն վաղվաղակի վախճանեալ». այսինքն մանուկ վաղամեռիկ։
«Ողբամ զքեզ Հայոց աշխարհ». այսինքն բնակիչք հայաստանի։
«Ըմպել զբաժակ». այսինքն զըմպելին՝ որ 'ի բաժակի։
«Եւ փախեան 'ի Հայս». այսինքն յաշ-խարհն Հայոց։
«Կորոյս զգարն Նոյի». այսինքն զմար-դիկ Նոյեան դարուն։
«Զամենայն արբունս մանկութեան կոտո-րեալ». այսինքն զմանկտին ամենայն։
«Բարձի ակն ունել». այսինքն իշխանու-թեան։
«Արհամարհել զԹագ». այսինքն զԹագա-ւորութիւն։

Հ. Զինչ է խելամտութիւն.

— Ոչ ինչ ընդհատ 'ի փոխանունութենէ

վարել զմասն փոխանակ բոլորի, զնիւթ փոխանակ իրին, զանուն ընդ տեսակի, զեզական ընդ յոգնականի, և որ սոցին նմանի ձևք։ Զոր օրինակ.

«Ահա ոտքն, որք թաղեցին զայրն քո 'ի դրան, հանցեն և զքեզ»։

«Վասն այնորիկ և չնչին փայտին հաւատան մարդիկ զանձինս իւրեանց». այս ինքն նաւուն։

«Եւ տեսցէ ամենայն մարմին զփրկութիւն Աստուծոյ, զի տէր խօսեցաւ». այս ինքն ամենայն մարդ, որ է տեսակ սեռական անուանս մարմին։

«Մի՛ լինիք որպէս զձիս և զջորիս, զի ոչ գոյ 'ի նոսա իմաստութիւն». այսինքն իբրև զանբանս։

«Տկարն խրախուսեսցէ թէ հզօր եմ ես, հանդարտն պատերազմող եղիցի». այսինքն տկարք խրախուսեսցեն, հանդարտք պատերազմողք եղիցին։

«Սատակել զքետացին և զամովրհացին». այսինքն զքետացիս և զամովրհացիս։

## ԴԱՍ ԺԱ

Հեգնութիւն. — Երգիծանութիւն. — Փոխառութիւն. — Անուանաստեղծութիւն։

Հ. Զի՞նչ է հեգնութիւն.

— Հեգնութիւն է ուր հակառակ բանիցն են իմաստք նոցա. զոր օրինակ.

« Ո՛վ քո զօրութեանդ, 'ի ծայրն հասեր ի-
մաստից. փրկեցեր զոգի քո՝ զայդ ասե-
լով». Լամբ: Զոր պարզաբար ասելի էր.
Պակասամիտ ես, 'ի խորս տգիտութեան
կաս, և զոգիդ քո դատապարտես բանիւդ:

« Հարցանեն ոմանք ցիմաստունս մեր,
կենդանեաց լինի՞ պատարագ թէ ոչ. իսկ որ
բուն կատարեալքն են՝ պատասխանեն, ոչ
բնաւ». Լամբ: Ուր ահա իմաստունն և
բուն կատարեալ նշանակեն զհակառակն,
այսինքն զտխմար և զանգէտ:

« Մեծաձայն կարդացէք, զի աստուած է.
թերևս զբօսանք ինչ իցեն նմա, և միան-
գամայն թերևս առնիցէ հրաման, կամ
թէ 'ի քուն իցէ և յառնիցէ». այսինքն 'ի
զուր է կարդալդ ձեր, զի չէ նա աստուած:

Սովին ձևով Գրիգոր կաթողիկոս պա-
պանձեցուցանէ զՏուտէորդին, որ զհռո-
մայ եկեղեցին ասէր կործանեալ:

« Ապա յայտ իսկ է, եթէ 'ի զուր աշխա-
տեցաւ Պաւղոս, 'ի զուր աշխատեցաւ և
Պետրոս, և ոչ ուղղեցան ոտք նորա 'ի
գնացս՝ ընդ որ խորհեցաւ և արար: Ընդ-
ունայն են և քարոզութիւնք նոցա, և
սուտ էին խոստմունք տեառն առ Պետրոս՝
թէ 'ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղե-
ցի իմ, և դրունք դժոխոց զնա մի յաղ-
թահարեսցեն: Արդ յաղթահարեցաւ և
կորեաւ, զի ոչ է եկեղեցի, այլ այր աւա-
զակաց. ոչ մկրտութիւն 'ի թողութիւն մե-
ղաց, այլ միայն լուացումն ջրոյ: Արդ ու-

րախ լեր Պիղատոս, ցնծացէք և դուք դատք քահանայապետաց. վասն զի ոչ ըսպանիք տէր, այլ մոլորեցուցիչ. ոչ խաչեցիք աստուած, այլ գող և աւազակ և խռովարար. ոչ հովիւ քաջ, այլ վարատող ոչխարաց. սուտ է որդին որոտման, և իրաւ է որդին Տուտեայ»։

Հ. Զի՞նչ է երգիծանութիւն.

— Դժնդակ հեգնութիւն. զոր օրինակ. «Վա՜հ որ քակէիր զտաճարն, և զերիս աւուրս շինէիր զնա. ապրեցո զքեզ, եթէ որդի ես Աստուծոյ՝ էջ 'ի խաչէդ»։

Այսպէս Սմբատ սպարապետ զշամփուր հրաշէկ ածեալ զգլխով Մեհրուժանայ, ասէր. «Պսակեմ զքեզ, Մեհրուժան, քանզի 'ի խնդիր էիր թագաւորել Հայոց. և ինձ ասպետիս պարտ է զքեզ պսակել ըստ սովորական իշխանութեան իմոյ հայրենեաց». Խորեն։

Ընդ ձևովս ընդ այսուիկ բովանդակին և դսրովանք, որով ճարտարախօսն կըշտամբէ զարժանին դսրովանաց. զոր օրինակ Լամբրոնացի զբանսարկուն.

«Ո՞ւր դու, գրգարտիչ դատախազ, Եկ այժմ կաց մեզ ատընթեր, ոչ իբր մերձելի, այլ իբրև զթշնամի. տե՛ս և ողբա յանձն քո, տե՛ս և յամօթ լեր 'ի գործս քո. տե՛ս, սա այն է՝ որում զխաչն մեքենայեցեր, որում զլեղին արբուցեր, զոր զողացեալ համբաւեցեր»։

Են և պատրուակեալ կշտամբանք, որ

լուելեայն տան իմանալ զդարձուածս. զոր օրինակ Պաւղոսի ասելն ցկորնթացիս.
« Ցայգմ ոչ գովեմ զձեզ »:

Եւ Ոսկեբերանի ստէպ զանձն 'ի մէջ բերել, և խառն ընդ այլս յանդիմանել. զոր օրինակ.
« Ո՞րչափ չարեաք լի եմք, և ոչ զգամք. զմիմեանս խածանեմք, զմիմեանս ուտեմք, մեղանչեմք, ամբաստանեմք, բամբասեմք, ընդ ընկերաց փառս խանդամք »:

Հ. Զի՞նչ է փոխառութիւն.

— Զմիոյ իրիք հանգամանս այլում տալ ըստ համեմատութեան կամ ըստ նմանութեան. զոր օրինակ.
« Գիշերադէմ գոլով ես, 'ի բնաւից պարսաւիմ ». այսինքն սևադէմ. Գօշ:
« Որքան 'ի սև և 'ի մուր կեանքս պանդըխտիմք ». այսինքն 'ի խաւարային և 'ի տխուր կեանս յայս. Լամբ:
« Ընդ աչացաւայն նեղելոց մշտագիշերն խարխափանօք », այսինքն որպէս միշտ 'ի խաւարի խարխափելով. Նարեկ:
« Ի կողմանս ասորեստանի դադարէ առ գետովն երկլուսնեայ աւուրս ». այսինքն երկամսեայ ժամանակ. Խորենե:

Ըստ այսմ ասեմք. Անցին հունձք երեք, փոխանակ ասելոյ ամք:

Ըստ այսմ և Եղիշէի վարդապետի ասելն.
« Բազում ձմերաց հալեցան սառնամանիք. եհաս գարուն, և եկին նորեկ ծիծ-

ռունք, տեսին և խնդացին կենցաղավարք մարդիկ. և նոքա (երանելի տիկնայքն) ոչ երբէք կարացին տեսանել զանձկալիսն իւրեանց »:

Հ. Զի՞նչ է այլաբանութիւն.

— Բան 'ի բազում փոխաբերութեանց հիւսեալ. որպէս Շնորհալւոյ այլաբանելն զմախճան եղբօր իւրոյ Գրիգորի կաթողիկոսի օրինակաւ նաւարկութեան.

« Ինքն նաւու հաւատոյ ընդ ծով աշխարհիս՝ հողմով Հոգւոյն ուղղակի նաւապետեալ ճշմարտութեամբ և առաքինութեամբ, եհաս անվնաս յանքոյթ և առանց ալեաց նաւահանգիստն »:

Այլ օրինակ.

« Ծընան կուսանք ազգըս բազումս,
Եւ մարըք մանկունք ըզհրապարակըս ծերոց.
Ի գիրկըս սըրբութեան աղօթից և պահոց.
Աճեցին հաւատովք զարգացեալք 'ի Քրիստոս ». Շար.:

Գեղեցիկ է յոյժ այլաբանութիւն այգւոյն 'ի սաղմոսս.

« Այգի յԵգիպտոսէ փոխեցեր, հաներ զհեթանոսս և զնոսա տնկեցեր, և առաջնորդեցեր նմա: Հաստատեցեր զարմատս նորա և ելից զերկիր. ծածկեաց զլերինս հովանի նորա, և բարունակ նորա զմայրս Աստուծոյ: Ձգեաց զորթ իւր մինչև 'ի ծով, մինչև 'ի գետս են շառաւիղք նորա:

· Ընդէ՞ր քակեցեր զցանկ նորա. կթեն զնա անցաւորք ճանապարհի: Ապականեաց զնա խոզ անտառի, և երէ վայրի արածեցաւ 'ի նմա: Աստուած զօրութեանց, դարձ հայեաց յերկնից, և տես. այց արա այգւոյս այսմիկ, և դարման տար սմա՝ զոր տնկեաց աջ քո»:

Այլաբանութեան նոյն կանոնք են որ ինչ փոխաբերութեան. այլ 'ի սմա զգուշալի է և ես՝ չփոխել զայլաբանութիւնն այլ յայլմէ, այլ յորոց իրաց առնել իցէ նմանութիւնն՝ նովին և աւարտել:

Հ. Զի՞նչ է անուանաստեղծութիւն.

— Ներդաշնակութիւն բառից ըստ իմաստից. զոր օրինակ ճճուել կամ ճռուողել ճնճղկանց, բզզել մեղուաց, դարդափել տախտակաց, ճղփումն ջուրց, ճռնչել ծղխնեաց, ճարճատիւն փշոց 'ի հուր, շըրշիւն տերևոց, և այլն:

Վայելուչ և զօրաւոր յոյժ առնէ զբանն ձևս այս, որպէս տեսանի օրինակօքս.

« Անդ էր լսել թնդիւն վահանաց, շկահիւն աղեղանց, շողիւն սուսերաց, շաչիւն նշանաց, շառաչիւն նետից ». Մակար:

« Կոփիւնք վահանաւորացն, և ճայթմունք լարից աղեղանց զլսելիս ամենեցուն առհասարակ խլացուցանէին ». Եղիշ.

« Եւ 'ի տրոփական դոփմանէ ոտիցն թընդեալ տանիքն, և 'ի վայր փլուզեալ ». Յովհ. կաթ:

« Ի գիլ գայր 'ի գիլ սայլիկն 'ի գիլ
Ի Մասեաց յաջ կողմանէն ». Նարեկ:

## ԴԱՍ ԾԲ

Դերանուանութիւն և Շրջաբանութիւն. — Չափազանցութիւն. — Բացագանչութիւն:

Հ. Զի՞նչ է դերանուանութիւն կամ շրջաբանութիւն:

— Փոխանակ անուան ուրուք նոյն ինչ հասարակ անուն սեփականել: Զոր օրինակ՝ փողն տարոնեան, այսինքն Պաւղոս. Ամլորդին, այսինքն Յովհաննէս մկրտիչն. Որդին կորստեան, այսինքն Յուդա, և այլն: «Յաղագս արմատոյն հանուրց մարդկութեանս, կամ թէ հաճոյ ումեք թուեսցի ասել՝ ծայրին». այսինքն Ադամայ. Խորէն:

Ըստ այսմ է և շրջաբանութիւն. զի զոր համառօտիւ սակաւ բառիւք մարթ է առաջի առնել, ճարտասանն բազում բառիւք առաջի առնէ:

Զոր օրինակ փոխանակ ասելոյ՝ թէ Իբրև եղև գիշեր, ասէ.

«Մինչ դեռ խաղաղութեանն պատեալ էր զամենայն, և այն ինչ գիշերն իւրով արագութեամբ ընդմիջէր». Իմաստ:

Փոխանակ ասելոյ՝ Իբրև գարուն եղև, ասէ.

«Իբրև 'ի բաց եղաւ ձմեռնային ձիւնախաղաղ սառնամանեաց ցրտութիւն: — Իբրև գարնանային հարաւահողմն զձմերայնոյն

ժամանակ ցրտութեանն 'ի բաց մերկանայր: — Իբրև դրունք գարնայնոյն բացան և աւուրքն ջերոտք զտեղի փոխաբերեցին: — Իբրև ձմեռնային սգաւորութիւնն 'ի գարնանային բարեխառնութիւն օդոց յեղանակէր զփոփոխումն». Ցոյց. կար:

Փոխանակ ասելոյ՝ իբրև այդ լինէր, ասէ. «Իբրև լոյսն զգիշերն մերկանայր: — Այն ինչ կամէր առաւօտն 'ի գիշերայն մերկանալ: — Այն ինչ վարդագոյն ծայրակարմիր արեգակն ընդ երկիր ծաւալել կամէր». Մակար:

Փոխանակ ասելոյ՝ Մինչև էր մեռեալ, ասէ.

«Մինչ դեռ ջերմ ոգիքն 'ի ծոցոյն չև էին թափեալ, և շունչ վախճանին չև էր հասեալ: — Մինչ դեռ յոդուոցն պարզել ապաստան կայր». Մակար:

Լամբրոնացի զմիակ բառս խօսել տես ինձ քանի օրինակաւ բացատրէ.

«Պետրոս՝ որ 'ի Կափառնաում սնեալ՝ լըսեմք զի ընդ հռոմայեցւոց լեզուն խորոտալով արշաւէ. և Փիլիպպոս՝ որ 'ի Բեթսայիդա գալիլիացւոց՝ արաբացւոց բարբառովն զխօսս իւր յօդէ. Յովհաննէս՝ որ 'ի Նազարէթ սնեալ՝ զխորդ կիլիկեցւոց ձայնիւն զմեզ հարցանէ. Թադէոսն այն տխմար տեսէք որքան վայելուչ մեծաց Հայոց բառիւքն զբանս իւր յօդէ»:

Հ. Զի՞նչ է չափազանցութիւն.

—Առաւելուլ կամ նուազել տարապայմանն զզօրութիւն բանին ։ Զոր օրինակ ․ «Իբրև զմրրիկ կառք նորա, արագագոյն քան զարծուիս երիվարք նորա»։

«Գոյ հնար թուել զխիճս հեղեղատի, և զաւազ ծովու, և զշիթս անձրևի, և ոչ զստեղծեալն առ 'ի քէն նորագիւտ բանս և իրս»․ Յովհ․ իմաստ։

«Արդարև իսկ բազում աշխարանաց արժանի եմք, բազում ողբոց․ եթէ ամենայն աշխարհս ձայն առնուցու, զողբս հարկանիցէ, և քարինք և փայտք և ծառք և երէք և թռչունք և ձկունք, և ամենեքին ամենայն տիեզերք համօրէն 'ի ձայն աղի և ողորմ աշխարանաց աշխարիցեն, ոչ ինչ արժանի աշխարելոյն աշխարիցեն»․ Ոսկեբ։

«Ոչ ինչ եթող չարիս՝ զոր ոչ գործեաց 'ի կեանս իւր, և ոչ մնաց 'ի մեծամեծ չարեացն, որ ոչ անցին ընդ նա 'ի մահուան իւրում»․ Եղիշէ։

«Բազում անգամ է տեսանել զգազանս վայրենիս, զարջ զինձ զգայլ զառիւծ հանդարտացեալս դարմանելով և մարդասէրս, իսկ զբարկասիրտն և ոչ երբէք։ Բազում անգամ և զծով տեսանեմք հանդարտացեալ յալեաց և ցածուցեալ 'ի վայրենութենէ․ իսկ զբարկացողն և ոչ բընաւ։ Հանապազ 'ի գազանութեան կայ, միշտ 'ի վայրենութեան, յար 'ի տմարդութեան, համակ յալէկոծութեան»․ Մարգ․

« Չի եթէ գլին մի ծովուց 'ի յորակութիւն դեղոյ յեղեղեցից, և զգաշտս ապարիզգք բազմօք սահմանեալ՝ 'ի տարածումն լայնութեան քարտենի չափեցից, և զպտուրակս յոգունց անտառաց չամբից եղեգանց 'ի հաստուածս գոյութեան գրչաց կազմեցից, և ոչ զթիւ մի 'ի բարդելոցն անօրէնութեանց զօրեցից ընդ գրով սահմանի գրաւել». Նարեկ։

Հ. Զի՞նչ է բացագանչութիւն.

— Բարբառ յայտարար սաստկագոյն յուզման կրից հոգւոյ. զոր օրինակ.

« Ո՛վ մեծի տուրևառութեան շնորհի երկնայնոցն և երկրայնոցս. սոքա ետուն մարմին, և 'ի նոցանէ առին զՀոգին». Լամբ։

« Ո՛հ ես մեղայ նըման նըմին,
Եւ յանցանաց մօրն Եւային.
Եւս առաւել քան ըզնոսին
Գըտայ յանցող սուրբ օրինին». Շնորհ։

« Ո՛վ անբերելի տգիտութեանս և ապառում բարուցս. ե՛կ Երեմիա ցաւակից մարգարէ, և վշտակցելով ողբա՛ զբեկումն իմ և ժողովրդեան իմոյ». Լամբ։

« Ո՛հ, կարի է առասպելս՝ և առասպելաց առասպել». Խորեն։

« Ո՛վ համբոյր՝ նենգութեան նշան, և առիթ մահու». Շար։

Ի սոյն ձև պատկանի և մակագանչութիւնն, որ 'ի վախճան բանին 'ի կիր արկանի, զնոյն ունելով զօրութիւն հանգոյն բացագանչութեան։

Որպէս Լամբրոնացի յետ ճառելոյ զանհաս խորհրդոց անօրէնութեանցն Քրիստոսի և գալստեան Հոգւոյն, 'ի վերայ ածէ.

« Խորհուրդ լայն և ընդարձակ. առաւելութիւն գիտութեանն Աստուծոյ տեսանի, եղբարք »:

Եւ յաճախ ուրեք 'ի վարս Հարանց զՀետ պատմութեան առաքինութեանց նոցա յարէ պատմիչն.

« Այս է խոնարհութիւն. — Այսպիսի է հնազանդութիւն ». և այլն:

## ԴԱՍ ԺԳ

Տարակուսութիւն. – Աղերսանք. – Անէծք:

Հ. Զի՞նչ է տարակուսութիւն.

— Կեղծիք երկուանաց մտաց ճարտասանին, առ 'ի բերել զՀետ զելս տարակուսանացն. զոր օրինակ.

« Հիացեալ զարմանամ մտօք, և ոչ գիտեմ ուստի՞ պարտ և պատշաճ իցէ առնել սկիզբն ճառիս ». Բարս:

« Եւ արդ ո՞ւր արդեօք զզարշապարս ոտին կառուցից, և կամ յո՞ր վստահութիւն զաչս իմ յառեցից: Զի եթէ 'ի ձեղուն բարձրութեան երկնի, անտի անձրևեաց հուրն Սոդոմայ. իսկ եթէ 'ի յատակս խորութեան երկրի, սա եբաց զկոկորդն ըմբռնողական և եկուլ զԴադան բանա-

կաւն Աբիքանի ։ Եթէ 'ի համատարած օդոյն պարզութիւն , այն եղև եղիպտացւոցն խաւար շօշափելի ։ Այլ դու ամենազօր արարիչ բնաւից , և ինձ ողորմեա կրկին գթութեամբ » . Նարեկ ։

« Զի թէ պահանջէ յինէն հայրս հօգւոց և դուք ընդ նմին գործունեայք բարեաց՝ յանձն առից , զարհուրիմ երկիւղիւ՝ նայեցեալ յիմս ակարութիւն , և 'ի մեծի այսր աստիճանի բարձրութիւն , մանաւանդ 'ի չար և յանմասն բարեաց ժամանակիս ։ Իսկ եթէ յայսցանէ և որ նման սոցին զանգիտեալ՝ ընդդիմանամ կոչողիդ հրամանի , երկնչիմ դարձեալ յանհնազանդութեան դատաստանէ ։ Եւ այսոցիկ տարակուսանաց եւք ոչ այլ ուստեք , բայց եթէ յաստուածահաճոյ աղօթից ձերոց » . Շնորհ ։

« Ոչ գիտեմ ուստի զայս օրէնս գտեալ մեր . 'ի նախնեացն ոչ ունիմք , զի ահա ցուցաւ վերագոյն . և յայլ ազգս ոչ տեսանեմք . և նոր առաքեալ ոչ յայտնեցաւ մեզ , որ խախտեաց զառաքելոցն սահմանն ։ Յայտ է թէ ունիմք յանիմաստութենէ և յարհամարհութենէ օրինացն Աստուծոյ » . Լամբ ։

« Եւ արդ ուստի՞ հաւանեցուցիք զձեզ , ոչ գիտեմ . զա՞յն ասացէք՝ թէ որդն նոցա ոչ վախճանի և հուրն ոչ շիջանի , թէ ըզմիւսն որ ասիցէ՝ թէ երթիցեն 'ի հուրն յաւիտենից ։ Եթէ զմեծատունն ասել կացուցիք առաջի , և տակաւին ասիցէք թէ

վասն սպառնալեաց տառապեալ է ։ Եւ արդ ուստի՞ հառաչեցուցիչ զձեզ ։ Սատանայի միտք են այդ, անօգուտ շնորհ շնորհեալ՝ որ ամենեւին ծոյլս կազմէ ․ և արդ ուստի՞ բառնայցեմք զայն 'ի միջոյ ․ որչափ և ասիցեմք 'ի գրոց, ասէք՝ վասն սպառնալեաց է ։ Ա՜յլ զայլոց զհանդերձելոցն և 'ի գլուխ ելելոցն՝ ոչ ևս ։ Լուարուք զՋրհեղեղէն ․ մի՞ թէ այն վասն սպառնալեա՞ց ինչ ասացաւ, և չեղե՞, և չե՞լ 'ի գլուխ » ․ Ոսկեր ։

Հ ․ Զի՞նչ են աղերսանք ․

— Պաղատանք խառն ընդ պատճառաբանութիւնս առ 'ի հաւանեցուցանել ։

Ազդողագոյն է ձեւ, և յաճախ սովորութիւն է 'ի կիր առնուլ 'ի վերջաբանութիւնս ։ Զոր օրինակ Լամբրոնացի ձևացուցանէ աղերս 'ի դիմաց Որդւոյ առ Հայր ․ « Աղաչեմ քեզ եկեալ եհաս ժամանակ գործոյ, մեծ փառակից իմ Հայր ․ պարտիս և զքոյդ մարդասիրութիւն ցուցանել 'ի յերկիր ․ աղաչեմ քեզ ապատասան առնել՝ զանուն աստուածութեանս մեր յարգել առ մարդիկ ։ Հայր իմ ներքեւոց և եթող զպատուամն՝ որով դուն խափանեցար 'ի հեղլոյ առ նոսա՝ մարդկոյ իմ պատուարագաւն ․ բաց առ զիս առհաւատչեայ 'ի նոցանէ, և տայ նոցա զքեզ խաղաղութիւն ։ Է՛Ջ այժմիկ, սիրոյ աղբիւր, սիրով առ նոսա, և միսիթարեա զորս 'ի պանդխտութեան վայրս նժդեհ և անցաւոր կենօք տառապին ։ Քեզ տամ զնոսա, քեզ յանձն

կեացին ականջքս՝ և համր եղիցի հովեալ բերանս, և լեզու իմ 'ի քիմս իմ կցեսցի, և մէգ և մառախուղ մեղաց և ստուերք մահու պատեսցէ զբոլոր անձնս, եթէ ինչ շարժեցայց կամ զգացայց տեսանել կամ լսել կամ խօսել զարդարոյն զանիրաւութիւն... Քաւ լիցի ինձ ձեռս ամբառնալ յօծեալն Աստուծոյ... ապա թէ ոչ, բացցէ երկիր զբերան իւր, և կլցէ զիս կորընտեամբ ընդ բանակն Աբիրոնի, և կենդանւոյն իջցեմ 'ի դժոխս»․ Յովհ․ կար։

« Վասն այսորիկ Աստուած 'ի սպառ
Կործանեսցէ զքեզ յաւիտեան․
Եւ խլեսցէ զարմատըս քո,
Յերկրէ հանցէ կենդանականն։...
Արդ քեզ ելցէ կարճ 'ի յօրեր,
Եւ կայեններն հասցէ երեր։
Ի դառնութիւն դարձցին տարերք,
Ջրհեղեղին ելցեն գետերք։
Սեաւ ամպ մըթին կարկըտաբեր
Զքեզ արասցէ անպըտղաբեր․
Սոզամացւոց հուր ծըծըմբեր
Իջցէ 'ի գլուխդ արիւնակեր։..
Արդ 'ի դըժոխս իջցես 'ի խոր,
Քեզ անկողին մէցք և ցեցեր․
Եւ նոյն հրեշտակըն մահաբեր
Սըրով հասցէ զքեզ 'ի յագդեր...
Տուն քո լիցի անհետ աւեր,
Եւ դու գերի ազգով երեր»․ Շնորհ։

## ԴԱՍ ԺԴ

*Հարցումն. — Հաղորդակցութիւն. — Լռութիւն. Շնորհումն:*

Հ. Զի՞նչ է հարցումն.

— Զի հարցական, ոչ առ 'ի խնդրել զլուծումն տարակուսանաց՝ այլ առ 'ի ամփ- ոփել զունկնդիրս, և առ 'ի սաստկագոյն բացատրել զբանն. զոր օրինակ.

« Ընդէ՞ր, աչս ունելով և ականջս, ոչ տե- սանեմք և ոչ լսեմք: Քանի՞ տաղտկալի է 'ի բերանոյ մինչև ցունկն, զի զբարբառ- սորին ոչ ներեմք ունկանն լսել և տեղի տալ: Այսքան է՞ր խուսափեցուցաք զպայ- ծառութիւն եկեղեցւոյ վասն ամօթոյ յու- սոյ ». Լամբ:

« Մի՞թէ որ անկեաց զունկն, ինքն ո՞չ լուիցէ: — Ո՞վ իցէ նման քեզ յաստուածս, տէր. կամ ո՞վ նմանիցի քեզ, փառաւո- րեալդ 'ի սուրբս »: Ուր պարզաբար պարտ էր ասել. Որ անկեաց զունկն, ինքն և՛ս լսիցէ: Ոչ ոք է նման քեզ յաստուածս, տէր. և ոչ ոք նմանիցի քեզ, փառաւո- րեալդ 'ի սուրբս:

Այսպէս և Ոսկեբերան փոխանակ ասե- լոյ՝ թէ այլ ոչ ևս կարեմ համբերել, հզօ- րագոյն յոյժ գործէ զբանն հարցուածոյ պայմանաւ ասելով. « Մինչև ցայդ վայր համբերիցե՞մ »:

Մերթ ևս հարցմանն առընթեր դնի պատասխանին. զոր օրինակ.

« Իսկ արդ չա՞ր արժան էր ասել թագաւորին. քաւ, ես ոչ ասեմ. այլ խրատ 'ի գործ արկեալ զայդս ուսուցանեմ ». Եղիշէ։

« Զի՞նչ պտուղ յայնժամ եառուն աշխարհի. զի՞նչ այլ, բայց եթէ երկիրս երկին եղև, և փառքն՝ որ 'ի բարձունս էր Աստուծոյ՝ և յերկիրս տարածեցաւ ». Լամբ։

« Զի՞նչ ծանր հրաման տուաք առնել. զա՞րս հատանել անցանել, թէ ընդ օդս թռչել, թէ ընդ բնութիւն համատարած ծովուն ցամաքաթև սլանալ. և ոչ երբէք. այլ այնպէս դիւրին է առաքինութիւն, մինչև այնպիսի գործոյ մի՛ ինչ կարօտանալ, այլ միայն ողւոյն և դթոյ. Զո՞ր գործի անէլին առաքելոցն՝ որ զայնպիսի ուղղութիւնս արարին. ո՞չ միանձործք և բոկք շրջէին, և ամենեցուն յաղթեցին. Զի՞նչ դժուարին 'ի հրամանաց իցէ. Մի՛, ասէ, առներ զոք թշնամի. մի՛ ատեար զոք. մի՛ չար զումեքէ խօսիր. Սոցին հակառակքն են դժուարինք, և ոչ սոքա ». Ոսկեր.

Ընդ սովիմբ բովանդակի և ձևն հաղորդակցութեան, որով ճարտարախօսն վերատահացեալ 'ի դատ իւր՝ հարցանէ զունկնդիրս. զոր օրինակ.

« Արդ ասէ սա, մ՞ր է արժանահաւատալի. բա՞նքն եթէ արդիւնքն. ո՞չ ապաքէն արդիւնքն. զի բանք չմնարեն ինչ 'ի հա-

ւատոց սակս, բանիւ զՔրիստոսին կրել զանուն, և գործով զստահնային, զի մի և մի է այնպիսին անհաւատութեանն».
Սարգ։

«Արդ ասէ սոսա. եթէ յանկարծ կոչ լինիցի 'ի քաղաք ուրեք արքունի, որք ոչ գրաստու ինչ կարօտ լինիցին, ոչ պատանեաց, ոչ կօշկաց, և ոչ այլ ինչ կահի և կազմածոյ, այլ զհացիկն միայն և զջուր յաղբերացն բաւական համարիցին. և այլքն ասիցեն՝ եթէ ոչ կառս կազմիցէք, և ոչ կակուղ անկողինս պատրաստիցէք, չկարեմք երթալ, եթէ ոչ բազում սպասաւորս ունիցիմք, և ստէպ հանգչել համանիցէ, և նժոյգ ևս և կարճութեան վանս և այլ ինչ բազում պէտս, չկարեմք երթալ. և ընդ ո՞յս արժան է զարմանալ, ընդ նոսա՞ թէ ընդ սոսա. յայտ է թէ ընդ սոսա, որք ոչ ինչ իւիք ումեք բուռն լինին։ Նոյնպէս և յաշխարհիս ճանապարհի ոմանց բազում պէտք են, և ոմանց չափ ինչ. որպէս զի աղքատութեամբն, եթէ պարտ ինչ էր, 'ի դէպ էր մեծամտել».
Ոսկեբ։

Հ. Զի՞նչ է լռութիւն.

— Լռելոյն ինչ ազդողագոյն տալ իմանալ զայն. զոր օրինակ.

«Զի՞ մի մի թուիցեմ. այլ զամենայն անարժանս յառաջ մատուցանէր, և զամենայն արժանաւորս յետս տանէր». Եղիշէ։

«Որ մեղանչէ, օրինազանց է. իսկ որ

զօրէնս լուծանէ, զի՞նչ անուն է նորա : Ես պատկառիմ ասել, մանաւանդ թէ երկըն-չիմ. զի մի՛ աղեկէզ բժշկութեամբս վասն 'ի խոր հարմանս զդեղ բանիս՝ երևեցայց թշնամի ». Լամբ:

« Զորս վասն Կռոնոսի և Արամազդայ պատմութիւնք իցեն՝ ամաչեմ ասել. ոչ սակս նոցա՝ որ արժանի են ամենայն պար-սաւանաց, այլ խնայեմ 'ի լեզու իմ, զի մի ժանտասցի յիշատակօք պղծութեան նոցա ». Սարգ:

« Ո՛վ թշուառութեանս, և արտասուաց արժանի մոլութեանս. վասն այսորիկ և քահանայք ելով, 'ի դպրաց կարգ թերևս կարողանամք լինել. և եպիսկոպոսք՝ բը-նաւ և ոչ ճաշակեալ զքաղցրութիւն բա-րեկարգութեանս, զոր բովանդակն ասել հեզգանամ, բաւականացեալ 'ի լինելս ան-ձամբ անձին կշտամբիչ ». Լամբ:

« Քահանայք քարոզք բանին
Եւ սպասաւորք սուրբ խորհրդին
Անխտրաբար վարուք կէին,
Զոր չէ ասել պարտ՝ գործէին ». Շնորհ:

Ըստ այսմ է և կեղծեօք զանց առնելոյ զբանիւք իւիք՝ ասելն զայն. զոր օրինակ. « Թողից ասել զևս դժնդակագոյնսն այսր ժամանակի եպիսկոպոսաց գործ. զի և բազում անարգանաց և տուժից տանին յայլազգեաց, ոչ յաղագս աստուածային օրինացն՝ այլ վասն սնոտի փառաց յուսոյ »:
« Զպատուզսն՝ որ նախ քան զայս 'ի միա-

չնչութեանն և մինչդեռ 'ի տաճարին խա-ղաղութեան էաք՝ տայր աշխարհ, ձեռ թո-ղուք իմաստասիրել քան թէ բանիւ դան-ճառն ճառել». Շնորհ:

Հ. Զի՞նչ է շնորհումն.

— Շնորհել անիրաւ ինչ հակառակոր-դին, վատահացեալ յանձին իրաւունս: Զոր օրինակ ասէ առաքեալն.

« Իսկ արդ ասիցես. ոստքն փշրեցան, զի ես պատուաստեցայց: Բարւոք է. անհա-ւատութեամբն փշրեցան, և դու հաւա-տովք հաստատեցար. մի հպարտանար, այլ երկիր. զի եթէ Աստուած 'ի բուն ոստոյն ոչ խնայեաց, գուցէ երբեք և 'ի քեզ ոչ խնայեսցէ»:

« Բայց համարեաց՝ թէ 'ի հաւատոցն թիւրեցան. 'ի կարգացն մյր աղանդաւ. զի այլ է հաւատոյն բան, և այլ է աւանդու-թիւն կրօնից: — Դարձեալ թիւր՝ մի ազգն կամ երկուսն. երեք ազգ քրիստոնէից, և որ ընդ նոքօք բազմապատիկ ազինք հաւա-տատուն աշխարհօք և աթոռովք՝ զիւրդ վրդովեցան 'ի ճշմարտութենէ, և առ յեղ-յեղեալ և տատանեալ ազգս մեր նոյն միայն մնաց հաստատունս». Լամբ:

« Գեղեցիկ դատիմք 'ի ձէնջ, եղբարք. քանզի գրեալ է, մի փոխեսցես զսահ-մանս զոր եդին հարքն քո. և որ քակէ ցցանկ, հարցէ զնա օձ: Բայց սա, զո՞րս խոստովանիս դու հարս քո. եթէ զսուա--կալսն և զհայրապետսն՝ որք աստուա-

ծաշունչ բանիւք դեռ ևս կենդանի են 'ի միջի մերում, և առ ամենայն ճշմարտութիւն առաջնորդեն, և ես եմ նոցա ջատագով, և առ 'ի նոցանէ վարժեալ և աշակերտեալ: Ապա թէ այլս ոմանս, որոց ոչ անուն երևի 'ի միջի մերում, և ոչ արձանագրութիւն բանից՝ վկայ խրթեանց ուղղութեանն, զիմաստասիրութիւնն պարտիմք յայսմ վայրի 'ի գործ արկանել, և ընտրութեամբ ճանաչել, մի՛ գուցէ լիցին մեզ մոլորեցուցիչք 'ի սրբոցն հետոց, որպէս ծերք Իսրայէլի 'ի Մովսիսէ ». Լամբ:

Ի սոյն պատկանի ձև վստահութեան, որով ճարտարախօսն աներկիւղ ձայն տայ հակառակորդին, որպէս Շնորհալի առ ժպիրհն.

« Ծանիր և զայս, զի զիս թէ և ամենայն լեզուք գովեսցեն յայն բարի՝ որ ոչ է առ իս, հողմոց հնչմունք վարկանիմ. և թէ պարսաւէ ոք և դատի յայն ինչ՝ որ 'ի մըտացս խղճէ ոչ դատիմ, ոչ փոյթ ինչ առնեմ. իսկ եթէ յորոց ունիմ և առնէ ոք, ոչ վասն առելոյն, այլ վասն ունելոյն վշտանամ »:

« Յոր ինչ ոք համարձակիցի, անզգամութեամբ ասեմ, համարձակիմ և ես: Եբրայեցի՞ք իցեն, և ես. Իսրայելացի՞ք իցեն, և ես. զաւակ Աբրահամո՞ւ իցեն, և ես. պաշտօնեայք Քրիստոսի՞ իցեն, յանդգնագոյնս ասացից՝ թէ առաւել ևս ես »:

# ԴԱՍ ԺԵ

**Բացագանչութիւն. — Դիմառութիւն. — Նկա-րագրութիւն։**

*Հ. Զի՞նչ է բացագանչութիւն.*

*— Խօսք առ անձն բացակայ կամ վախճանեալ, և կամ առ անշունչ իրս և առ անզգայ իրս. զոր օրինակ.*

*« Լուր երկին, և ունկն դիր երկիր, զի Տէր խօսեցաւ »։*

*« Զարթիր Երեմիաս զարթիր, և ողբա հանդերձ մարգարէութեամբ զոր ինչ թըշուառացարս և զոր ինչ թշուառանալոցս եմք. գուշակեա զյառնել հովուացն անգիտաց, որպէս երբեմն Զաքարիա յԻսրայէլին ». Խորեն.*

*Այսու ձևով Եղիշէ վարդապետ՝ի կարգի պատմութեանն յանկարծ խօսել սկսանի առ Թագաւորն Պարսից.*

*« Զի՞ կոծիս, զի՞ մրցիս, զի՞ այրիս, զի՞ բորբոքիս, զի՞ չիջանիս, զի՞ կոչես 'ի խորհուրդ զայնոսիկ՝ որ զոգիսն ձեր 'ի ձէնջ քաղեալ՝ հանեալ է զանապականն յապականութիւն, և զապականելի մարմինդ գիշաքարշ արարեալ՝ իբրև զագիր մեռելոտի 'ի բաց ընկեցեալ։ Ապաքէն զայդ կամիս, զի ծածկես զխորհուրդ ամպարշտութեան. տեսջիր յորժամ յայտնեսցի, ապա գիտասցես զելս կատարածի դորա »։*

Հ. Զի՞նչ է դիմառնութիւն.

— Նոյնպէս բացակայ կամ վախճանեալ անձանց, և կամ անշունչ և անզգայ իրաց՝ մարդկօրէն խօսք. զոր օրինակ.

« Յորդանանլուեալ փախստական դառնայր.
Վըտակ առ վըտակ պատգամաւոր լինէր.
Գետ, մի՞ զարհուրիր, քո արարիչն եմ ես.
Եկեալ մըկըրտիմ, և լըւանամ զմեղս ».
Տաղ:

Ըստ այսմ և Շնորհալի ձևացուցանէ 'ի դիմաց Եդեսիոյ առ Հռոմ քաղաք դդիմառնութիւնս.

« Եւ դու Հըռոմ, մայր քաղաքաց
Գերապայծառ և պատուելի,
Մեծին աթոռըդ Պետրոսի
Առաքելոց գըլխաւորի,
Եկեղեցիդ անշարժելի
Ի կեփայեան շինեալ վիմի.
Դրանց դըժոխոց անյաղթելի
Եւ կնիք երկնիցըն բացողի.
Ահա առ քեզ բանըս խօսիմ
Վիճակ ւաթոռըս Թադէի.
Լուր 'ի հեռուստ իմոյս ձայնի,
Լեր ողբակից ինձ յայս վայրի »:

Օրինակք գեղեցիկք յԵզեկիէլէ.

« Այսպէս ասէ տէր տէր ցՏիւրոս . . . ամենայն իշխանք ազգաց ծովուդ . . . յոգւոց հանցեն 'ի վերայ քո, ողբս առցեն 'ի

վերայ քո և տատասցեն. զի՞արդ կորեար քակտեցար 'ի մէջ ծովու քաղաքդ Հոյակապ, որ եղեր զօրացեալ 'ի մէջ ծովու դու և բնակիչք քո, որ զարհուրեցուցանէիր զամենայն բնակիչս քո։ — Ի ձայնէ բարբառոյ քո նաւավարք քո երկիւղիւ զարհուրեսցին… Կոծ զառնութեան առցեն որդիք նոցա 'ի վերայ քո, ողբս առցեն և ողբասցին. Ո՞վ էր իբրև զՏիւրոս՝ որ լռեաց դադարեաց 'ի մէջ ծովու »։

Զգուշութեամբ պարտ է զձևս զայս 'ի կիր արկանել, և 'ի սաստկութեան ևեթ կրից, և մի՛ յերկարաձգել յոյժ զայն։

Դարձեալ և 'ի մեծամեծ իրս ևեթ վարել նովաւ և ոչ 'ի չնչինս, զոր օրինակ ոչ է 'ի դէպ խօսել զիմառնաբար առ հանդերձ ուրուք կամ առ տուն։

Դիմառնութիւն է և գործել ինչ կամ կիրս տալ անշունչ և անզգայ իրաց. որպէս Մամբրէ տայ մահու.

« Զտեղի կալաւ Ցիտուս ամուրս երկուս, թոյլ ետ աւազակին մտանել 'ի տուն սիրելւոյն. եմուտ ապականագործն, և արար խռովութիւն ըստ կամաց իւրոց. զոռոզացաւ հպարտացաւ մահ, և կատարեաց զկամս իւրոյ չարութեանն »։

« Դողալով սարսեցին գժոխք, տեսանելով զթագաւորն անմահ ». Շար։

Հ. Զի՞նչ է նկարագրութիւն.

— Ցայտ յանդիման առաջի աչաց կացուցանել զիրն ստորագրութեամբ. վասն

որոյ պարտ է առաջի առնել զիւրաքանչիւր
մասունս իւրին, զյարակից հանգամանս,
զպատճառս՝ այլովքն հանգերձ. զոր օ-
րինակ.

«Զտեսանիցես զերեսս պատերազմողացն,
զհայրգ. տրտմագին 'ի խոնարհ կախին.
յոնքն ահագինք և դէմք խոժոռք. աչք ա-
րիւնախառն և սիրտ 'ի թնդոջ 'ի վեր վա-
զեն և զկուրծս բաղխեն՝ ժողովեալք զու-
մարեալք համօրէն, զահի հարեալք 'ի մի
վայր ժողովեալք և ճակատեալք բազում
կարգօք, առաւել յօրինուածովք». Ոսկեր։

«Քաղցր է ինձ ասել և յաղագս գեղե-
ցիկ դաստակերտին Երուանդակերտի,
զոր յօրինեաց նոյն ինքն Երուանդ գեղե-
ցիկ և չքնաղ յօրինուածովք։ Քանզի զմի-
ջոց հովտին մեծի լնու մարդկութեամբ և
պայծառ շինուածովք լուսաւոր որպէս ա-
կան բիբ. իսկ շուրջ զմարդկութեամբն
ծաղկոցաց և հոտարանաց կազմութիւն, որ-
պէս շուրջ զբբովն զայլ բոլորակութիւն
ական։ իսկ զբազմութիւն այգեստանեաց
իբր զարտևանաց խիտ և գեղեցիկ ծիր.
որոյ հիւսիսային կողմանն զիր կարակնա-
ձև գեղաւոր կուսից յոնից զարևանդաց
համեմատ. իսկ 'ի հարաւոյ հարթութիւն
դաշտաց՝ ծնօտից պարզութեան գեղեցկու-
թիւն. իսկ զետն բերանացեալ զարաւան-
դօք ափանց՝ զերկթերթիսն նշանակէ շր-
թունս։ Եւ այսպիսի գեղեցկութեան գիրք,
անքթթելի իմն զօգցես 'ի բարձրաւանդակ

թագաւորանիստն զհայեցուածսն ունի » ։ Խորեն ։

« Տիկնայք փափկասունք Հայոց աշխարհին, որ գրգեալք և գգուեալք էին յիւրաքանչիւր բաստեռունս և 'ի գահաւորակս, հանապազ բոկ և հետի երթային 'ի տունս աղօթից, անձանձրոյթ խնդրել ուխտիւք, զի համբերել կարասցեն մեծի նեղութեանն ։ Որ 'ի մանկութենէ իւրեանց սնեալ էին ուղղովք զուարակաց և ամճովք երէոց, խստաբուտ կենօք իբրև ըզվայրենիս ընդունէին զկերակուրն մեծաւ խնդութեամբ, և ոչ յիշէին ամենևին զսովորական խորտիկսն ։ Սևացեալ ներկան մորթք մարմնոց նոցա, վասն զի ցերեկ արևակէզք էին, և զամենայն գիշերս գետնաբեկք ։ Սաղմոսք էին մշտնջենաւոր մըրմունջք 'ի բերանս նոցա, և մխիթարութիւն կատարեալ՝ ընթերցուածք մարգարէից ։ Միաբանեցին երկու երկու իբրև ամոլք հաւանք և հաւասարք ուղիղ տանելով զակօսն արքայութեան, զի առանց վրիպելոյ հասցեն 'ի նաւահանգիստն խաղաղութեան » . Եղիշէ ։

Սովին ձևովք գեղեցիկ յոյժ նկարագրէ Ոսկեբերան զընակութիւն սրբոց միայնակեցացն .

« Եթէ դժուարին ինչ թուիցի քեզ այս, եկ երթիցուք յայն տաղաւարս . զի արդեամբք իսկ ուսանիցիս զդիւրութիւնն ։ Խուղս ևեթ շինեցին . և եթէ չունել հաստանիցէ , այն-

պէս թողուն և չուեն, որպէս զօրականքն 'ի խաղաղութեան զբանակն թողուցուն և գնայցեն. քանզի այնպէս բանակեալ են. մանաւանդ թէ ևս աւելի ցանկալի տեսիլ տեսանել իցէ: Քանզի և ցանկալի իսկ տեսիլ է տեսանել զանապատն լի վանականօք, վարկպարագի խորանօք խիտ առ խիտ թև 'ի թև հարեալ ճիգն 'ի ճիգն զապարմանցն թևակս խառնեալ քան ըզզօրականացն բանակի. ուր սրահակք ձգիցին, և զտէգս և զգեղարդունս կանգնեսցեն, և զընիցն գեղարդեանցն զաղեղնակապարճս կախիցեն, պղնձապատ զգըլըխսն առնիցեն, և մեծապայծառ իմն կմբեայ վահանացն փայլիցեն, և կողինաւորք և զրահապատք շողայցեն, թագաւորին սպաս առնիցեն 'ի դաշտի ուրեք 'ի հարթ և յողորկ վայրի, և ճաշք զճաշս մըղիցեն, և ընթրիք զընթրեօք անցանիցեն, զուսանք երգիցեն, փողարք զձայն փողոցն նուագիցեն. սակայն և այնպէս չիցէ գեղեցիկ տեսիլն քան զայն, զորմէ այժմ ես պատմեմ: Եթէ երթիցուք յանապատն, և տեսանեմք զՔրիստոսի զօրականացն զխորանս, ոչ սրահակս ձգեալս տեսանեմք անդ, և ոչ շողունս գեղարդանց, և ոչ խորանս ոսկեզօծս արքունիս, այլ այնպիսի իմն՝ եթէ ոք յերկրի, և առաւել և այնչափ երկայնագոյն այլ երկիր գործէր, և 'ի վերայ բազում երկինս ձգէր, մէջ ապաքէն նոր իմն և չքնաղ տեսիլ ցուցա-

նէր. նոյնպէս և անդ է տեսանել: Զի ինչ ընդհատ յերկնից բնութեանն նոցա. քանզի և առ նոսա հրեշտակք իշխանն և հրեշտակապետացն ասէին: Զի թէ առ Աբրահամ եկն, որ կին ունէր և որդիս սնուցանէր, քանզի նաև ևթէ հիւրասէր է, յորժամ ետ տեսանել աստուածութիւն ուրեք զատանէցէ, զմարդն առաւել յերկրէ, և 'ի մարմնի զմարմինն արհամարհեալ, մրջաւք ևս տեսանել և անդ բնակեացէ, և պար առեալ շրջիցին 'ի միջի նոցա զունդք հրեշտակաց. քանզի և նոքա այնպէս կազմեցին զանձինս, որպէս և նմա հաճոյ է»:

Ընդ սոյին ձևով բովանդակին և նկարագրութիւն բարուց կամ դիմաց, և կամ խառն երկոցունցն նկարագիր. զոր օրինակ նկարագրէ Յովհաննէս կաթողիկոս զմեծն Աշոտ.

«Քաջահասակ էր նա և անձնեայ և թիկնաւէտ և զուարթերես և մրայօն, նկարէն իմն և նիշ արեան յաչս ունելով որպէս գյակինթ կարմիր 'ի մէջ մարգարտի ծագեալ, և վայելչացեալ գեղեցկութեանն ալեօք, մեծիմաստ և քաղցրաբան, և առ կերակուրս խրախճանաց ոչ խնդացեալ նորա ընդ լաւագոյնսն, և ոչ արհամարհեալ զնուաստագոյնսն:... Միանգամայն իսկ ասել, եթէ որ ինչ մարդկութեանս է պիտանի՝ ոչ ինչ կասեցուցանէր:

Նոյնպէս և Սարգիս վարդապետ զքարկոզողն նկարագրէ.

« Յօնքն անկեալք և խոնարհեալք, երեսքն դեղլինք և ապականեալք, շրթունքն սեաւք և երիթացեալք, ունչք երկայն և սուր, ձայն խոշոր և թիւր, աչք հրատեսակք, բանք ընդդիմագրեալք և անախորժելիք, և բոլորովին գձնեայ և ահարկու տեսաղաց »:

## ԴԱՍ ԺԶ

*Հակադրութիւն. — Կախումն:*

Հ. Զի՞նչ է հակադրութիւն.

— Զև բանի, յորում բառք բառից կամ իմաստք իմաստից ներհականք յարինեն. զոր օրինակ.

« Վասն առողջութեան զապիկարն կարդայ, և վասն կենաց զմեռեալն աղաչէ, և վասն ՚ի թիկունս հասանելոյ տարակուսելոյն մաղթէ. և վասն ճանապարհորդութեան զայն՝ որ և զոտն յառանէ չկարէ փոխել, և վասն ընչաւէտութեան և գործոց կարողութեան յանարգասաւորէն ձեռօք զարգասաւորութիւն խնդրէ ». իմաստ:

« Արդ կրիցն լիցուք մի՛ աղճատիչք, այլ ցաւակիցք. մի՛ եպերիչք, այլ առողջացուցիչք. մի՛ կսկծեցուցիչք, մի՛ երգիծանիչք, այլ մխիթարիչք ». Լամբ:

Վայելուչ է ձևս այս մանաւանդ ՚ի կշտամբութեան. այսպէս հաւատացեալք զնախարարս Հայոց տկարացեալս ՚ի հաւատոց կշտամբէին.

«Դուք էիք առաքելական քարոզու-թեանցն, արդ աշակերտ լինիցիք մոլար խաբէութեանն. ուսուցիչք էիք ճշմար-տութեանն, արդ ուսուցանէք զպատիր խաբէութիւն մոգաց. քարոզք էիք արար-չական զօրութեանցն, արդ զտարերս աս-տուածս խոստովանիք. յանդիմանիչք էիք ստութեան, արդ և քան զսուտն ստա-գոյնք լինիցիք. 'ի հուր և 'ի հոգի մկըր-տեալք, արդ 'ի մոխիր և յաճիւն թաթա-ւիցիք. կենդանի մարմնոյ և անմահ ա-րեանն էիք սնեալ, արդ 'ի ճենճեր զոհից և 'ի շարաւս աղտեղիս մրճոտիցիք. տա-ճար էիք Հոգւոյն սրբոյ, արդ զոհարան դիւաց լինիցիք. քրիստոսազգեացք էիք 'ի մանկութենէ, արդ մերկացեալք 'ի փա-ռացն՝ դիւաբար արեգական կաքաւիցէք. ժառանգ էիք արքայութեան, արդ ան-ձամբ-զանձինս արկէք 'ի ժառանգ գեհե-նին». Եղիշէ:

Սոյն հակադրութեան ձևով բաղդա-տէ Ոսկեբերան զմարդ այնր ժամանակի որերոյն ընդ սրբոց միայնակեացն.

«Մեք յօրանչիցեմք, խորդայցեմք, այար անդր յեղյեղիցիմք, մինչ նոքա զգիշերն ամենայն ընդ օրհնութիւնս հանիցեն: Եւ յորժամ այգ լինիցի, հանդչին փոքր մի. և յորժամ ընդ գործ խառնիցեմք, նոքա խուն քնոյն յագեցեալք և հանգուցեալք, դարձեալ միւսանգամ յօրհնութիւնն կազմիցին: Իսկ մեք չև այգ եղեալ իբրա-

քանչիւր զընկեր կոչեմք համարս պահանջել, և կեաք ընդ հրապարակս ճեմ առեալ շողայցեմք... իսկ նոքա դարձեալ իբրև զառաւօտին զաղօթսն և զօրհնութիւնս կատարեն, ապա յընթերցուածս գրոց շըրջիցին... Մինչ մեք ամենքեին ճաշիցեմք, խաղայցեմք, ծիծաղիցեմք, ուռուցանիցեմք զորովայնս, որկորամոլութեամբ շուայտիցեմք, մզուիցեմք, նոքա օրհնութեամբքն զմայլիցին: Չիք ժամ սեղանոյ և ոչ խնդրակաց յառաջ բերելոյ. և դարձեալ յետ ճաշոյ 'ի նոյն ոճ մտանիցեն, կան պատկառ օրհնութեանցն: Աշխարհականք և գերեկն ննջեն. Նոքա ցանկ արթունք և պատրաստք 'ի պաշտամանն. արդարև որդիք լուսոյ են և որդիք տունջեան»:

Հ. Զի՞նչ է ձև կախման:

— Տարատամեալ ունել զգլխս ունկընդրաց՝ ակնկալեալ 'ի լսել կարևոր ինչ իրաց:

Սովին ձևով յօժարամիտս առնէ ճարտասանն զունկնդիրս, որով ապշողագոյն մտանեն բանք 'ի լսելիս նոցա. զոր օրինակ. «Կամիմ և նոր ինչ ասել. այլ մի՛ ինչ կարի զարմանայցէք կամ խռովիցիք: Եւ զի՞նչ իցէ: Պատարագն նոյն է. եթէ չափ և գոյգն որ մատուցանիցէ, և եթէ Պաւղոս և Պետրոս զխոմլին սակայն նոյն է. զոր և Քրիստոս ետ աշակերտացն, զնոյն այժմ քահանայքս կատարեն, և չէ ինչ ընդհատ յայնմանէ». Ոսկեր:

Ճարտար 'ի կիր արկանէ զձեռս զայս Յովսեպոս 'ի պատմել զիրս կնոջն, որ վասն սովոյն զորդին իւր խորովեաց և եկեր. զի յետ պատմելոյ թէ որպէս յանձնարին սովուն զկաշիս վահանացն և զխոտ ցամաք ճարակէին Հրեայք, յաւելու ապա. «Բայց զի՞նչ պիտոյ է մեզ զչարութիւն սովոյն յանշունչ կերակրոցն ցուցանել. զի ունիմ ես ցուցանել գործ մի, որ նման նմա՞ ոչ 'ի մէջ Յունաց և ոչ բարբարոսաց պատմի եթէ գործեցաւ. զի զողումն և սոսկումն է պատմել, և լսելեաց դժուարին է հաւատալ: Արդ կամակար անփոյթ առնէի ես անցանել զայսու թշուառութեամբ, զի մի առել երևեցայց յետամնացացն; եթէ ոչ բազում վկայս ունէի. և թերևս շնորհս ինչ դուզնաքեայ ընդ որդիս ժողովրդեան իմոյ առնէի ես, խնայելով զայն ինչ՝ զոր արդեամբքն պաշտեցաւ»: Եւ ապա յարէ զպատմութիւնն:

Կրկին օրինակք գեղեցիկք դարձեալ յՈսկեբերանէ:

«Եւ ո՞ւր է՝ զի չէ աւատն այն (խեղկատակութեան.) արդ և յեկեղեցի եւս եմուտ, և 'ի գիրս եւս մեծեցաւ: Ասացից ինչ, զի ցուցից զչարեացն առաւելութիւն. ամաչեմ, բայց սակայն ասացից. քանզի կամիմ ցուցանել թէ որչափ տարածեցան չարիքն, զի մի կարծիցիմ եթէ վասն չնչին իրաց սուտ խօսիցիմ, այլ զի զոնեա այնպէս կարացից մերժել զձեզ 'ի պատրա-

նացն ։ Եւ մի՛ ոք համարիցի եթէ 'ի մտաց
ինչ կարկատեմ, այլ զոր ինչ լուայն՝ զայն
ասեմ ։ Ըմուտ ոմն 'ի տուն աւագաց, թէ-
պէտ և ծաղու բանք են, սակայն ասացից։
Իբրև սկուտեղ խորտկօք առաջի եդին,
ասէ. ընկալարուք զխրատ, զի մի բար-
կասցի որովայն »։

« Հաւատայցէ՞ք արդեօք եթէ եղև ջրհե-
ղեղ, եթէ առանցելոց ինչ բանք թուիցին
ձեզ, ուր և լերինքն յորս տապանն դա-
դարեաց՝ վկայեն. զՀայոց լերանցն ա-
սեմ։ Այլ ես յաճախութեամբ, և յայլ
ես քան 'ի նոյն յայտնագոյն ածիցէ բանս.
երթեալ ուրուք իցէ ձեր 'ի պաղեստինա-
ցւոց աշխարհն ։ Այսուհետև ոչ ես բանս,
այլ արդիւնս իսկ ասեմ. թէպէտ առա-
ջինքն քան զարդիւնքն յայտնագոյնք են.
զի զոր գիրք ասեն, և քան զաչաց տեսիլ
հաւատարմագոյնք են ։ Երթեալ ուրուք
իցէ ձեր 'ի պաղեստինացւոց աշխարհն.
զի՞նչ ոք 'ի ձէնջ վկայեսցէ ինձ, որոց ըղ-
տեզիսն իսկ տեսեալ իցէ. քան զԱսկա-
ղոն և քան զԳազա 'ի վերոյ, անդ իսկ 'ի
սպառուածի Յորդանան գետոյ վայրքն ինչ
բազում են և ամենալիցք, մանաւանդ թէ
էին, քանզի այժմ ոչ է նոյնպէս, որ եր-
բեմն իբրև զդրախտ Աստուծոյ էին »։ Եւ
ապա նկարագրէ զՍոդոմայ հրոյն արգա-
սիս ։

## ԴԱՍ ԺԵ

**Նախապաշարումն. — Ձև Բաղձայեղանակ. — Բաժանորդութիւն։**

Հ. Զի՞նչ է Նախապաշարումն.

— Յառաջ բերել զառարկութիւն այլոց, և լուծանել զայնս. որպէս առնէ առաքեալն.

« Իսկ արդ ասիցես. ոստքն փշրեցան, զի ես պատուաստեցայց։ Բարւոք է, անհաւատութեամբն փշրեցան, և դու հաւատովք հաստատեցար. մի՛ հպարտանար, այլ երկիր. զի եթէ Աստուած 'ի բուն ոստսն ոչ խնայեաց, գուցէ երբէք և 'ի քեզ ոչ խնայեսցէ »։

Սոյնպէս և Ոսկեբերան յառաջ բերէ զանողորմածացն առարկութիւնս և հերքէ. « Այլ բազում անգամ, ասէ, ետու։ Եւ նա չուտիցէ՞ հանապազ. և զորդիսն քո, յորժամ յաճախ խնդրիցեն, մի՞թէ 'ի բաց մերժեսցես. ո՛ անհնարին անամօթութիւն։.. Զգիտիցե՞ս ո՛ր հարկք որովայնին են, որ զամենայն ինչ վասն նորին հնարիցիս։.. Այլ 'ի շատախօսութիւնս հատանիս. այսր անուան այսչափ գահեկանք 'ի վարձու կան, և այսր անուան եւս աւելի, և նա մուրանայ։ Զմանկտույ գրոյց խօսիք և զշաղփաղփութիւնս. քանզի և նոքա միշտ առասպելաց դայեկացն անսան։

Զառանում յանձն, չհաւատամ, քաւ լիցի, մինի որ տայցէ և 'ի բարութեան իցէ՝ և մոլորանայցէ։ Է՞ր վասն, ասէ սա. զի՞նչ ինչ քան զմոլորանալ գործ ծանակաց կայ- ցէ. լաւ է մեռանել քան զմոլորանալ»։

— Բազմօրինակաբար զնոյն և զմի բան յեղյեղել, զանազան եղանակօքն ազդո- ղագոյն զբանն առնելով։

Ի յօրինուած այսր ձևոյ խրատնին բա- զում և այլ ձևք։

Աքանչելի յօրինէ Սարգիս վարդապետ զայս ձև 'ի կոչելն Աստուծոյ զԱդամ յա- պաշխարութիւն.

«Լուր նմին Աստուծոյ, զի՞նչ ասէր առ մեղուցեալ և թագուցեալ մարդն. Ադամ ո՞ւր ես։ Միթէ ոչ գիտէր թէ ուր էր. մի- թէ ոչ տեսանէր ամենատես ակնն, միթէ ազխատանայր արարիչն. քաւ լիցի։ Ադամ ո՞ւր ես. տրտմութեան էր ձայնն, աստուա- կուսանաց բարբառն։ Որպէս հովիւ զի կո- րուսանիցէ ոչխար 'ի հօտէն, և տրտմու- թեանն ձայնիւ լնուցու զանտառան, նոյն- զունակ և արարիչն զդրախտն։ Ադամ ո՞ւր ես. ընդէ՞ր թաքչիս յերեսաց արարա- չիս, հե՞մ ամօթով լցեալ ես և երկիւղիւ։ Ոչ վասն այդորիկ ստեղծի զքեզ, զի փա- խըստական լինիցիս յինէն, ոչ վասն այդո- րիկ փառօք զարդարեցի զքեզ, զի ամա- չէիր յինէն, այլ զի 'ի գիրկս քո և 'ի հոգի ընդունէիր զիս։ Ադամ ո՞ւր ես. յորպիսի անարգանս, յորպիսի զազրալի տեսակս,

յորպիսի ամօթ երեսաց, յորպիսի խեղճ մտաց, յորպիսի ալիս տարակուսանաց: Լուայ, տէր, զձայն զնալոյ քո 'ի դրախտի աստ, և երկեայ. քանզի մերկ էի, և թաքեայ: . . Արդարև ստուգապէս մերկ, ոչ 'ի հանդերձից միայն՝ այլ և յարդարութենէ »:

Հ. Զի՞նչ է բաժանորդութիւն.

— Ցուցանել առ հասարակ ակարեւոր մասունս բանին, և ապա մի ըստ միոջէ բացատրել զայնս. զոր օրինակ. « Արդ տե՛ս զքաղցրութիւն և զսաստկութիւն Աստուծոյ. 'ի վերայ կործանելոցն սաստկութիւն, և 'ի վերայ քո քաղցրութիւն Աստուծոյ ». Հռոմ:

« Հոգիք սրբոց հեռի են յայսպիսի ախտակրութեանց (այսինքն 'ի մարդահաճութենէ), այլ մանաւանդ ընդդիմակացք այսպիսի ախտից են բանիւք և արդեամբք: Բանիւք, յորժամ ասէ Դաւիթ. Աստուած ցրուեսցէ զոսկերս մարդահաճոյից: . . Ի վերայ այսորիկ կնքէ առաքեալ բանիւք իւրովք. եթէ տակաւին մարդկան հաճոյ լինէի, ապա Քրիստոսի ծառայ ոչ էի: Իսկ արդեամբք, յորժամ թշնամանէին և բամբասէին և նախատէին, և ընդ փառաց ինչ ոչ հոգային, և փոխարէն ընդ նախատինսն ոչ նախատէին, այլ և երախտիս հատուցանէին ». Մարգ:

« Քանզի որ մարքն են առաքինութեանց սկզբունք՝ խոնարհութիւն, պարզութիւն, ող-

Ջախողութիւն և արդարութիւն, վկայեալ դատանին յիմումս իշխանականի մասին: Զի ոչ խորատեցի զբանն որ յիս՝ իմաստութեամբ, և ոչ զցանկութիւնն՝ ողջախոհութեամբ, և ոչ դարձեալ զայնոսիկ խրատտեցի արդարութեամբ ». Շնորհ:

## ԴԱՍ ԺԲ

### Ուղղութիւն. — Անցումն. — Արտաուղութիւն:

Հ. Զի՞նչ է ուղղութիւն.

— Ուղղել զասացեալն պատշաճագոյն նասացուածով. զոր օրինակ.

« Այս է քո պանծալի աստուածաբանութիւնդ, մանաւանդ թէ յիմարութեանդ ցոյցք, զնիւթս զայս յաւէժակից ասել արարչական զօրութեանն ». Լամբ:

« Աստանօր ամաչեմ ասել զճշմարտութիւն, մանաւանդ թէ զանօրէնութիւն և զամպարշտութիւն ազգիս մերոյ, զմեծի ողբոց և արտասուաց արժանի սոցա ըղկործս ». Խորեն:

« Զայսոսիկ լսելով, եղբարք, հայեսցուք 'ի մեզ և սթափեսցուք յանհագին արբեցութենէս; եթէ արբեցութիւն պարտ է անուանել զմերս; և ոչ խելագարութիւն և կամ դիւաքաղխութիւն ». Մարգ:

« Այս աղբիւր հրեղէն հոգևոր բղխէ 'ի սեղանոյս, և քո զայս թողեալ՝ 'ի թատրն ճեպիս . . . թողեալ զՔրիստոս՝ որ նստի

առ աղբիւրս, քանզի և այժմ առ աղբիւրն Նաւի, ոչ ընդ շամբոտացւոյն միայն խօսի՝ այլ ընդ համօրէն քաղաքիս : Բայց Թերևս և այժմ ընդ շամբոտացւոյն . քանզի չէք ոք և այժմ առ Նմա մօտ . այլ ոմանք մարմնով միայն, և այլք և անձամբ իսկ մեկուսի » . Ոսկեբ :

« Անդ իսկ 'ի ապառուածի Յորդանան գետոյ վայրքն ինչ բազում են և ամենալիցք . մանաւանդ թէ էին, քանզի այժմ ոչ է նոյնպէս, որ երբեմն իբրև դրախտն Աստուծոյ էին » . Ոսկեբ :

Հ . Զի՞նչ է անցումն .

— Զօդ կցորդութեան մասանց ճառին . զոր օրինակ .

« Եւ արդ վասն զի ծանուցաւ փոքր 'ի շատէ որքան միանգամ յաստուածազգեացին տուաւ յաղագս երկնայնոցն կարգաւորութեան, բեր այսուհետև զընտանեգոյնն մեր դիցուք առաջի առ 'ի քննութիւն » . Շնորհ :

« Այլ այսոքիկ քեզ բաւականացեալ, ես 'ի կարգ պատմութեանն դարձայց » . Յով . կաթ :

« Բայց մեք զայսոսիկ 'ի տեսողս անդր թողացուցեալ, և զորս աչօք իսկ տեսեալ է մեր՝ ոչ դանդաղեսցուք պատմել » . Նոյն :

« Այլ չգիտեմ զիարդ վայրապար ընդ խորս եկի յայսպիսի բանքս . զայլս խրատէի հեզութեամբ ուսուցանել, և ես ինձէն 'ի ցասումն զառածայ : Թէ այնպէս

իցէ , դարձցուք անդրէն 'ի մեր խրատն , և հոգ տարցուք ամենայն Թերութեան կենաց մերոց , զի ուղղեսցուք զոր կամիցիմք » . Ոսկեր :

« Ահաւասիկ երեք ճառք , և զսկզբանս բան ոչ ևս կարացաք լուծանել . մի թէ վայրապար ինչ առէի՝ եթէ խորք անդնդոց են միտք ճառիցս : Ո՛ն առեալ այսօր զմնացեալսն արկանիցեմք 'ի հարց և 'ի փորձ » . Ոսկեր :

Հ . Զի՞նչ է արտուղութիւն .

— Սուղ ինչ հեռացումն 'ի կարգէ բանին , առ 'ի հանգիստ ունկնդրաց կամ յաւելուլ ազդուութիւն բանին :

Բայց ամենևին զգուշալի է զի մի ինչ բռնի և անյարմար մուծցի 'ի ներքս , և զի 'ի կատարածին վայելչաբար դարձցի յառաջադիր բանն :

Այսպէս Յովսեպոս 'ի պատմել զպատերազմն Հրէից ընդ հռոմայեցիս՝ առնէ արտուղութիւն , ստորագրելով զհրահանգս հռոմայեցի զօրականին .

«՝ Աստանօր յոյժ զարմանալոյ արժանի համարիցի ոք զնախադահութիւն հռոմայեցւոց , որք այնպէս վարժեն զծառայս , մինչ զի ոչ միայն 'ի պաշտօն կենաց՝ այլ և 'ի գործ պատերազմի օգտակարք իցեն : Իսկ եթէ ոք նայիցի 'ի նոցա կրթութիւն զինուորութեան , արդարև իսկ ծանիցէ զի զայսքան Թագաւորութիւն ոչ շնորհիւ բախտաւորութեան՝ այլ իւրեանց քաջա-

թեամբ ստացան։ Քանզի գինու վարել ոչ եթէ 'ի պատերազմի սկսանին, և ոչ միայն յորժամ պիտոյ է՝ զձեռս շարժեն մինչ 'ի խաղաղութեան պարապիցեն, այլ ընդ գինու որպէս թէ բնութեամբ միացեալք . . . ոչ երբէք ժամանակի սպասեն »։ Եւ յետ նկարագրելոյ զկրթութիւն նոցա և զհլու-թիւն և զարիութիւն և զամենայն ինչ խորհրդով գործել, յաւելու ապա, «Արդ-արոց գործք սկսանին 'ի խորհրդոց, և ըզ-խորհեցեալն այնչափ յօժարութեամբ կա-տարեն զօրք, զի՛նչ զարմանք՝ եթէ Եփ-րատ յարևելից, և Ովկիանոս յարևմտից, և 'ի հարաւոյ Ափրիկեայ քաջաբեր երկիր, և 'ի հիւսիսոյ Հռենոս և Դանուբ են սահ-մանք թագաւորութեանն Հռոմայեցւոց՝ զոր բարւոք կարիցէ ոք ասել դեռ փոքր զոլ զստացուածն ստացողացս։ Արդ զայս յիշեցի, ոչ զի սփոփիցեմ զպարտեալսն՝ և զխոովասէրսն երկեցուցանեմ. թերևս նաւ հմտութիւն քաջութեան հետևողացն ստացեալքս օգտակարք եղիցին, որք ոչ գիտեն զսահմանադրութիւն զինուորու-թեան Հռոմայեցւոց։ Բայց դարձայց անդ-րէն ուստի ելի »։

Զկերպարանս այսր ձևոյ բերեն 'ի հա-մառօտութեան և միջանկեալ պարբերու-թիւնք, զորս փակագծիւ սովորութիւն է ոմանց արոհել. զոր օրինակ.

« Եթէ ո՛չ գիտէք, եղբարք, զի ընդ գի-տունս օրինաց խօսիմ, զի օրէնք տիրեն

մարդոյ որչափ ժամանակս կենդանի է ». Հատմ: Իբր ասել, պարտիք գիտել զայս, զի օրէնսգէտք էք:

« Եւ արդ մեռ դիր և հաւատոցն և հնազանդութեան առաքելոցն: Թէպէտ և 'ի գործ արուեստին զբաղեալ էին, (և գիտէք իսկ թէ զինչ քաղցր և պատիր ձկնորսութիւն էր), սակայն ոչ ինչ դանդաղեցան լսել այնմ որ կոչեացն զնոսա ». Ոսկեր:

« Երթեա՞լ ուրուք իցէ ձեր 'ի պաղեստինացւոց աշխարհն, (այսուհետև ոչ ևս բանս, այլ արդիւնս իսկ ասեմ, թէպէտ առաւելինքն քան զարդիւնան յայտնագոյնք են. զի զոր գիրք ասեն, և քան զաչաց տեսիլ հաւատարմագոյնք են). երթեալ ուրուք իցէ ձեր 'ի պաղեստինացւոց աշխարհն ». Ոսկեր:

## ԴԱՍ ԺԹ

### Ընդլայնումն:

Հ. Զի՞նչ է ընդլայնումն.

— Զսուղ ինչ իմաստ ընդարձակել առ 'ի բացայայտագոյն իմացուած, և առ 'ի սաստկագոյն ազդուութիւն բանին:

Եւ զոր օրինակ կրկին ազգ են ձևոց, ըստ բառից և ըստ իմաստից, նոյնպէս և ընդլայնումն կրկնակի յօրինի, բառիւք և իմաստիւք:

Հ. Ո՞րպէս յօրինի ընդլայնումն բառիւք.

— Յօրինի, որպէս 'ի կարգս ձևոց ասացաք, յաճախութեամբ նոյն կամ համանշանակ բառից. զոր օրինակ Դաւիթ յողբաւն զԱբիսողոմ, ազդեալ 'ի բնութենէ զձևս զայս յօրինէր.

« Որդեակ իմ Աբիսողոմ, Աբիսողոմ որդեակ իմ. ո՞ տայր զմահ իմ փոխանակ քո, ես փոխանակ քո Աբիսողոմ որդեակ իմ, որդեակ իմ Աբիսողոմ »:

« Եւ մեք յորանջիցեմք, ձգտիցիմք, քոչքիցեմք, քոչքատիցեմք, շնչիցեմք, խորդայցեմք, այսր անդր յեղյեղիցիմք, և յորսայս խաղայցեմք, և ազգի ազգի խապատանս զմտօք ածիցեմք, մինչ նոքա զգիշերն ամենայն ընդ օրհնութիւնս հանիցեն ». Ոսկեբ:

« Եւ արդ վասն այնր չէ՞ր պարտ բիւրապատիկ պատառ պատառ կտորել, ցանկ սպանանել, բազում մահուց համբերել, և զամենայն զինչ և ինչ իցեն չարչարանք կրել և բանիւք և արդեամբք. և եթէ կենդանւոյն հրով այրել իսկ հասանէր, չէ՞ր պարտ այրել վասն հասանելոյ խոստացելոց բարութեանցն ». Ոսկեբ:

Ընդ սովին ձևով բովանդակի և ընդլայնումն 'ի ձեռն փոխաբերական բառից. որպէս Սարգիս վարդապետ առնէ 'ի գովել զնախնին սուրբ միանձունս.

« Որք իմաստուն վաճառականքն էին, ան-

ցաւորգս զյաւիտենականն գնելով ըզկեանս. ճարտար ղեկավարք, որք առանց նաւակոծութեան անցին ընդ ահագին ծովս կենցաղոյս. արիագոյն զօրականքն Քրիստոսի, որք ոչ լքան 'ի հոգևոր պատերազմին. միամիտ աղաւնիքն, որ 'ի խուճապելոյ բազէին՝ 'ի սիրոյն Աստուծոյ ոչ խուճապեցան. ողջախոհ տատրակքն, որ 'ի գարշ ցանկութեանց տոփանացն ոչ աղտեղացան. բանաւոր ծիծառունք, որ 'ի յօձիցն խարամանեաց ոչ վնասեցան. անմեղ գառինքն, որ 'ի գայլոցն պատառողաց ոչ կեղեքեցան»:

Ըստ սմին օրինակի և շրջաբանութեամբ յօրինի ընդլայնումն. որպէս Եղիշէ վարդապետ փոխանակ ասելոյ զուխտադրուժն Վասակայ՝ թէ ուրացաւ զհաւատս Քրիստոսի, ասէ.

«Քանզի մոռացօնք եղեն նմա զալուստ Որդւոյն Աստուծոյ, և ոչ յիշեաց զքարոզութիւն սուրբ աւետարանին. և ոչ 'ի սպառնալեացն զանգիտեաց, և ոչ յաւետիսն մխիթարեցաւ. ուրացաւ զաւազանն, որ յղացաւն զնա. և ոչ յիշեաց զընկալուչ սուրբ Հոգին, որ ծնաւն զնա: Անարգեաց զմարմինն պատուական՝ որով սրբեցաւն. և առ ոտն եհար զարիւնն կենդանի՝ որով և քաւեցաւն 'ի մեղաց. Ջնջեաց զգիր որդեգրութեանն, և իւրովք ձեռովք խորտակեաց զհաստատուն կնիք մատանւոյն. եւ 'ի թուոյ երանելեացն, և

ապստամբեցոյց ընդ իւր զբազումս. ձեռն արկ կամակարութեամբ և եմուտ յորդեգրութիւն դիւապաշտութեանն, և եղև աման չարին, և ելից զնա սատանայ ամենայն խորամանկութեամբ. 'ի ձեռն էառ իբրև զվահան, և ագաւ զնա իբրև զրահս, և եղև իբրև զինուոր կատարեալ կամաց նորա»:

Ցօրինի դարձեալ և 'ի ձեռն աստիճանաց. զոր օրինակ.

«Զկարիցեմս թափուր յընչից լինել, զէթ զայլոյ մի յափշտակիցես. չկարիցես պահել, զոնեա 'ի փափկութիւնս մի հատանիցես զանձն. չկարիցես 'ի գետնի ննջել, զահոյս արծաթապատս մի առնիցես». Ոսկեր:

«Թելադիր լեր, աղաչեմ, զամենայն հնարս հնարեցիր. թերևս կարասցես զոմանս ապրեցուցանել. և եթէ զոմանս ոչ, սակայն կէս մի. և եթէ կէս մի ոչ, սակայն զերիր մասն մի, սակայն տասներորդ մի: Եւ եթէ ոչ այսպէս, զոնեա զմի ոք 'ի բազմաց: Եւ եթէ ոչ զմի ոք, սակայն զքո անձնդ ապրեցուսցես 'ի տանջանաց». Մարգ:

«Ոչ միայն առաքեալք, այլ և սպասաւորք, այլ և ականատեսք Բանին. և ոչ միայն ականատեսք, այլ և սիրելիք, և բարեկամք, և որդիք, և ժառանգք, և ժառանգակիցք». Նոյն:

Հ. Ո՞րպէս յօրինի ընդլայնումն իմաստիւք.

— Ճարտարութիւն մեծ ճարտասանին յայսմ իսկ է ; ճոխաբանել առանց շատախօսութեան և ճամարտակութեան, և այս իսկ է տիրապէս ընդլայնումն. և առ այս չիք վարժապետ վեհագոյն՝ քան զՈսկեբերանին ճառից յաճախ ընթերցուած ։

Օրինակք ինչ 'ի ճառից անտի պարզաբանեսցեն զպատասխանիս քան զամենայն բացատրութիւնս բանից ։ Քանզի զսուղ իմաստս զայս, զի ոչ ինչ իւիք օրէն է մարդոյ մեծամտել, այսպէս ընդարձակէ.

« Ո՞րչափ ինչ բարութիւնս ծնանիցի մեզ խոնարհութիւն. զի՞նչ կամիցիս, մի՞ս չունել, անցաւո՞ւմն լինել, մարդասիրութի՞ւն, մատաղիւրութի՞ւն. այս ամենայն բարիք 'ի խոնարհութենէն են, և սոցին հակառակք 'ի հպարտութենէ ։ Հարկ է այնպիսւոյն թշնամանիչ լինել, հարկանող և բարկացող և դառն և անհամբոյր, զազան մանաւանդ և ոչ մարդ ։ Ուժգին իցես, և յոյն սակս մեծամտիցես. թէ այնպէս իցէ, և վասն այնորիկ առաւել պարտիս խոնարհել ։ Զի՞ չնչին իրք մեծամտիցես. քանզի և առիւծ զազանագոյն քան զքեզ է, և վարազ ուժգնագոյն, և դու իբրև զմժիխ մի ես առ նոքօք. և աւազակք և գերեզմանակրկիտք, և 'ի վսեր եկեալքն. և ծառայքն իսկ քո, և թերևս որ կարին իսկ անազատք և չարաբարոյք իցեն, զօրագոյն քան զքեզ իցեն ։ Եւ այն զօրու-

Զամաչե՞ս չթրջիս այնպիսի իրօք հպարտանալ, որովք և անասունք հանգոյն քեզ լինիցին, և ծառայք և սպասողք և կանայք և աւազակք և գերեզմանակրկիրք»: «Այլ 'ի տունս ինչ գեղեցիկս պարծիցիս: Բազում թռչունք են 'ի գեղեցիկ տունս բնակեն. մանաւանդ ճայք են առաւել պայծառագոյն քան զքո տունսն ունին բընակութիւնս: Այլ թերևս ձայնիւ ինչ հպարտանայցես: Քան զփորն և զսոխակ և զասպուճակ չիցես ինչ ձայնիւ երգէք քաղցր և հեշտական մրմնջել: Այլ թերևս պէսպէս արուեստիւք: Եւ մի՛ ոք յայնմ զմեղուօք զճարտարակօք անցանիցէ. մ՞ր դրօշող, մ՞ր նկարիչ, մ՞ր գետնափոր զտանիցի քան զնոսա իմաստուն, որ կարիցէ ճարտարութեան մեղուաց նմանել: Այլ թերևս բարակ ինչ հանդերձիւք. այնու սարդք իսկ անցանեն զանցանեն զքև: Այլ թերևս ոտիւք արագութեամբ. և այնու են անասունք զլեն, մանաւանդ նապաստակք և այծեմունք և այլ են անասունք՝ որ արագ իցեն ոտիւք: Այլ թերևս 'ի տար աշխարհ ինչ երթալով. և այնու թռչունքն անցանեն զքև: Մանաւանդ խորդք և ծիծառունքն՝ որ դիւրաւ հարկանեն զտարաշխարհական ճանապարհս. ոչ պաշար բառնան, և ոչ դրաստու կարօտանան, այլ ընդ ամենայնի բաւական են նոցա թևքն: Նովին և նաւ և դրաստ ինչ և կառք և հողմք, և ամենայն զինչ և իցէ,

արդարագոյն են քան զքեզ։ Այլ թերեւս քաջատեսութեամբ ինչ հպարտանայցես․ այլ ոչ ինչ նման ես այծեմանն և արծուոյ։ Թերեւս զի արագ լսիցես․ այլ չիցես սուր ականջօք քան զէշ։ Եւ թերեւս հոտ քաջ առնուցուս․ այլ չկարես անցանել զշամբ։ Եւ թերեւս զի գործունեայ և համբերող իցես․ այլ չես ձեռնհաս լինել անգադար իբրև զմրջիւն։ Եւ թերեւս զի ոսկի բազում յանձին ունիցիս․ այլ ոչ որպէս զհնդիկ մրջիւնն։

« Իսկ առողջութեամբ յոյժ իսկ առաւել են քան զմեզ անասունք․ և անհոգութեամբ ինչ չերկնչին յաղքատութենէ, չկասկածեն 'ի կարօտութենէ։ Հայեցարուք, ասէ, 'ի թռչունս երկնից, զի ոչ սերմանեն, և ոչ հնձեն, և ոչ ժողովեն յշտեմարանս։ Թէ այսպէս իցեն, քան զմեզ՝ զանասունս լաւագոյն արար Աստուած։ Տեսանե՞ս որչափ ինչ մեծս իցէ չքննելն․ տեսանե՞ս, որչափ ինչ շնորհէ մեզ իրացն քննութիւն․ որ քան զամենայն մարդիկ առաւել մեծամտէր, զատու և քան զանասունս ևս խոնարհագոյն․ այլ խնայեսցուք 'ի նա, և չնմանեսցուք նմա։ Մի, զի քան զբնութիւնս առաւել մեծամտեաց, ի՞ջուցանեմք զնա յանասնոց աստիճան, այլ կանգնեսցուք զնա անտի, ոչ վասն նորա, այլ վասն հասարակաց պատուոյ՝ զի նա արժանի էր այնպիսի ինչ կրելոյ »։

Նոյն ինքն դարձեալ զսուրբ իմաստս զայս, հայեցեալ 'ի կապանս Պաւղոսի՝ զամենայն վիշտս ըստ նմին օրինակի յանձն առցուք, ընդարձակէ այսպէս.

«Եւ արդ մի՛ տրտմեսցուք ընդ նեղութիւնս ինչ, որ վասն Քրիստոսի իցեն. այլ յուշ լիցին մեզ և կապանքն Պաւղոսի, և նոյն եղիցի մեզ յորդորիչ։ Եթէ խորտուցես զոմանս աղքատանալ վասն Քրիստոսի, յուշ արասջիր նոցա զկապանսն Պաւղոսի, և զանձն և զնոսա եղկելիս համարեսջիր, եթէ զմարմինս եւս 'ի կապանս արկ վասն նորա, դու և ոչ կերակրելով զքաղցեալս լինիս հաղորդ ուղղութեանցն։ Յուշ արա զկապանսն Պաւղոսի, թէ չկրեցեր ինչ այնպիսի չարչարանս, և չցանկանայցես այնուհետև ընկերին։ Յիշեա զկապանսն Պաւղոսի, և տեսջիր զի անպատեհութիւն է՝ նմա այնչափ 'ի վիշտս կալ, և քեզ այդչափ փափկանալ։ Ցանկանայցե՞ս դրդութեան. զմտաւ ածջիր զքանոտն Պաւղոսի, զի նորին աշակերտ ես և նորին զինուորակից, զիա՛րդ 'ի դէպ իցէ զզինուորակիցն 'ի կապանս տեսանել և զանձն 'ի դրդութեան։ Նեղութիւն ինչ 'ի վերայ հասանիցէ, և կարծիցես եթէ թողու 'ի ձեռաց. առաջի աչացդ նկարեա զկապանսն Պաւղոսի, և տեսանիցես՝ թէ 'ի նեղութեան լինել՝ չէ 'ի ձեռաց թողլոյ նշանակ։ Եւ յորժամ 'ի միտ անկանիցի կերպաս հանդերձ զգենուլ, յիշեսջիր զկա-

պահան Պաւղոսի, և քան զիշխանութեան ա-պահարկից անդրադարձն եւ Թանեանք քեզ, և կամ որ ընդ այլ դայր ինչ Թոթափեալ իցեն: Կամիցիս ասել զորգս կրել յան-ձին. զմասս անձին զիշխանական Պաւղոսի, և քան զչուան ինչ կին չԹափիցի քեզ լա-ւագոյն: Կամիցիս ծանր զործել և զեղե-ցիկ երեւել. Նկարեսցիր զերկաթին Պաւղո-սի 'ի բանսին, և խանդաղատանացին միայք քո յայն զեղ, և զքո պճնանան զարշելի համարեսցիր, և զատանալես հաշիցես հա-ւաշիցես նորա կապանացն»:

Հ. Ասա ինձ արդ համառօտիւ որ ինչ յօրինակաց ասաք պարտ իցէ 'ի միտ ա-ռնուլ.

— Նախ զայն իսկ, զի Թէպէտ և զսուղ ինչ իմաստ օրէն է ընդարձակել, մանա-ւանդ Թէ ճարտարութիւն իսկ է, այլ զգու-շալի է յոյժ՝ չյաւելուլ յայն զուզնաքեայ և չնչին հանգամանս, և մի այնպիսի ինչ՝ որ չյաճախիցէ զզօրութիւն բանին:

Եւ երկրորդ զի զամենայն ազգս ազգս ձևոց, զորոց յառաջագոյն ասացաք, մարթ է 'ի կիր արկանել յընդլայնութիւն:

## ԴԱՍ Ի

### Պարբերութիւն. — Արտասանութիւն:

Հ. Զի՞նչ է պարբերութիւն.

— Պարբերութիւն է բան լրացեալ, զոր քերականն վերջակէտիւ ուսուցանէ աւարտել:

Մեծագոյն մասունք նորա կոչին անդամք, որ միջակէտիւ տրոհին. և փոքրագոյնք կոչին հատուածք, որ ստորակէտիւ բաժանին. զոր օրինակ.

«Ոչ ոք յուղի անկեալ, և բառնայ ինչ ընդ իւր յաւելորդացն. այլ պարտ և պատշաճ է ընդդակառակն լինել, զի կարող լինիցի ընթանալ»:

Եւ դարձեալ. «Զի թէ զվարս առաջնորդացն պարտէաք ինչ քննել, ապա և զձեռնադրութիւնն մեք պարտէաք տալ, և ամենայն ինչ վեր 'ի վայր կործանէր, ոտքն 'ի վեր և գլուխն 'ի վայր». Ոսկեբ:

Հ. Բարւոք պարբերութեան քանի՞ անդամք պարտին լինել.

— Ոչ նուազ քան զերկուս, և ոչ աւելի քան զչորս. այլ ըստ պատշաճի իմաստիցն մարթ է և բազմանդամ ևս յօրինել պարբերութիւնս, մանաւանդ 'ի պերճ ասացուածս, և միանդամ ևս 'ի վճիռ ասացուածս:

Օրինակ առաջնոյն յՈսկեբերանէ.

« Յորժամ հաւ զառաջինն խօսիցի , ոչ որպէս աստ 'ի տունս՝ խորդան ծառայք , դուրք փակեալք , և ամենեքին նման մեռելոց կան ծանրաքունք , և տաճայոյզքն միայն զզանգական զանչեցուցանեն . չիք անդ այսպիսի ինչ , այլ փաղփաղակի ամենեքին միանգամայն երկիւղիւ զքունն Թօթափեալ , յառնեն կան առ հասարակ . յորժամ զլխաւորն ազդ կամ ոտամբ կամ ձայնիւ առնիցէ , 'ի զգաստական պարսն յօրինեալք , զունդ առ զունդ կացուցեալք , ամենեքեան առ հասարակ զձեռս յերկինս համբարձեալ , զնուիրական օրհնութիւնան երգեն միահամուռ » :

Օրինակ երկրորդին յաճախ սուրբք գտանի 'ի գիրս Առակաց .

« Սկիզբն իմաստութեան երկիւղ տեառն: Զիմաստութիւն և զխրատ ամպարիշտք անգոսնեն : . . Որդի իմաստուն ուրախ առնէ զհայր . որդի անմիտ տրտմութիւն է մօր » :

Հ . Առ ինչ տրոհմունքս այսպիսի պարզերութեան իցեն կարևորք .

— Նախ առ 'ի պարզ իմացուած ճառին , և երկրորդ առ 'ի բարուք արտասանութիւն՝ որ յոյժ կարևորն է ճարտասանին : Դեմոսթենեայ երիցս հարցեալ , թէ զինչ կարևորագոյն իցէ ճարտարախօսի , զնոյն երեքկնեաց պատասխանի՝ թէ Արտասանութիւն :

Եւ որոց քննիչք մի 'ի կարևորաց բարուք

արտասանութեան է ուրեք ուրեք հանգիստ կամ դադարումն առնել ձայնի, նըմին իրի և բարւոք արտահնչմունք պարբերութեանց օգնեն առ այս։

Հ. Համառօտեա ինձ զօրէնս բարւոք արտասանութեան.

— Նախ քան զամենայն պարտ է ճարտարախօսին կրթել զլեզու իւր 'ի յստակ արտաբերութիւն, զամենայն զվանկս և զտառս քաջ առոգանելով։

Երկրորդ՝ ելևէջ՝ առնել ձայնին ըստ ոլորակաց և ըստ իմաստից ճառին, և մի նմանաձայն զհարցականն և զաղաղակական կամ զասաստ և զաղերս արտասանել, որ մի անհեթեթական կացուցանէ զճառն, և նիրհեցուցանէ զլսելիս։

Երրորդ՝ համեմատութեամբ և ծանր արտասանել՝ ըստ պատշաճի անդամոց և հատուածոց պարբերութեան զհանգիստս առնելով, և մի շտապել տաղաչափօրէն և պարտասեցուցանել զլսելիս։

Չորրորդ՝ մի մոռանալ եղանակ յարմարաւորութիւնն՝ իբր նուագելով զճառն, որպէս ոչ կամկառ առնեն. որ առաւելորդ է և օտար 'ի բնականէն։

Հինգերորդ՝ մի բարձրագոչ ճառատել, այլ մանաւանդ 'ի սկզբան մեղմ և զածն ձայնիւ յառաջաբանել՝ եթէ ոչ յանկարծական ինչ խնդութիւ սկսանիցի ճառն. և ապա աճեալ ըստ պատշաճի առաւելուցուցանել զբարբառն։

Առ այս ամենայն օգնէ մեծապէս ընթեռնուլ 'ի ձայն զճառս Ոսկեբերանին, և մանաւանդ ուսանել յորդորակս ինչ յայնցանէ 'ի բերան, և արտասանել զայնոսիկ առ 'ի կրթութիւն ։

## ԴԱՍ ԻԱ.

### Շարժուածք ։

Հ. Համառօտեսջիր ինձ և զկանոնս շարժուածոց, որ զոյգ ընդ քաղ արտասանութեան կարևոր են.

— Շարժուածոց պարտ է յարմարել ընդ ձայն և ընդ կիրս արտասանողին. և է սա լեզու համր, այլ ճարտարախօս. և բազում այն է՝ զի հզօրագոյն քան զբարբառ իսկ ։

Երևելագոյն յանդամս է գլուխ. և զայն պարտ է ուղիղ ունել, և ըստ իմաստից ճառին շարժել ընդ ձեռս ։ Զոր օրինակ 'ի մերժելն ինչ կամ հրաժարել յիմեքէ կամ 'ի զարշիլ, պարտ է 'ի ձգել զձեռս ընդդէմ՝ դարձուցանել զգլուխն 'ի բաց ։ Զեթ 'ի կրից՝ զոր ոչ 'ի դէմս և յաչս մարթ իցէ արտասանողին յանդիման երևեցուցանել. նմին իրի պարտ է նմա ըստ իմաստից փոփոխել զայնոսիկ, մերթ ապաւանական և մերթ աղերսական, մերթ տխուր և մերթ զուարթ, մերթ խրոխտ և մերթ ցածուն երևեալ ։

Բայց թէպէտ և յաչս և 'ի դէմս տպաւորագոյն երևեցին կիրք հոգւոյ, այլ ճարտար ևս են ձեռք 'ի բացատրել զիմաստս։ Մնջկատակացն 'ի թատերս նախնեաց խաղք, որք զանսողս շարժէին յարտասուս, բաւականք են 'ի ցուցանել զճարտարխօսութիւն ձեռաց։

Արդ 'ի շարժուածս ձեռաց՝ զաջ ձեռն 'ի ձախմէ յաջ տանելի է, սկսեալ 'ի հանդիպոյ կրծոց։ Զմատունս ձեռաց պարտ է արձակ և 'ի բաց ունել, և զբազուկն պարզել. մի զարմուկն 'ի վեր քան զուս ամբառնալ, և մի հաւասար բարձրութեան ուսոց. մեկուսի յանձնէ ունել զայն, և գրեթէ միշտ նովաւ սկսանել զշարժուածս.

Ըստ այսմ և զահեակ ձեռն յաջմէ 'ի ձախ կոյս ածելի է, և ոչ երբէք զձախն միայնակ շարժել, այլ միշտ աջակից։

Պարտ է ընդ աւարտ պարբերութեանց աւարտել զշարժմունս ձեռաց, և ապա թողուլ անկանել բնականապէս 'ի վերայ ամբիոնին՝ եթէ յամբիոնի ոք բանախօսէ; և մի երբէք 'ի ներքս կամ արտաքս արկանել զձեռն։ Իսկ եթէ յոտին կացեալ բանախօսիցէ ոք, պարտ է յաւարտ պարբերութեանց թողուլ երկուստեք զձեռս 'ի կախ. իսկ եթէ բազմեալ յաթոռ, արկանել զձեռս 'ի վերայ ծնգաց։

Բազում ազգի ազգի ձևք են շարժուածոց, զորս սովորութեամբ և կրթութեամբ մարթ է ուսանել։

Առ 'ի ցուցանել զբարձրութիւն, պարտ է դարձուցանել փոքր մի զգլուխ առ 'ի կողմն, և ամբառնալ զաչս 'ի վեր՝ առանց ամբառնալոյ զգլուխն, և զերկուսին զձեռս միանգամայն 'ի միւս կողմն առ 'ի ստոր մեկուսի յանձնէ երկայնել, զերեսս ձեռաց դարձուցեալ առ ունկնդիրս:

Իսկ ընդ հակառակն առ 'ի ցուցանել զխոնարհութիւն, պարտ է խոնարհեցուցանել սաստիկ զաչս յերկիր, և անտի ամբառնալ զձեռս 'ի վեր՝ զարտաքոյս նոցա ցուցանելով ունկնդրաց:

Առ 'ի ցուցանել զտարածութիւն, պարտ է զերկուսին զձեռս 'ի հանդիպոյ կրծոց յաջ և յահեակ ածել շուրջանակի զոյգ ընդ աչս:

Առ 'ի ցուցանել զերկայնութիւն, պարտ է զերկուսին զբազուկս միանգամայն 'ի մի կողմ երկայնել՝ ուղղակի զձեռս ընդ առմկունս ունելով, և զափ 'ի խոնարհ:

Ըստ այսմ օրինակի պարտ է և զայլ ձևս գիտել և ուսանել 'ի քաջակիրթ և 'ի բարեձև բնաւորելոց անձանց. և զայն ևս գիտել, զի ոչ ամենայն շարժմունք և ձեռք ամենեցուն 'ի ճահ գան: Եւ դարձեալ մի՛ անդէն 'ի սկզբան ճառին սկսանել և զշարժուածս, այլ տակաւ. և միշտ իսկ հանդարտութեամբ առնել զշարժմունս:

Այլ կարևորագոյն և ընդհանուր կանոն և ձայնի և շարժուածոց այն է՝ բնականին հետևել, յորում է կատարումն ա-

րուեստին. զի պարտ է սմա ըստ օրինա-կի նկարչաց գեղեցկացուցանել զբնա-կանն, այլ մի՛ երբէք օտարանալ 'ի բնու-թենէ։

## ԴԱՍ ԻԲ

### Ոճ վսեմ։

Հ. Զի՞նչ է ոճն.

— Կերպարան բանից ըստ իմաստից ճառին յարմարեալ։ Արդ թէպէտ և բա-զում ազգի ազգի կերպարանք բանից են, ոչ միայն ըստ զանազանութեան շարա-դրածոց՝ այլ և ըստ հանգամանաց բարուց շարադրողացն զանազանեալ, այլ հե-տորք առ հեշտի ուսանողաց երիս ազգս ոճոյ գլխաւորս զանազանեսն, վսեմ, պարզ և բարեխառն։

Հ. Ո՞ր է վսեմն.

— Ցորում ճարտարախօսն 'ի կիր արկա-նէ ազնուագոյն մտածութիւնս, պերճա-գոյն ասացուածս, քաղցրայնդուզն ձևս, և սաստկագոյն յոյզս կրից։

Այսպէս իմաստունն նկարագրէ զԱհա-րոն, յորժամ եկաց նա ընդ մէջ մեռելոց և կենդանեաց՝ զիջուցանել զցասումն տեառն 'ի կոտորել նորա զժողովուրդն. «Փութացեալ այրն անարատ, մարտեաւ յառաջ 'ի կռիւ իւրով պաշտաման զինուն, աղօթիւք և խնկօք ուղերձեալ զքաւու-

թիւնն. եկաց ընդդէմ բարկութեանն, և արար վախճան հարուածոցն, յայտ արարեալ թէ քո ծառայ է։ Յաղթեաց բազում ամբոխի, ոչ զօրութեամբ մարմնոյ, և ոչ զինուց ազդեցութեամբ, այլ բանիւ զտանջիչն հնազանդեաց։ Զերդմունս և ըզդաշինս հարցն յիշատակեալ, զշեղջաշեղջ դիականցն անկելոց առ միմեանս, կացեալ 'ի մէջ, դադարեցոյց զբարկութիւն. եհերձ ճանապարհ ընդ մէջ կենդանեաց և մեռելոց։ Քանզի 'ի պճղնաւոր հանդերձին էր ամենայն զարդն, և փառք հարցն 'ի չորեքկարգեան ականսն քանդակեալս, և մեծութիւն քո թագ 'ի գլուխ նորա։ Ցայնց խորշեցաւ սատակիչն, և 'ի նոցունց զարհուրեցաւ»։

Այսպէս և յորժամ նկարագրէ զպաշտպանել Աստուծոյ զարդարս.

«Բայց արդարք յաւիտեան կեցցեն, և 'ի տեառնէ վարձք նոցա, և խնամք նոցա 'ի Բարձրելոյն... Զի աջով իւրով հովանի լիցի նոցա, և բազկաւ իւրով վերակացու լիցի նոցա։ Առցէ սպառազինութիւն զնախանձ իւր, և վառեսցէ զարարածս առ 'ի խնդրելոյ զվրէժս 'ի թշնամեաց։ Զգեցցի զրահս զարդարութիւն, և դիցէ սաղաւարտ զդատաստանն անաչառ։ Առցէ վահան զսրբութիւն անվկանդ, և սրեսցէ զհաստատ բարկութիւնն 'ի սուսեր. և պատերազմեսցի խառն ընդ նմա և աշխարհս առ անզգամս։ Գնասցեն նետք կայծակք

փայլատականց. և իբրև 'ի լայնալիճ աղեղանէ յամպոցն թռիցեն 'ի նպատակս, և 'ի քարընկէց բարկութենէ թափեսցի լիով կարկուտ: Զայրագնեսցի՝ 'ի վերայ նոցա ջուր ծովու, և գետք ողողեսցեն անխնայ։ Ի դիմի հարցի նոցա հողմն բռնութեան, և իբրև զմրրիկ հոսեսցէ զնոսա: Աւերեսցէ զամենայն երկիր անօրէնութիւն, և խարդախութիւն կործանեսցէ զաթոռս բռնաւորաց»:

Այսպէս և Յոբայն ստորագրութիւն երիվարին.

«Որոտայ 'ի դաշտի և դամիր հատանէ, ելանէ 'ի դաշտ զօրութեամբ. 'ի պատահել նետից՝ արհամարհէ, և ոչ դարձցի յերկաթոյ: Ի վերայ նորա շողան աղեղն և սուսեր, և շարժիւն վահանի և նիզակի. և բարկութեամբ ապականէ զերկիր: Եւ ոչ հաւատայ մինչև փող հարկանիցի. և իբրև փող հարկանի, նա վաշ վաշ կարդայ. 'ի հեռաստանէ առնու զհոտ պատերազմի, վազս առնելով և փռնչելով»:

Ըստ սմին օրինակի և Եսայի զսատակումն Թագաւորին բաբելացւոց նկարագրէ.

«Եւ եղիցի յաւուր յայնմիկ հանգուսցէ զքեզ տէր 'ի ցաւոց և 'ի սրտմտութենէ քումմէ, և 'ի ծառայութենէ խստութեան զոր ծառայեցեր նոցա: Եւ առցես զողբս զայս 'ի վերայ Թագաւորին բաբելացւոց, և ասասցես յաւուր յայնմիկ. զիա՞րդ դա-

դարեալ կայ պահանջողն, հանգեաւ տագնապողն, զի խորտակեաց տէր զլուծ մեղաւորացն, զլուծ իշխանաց:.. Հանգեաւ յուսով երկիր ամենայն և գոչէ ուրախութեամբ. և փայտքն Լիբանանու ուրախ եղեն քեզ, և մայրքն Լիբանանու ասեն, թէ յորմէ հետէ դու դադարեցեր, ոչ ելին 'ի մեզ փայտահարք: Դժոխք 'ի ներքուստ դառնացան 'ի պատահելն քեզ. կանգնեցան միանգամայն հսկայքն ամենայն որ լեալ էին իշխանք երկրի, որ յարուցին յաթոռոց իւրեանց զամենայն թագաւորս ազգաց: Ամենեքեան պատասխանի տացեն քեզ և ասասցեն. և դու իբրև զմեզ ըմբռնեցար, և ընդ մեզ համարեցար. իջին 'ի դժոխս փառք քո և բազում ուրախութիւնն քո»:

## ԴԱՍ ԻԳ

Ոճ պարզ, և բարեխառն:

Հ. Ո՞ր է պարզ ոճն.

— Ցորում ճարտարախօսն զիւրիմաց բանիւք և ընտիր ասացուածովք զարդս բնականս 'ի կիր առնու, զոր Որատիոս ինքնազարդ կոչէ զոճն զայն. որպէս բազում ուրեք 'ի պատմութեանն Եղիշէի և մանաւանդ 'ի յառաջաբանսն է տեսանել. զոր օրինակ.

« Թէպէտ և ոչ իցեմք բաւական ասել զա-

մենայն չարեաց՝ որ անցին անդէն 'ի կառաւարին ընդ զունդն Հայոց, սակայն և ոչ լռել կամիմք ծածկելով զվիշտս նեղութեանն. այլ աստացուք փոքր 'ի շատէ, զի ձայնակիցք լիցուք այնոցիկ՝ որք դառնապէս զմեզ ողբային: Զի և դու իբրև լսիցես, ոչ սակաւ արտասուս հեղուցուս 'ի վերայ ազգին թշուառութեան»:

«Մինչև ցայսվայր ոչ ինչ կարի զանգիտէի պատմել զհարուածս ազգիս մերոյ, որ յարտաքին թշնամեացն ճշմարտութեան չարաչար յարեան 'ի վերայ մեր. որք սակաւագոյնք հարին զմեզ, և յոլովագոյնք հարեալ զատան 'ի մէնջ, քանզի դեռ ևս միաբանք և համասարք էաք: Թէպէտ և ոմանք 'ի ծածուկ ունէին զերկմտութիւն նենգութեանն, սակայն յաչս արտաքնոցն անհաւոր երևէր միաբանութիւնն:.. Արդ յայսմհետէ և անդր, ուր սպրդեալ անկանի երկպառակութիւն 'ի ներքս, ընդքակել միաբանութեանն՝ և երկնաւոր առաքինութիւնն հեռանայ. և անձնընտիրք լինելով, յայժ բազմանայ լալումն ողբոյս»:

«Մեծ է սէրն Աստուծոյ քան զամենայն մեծութիւն երկրաւոր. և այնպէս աներկիւղս առնէ զմարդիկ, իբրև զանմարմին զօրս հրեշտակաց. որպէս անգստին 'ի սկզբանէ է տեսանել զբազումս բազում անգամ 'ի բազում տեղիս: Մարդիկ՝ որ սիրովն Աստուծոյ իբրև զինու վառեալք էին, ոչ ինչ խնայեցին զանգիտելով ի-

քրև զանարի՝ գոլով վտանգաւորաց կամ 'ի մահ անձանց, կամ յափշտակութիւն ընչից, կամ 'ի խողխողումն սիրելեաց, կամ 'ի գերութիւն ընտանեաց, ելանել 'ի հայրենի երկրէն և անկանել 'ի ստրկութիւն յօտարութեան. առ ոչինչ համարեցան զայս ամենայն անցս չարչարանաց. այլ միայն միաբան կալ ընդ Աստուծոյ, զի 'ի նմանէ միայն մի՛ գերի ելցեն»։

Համանգոյն իմն ոճով և Շնորհալին բազում ուրեք 'ի Թուղթսն վարի. զոր օրինակ.

«Զարթեաք որպէս 'ի քնոյ զուարթարարս բանիւք՝ որ 'ի սուրբ Թագաւորութենէդ. որով պատառեցաւ քուրձ սգոյ առ 'ի մէնջ, և զգեցաք զուրախութիւն ըստ գոհաբանութեան սուրբ մարգարէին՝ որ յաղագս Աստուծոյ։ Քանզի ծանոյց մեզ գորութիւն բանիս, ոչ միայն անուանակցութեան ճշմարտին էմմանուէլի արժանաւորել ձեզ, այնմ՝ որ հարիւրոցն ոչխարաց և դրամոցն տասանց էջ 'ի խնդիր նուազութեանցն լրման... Քանզի զցանկ օրինացն՝ զոր խրամատեաց Թշնամին, և զուռն հաւատոյ՝ զոր քանդեաց կինճն վայրենի 'ի ճշմարիտ որթոյն, փութալ խրամակարկատ լինել, և առ նոյն պատուաստել վերստին, և այսմ բարւոյ գործակից լինել զմեզ տկարութիւն հրամայեալ էք եղբօրն իմոյ առաքել 'ի սուրբ Թագաւորութենէդ»։

Հ. Ո՞ր է բարեխօսն մեր.

— Որ ոչ զարարչին ունի փառակցութիւն, ոչ զմեծին շնորհիչ զօրութիւն, այլ հաղորդի երկրպագանչիւրոցն. որպիսիք են բազմազոյնք 'ի ճառից Ոսկեբերանին. զոր օրինակ.

« Աղէ առա, 'ի պէտս բնակութեան սիւնք բազումք և խոյակքն ախտաւորացեալք, և ազգի ազգի դիմակք պատկերացն, և ոսկի խառնեալ ընդ նկարս որմոյն, և այլ ևս համապայծառ գունակք երանգոցն, և ազգի ազգի դեղքն ընդ միմեանս 'ի ճամուկան մտեալ, զի՞նչ օգուտ իցէ, այլ հպարտութեան և պարծանաց և յօրանալոյ պատճառք են և աւելորդ անմտութեան: Այնքան ուրեք կարևորաց պէտք են՝ որով կարօտ իցեմք, և զպէտսն վճարիցեմք: Տեսանե՞ս, զի վնաս է և ոչ օգուտ, և աւելորդ և անշահ. զի թէ աւելի պէտս ինչ չառացէ, և ոչ վայելչութիւն երեսաց: Քանզի յորժամ ժամանակ 'ի վերայ անցանիցէ, յազգի ակն, և չթուի ինչ վայելուչ, և չառայ զայն իմանալ սնապարծութիւնն: Պաւղոս և զոր շահն կարծէր, զայն վնաս համարէր վասն Քրիստոսի: Մինչև ցե՞րբ ընդ երկիր բևեռիմք, մինչև ցե՞րբ չնայիցիմք ընդ երկինս: Զտեսանիցէ՞ք ըզծերացեալսն, զիա՞րդ և ոչ զմիոյ ինչ զախորժելոցն յիշեն. չտեսանիցէ՞ք զմանկանեալսն, զոմանս 'ի ծերութեան, զոմանս 'ի մանկութեան. չտեսանիցէ՞ք զբազումս

իսկ կենդանույն գրկեալն յընչիցն. զի՞ այն-
չափ ծնգիցիմք ընդ չկայսս և չմնալիս.
ընդէ՞ր այդչափ կապեալ իցեմք ընդ մնա-
ցականս. մինչև ցե՞րբ ոչ հարկանիցեմք
բուռն զկայիցն և զմնացելոց»։

Սովին ոճով և Եղիշէ վարդապետ նկա-
րագրէ զերանելի կանայս սուրբ նախարա-
րացն նահատակելոց.

«Բազում ձմերաց հալեցան սառնամա-
նիք. եհաս գարուն, և եկին նորեկ ծիծ-
ռունք. տեսին և խնդացին կենցաղասէր
մարդիկ, և նոքա ոչ երբէք կարացին տե-
սանել զանձկալիսն իւրեանց։ Ծաղիկք
գարնանայինք յիշատակեցին զպսակասէր
ամուսինս նոցա, և աչք իւրեանց կարօ-
տացան տեսանել զցանկալի գեղ երեսաց
նոցա։ Սպառեցան բարակք որսականք,
և խցեալ կուրացան արշաւանք որսոր-
դաց։ Բնագրօք յիշատակեցան նոքա, և
ոչ մի տօնք տարեկանաց ոչ ածին զնոսա
'ի հետաստանէ։ Ի ճաշատեղս նոցա հայե-
ցան, և արտասուեցին. և յամենայն ա-
տեանս յիշեցին զանուանս նոցա։ Բազում
արձանք կանգնեալ էին յանուն նոցա, և
անուանք իւրաքանչիւր նշանակեալ 'ի նո-
սա։ Եւ իբրև այնպէս յամենայն կողմանց
ալէկոծ լինէին միտք նոցա, ոչ ինչ կա-
սեալ թուլացան յերկնաւոր առաքինու-
թենէն։ Արտաքնոցն երևէին իբրև այրիք
սգաւորք և չարչարեալք, և յոգիս իւ-
րեանց զարդարեալք և մխիթարեալք եր-

կնաւոր սիրովն։ Ոչ ևս սովորեցին հարցանել զեկեալ ոք 'ի հեռաստանէ, եթէ երբ լինիցի մեզ տեսանել զսիրելիսն մեր. այլ այն էին խնդիր աղօթից նոցա առ Աստուած, եթէ որպէս սկսանն՝ քաջութեամբ 'ի նմին կատարեսցին լի երկնաւոր սիրովն»։

Դարձեալ նոյն ինքն 'ի յառաջաբան երկրորդ գրոցն.

«Որոց ոգիքն թուլացեալ են յերկնաւոր առաքինութենէն, յայժ ընդ ահիւ անկեալ է բնութիւն մարմնոյ. յամենայն հողմոյ շարժի, յամենայն բանէ խռովի, և յամենայն իրաց դողայ. երաղագէտ է այնպիսին 'ի կեանս իւրում, և յանզգուստ կորուստ յուղարկի 'ի մահուան իւրում։ Որպէս և ասաց ոմն 'ի հնումն. Մահ ոչ իմացեալ՝ մահ է. մահ իմացեալ անմահութիւն է. որ զմահ ոչ գիտէ, երկնչի 'ի մահուանէ. իսկ որ գիտէ զմահ՝ ոչ երկնչի 'ի մահուանէ. և այս ամենայն չարիք մտանեն 'ի միտս մարդոյ յանուսումնութենէ։ Կոյր զրկի 'ի ճառագայթից արեգական, և տգիտութիւն զրկի 'ի կատարեալ կենաց. լաւ է կոյր աչօք քան կոյր մտօք, որպէս մեծ է հոգի քան զմարմին, այսպէս մեծ է անուսաւորութիւն մտաց քան զմարմնոյ»։

## ԴԱՍ ԻԴ

### Ընտրութիւնք ոճոյ։

Հ. Ո՞ր յերից աստի կերպարանաց բա-նի ընտրելագոյն իցէ.

— Երեքեան իսկ գովելիք են, այլ վսեմն գերագոյն քան զայլս. և պարտ է ճար-տասանին ըստ իմաստից ճառին զերե-քեան ևս 'ի կիր արկանել. քանզի պարա-ւութեամբ երեցունցս այսոցիկ յարդարի ճարտարախօս կատարեալ։

Այլ դժուարին է յոյժ այսոցիկ յումեք 'ի միասին պատահել, և յոյժ դիւրին երե-քումբքն իսկ զեղծանել, զպարզութիւն փո-խել 'ի գձձութիւն, զզարդ 'ի պչրանս և յարուեստակութիւն, և զվսեմութիւն 'ի ճոռոմ համարտակութիւն։

Հ. Բովանդակեա ինձ որ ինչ այլ ևս գիտելիք իցեն զոճոյ.

— Բաց յերից ճարտասանական կերպա-րանաց ասացուածոյ, են և ուսումնականն, և բնիկ պատմականն, և լակոնական՝ որ յարձանագիրս և այլ ուրեք ուրեք վարի։ Սոքա օտար յամենայն զարդուց՝ զկա-րևորն ևեթ բացատրեն։

Օրինակ ուսումնականին յաճախ ուրեք գտանի 'ի գիրս Եզնկայ. զոր օրինակ.
« Ցորժամ անիւ շրջանակիցի, և մրջիւն մի 'ի խեցին գնայցէ յարևմտից կողմանէ

ընդ արեւելս, վասն անուրին արագագոյն ընդ արեւմտից կողմն շրջելոյ թուի թէ մըրջիւնն յարեւելից յարեւմուտս կայս ընթանայցէ. որ ոչ յարեւելից յարեւմուտս կողմն գնայցէ, այլ յարեւմտից յարեւելս, եւ անիւն ստէպ շրջելովն այնպէս երեւեցուցանէ»:

«Իւ օդ ընդ ջուրս եւ ընդ երկիր խառն է. եւ զի ընդ ջուրս օդ խառն է, 'ի զեռնոցն յայտ է՝ որ 'ի ջուրս զօդոյն կենդանութիւնն ծծեն: Իւ զի ընդ երկիր նոյն օդ խառն է, յորժամ անձրեւ լեալ իցէ, եւ արեւ տայցէ, 'ի գոլորշոյն՝ որ 'ի սրտէ երկրին 'ի վեր ցոլանայ՝ յայտ յանդիմանն երեւի: Իւ զի ընդ օդս հուր խառն է, 'ի փայլատականցն՝ որ 'ի շփելոյ ընդ միմեանս հողմոյն եւ ամպոց արձակին՝ յայտ յանդիման ցուցանին: Իւ դարձեալ, թէ յաղակի սպիտակ ջուր արկեալ՝ յարեւու ունիցիս, լուսաւորութեան արեւուն մտեալ ընդ սպիտակութիւն աղակւոյն, եւ ընդ յստակութիւն ջրոյն օդով թափանցանց անցեալ, հուր ծնուցանէ»:

Յօրինակ պատմականին շատ իսկ են պատմութիւնք սուրբ գրոց, եւ մանաւանդ աւետարանին Ղուկայ եւ գործոց առաքելոց. որոց յառաջաբանքն գեղեցիկք են յոյժ, ամենեւին անաղարտ բացատրութեամբն.

«Քանզի բազումք յօժարեցան վերստին կարգել զպատմութիւնն վասն իրացն հաւա-

տատելոց 'ի մեզ, որպէս աւանդեցին մեզ որ 'ի սկզբանէ ականատեսք և սպասաւորք եղեն բանին, կամ եղև. և ինձ, որ 'ի սկզբանէ զհետ երթեալ էի ամենայնի ճշմարտութեամբ, կարգաւ գրել քեզ, քաջդ Թէոփիլէ, զի ծանիցես զբանիցն՝ որոց աշակերտեցար՝ զճշմարտութիւն»։

Այնպէս և նախադրութիւնք սուրբ գրոց գեղեցիկք են յոյժ. համառօտ և առանց աւելորդաց զպատճառս և զհանգամանս գրոց իւրաքանչիւր բացատրելով։ Օրինակ իմն նախադրութիւն իմաստութեանն.

«Բազում գիրս երևեցուցանէին գոլ Սողոմոնի՝ ասացեալքն զնմանէ երիս հազար առակս, և հինգ հազար օրհնութիւնս. զոր կէսք յԱռակսն և յԵրգերգոցն իմանան, և այլք՝ թէ չէ բովանդակն 'ի միջի։ Արդ զկարծիս զայս կալցի ոք որպէս և ախորժէ։ Այլ առ այս գիրք՝ ոմանք կարծեօք վարեցան, իբր թէ չէ նորա. բայց բազում քննութեամբ ստուգեցաւ նորա գոլ, և ընդ առաջին գրեան հարազատ, որպէս տիպք բանիցն և զօրութիւն իմաստիցն յայտնէ, հաւաստարագոյն գոլով առաջնոց գրեանց, թէ և սուղ ինչ զանազանի, որպէս Ժողովողն յԱռակացն, և Երգերգոցն յերկոցունց. որով մեծ հարստութիւնն նորա յիմաստս և 'ի բանս ցուցանի։ Նոյնպէս և այս գիրք առատագոյն [?] բանիւ խրատէ զլսօղն [?]՝ սիրել զարդարու-

Թիւն՝ որով կարասցեն ընդունել զսուրբ Հոգին. և փախչել 'ի կորուսիչ խորհրդոց ամպարշտաց, որք թէպէտ ժամանակօք և ծննդովք բազմանան, փուտք են և զազրախաղփունք: Եւ զի վայելեսցեն արդարք զանճառ բարութիւնս. որ թէպէտ և անզօրունք կամ կարճակեացք, այլ անմահութեան յուսով հաստատեալք, և թէ 'ի պատուհասից անզգամացն՝ նոքա մեծապէս փառաւորեսցին: Խրատէ զթագաւորս՝ և որք վերնոյ թագին փափաքեն՝ պատուել զիմաստութիւն, որով յաւիտենան թագաւորեսցեն. և հաստատէ ընդդանն բազում վկայիւք, ինքեամբ և այլովք՝ որք պատուեցին զիմաստութիւն և փառաւորեցան, և այլովք՝ որ վարեցան անզգամութեամբ և պատուհասեցան »:

Հ. Ո՞ր իցէ լակոնական ոճն.

— Ամենևին հակիրճն և սուր: Եւ կալաւ սա զանունն 'ի լակոնացւոց անուանէ, որ են սպարտացիք. քանզի սոցա կարի ախորժական էր ոճս այս, և ատեայր յոյժ պերճախօսութիւն: Որով առ բազում սպառնալիս թշնամեաց ետուն պատասխանի միով յանկական վանկիւ՝ որ նշանակէ ԵԹէ. իբր ասել, ԵԹէ կարող իցէք: Այնպէս և առ սպառնալիս Փիլիպպեայ արքային մակեդոնացւոց ետուն պատասխանի. « Դիոնեսիոս 'ի Կորնթոս ». իբր ասել. Յիշեա զԴիոնեսիոս՝ որ բանակալելն ջանայր որպէս զքեզ. և այժմ տառապէր

'ի Թագաւորութենէ պանդխտի 'ի Կորն-
թոս :

Արդ ոճս այս կարի յարմար է և կարևոր արձանագրի. այսպիսի էր արձանագիր բագնին յԱթէնս, « Անծանօթի Աստուծոյ ». յայտ առնելով զի բագինն այն նուիրեալ էր 'ի ժողովրդենէն աթենացւոց աստուծոյ ումեմն՝ որ անծանօթ էր նոցա :

Որպիսի էր և արձանագիր աշտարակին Փարոսի յԵգիպտոս.

« Սոստրատ Կնիդացի, Դեքսիփանեայ որդի, զիցն պահպանաց վասն նաւորդաց » :
Զի խորամանկ ճարտարապետին, հրամաննաւ Պտղոմեայ Եղբայրասիրի զշինուածն զայն կանգնեալ, ուր լապտեր 'ի բարձու լուսատու նաւուց եկաւորաց վառէր, խորագիտութեամբ զիւրն 'ի նմա դրոշմեաց զանուն. իբր թէ ինքն Սոստրատ Կնիդացի, որ էր որդի Դեքսիփանեայ, նուիրէր զայն դիցն խնամակալուաց նաւելոցն ընդ ծով, զի 'ի լոյս լապտերին դիւրութեամբ մացեն նաւորդք 'ի նաւահանգիստ անդր 'ի գիշերի :

Այսպէս և 'ի վաղեմի ուրեմն շիրմի տղայոյ ուրուք մանկան, զոր մայրն կանգնէ վաղամեռիկ որդեկին, զտանի դրոշմեալ արձանագիրս այս. « Զոր դու ինձ պարտէիր, ընկալ 'ի մօրէս » :

Այնպէս գեղեցիկ է ոճս այս յարձանագիրս, զի ազդու ևս է յոյժ քան զարձանագիրս քերթողականս ճոխս յօրինեալս չափու :

## ԴԱՍ ԻԵ

### Կրթութիւն անձոյ։

Հ. Ո՞րպէս մարթ իցէ ստանալ ոճ վայելուչ.

— Նախ քան զամենայն պարտ է 'ի շարադրելն քաջ խորհել և 'ի միտ առնուլ՝ որ ինչ առաջի կայ ասել. զի եթէ ոչ կարգաւ և բացայայտ 'ի միտսն ոք ունիցի զիմաստս, անհնարին է թէ բարւոք բացատրեսցէ զայնս։

Երկրորդ՝ կրթել զանձն 'ի գրութիւն, և այն հանդարտութեամբ և ոչ շտապաւ և վեր 'ի վերոյ. և մանաւանդ 'ի սկզբան անդ փորձից. զի այսպէս հանդարտութեամբ և ուշով մարթի զհնարաւորն ստանալ շարադրութիւն։

Երրորդ՝ յետ ժամանակի առնուլ զշարադրեալն 'ի քննութիւն, և զթերութիւնս նորա հետազօտել. յղկել զայն և կոկել և զաւելորդս 'ի նմանէ յապաւել։

Չորրորդ՝ վերծանել մտադրութեամբ ընդ քաջ մատենագիրս, և քննել զոճ նոցա և զեղանակ բացատրութեանցն. օրինակել հատուածս ինչ 'ի նոցանէ, կամ ուսանել 'ի բերան։

Հինգերորդ՝ 'ի միտ առնուլ զիմաստս հատուածոց ինչ յընտիր մատենագրաց, և շարադրել զայն 'ի մտաց՝ բաղդատել ապա ընդ բնագրին։

Վեցերորդ՝ ըստ իմաստից իւրաքանչիւր զեղանակ բանին յարմարել. զի չէ վայելուչ քերթողաբար յօրինել զբանսն՝ ուր ճշգրտաբանութեան իմաստից պէտք իցեն կամ պարզ պատմութեան:

Եօթներորդ՝ ընթեռնուլ զգիրս քննաբանից և հռետորաց վարժապետաց արուեստին, և 'ի միտ առնուլ զկանոնս ճարտասանութեան աւանդեալս 'ի նոցանէ, զթերութիւնս՝ յորոց պարտ է զգոյշ լինել:

Հ. Իցէ՞ և այլ ինչ հնար կրթելոյ և յառաջդարելոյ զոճ.

— Է իսկ, բայց լեզուագիտաց եւեթ պահեալ: Քանզի սոցա գլխաւորագոյն յոյժ մարթ է կրթել զոճ իւրեանց՝ պարապելով 'ի թարգմանութիւն ընտիր մատենագրաց, պահելով ըստ կարի զճշդութիւն՝ առանց ստանալոյ յատկութեանց բնիկ բարբառոյն: Զի այլ են քերականական կանոնք և յատկութիւն լեզուաց իւրաքանչիւր, և այլ եղանակ ասացուածոց նոցա և իւրաքանչիւր ոճոյք 'ի մատենագրաց:

Արդ պարտ է թարգմանչին զքերականական կանոնս նոցա և զյատկութիւնս փոխել յիւրն, այլ ոչ զեղանակ բացատրութեանց նոցա. ապա թէ ոչ, միօրինակ ընդ գրչաւ նորա խօսեսցին մատենագիրք ամենայն, ընտիր և հետեւակ. և ոչ ևս այնուհետև մատենագիրն, այլ թարգմանիչն իցէ՝ որ խօսիցի: Թարգմա

նութիւն այսպիսի սակաւ կամ ոչ ինչ օգնէ 'ի կրթել զոմն, ոչ միայն զընթերցողաց, այլ և զԹարգմանչին։ Իսկ որ ճգնի ոչ ինչ աւելի կամ պակաս ասել քան զբնագիրն, և սեփականէ իւր զտիպս կերպարանաց բանից նորա, այնպէս կրթէ ոճ իւր, զի և 'ի գրելն յանձնէ՝ հանգոյն նմին յօրինէ զեղանակ ասացուածոցն, և ընտիր զբացատրութիւնսն։ Իսկ քերականականն ոճ նորա ընտիր ևս յօրինի. զի որ հանդերձ կապանօք Թարգմանութեան պահէ զոճ և գեղեցկութիւնս բնիկ բարբառոյն, յորժամ ազատ 'ի կապանաց անտի իցէ, յայտ է զի ընտիր ևս հայկաբանէ։

Հ. Եւ որպէս մարթ իցէ վարժել 'ի քաջ Թարգմանութիւն.

— Յորմէ լեզուէ Թարգմանել ինչ ոք և կամիցի, պարտ է նախ ընդ բնագիրս այնր լեզուի բաղդատել զընտիր Թարգմանութիւնս։ Եւ քանզի Թարգմանութիւնք նախնեաց մերոց 'ի հին լեզուս ևեթ ամփոփին, առ 'ի վարժս Թարգմանութեան արդի լեզուաց հարկ է դարձեալ 'ի սոյնս գիրս դիմել։ Զի որովհետև առաւելագոյն 'ի նոսա պահի ճշդութիւն, և երկաքանչիւր Թարգմանութիւնք, մերն և այլոց, յոր և նման են բնագրին, որով և ընդ իրեարս գտանին համեմատք, որ բաղդատէն զնոսա տեսանէ զինչ մասնկունս և բառս խառնացին կամ զաղզփացին և այլն, յաւելուսու 'ի պահել զգեղեցկութիւնս լեզուի իւ-

րոյ, և թէ ձրի են նոցա տուեալ 'ի մերոյս համեմատիցի: Օգտակարագոյն ևս լիցի բաղդատութիւնս այս, եթէ ընտրեսցին և 'ի սուրբ գրոց ընտրելագոյն մատենագրեալքն, որպէս Գործք առաքելոցն, աւետարանն Ղուկայ, իմաստութեան գիրքն և Յուդիթայ և այլն:

Հ. Ո՞րպէս մարթ իցէ ստանալ զյիշողութիւն, և ուսանել ինչ զխրատ 'ի բերան.

— Որպէս ամենայն զօրութիւնք մարդոյ վարժիւք և կրթութեամբ առաւելուն, այսպէս և յիշողութիւնն. Նմին իրի ոչ է պարտ թողուլ երբէք անգործ զյիշողականն զօրութիւն, այլ ստէպ ուսանել 'ի բերան զհատուածս ինչ ճառից կամ քերթուածոց գեղեցիկս, և ստէպ արտասանել զայնս:

Երկրորդ՝ նախ քան զուսանելն ինչ 'ի բերան քննել զմաստունս նորա, և 'ի միտ առնուլ զիմաստս:

Երրորդ՝ եթէ երկայն ինչ իցէ, բաժանել զայն 'ի մասունս:

Չորրորդ՝ ինքնին գրել զուսանելին, և մի փոխել զգրեալն. զի ձևք իսկ գրուածոյն և եղծուածք օգնեն յիշողութեան:

Հինգերորդ՝ 'ի սկզբան անգ. մի 'ի ձայն, այլ լռութեամբ ուսանել, և ապա բարձրաձայն յեղ յեղել զուսեալն.

Վեցերորդ՝ ուսանել յանօթուց և ընդառաւօտս դեռ անխոնջ միտք, մինչչև ծանրացեալ 'ի խորհրդոց:

Եօթներորդ՝ յերեկոյի նախ քան զմտա-

նել 'ի մանրհեռս ընթեռնուլ զուսանելիսն միանգամ կամ երկիցս մտադրութեամբ, զի գիշերային հանգստեանն 'ի վերայ եկեալ՝ խորագոյն տպաւորէ զայնոսիկ 'ի միտս։

Ութերորդ՝ օգնեն և նշանք ինչ արտաքինք 'ի յիշեցուցանել զուսանելիսն։

Այլ առաւել քան զամենայն զգաստ կեանք և հանդարտութիւն մտաց, որ և առ ամենայն ազգի ազգի վարժս գիտութեանց և հանճարոյ անհրաժեշտ կարեւորք են։

## ԴԱՍ ԻԶ

Տրամաբանական ձեռնարկք. — Հաւաքաբանութիւն. — Հնարք։

Հ. Աւելորդք ուրեմն իցեն տրամաբանին ցուրտ և տաղտկալի ձեռնարկք, զի ահա ճարտասանն հզօրագոյն ևս համոզէ հանդերձ զուարճութեամբ 'ի ձեռն ձևոցն և հնարից արուեստին.

— Արդարև հռետորականին ձևք և հնարք օգնեն յոյժ 'ի համոզել, այլ առանց տրամաբանութեան՝ դի անկենդան է ճարտասանութիւն, և շունչ իմն և հոգի նորա են ձեռնարկութիւնք բանական արուեստին. որպէս զի յեղանակ բացատրութեանն ևեթ զանազանին տրամաբանն և ճարտասան. զի ուր նա կարգաւ զառա-

չարկութիւնն զաստ, և ակն յանդիմանն պատրաստէ զմարմին, առ մեր 'ի վայր փո֊փոխէ զկարգն, և սեթևեթիւք զմարմին ծածկէ, ոչ խրատուցանելով զորսն։

Հ. Ի՞ըր ապա յօրինէ ճարտասանն զհա֊ւաքաբանութիւն.

— Հաւաքաբանութիւնն է ձեռնարկու֊թիւն, յորում՝ 'ի դնել երկուց առաջարկու֊թեանց՝ հարկաւ երրորդ ինն յառաջ գայ։

Արդ զոր պարտն էր տրամաբանին կար֊գել այսպէս,

Մեռանի այն՝ որ կենսաւորն է. Իսկ կրակն չէ կենսաւոր, Ապա և չմեռանի. այսպէս կարգէ զայն Եղիշէ վարդապետ 'ի ձև ճար֊տասանական։

Մեռանի այն՝ որ շնչէն և շարժի և գնայ և ուտէ և ըմպէ.

Ե՞րբ տեսեր դու զկրակ գնայուն կամ խօ֊սուն կամ զխոսուն.

Արդ զոր կենդանիքո չէ տեսեալ, մեռեալ խոստովանիս։

Եւ Ոսկեբերան զհաւաքաբանութիւնս զայս,

Կեղծաւոր է, որոյ գործք հակառակք են բանիցն.

Իսկ արդ դու զամենայն ցոյցս ուրախու֊թեան 'ի քեզ բերես, յորժամ սանտ առ Աստուած 'ի սուգ և 'ի տրտմութեան կայ.

Ապա կեղծաւոր ես, և խաբել հնարիս զԱստուած. — այսպէս յօրինէ 'ի ձև ճար֊տասանական.

«Զի՞նչ գործես, մատուցեալ Աստուծոյ աղօթս մատուցանես, և շուրջանակի կուռ յուռթի համակիր, 'ի հիւսս ոսկեմանս ընդելուզեալս մարգարտով։ Միթէ 'ի կաքաւս իջանես, 'ի պար անցանիցես, 'ի հարսանիս խնծղայցես, միթէ 'ի գեղջն յառնիցես և 'ի ցոյց շրջագայիցիս. անդ պիտոյ է ոսկին և մարգարտովն ընդելուզեալ, անդ հանդերձքն պաճուճեալք անդէն զարդուցն ուայք և ժամանակ մենթանաց, անդ սեթևեթել, և անդէն պերճևեթել, աստ չէ այնմ ժամանակ, և ոչ պէտք ինչ այնպիսիք։ Պաղատել եկիր, խնդրուածս մատուցանել, աղերս վասն մեղաց արկանել, ընդ յանցանացն եղձանալ, 'ի հաշտութիւն ածել զտէրն. զի՞ զարդարիցես զանձն, չեն այդպիսի կերպարանք խնդրուածոյ։ Զիա՞րդ կարիցես հեծել, կամ որպէս յոգւոց հանել և արտասուս արկանել, զիա՞րդ հաչելով հառաչելով զաղօթսն մատուցանիցես։ Յորժամ այդպիսի կերպարանս ունիցիս և արտասուիցես, ծաղր կայցես բազմաց և կատականք տեսողաց։ Զմարթի, յոսկի համակեալ, և արտասուս արկանել. խաբէութիւն գործես, կեղծաւորութիւն ցուցանես։ Յորժամ 'ի նոյն մըտաց, ուստի այնչափ պաճուճանք և զարդարանք ծնանին, և արտասուք ևս զինիցեն, չէ 'ի դէպ, չէ հաւատալի։ Ի բաց առ զայն կեղծաւորութիւն, քանզի չկարես զԱստուած խաբել. վարձակացն և կաքաւչացն են այնպիսի կերպարանք»։

Հ. Ո՞րպէս յօրինէ ճարտասանն զհընարս.

— Հնարք կոչի 'ի տրամաբանից հաւաքաբանութիւն անկատար. յորում միակ առաջարկութեան 'ի վերայ ածեմք զհետեւութիւն, ընդ լռութեամբ թողեալ ըզմիւսն իբր ծանօթ. զոր օրինակ.

Համահայր և համամայր որդիք եմք.
Ապա չէ պարտ մեզ հակառակ լինել միմեանց.

Արդ զայս ձեռնարկութիւն այսպէս 'ի ձև ճարտասանութեան ածէ Եղիշէ վարդապետ.

«Մի է մայր մեր եկեղեցի, որ երկնեացն զմեզ, և մի է հայր մեր սուրբ Հոգին, որ ծնաւն զմեզ. զիա՞րդ համահայրք և միայմօր որդիք՝ երկպառակք լինիցին և ոչ միաբանք»:

Դարձեալ զհնարս զայս. Ոչ միայն խօսել ընդ Աստուծոյ կայ մեր առաջի, այլ և չօշափել և ճաշակել զնա. ապա պարտիմք մաքրել զամենայն անդամս մեր, այսպէս կազմէ Շնորհալին 'ի ձև ճարտասանական.

«Զի ոչ միայն խօսել ընդ Աստուծոյ ըստ Մովսէսի կայ մեր առաջի, և կամ տեսանել զյետոյսն Աստուծոյ, այլ և ձեռօք չօշափել զանչօշափելին, և շրթամբք համբուրել զսէրն, և բերանով ճաշակել զկերակրիչն ամենայնի, և 'ի սիրտս ընդունել և հոգւով միանալ ընդ նոյն, և լինել

տառուած շնորհօք՝ ընդ Աստուծոյ միաւո-
րելովն: Վասն որոյ զտեսանելիս և զլսե-
լիս և զլեզու և զամենայն անդամ խրա-
տեցէք՝ 'ի բարիս շարժել, 'ի չարիս անշարժ
մնալ. և ողջախոհութեամբ և սրբութեամբ
յաշխարհական ցանկութեանց և զբօսա-
նաց զմիտս ամփոփելով, և ապա յեր-
կնային խորհրդոյն սպասաւորութիւն մեր-
ձենայցէք »:

Եւ Ոսկեբերան դարձեալ զնոյն զայս.
Ննջեցեալքն 'ի տէր հանգչին մանաւանդ
և պսակին, ապա չէ պարտ տրտմել ընդ
մահ նոցա, այսպէս ճարտասանէ.

« Այլ հեծեն միշտ միոք դառնապէս, եթէ
յոր եհան զմեզ Քրիստոս, և յոր ելուցաք
մեք զանձինս, յորժամ տեսանիցեմք զկո-
ծողս 'ի հրապարակս և զճիչ և զաշխա-
րանս 'ի վերայ մեռելոց, զիա՞րդ խայտա-
ռակեն զանձինս ողբովք և կականաւ բառ-
նալով: Թէ հաւատայք, ամաչեմ 'ի հե-
թանոսաց և 'ի Հրէից և յայլադաւանդոց, և
յամենեցունց իսկ առ հասարակ. որ զայն
տեսանեն, զմեզ ծաղր առնեն: Եւ որչափ
ասիցեմ այնուհետև, ընդ վայր ասեմ
վասն յարութեան. և որչափ ճարտարի-
ցեմ ինչ, ոչ ընդ իմ բանսն հային հեթա-
նոսք, այլ ընդ ձեր գործսն, և անդէն
վաղվաղակի ասիցեն. Ո՞վ ոք 'ի սոցանէ
կարիցէ զմահ արհամարհել, որ ոչ և զայ-
լոց մահ կարիցէ տեսանել: Բարւոք են
բանքն որ 'ի Պաւղոսէ ասացան, բարւոք

և երկնից արժանի և Աստուծոյ մարդասիրութեանն. Որ ապրեցուսցէ զայնոսիկ՝ որ հանապազ մահուան երկիւղիւ կէին, և 'ի վտարանդի էին 'ի ծառայութեան: Այլ չտայք այնմ հաւատարիմ լինել զայս, որ գործովքդ մարտնչիք ընդ բանսն. Թէպէտ և Աստուած բազում անգամ արգել 'ի մարդկանէ, զի բառնայցէ 'ի միջոյ զայնպիսի չար սովորութիւնն: Եւ արդ աղէ ասա. զի՞նչ յայտ առնիցեն կանթեղքն և մոմեղէնք լուցեալք. ոչ ապաքէն իբրև զնահատակս յուղարկելոց: Զի՞նչ ինչ յայտ և օրհնութիւնքն առնիցեն. ո՞չ ապաքէն զԱստուած փառաւորեմք և գոհանամք՝ թէ այսուհետև պսակեաց զգնացեալսն, և ազատեաց յաշխատութեանց. և հան յանդորր աշխարհէ, առ իւր պահել զետեղ և անարատ: Ո՞չ վասն այսորիկ են օրհնութիւնքն և սաղմոսիցն պէսպէս նուագքն. և այն ամենայն յուղարկութենէ արտեցն յայտ առնին. Ուրախ ոք իցէ, ասէ, սաղմոս ասիցէ »:

## ԴԱՍ ԻԷ

### Մակածութիւն. — Ցուցացոյց:

Հ. Ո՞րպէս կազմէ ճարտասանն զմակածութիւն.

— Մակածութիւն կոչի 'ի ճարտասանաց ձեռնարկութիւնն, յորում առաջադրեալ

զիրս աներկբայելիս զանձնիւր տեսակաց սեռին կամ զանհատից տեսակին, այլ հաստատեմք զնոյն զբովանդակ սեռէն կամ զտեսակէն. զոր օրինակ. Ցղայոյ, մանկան, պատանւոյ, երիտասարդի, առն, ծերոյ և զառամելոյ իւրաքանչիւր կարիք են. այլ և ամենայն հասակաց կարիք են։

Բայց ճարտասանին ոչ են պարապք մի ըստ միոջէ զամենայն մասունս թուել, այլ համարձակագոյն վարի ձևովս։ Որպէս Նարեկացին փոխանակ ասելոյ՝ չիք ոք որ առանց ուղղչի կամ օժանդակութեան կարասցէ գործել ինչ, այլ և ոչ ես առանց կամացն Աստուծոյ, այսպէս յօրինէ ըղբանն. «Չի ոչ երբէք հարթ ընթանայ երիվար՝ առանց սանձակալի, և ոչ նաւ համբառնալ հանդէպ՝ առանց ուղղչի, և ոչ արօր կչխու ինչ գործէ՝ առանց մաճակալի, և ոչ երկուորեակք լծոցն 'ի ճահ ճեմեսցեն՝ առանց եզողի, ոչ ամպ վերացուէ՝ առանց հողմոյ, ոչ աստեղք ցնդին կամ գումարին՝ առանց ժամանակի, ոչ արեգակն փախաքերեալ շրջանակի՝ առանց տարրական օդոյ, և ոչ ես նոքօք հանդերձ, առանց բարեգործիդ հրամանաց ակնարկութեան»։

Եւ Ոսկեբերանն 'ի լրմանէ ամենայն կանխատեսութեանցն Քրիստոսի մակածութեամբ զհետ բերէ և զհանդերձեալ լրումն կանխատեսութեան կատարածի աշխարհիս այսպէս.

մենայն հեթանոսս, ապա եկեսցէ կատարած։ Ահաւասիկ այսուհետեւ մօտ 'ի վախճան եկաք հասաք, քանզի 'ի մեծ մասն աշխարհիս քարոզեցաւ աւետարանն. այսուհետեւ եկն եհաս կատարած, երկիցուք սիրելիք»։

Հ. Ո՞րպէս կազմէ ճարտասանն զյարացոյց.

— Յարացոյցն է մակածութիւն անկատար, զի 'ի նմանւոյ այլ ինչ նման զուշակեմք նովաւ. զոր օրինակ Պաւղոս զհալածիչսն օրհնեաց, ապա և քեզ աշակերտի նորա զնոյն պարտ է առնել։

Արդ զայս ձեռնարկութիւն այսպէս յօրինէ Լամբրոնացի.

«Պաւղոս բամբասելոցն ընդդէմ օրհնեաց, զհալածիլն յանձն առ, 'ի հայհոյելն աղաչեաց, և այնպիսի մաղթանօք զտիեզերս աշակերտեաց։ Զքեզ հետեւող նորին ո՞ ուսոյց չարին չար հատուցանել»։

Սովին ձեւով Ոսկեբերան 'ի պատժոյն՝ զոր կրեցին Հրեայք, ցուցանէ զհանդերձեալ պատուհաս հաւատացելոց.

«Զտղայաբարոյսն՝ որք ոչ այնչափ ինչ յանցեան՝ այնպիսի տանջեաց, և 'ի մեզ խնայիցէ՞. այլ չէ ինչ 'ի դէպ այս։ Թէպէտ և զնոյն մեղս զնոցայն մեղանչեմք, մեծամեծ տանջանաց քան զնոսա արժանի եմք։ Ընդէ՞ր. զի 'ի բազում շնորհս իսկ վայելեալ, յորժամ՝ աւելի ևս մեծամեծ քան զնոցայն յանցանիցեմք, որպիսի՞ ինչ

պատիժս ոչ կրիցեմք... Կամիմ և այլ ևս ինչ ըսել, մինչարի ինչ միշտս 'ի պաղեստինացւոց աշխարհէն կրեցին, սով, սուր, պատերազմունս, գերութիւն, 'ի բաբելացւոցն, յասորեստանեացն 'ի մակեդոնացւոց, և անհնարին չարիս 'ի Հադրիանոսէ և 'ի Վեսպասիանոսէ... Կամի՞ս և զայլոց ևս չարեաց նոցա ուսանել. ընդ Յովսեփեայ գիրսն անց, և անտի ուսանիս զամենայն աղէտս նոցա: Եւ արդ հաւանեցուցա՞նք արդեօք զձեզ յայսմ ամենայնէ՝ եթէ գոյ գեհեն: Զմտաւ ած, զի թէ նոքա տանջեցան, մեք ընդէ՞ր չպատժիցիմք. կամ զիա՞րդ չիցէ 'ի դէպ մեզ պատժել, որ սաստիկ քան զնոսա յանցանս յանցանեմք, եթէ յայս իսկ չէ՝ վասն զի պահեալ կան մեզ պատիժքն »:

## ԴԱՍ ԻԸ

### Համաբարդութիւն. — Երկայրաբանութիւն:

Հ. Ո՞րպէս կազմէ ճարտասանն զՀամաբարդութիւն.

— Համաբարդութիւն կոչեն տրամաբանք զշար բանից, որ այնպէս յեռեալ և կապեալ են ընդ միմեանս, զի որ 'ի վերայ յետին ենթակային ածի հետևութիւն՝ նոյն հաստատի զառաջինայն: Զոր օրինակ կամեցեալ ցուցանել զանմահութիւն հոգւոյ, ասեմք. Հոգին է պարզ, պարզն է առանց

մասանց, որ առանց մասանց է՝ անբաժա-նելի է, անբաժանելին է անապական, ա-նապականն է անմահ 'ի բնէ. ապա հոգին է անմահ 'ի բնէ:

Այդ զսոյն ձև և ճարտասանն 'ի կիր ար-կանէ առաւելագոյն համարձակութեամբ. որպէս Լամբրոնացի առ 'ի ցուցանել զի առ ստացումն և պահպանութիւն հաւա-տոց՝ կարևոր է արհամարհել զհանգիստ և զփառս մարմնոյ, ասէ.

« Զի հոգևոր խորհուրդ է և ոչ մարմնա-ւոր, զհոգւոյ կամս պարտ է սորին հաւա-տոց հաւանեցուցանել և ոչ զբարբառ բե-րանոյ. և հոգին ոչ հաւատայ առանց հո-գևորէս տեսութեան. և հոգևոր տեսու-թիւն ոչ լինի առանց իմաստութեան. և իմաստութիւն ոչ հաստատի առանց բա-նաւորապէս առաքինութեան. և բանա-ւոր առաքինութիւն ոչ ուղղի առանց մարմնոյս հանգստեան և փառաց արհա-մարհութեան »:

Գրեթէ սոյին ձևով ցուցանէ և Օսկե-բերան, զի խոնարհն պատրաստ գտանի առ ամենայն վիշտս և բամբասանս.

« Վասն այնորիկ միշտ յառաջնմէն յա-ջորդան յառաջագոյն հորդէ ճանապարհ պատուիրանացն, իբրև շար ինչ ոսկի տո-ղեալ մի քար միովէ զպատուիրանսն: Զի յորժամ խոնարհն ոք իցէ, յայտ է թէ 'ի սուգ է վասն մեղացն. իսկ որ սգաւորն իցէ և հեզ, յայտ է թէ արդար է և ողոր-

մած. իսկ որ ողորմածն է և արդար, յայտ է թէ մտախոհ և սուրբ սրտիւ է։ Իսկ այնպիսւոյն պատշաճ է, զի խաղաղարար եւս իցէ։ Իսկ որ զամենայն զուղղութիւնս յանձին ցուցանիցէ, այնպիսին և առ ճըգնութիւնս պատրաստագոյն գտանի, և ոչ ինչ խռովի՝ յորժամ լսիցէ բանս բամբասանաց, և ոչինչ զանգիտէ՝ յորժամ բիւր չարչարանս յանձին կրիցէ»։

Հ. Ո՞րպէս կազմի երկայրաբանութիւն 'ի ճարտասանից.

— Երկայրաբանութիւն կոչեն տրամաբանք զձեռնարկութիւն կազմեալ յերկուց ներհակաց առաջարկութեանց, որոց չէք միջին ինչ։ Որպիսի է հռչակաւոր երկայրաբանութիւնն Տերտուղիանոսի առ Տրայիանոս կայսր, որոյ պատուէր տուեալ էր՝ մի եւս 'ի հարցփորձ քննութեան մատուցանել զքրիստոնեայս. իսկ եթէ յայտնեսցին, պատուհասել զնոսա.

«Կամ վնասապարտք են, ասէ, քրիստոնեայքդ և կամ արդար. եթէ վնասակար, ընդէ՞ր արգելուս 'ի հարցափորձէ. իսկ եթէ արդար, հի՞մ դատապարտես»։

Այսպիսի երկայրաբանութեամբ Սարգիս վարդապետ յորդորէ 'ի համբերութիւն զբամբասեալս.

«Եթէ որ բամբասեացն զքեզ՝ սուտ ասաց որքան ինչ միանգամ ասաց. զի՞նչ առ քեզ ասացեալքն. ո՞չ ապաքէն 'ի նորա գլուխն կուտի ամբաստանութիւնն՝ որ

քամբասեալն ։ Այլա եթէ յիրաւի քամբասեցար, առ քեզ է գայթակղութիւնն՝ որով քամբասեցարն ։ Այլա յերկուսին կողմանսն չէ պարտ քեզ ընդդէմ ասել ինչ, և ոչ քամբասանացն փոխարէն քամբասել » ։

Այսպէս և Ոսկեբերան կարճէ զքամբասանս ընդդէմ մուրողաց, ցուցանելով զի թէպէտ և 'ի հայրենի ժառանգութենէ որք և թէ 'ի վաստակոց իւրոց կերակրիցին, սակայն չպարտի անգոսնել զմուրողս վասն անգործութեան, այլ ողորմել նոցա.
« Եւ երանի՜ թէ այսչափ միայն, այլ վաղվաղակի չարախօսութիւնք և քամբասանք յառաջ մատչին զմուրողէն ։ Ընդէ՞ր չգործիցես, ասեն, և ընդէ՞ր դատարկ հաց ուտիցես ։ . . Ասէ սա, դու 'ի գործո՞ց ունիս զինչ ունիսդ. ո՞չ ապաքէն զհայրենիս ժառանգութիւնն առեր ։ Իսկ եթէ զի գործեսն՝ վասն այնորիկ զայլս նախատիցես, չլսիցե՞ս Պաւղոսի, որ ասէրն, զի յետ ասելոյն՝ եթէ Որ ոչն գործիցէ, և կերիցէ մի, ասէ. Բայց դուք զբարիս գործել մի՛ ձանձրանայք » ։

## ԴԱՍ ԻԹ

Այլք ազգի չարագործք. — Քարոզ. — Պատմագրութիւն. — Թղթագրութիւն ։

Հ. Համառօտեսջիր ինձ որ ինչ ազգի

ազգի շարագրածաց սեփական կանոնքն իցեն, և նախ զկարևորս բեմախօսութեան կամ քարոզի.

— Քարոզ է բան յորդորական յուղղութիւն բարուց. և զի առանց հաւանեցուցանելոյ զմիտս չէ մարթ յորդորել զոք, ապա ընդ միտսն նախ պարտ է մաքառել:

Պարտ է հոգևոր բեմբասացութեան գոլ հանդարտ և եռանդուն. հանդարտ, զի մեծութիւն իրացն պահանջէ զայն. իսկ եռանդուն, զի ճառէ զկարևորաց առ բարութիւն մարդկան: Վասն որոյ պարտ է բեմբասացին յանձին բերել զօծութիւնն զայն խորագգած ճշմարտութեանցն՝ զորոց ճառէ, և զիղձս քաջ տպաւորելոյ զայնոսիկ 'ի սիրտս ունկնդրաց:

Պարտ է նմա զօգտակարաց հոգւոյ և զպատշաճից ունկնդրացն ճառել. մի զուսումնական իրաց, մի զիմաստասիրական մանրախոյզ քննութեանց, մի զտեսական խնդրոց աստուածաբանութեան, և մի ընդդէմ անհաւատից և անկրօնից յարդարել զճառսն. զի քարոզի բանին առ հաւատացեալս պարտ է ճառել, որոց աներկբայելի իցեն ճշմարտութիւնք կրօնից, և միայն պէտք իցեն խելամտագոյնս հաւանեցուցանել զնոսա և յորդորել 'ի կատարումն այնոցիկ:

Կարևորագոյն կանոնք հոգևոր բեմբասացութեան են.

Ա. Պահել զմիութիւն. այսինքն զի բո-

վանդակ մասունք նորա 'ի մի իւիք ունիցին զդիտաւորութիւն:

Բ. Մասնաւորել զնիւթն. այսինքն զի թէպէտ և բարւոք է և հասարակաբար ճառել զհնազանդութենէ կամ զայլոց առաքինութեանց, բայց լաւագոյն ևս է ամփոփել զնոյնս, և մասնաւորաբար ճառել զհնազանդութենէ առ ծնողս, և այլն:

Գ. Ոչ է պարտ ջանալ 'ի սպառել զամենայն, որ ինչ մարթ իցէ ասել զառաջարկեալ բնաբանէն. այլ յամենայնէ անտի զկարևորս և զզօրաւոր բանս, զի մի յափրացեալ տաղտկասցին ունկնդիրք:

Դ. Պարտ է մանաւանդ 'ի գործնականս իջանել, և ճառել զիրաց' որ հանապազօր գործին առ մարդիկ: Զի ոչ այնպէս օգուտ է տեսականաբար ճառել զառաքինութեանց և զախտից, որպէս նկարագրել զայնս 'ի մարդիկ. որով իւրաքանչիւր ոք հանդոյն նկարագրեալ պատկերին տեսանելով զանձն, տպաւորագոյն ևս կրէ ազդումն 'ի բանիցն: Սմին իրի օգնեն յոյժ և պատմական օրինակք 'ի սուրբ գրոց:

Ե. Մի ձևս նորահնարս կամ քերթողական տարազս բանից կամ զոճ իմաստասիրական և զտրամաբանական 'ի կիր առնուլ. զի պարտ է ոճոյ հոգևոր բեմասացութեան լինել պարզ և ինքնազարդ, պատշաճեալ առ ամենայն ունկնդիրս, և դիւրիմաց ամենեցուն: Եւ ուր ուրեք առ հանդերձեան փոխաբերութիւնք և այլ ևս

ձևք ճարտասանականք 'ի ճահ գայցեն, պարտ է առանց արուեստականութեան 'ի կիր առնուլ զայնս. զի նողկալի է 'ի քա-րոզ բանին իղձ հաճոյ լինելոյ ունկնդրաց, և ցոյց պերճութեան բանից։

Ջ. Զբանս սուրբ գրոց մի բռնազբօսել, և մի զանյայտս և զդժուարիմացս ածել 'ի վկայութիւն. և մի դարձեալ 'ի յայտնիս և յանժխտելի իրս յաճախել վկայութիւնս 'ի սուրբ գրոց։

Հ. Զի՞նչ ինչ կարևոր է պատմագրի.

— Պատմութիւն է ճշմարտապատում յիշատակութիւն անցից անցելոց առ 'ի հրահանգ և 'ի հմտութիւն մարդկան։

Ա. Պարտ է պատմագրի չունել կողմնա-ւորութիւն։

Բ. Ոչ զամենայն դէպս պարտ է նմա անխտիր տալ 'ի գիր. այլ զերևելիս յայն-ցանէ զցանկալիս 'ի գիտութիւն և զօգտա-կարս առ 'ի խրատ. և զայնոսիկ հանդերձ պատճառօքն և արդասեօք ստուգապա-տում առնել։

Գ. Մի՛ հանդէս առնել հանճարոյ՝ սնո-տի զարդուք և կամ աւելորդ խելամտու-թեամբք. այլ զկարևոր խելամտութիւնս իսկ խառն ընդ պատմութեանն անզգալի առնել, և մի՛ ուրոյն 'ի գլուխս կարգել զայնս։

Դ. Պահել կարգ և միութիւն 'ի պատ-մութեանն, և մի՛ ստէպ դրուագօք բանի հատուկտիր առնել զայն։

Ե. Պարզ և բացայայտ ունել ոճ, առանց գծծութեանբանից. և քաջ նկարագրութեամբ իբրև 'ի պատկերի ցուցանել զբարս ազգաց և զիւրաքանչիւր ուրուք, զախտս նոցա և զառաքինութիւնս, զձևս քաղաքաց և զտեղեաց, զօրէնս, զկրօնս, զսովորութիւնս, այլովքն հանդերձ:

Զ. Մի՛ կարի երկայնաբան գոլ և մի՛ յոյժ կարճառօտ, այլ 'ի միջասահմանին կալ՝ յերկոցունցն ևս խոյս տուեալ՝ 'ի ծայրայեղ խոտորմանց, որ տաղտկալի կամ անալի առնեն զպատմութիւնն:

Վարդանանցն պատմութիւն ուսուցէ քեզ զայս ամենայն:

Է. Զի՞նչ կարևոր է թղթագրութեան.

— Այն ամենայն որ 'ի խօսս ընտանեկանս է կարևոր. այսինքն է պարզութիւն, բնականութիւն առանց ամենայն արուեստակութեան, եռանդն, և համառօտութիւն հանդերձ ընտիր ոճով և կիրթ ախորժակօք:

Պարտ է ամենայն ուշիւ միտ դնել 'ի գրել զթուղթս, և թագուցանել ամենևին զմտադրութիւնն:

Պարտ է ըստ առաջարկութեան իրացն փոփոխել 'ի ոճս զտիպս կերպարանաց բանից, առաւել քան յայլ ամենայն ազգս շարագրածոց: Առ այս վարժապետ վեհագոյն լիցին Շնորհալւոյ թուղթքն:

# ԴԱՍ Լ

### Սկիզբն և զարգացումն ճարտասանութեան։

Հ. Ի լրումն ճարտասանական հմտութեանց ցանկալի է ինձ գիտել և զսկիզբն և զզարգացումն այնոցիկ.

— Սկիզբն ճարտասանական արուեստին եղև տիրապէս յԵլլադա առ աթենացիս, որոց և կարգ. տեսչութեանն օժանդակեաց 'ի զարգացումն արուեստին. զի անդ ամենայն ինչ կարեւոր սահմանէր 'ի ժողովս. և ճարտարախօսք՝ որոց զօրաւորագոյնք էին բանք՝ նոքա իշխէին 'ի ժողովս։

Պիսիստրատ ժամանակակից Սողոնի, 528 ամօք նախ քան զԹուականութիւն Փրկչին, առաջին ըստ Պլուտարքեայ ճարտարախօս անուանի եկաց առ Յոյնս. որ և ճարտարխօսութեամբն զօրացեալ՝ բռնակալեաց յԱթէնս։

Պերիկղէս, 450 ամօք նախ քան զԹուականութիւն Փրկչին, 'ի կատարումն էած զարուեստն յԱթէնս. որ և վասն հըզօր ճարտարխօսութեանն կոչեցաւ Ողիմպեան, իբր որոտող հանգոյն Արամազդայ։ Զսմանէ ասեն յօրինեալ նախ գրով զատենախօսութիւն։

Զհետ նորա յաւուրս պեղոպոնեսական մարտին յարեան Կղէոն, Ալկիբիադ, Կրի-

տիաս և Թերամենէս ։ Ի նմին ժամանակի եկաց և Թուկիդիդէս պատմագիր ։

Յետ ժամանակացն Պերիկղեայ յարեան իմաստակք ոմանք հռետորք անուանեալք, որ աղաւաղեցին զարուեստն ճարտարակութեամբ ճառից ․ 'ի սոցա անուանիք էին Գորգիաս, Լէոնտինոս, Պրոտագորաս, Պրոդիկոս և Թրասիմոս ։

Սոյն ժամանակ եկաց Սոկրատ, և նուրբ և պարզ ճարտասանութեամբն տապալեաց և նշաւակեաց զիմաստակութիւն նոցա, և դարձոյց զարուեստն 'ի սկզբնատիպն գեղեցկութիւն ։

Զհետ Սոկրատայ կացին Լիւսիաս, Իսոկրատ և Իսէոս ։ Բայց Իսէոս առաւել Դեմոսթենեաւ աշակերտաւն իւրով եղև անուանի ։

Դեմոսթենէս, քաջն և վեհագոյն 'ի հելլէն ճարտարախօսս, եկաց 340 ամօք նախ քան զթուականութիւն Փրկչին ։ Ճիգն նորա 'ի վարժս ճարտարխօսութեան, չվհատել ընդ ձախող ելս նախընծայ ճառիցն, երկայնմտութիւն 'ի յաղթել ամենայն խափանաց՝ զորս բնութիւնն ընդդէմ եդեալ էր նմա, սորամուտ բնակութիւն նորա ընդ երկրաւ՝ առ 'ի պարապել անզբաղ յուսումն արուեստին, արտասանութիւնք նորա բարձրագոչ 'ի ծովեզերս ընդդէմ մրրկալից ալեաց՝ առ 'ի սովորել աղմկի բազմամբոխ ժողովրդեան, խիճ 'ի բերանի ունել՝ առ ուղղելոյ զթլուատ լեզուին թե-

րութիւն, 'սուսեր 'ի վերայ ուսոցն 'ի կախ ունել՝ առ 'ի բաց բառնալոյ զսովորութիւն ընդոստ ընդոստ խաղալոյ թիկանցն յարտասանելն, այս ամենայն քաջալերեն ըզհամբակս հռետորականին յաջողելոյ 'ի վարժս օրինակաւ այնորիկ, որ անյարմարագոյն գոլով արուեստին՝ կրթութեամբ և ջանիւ վեհագոյն 'ի ճարտարախօսս գըտաւ:

Դեմոսթենի ոսոխ նախանձընդդէմ եկաց Եսքինէս, ճարտարախօս քաջ այլ ոչ եթէ հաւասար նմին: Յետ սոցա ոչ ոք ընդամս յիսուն անուանի եկաց մինչև ցԴեմետր փաղերացի. այլ և սորա ոճ պերճ և բազմազարդ՝ թափուր էր 'ի զօրութենէ:

Իսկ յետ Դեմետրի և ոչ յիշատակաց ոք արժանի եկաց, մինչև հռոմայեցւոց նուաճեալ զՅոյնս, ընդ գեղարուեստս ամենայն փոխեցին և զճարտարխօսութիւն առ իւրեանս:

Ի նոցանէ ճարտարախօսք երևելիք կացին Կրասոս և Անտոնիոս, և զհետ նոցա Կիկերոն, և նախանձորդ նորա Որտենսիոս: Բայց վեհագոյն յամենեսին 'ի նոսա էր Կիկերոն, կացեալ իբր 80 ամօք նախ քան զթուականութիւն Փրկչին. և այնպէս գերազանցեալ յարուեստին մինչև 'ի զուգակշիռ կալ ընդ Դեմոսթենեայ:

Յետ Կիկերոնի 'ի բառնալ ազատութեան բարձաւ և պերճախօսութիւն 'ի հռոմայեցւոց. քանզի պակասեցին պէտք ա-

տենախօսութեանց, և ոչ ևս էր յորդոր զարգացման ճարտարախօսաց։ Եւ՚ի սպառ կործանեցաւ ՚ի յաճախել դպրոցաց համարտակացն. որ զանգոյից իրաց ճառս արկեալ՝ պաճուճաբանէին։ Այս ոճ՚ի գիրս Սենեկայ սկսաւ նախ ՚ի վեր երևել, և՚ի ներբողեանն Պլինիոսի ՚ի Տրայիանոս. յորում հռոմէականն ճարտարխօսութիւն զօրհասականն իւր եցոյց ճիգն։ Իսկ ՚ի տարածանել քրիստոսական կրօնից, յարեան վարդապետք եկեղեցւոյ առ լատինացիս՝ Մինուտիոս Փելիքս, Լակտանտիոս, սուրբ Հերոնիմոս, Տերտուղիանոս, սուրբ Ամբրոսիոս, սուրբ Օգոստինոս, սուրբ Գրիգոր մեծն և սուրբն Լեոն։ Իսկ առ Յոյնս՝ սուրբքն Բարսեղ, Գրիգոր Նազիանզացի կամ Աստուածաբանն, Գրիգոր Նիւսացի, և վեհագոյն ամենեցուն՝ Ոսկեբերան, պարծանք եկեղեցւոյ, որ սրբազան ճարտարխօսութեամբ ընդ հեթանոսականին ՚ի կռիւ եկաց։

Ընդ սոսա՚ի դէպ է յիշատակել և զմերս Պրովերեսիոս, զորմէ Եւնաբի ասէ դասատու ճարտասանութեան՚ի չորրորդ դարու կացեալ յԱթէնս, և վարժապետ սրբոյն Գրիգորի Աստուածաբանի. և այնպէս հռչակաւոր լեալ, մինչև կանգնել նմա անդրի՚ի Հռոմ, և Թագաւոր ճարտարախօսաց զնա անուանել։

Եւ ապա ընդ դարս տասն ՚ի սպառ անհետացաւ ճարտարխօսութիւն առ Յոյնս

և առ Լատինս․ մինչ 'ի Հայաստան մերքն յաջորդէին զհետ աշակերտացն Սահակայ և Մեսրոպայ Մանդակունին, Յոհան իմաստասէր, Շնորհալին և Լամբրոնացի, այլովքն հանդերձ։ Որոց գրուածք ընդ հրաշազան թարգմանութիւնս շարագրածոց սրբոց հարցն Յունաց կան մեզ առաջի օրինակք նախանձելիք 'ի նմանութիւն, և վարժապետք վեհագոյն ճարտարխօսութեան։

# ՑԱՆԿ

ԱՌՁԵՌՆ

# ԴԻՑԱԲԱՆՈՒԹԻՒՆ

ԿԱՄ

## ԱՌԱՍՊԵԼԱԽԱՌՆ ՎԷՊՔ

ԶԴԻՑ ԵՒ ԶԴԻՒՑԱԶԱՆՑ

ՀԱՄԱՌՕՏԵԱԼ

Ի Հ. ԵԴՈՒԱՐԴԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԷ

ՀԻՒՐՄԻՒԶԵԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ




Ի ՎԷՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲՆ ՂԱԶԱՐ

1867

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Քանզի տառապելք ոչ այլ ինչ են՝ բայց պատմութիւն հեթանոսական մոլորութեանցն · հըմտութիւն այնոցիկ 'ի վերայ այլոց օգտութեանց այնու մանաւանդ կարևոր է հաւատացելոցս, զի յորդորիմք նովաւ գոհանալ զտեառնէ, որ 'ի խաւարէ անտի ած զմեզ յիւր սքանչելի լոյսն ։ Զի 'ի տեսանել անդ եթէ որպէս ազգք՝ որոց հռչակ համբաւոյ իմաստութեանն և գիտութեանց ելից զտիեզերս, հանդերձ ամենայն իմաստութեամբն իւրեանց և գիտութեամբք կային կաշկանդեալք յանտեղի և 'ի մոլեկան մոլորութիւնսն, ես քան զևս խելամուտ լինիցիմք մեծութեան շնորհացն Աստուծոյ՝ որ առ մեզ լեալ ։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և զսրբոյ Լուսաւորչին մերոյ՝ յոյր ձեռն ընկալաք զշնորհսն, և զսրբոց զղևոնդեանց և զվարդանանցն քաջաց՝ որք արեամբն իւրեանց անկորուստ աւանդեցին՝ մեզ զայն, զնոցա զերախտիսն քաջ ևս սովաւ 'ի միտ առեալ՝ զարժանին նոցա մատուսցուք շնորհակալութիւն ։*

Այսու օրինակաւ, որ յետնորդն համարի և մնայն իսկ 'ի գիտութիւնս, 'ի կարգս կարևոր հմտութեանց իրաւապէս կայցէ զանգի. և մեք երկասիրութեամբս այսուիկ ոչ զանձնապատենս ինչ արօրագիր արարեալ դնցուք:

## ԱՌՋԵՌՆ

# ԴԻՑԱԲԱՆՈՒԹԻՒՆ.



## ԳԼՈՒԽ Ա

*Յաղագս առասպելաց առ հասարակ.*

Հ. Զի՞նչ են առասպելք.

Պ. Կեղծիք կամ յօդուածոյ վէպք դիւից, որ և դիցաբանութիւն կոչի։

Հ. Ուստի՞ սկիզբն առին առասպելք.

Պ. Յանցից երևելեաց՝ որ անցին յետ ջրհեղեղին յառաջին դարս, 'ի ցրուել որդւոց Նոյի յայլ և այլ կողմանս երկրի։ Զի թէպէտ և պատմութիւնք անցից այսոցիկ խառնեալ իցեն բազմապատիկ առասպելօք և հատուկտիրք և այլակերպեալք, այլ զհետս ճշմարտութեանն բերեն յինքեանս. որպէս նախնի հարք եկեղեցւոյ Որոգինէս, Լակտանտիոս, Առնոբիոս և սուրբն Օգոստինոս ցուցին

ընդդէմ դիցապաշտից. զի բազմագոյնք
'ի դից նոցա էին մարդիկ արութեամբ
կամ չարութեամբ անուանորք լեալ.
Վասն որոյ դեւկալիոնեան ջրհեղեղն ոչ
այլ ինչ էր, բայց նոյեանն այլակեր-
պեալ. և պատերազմն հսկայից իջելոց
յերկնից ոչ այլ ինչ, բայց հետք յան-
դգնութեան աշտարակաշինողացն. ըստ
սմին օրինակի և այլքն.

Հ. Եւ քանզի առասպելաց և դիցա-
պաշտութեան այդքան կարևոր կցորդու-
թիւն է ընդ միմեանս, ցոյց ինձ ուստի
սկիզբն էառ և զարգացումն դիցապաշ-
տութեան.

Պ. Սկզբնապատճառք դիցապաշտու-
թեան եղեն տգիտութիւն, ապականու-
թիւն բնութեան և սնափառութիւն.

Հ. Մեկնեա ինձ որպէս դիցապաշտու-
թիւն սկիզբն էառ 'ի տգիտութենէ.

Պ. Քանզի 'ի մոռանալ մարդկան զԱս-
տուած արարիչ իւրեանց, փարձուցին
զպաշտօն նորա յարարածս՝ յարեգակն,
'ի լուսին, յաստեղս, և 'ի նմանիս իւ-
րեանց'ի մարդիկ. որպէս իմաստունն ասէ.
« Զի ընդունայն էին ամենայն մարդիկ
» բնութեամբ՝ յորս էր աստուածանգիտու-
» թիւն, և յերևելի բարութեանցն ոչ կա-
« րացին գիտել զայն որ էրն, այլ կամ
» զհուր կամ զհողմ կամ զլուսաւորս
» երկնաւորս աստուածս համարեցան »:
Եւ որպէս ոմն յորդի իմաստնոց ասէ.

« Այնպէս մնացական մարդիկ զաստուած
« անեղծից իւրեանց, զի կամեցան անեղ-
ծականն աստուածս իւրեանց »։

Հ. Եւ աստուածութիւն բարուց որպէս պատճառք եղև կռապաշտութեան.

Պ. Ոչ կարկլով աստուածներոյն բարոյք համարձակ զախտս իւրեանց պաշտել, հնարեցան. օրինակաւ դիցն բարեբել զախտսն. Նմին իրի եթէ 'ի մեծուհեաց ոք յանդգնէր երկուանս ըմբռնէր, ան 'ի ծածկելոյ զամօթն' տարփաւոր իւր զոք 'ի դիցն հռչակէր. Այսպէս Գանայէ պատճառեցաւ հրապուրեալ 'ի Դիոսէ, և այսպէս Դիոս մեղնեալ', Արէս շնացող, Հերմէս գող, և այլք 'ի դից այլոց անօրէնութեանց ծանուցան գործունեայք.

Հ. Եւ որպէս սնափառութիւն պատճառք եղև դիցապաշտութեան.

Պ. Զի որ երևելի ոք էր, արութեամբք կամ բարերար ազգի մարդկան, կամ արուեստից ինչ գտող, 'ի կարգս դիցն դասէր. որպէս Ասկղեպիոս վասն ճարտար բժշկութեանն որդի Ապողոնի համարեցաւ. և քաջք 'ի պատերազմողաց որդիք Արէսի համարէին. և այսպէս տակաւ դիցն և դիւցազանց յաճախէր բազմութիւն.

Հ. Ո՞ւր սկիզբն կալաւ կռապաշտութիւն.

Պ. Եգիպտոս և' 'ի Փիւնիկէ, ուր որդիքն Քամայ Մեսրայիմ և Քանան ակ-

րեալ, կոչեցին զաշխարհն յանուն իւ-րեանց : Եւ յայտ է 'ի սուրբ գրոց, զի յԵ-գիպտոս յաճախէին մոգք և իղձք և երա-զահանք՝ պաշտօնեայք կռապաշտութեան. և Մովսէսի իսկ զխաւարութիւնն և զօրէնս բազմապատտրիկս ոչ առ այլ ինչ երևի սահ-մանեալ Հրէից, բայց առ 'ի զգուշացու-ցանելոյ զնոսա 'ի սնոտի պաշտամանց եգիպտացւոցն :

Հ. Ասա զիմաստ համարի Նինոս սկիզ-բըն կռապաշտութեան.

Պ. Նինոս զաստուածական պաշտօնն որ վաղ ուրեմն և յառաջ քան զնա ըն-ծայէր զօրութեանց երկնից և անասնոց, եա ընծայել զայն և մարդոյ, աստուա-ծացուցանելով զհայր իւր զԲէլ, կանգ-նեալ նմա մեհեան յամի արարչութեան 1945 :

Հ. Եւ որպէս տարածեցաւ կռապաշ-տութիւն ընդ աշխարհ.

Պ. Յեգիպտոսէ և 'ի Փիւնիկեայ անց յարևելս սերեալ յորդիս Սեմայ, և արա յարևմուտս յորդիս Յաբեթի. Եղլադա, ուր զաղթականք փիւնիկեցիք ածին զայն, պայծառացոյց զայն և մատոյց հռոմայե-ցւոց. իսկ սոքա կանգնեցին զամենադիցն մեհեան, և ժողովեցին անդր զամենայն ազգաց և զաշխարհաց զդիս ; և անտի պաշտօն նոցա ընդ հռոմէական իշխա-նութեանն եհաս մինչև 'ի ծագս երկրի : Եւ այնչափ յաճախեցին առ նոսա զդիս,

մինչև Վարրոնի մեծի՝ հեթանոսաց աս-տուածաբանին՝ հասուցանել զթիւ նո-ցա մինչև յերեքհազար։ Քանզի ամե-նայն կողմանց աշխարհի և ամենայն այլ և այլ կրից մարդկան և պիտոյից կենացս դիս խնամակալս կանգնեցին. մինչև Ցոր-նայի տալ հեծել Ատլասայ ընդ բեռամբ երկնից, վասն բնակելոց անդ ամբոխի դիցն։

Հ. Եւ ո՞ յայսքան բազմութենէ դից համարէր հզօրագոյն առ հեթանոսս.

Պ. Բախտն վեհագոյն դից ամենեցուն, զոր համարէին տնօրէն ամենայնի ըստ անհրաժեշտ իմն հարկի, և Դիոսի՝ իսկ հարկ էր տեղի տալ հրամանաց նորա։ Եւ կոչէին զնա ճակատագիր, և էր նո-րա սահմանեալ պաշտօն, և նկարէր 'ի ձեռին նորա սափոր՝ բերելով զբախտս երկրածնաց, և մատեան դարձեալ 'ի ձե-ռին նորա, յորում էին գրեալ հանդեր-ձեալքն։ Բայց դրօշեալ ոչ ուրեք երբէք կանգնեցաւ նմա։

Հ. Եւ զի՞նչ շահ յառասպելացդ հմտու-թենէ.

Պ. Մեծամեծք և բազմապատիկ։ Նախ զի սոքօք 'ի միտ առնումք յոր խաւար ան-կեալ դնէին ազգք, և յորպիսի անդունդս մոլորութեան աստուածանգիտութեանն գահավիժեալք։ Երկրորդ՝ զի առանց այսր հմտութեան անհնար է իմանալ զբանս նախնի մատենագրաց՝ յունաց և հռոմա-

յեցուց ։ Երրորդ՝ զի և ոչ զհանճարեղ զիւրս նախնի անզբիագործացն և նկարչաց մարթ է 'ի միտ առնուլ առ 'ի յօգուտ, առանց այսր հմտութեան ։ Եւ չորրորդ՝ զի ճշմարտութիւնք կարևորք 'ի նոսա ծածկեալ կան ։ Որպէս Տանտալեայ և Հարպեայց իրքն զշարութիւն ագահութեան յայտ առնեն. Նարկիսեայն զյիմար անափառութիւն անձնասիրացն. անգեղն որ զլեարդ Պրոմեթեայ կեղեքէր, զասպնայս խղճի մտաց անօրինացն. Մեդուսայն, որոյ տեսիլ ևեթ վիմացուցանէր զամենայն, զկիրս ախտից՝ որ անզգայ զախտաւորն առնեն ։ Այն զի և բազմագոյնք յառասպելացս, որպէս յառաջագոյն ասացաք, ոչ միայն օրինակաւ բերեն յինքեանս զճշմարտութիւն, այլ և աւանդութիւնք կարևոր անցից 'ի նոսա ծածկեալ կան. որպէս Փետոնի իրքն՝ ոչ միայն զյօռութիւն փառամոլութեան ցուցանեն, այլ և զկործեալ փառամոլութիւնն և զպատուհաս նորա. և իրք Նիոբի զԱմփիոանի, են ։

Հ. Իմաստնոցն հեթանոսաց զի՞նչ կարծիք էին զդիցն.

Պ. Բազմագոյնք 'ի նոցանէ եղջերուաքաղս իմն համարէին զդիս, և անուտի զպաշտամունս նոցա ։ Սակրատ վասն համարձակ զդիսն արհամարհելոյ 'ի մահ մատնեցաւ. Եպիկերան յայտնի խոկ ձայնք առնէ զնոցաս. և որ յաղագս բնութեան

դիցն գիրք նորա վասն այնորիկ իսկ դատապարտեցան. Ղուկիանոս և Սենեկա ծիծաղին զաստուածովքն. իսկ Պղատոն զմիոյն Աստուծոյ ճառս այնպիսի մեծապա-յեղաշու՝ յօրինէ, զի ամանք 'ի սրբոց հարց համարին 'ի Մովսիսի գրոցն առեալ նորա զբանսն. և Կալլիմաքոս և Ցորնալ և այլք արհամարհեն զգրահեղեղ պաշտամունսն: Այլ սոքա այսպիսիք կացին և մնացին 'ի սուտ կրօնսն, կէսք առ 'ի դիւրութիւն ապականեալ բնութեանն, և կէսք առ ահի կորուսանելոյ զկեանսն.

Հ. Զի՞նչ դասակարգութիւն էր 'ի դիսն հեթանոսաց.

Պ. Քառեակ դասակարգութիւնս համարէին հեթանոսք՝ 'ի դիսն. այս ինքն են. Նախ դիք վեհից ազգաց՝ որ առ ամենայն ազինս պաշտէին, որպէս Դիոս, Հերայ, Պիսիդոն, Պղուտոն, և այլք: Երկրորդ՝ դիք սակաւաւոր ազգաց՝ որոց ոչ էր յերկիրս բնակութիւն նոցա, այլ համարէին երկրաբնակ դիք. որպէս Պան, Պոմոնա, Փլորա, և այլն: Երրորդ՝ կիսաստուածք, որք յումեքէ 'ի դիցն անմահից և 'ի կնոջէ մահկանացուէ, կամ 'ի հօրէ մահկանացուէ և 'ի մօրէ աստուածուհւոյ համարէին ծնեալ. որպէս Հերակղէսն և Ասկղեպիոս և Կաստովր և Պողիտևկիս, և այլն: Ընդ սոսա էին 'ի համարի և դիւցազունքն երկրածին անուանեալ դիք, որք արութեամբքն իւրեանց և վաստա-

կզք 'ի կարգս դիցն անմահից դասէին ։ Իսկ չորրորդ կարգ դից էին առաքինութիւնք , որպէս հաւատարմութիւն , միաբանութիւն , աղքատութիւն , ևն ։

Առաջինքն, այսինքն են դիք վեհագոյնք էին քսան . յերկոտասանիցն 'ի նոցանէ գումարէր գերագոյն կաճառ դիցն, որոյ կաճառորդք էին Դիոս , Հերա , Պիսիդոն , Դեմետրէ , Հերմէս , Աթենաս , Եստա, Ապողոն, Արտեմիս, Արէս, Աստղիկ և Եփեստոս . և կոչէին սոքա դիք համաձայնք ։ Իսկ այլքն ութեքին կոչէին տարաձայն դիք , այսինքն են Կռոնոս , Դև , Արեգակն , Դժոխք . Դիոնիս ,' Երկիր , և Լուսին . որոց ոչ էր մուտ 'ի կաճառ անդր ։

# ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳ

## ԶՎԵՀԻՑ ԱՍՏՈՒԱԾՈՑ

---

## ԳԼՈՒԽ Բ

### Կռոնոս, Տիտան, Յանոս, Կիւբելէ, Վեստա, Դեմետրէ.

Հ. Ո՞վ էր Կռոնոս.

Պ. Կռոնոս ըստ Յունաց, Սատուրնոս ըստ Լատինացւոց, և ըստ Պարսից Զրուան, էր որդի Ուրանոսի և Վեստայ այսինքն է երկնի և երկրի, երիցագունից ժամանակաւ քան զամենայն դիս. և Թարգմանի ժամանակ։ Սա զանդրանկութիւն եղբօրն իւրոյ Տիտանայ ըստ ըղձից մօրն կալաւ յանձն առնուլ չապրեցուցանել յորդւոց իւրոց զաւակ արու. վասն որոյ ընդ ծնանել նոցա կլանէր զնոսա։ Բայց Կիւբելէ կին նորա 'ի ծնանելն զԴիոս և զՀերա, վէմ՝ առաջի առն իւրոյ եդ և փոխանակ մանկանցն ծնելոց՝ 'ի կլանել, և կեցոյց զնոսա։

Հ. Որպիսի՞ ինչ առասպելք յօդին զԿռոնոսայ.

Պ. Տիտանայ տեսանելով զորդիս իւր

անժառանգեալ 'ի թագաւորութենէ, եւ պատերազմ ընդ եղբօրն, և արգել փակեաց զնա ընդ նիւրեալս 'ի բանտ, մինչև Գիտոսի յարբունս հասեալ ազատեաց զնոսա 'ի բանտէն: Բայց երկուցեալ զի մի գուցէ զեղծիցի հայր իւր ազատութեամբն, և ընկենուցու զինքն յաթոռոյ, հալածեաց զնա յերկնից, և նա ամրացեալ 'ի Լատիոն, անդ թագաւորեաց: Եւ ժամանակ թագաւորութեան նորա անդ կոչի Ոսկեդինիկ դար, քանի մարդիկ ժամանակին կէին յանմեղութեան, և երկիր առանց մշակութեան բերէր զամենայն պիտոյս կենաց մարդկան. Իսկ դարք որ զհետ այնորիկ յաջորդեցին՝ կոչին արծաթի և պղնձի և երկաթի, մինչ 'ի վատթարս նկրտելով մարդկան:

Հ. Ո՞ 'ի Լատիոն յառաջ քան զԿատնոս թագաւորէր.

Պ. Յանոս, որ և հիւրընկալեաց ըզԿատնոս: Եւ սա եւս նմա փոխարէն զերաշխարհիկ իմաստութիւն գիտել զհանդերձեալս և անմոռաց 'ի մտի ունել զանցեալս: Վասն որոյ երկդիմի նկարագրի Յանոս. և զաւազան 'ի միում ձեռին, զի խնամակալ է ճանապարհաց. և բանալի 'ի միւսում, զի նա հնարեցաւ ըզդրունս: Նուման Պոմպիլիոս կառոյց նմա մեհեան պղնձի, որոյ դրունք 'ի ժամանակս պատերազմի բաց կային, և 'ի խաղաղութեան փակ: Յանուէ Յանուար կոչեցաւ

առաջին ամիս տարւոյ Յանուար կամ Յունուար՝ իբր դուռն տարւոյ. և 'ի մեհենին նորա երկոտասան բագինք էին, ըստ երկոտասան ամսոց տարւոյն:

Հ. Ո՞րպէս նկարագրի Կիւբեղէ.

Պ. Կիւբեղէ կամ Ռէա կին Կռոնոսի, և մայր բազմագունից 'ի դիցն, վասն որոյ և ամենամայր անուանեալ, նկարագրի բազմեալ 'ի կառս լծեալս յառիւծուց, և պսակ աշտանակաձև 'ի գլուխ նորա:

Հ. Եւ որպէս նկարագրի Եստա.

Պ. Եստա մայր Կռոնոսի, անուանեալն Պրիսկա այսինքն երէց՝ առ 'ի զանազանելոյ 'ի կրտսերոյն որ էր դուստր Կռոնոսի, նկարագրի սկուտեղ կամ Թըմբուկ 'ի ձեռին:

Հ. Ո՞յք իցեն Եստայ կուսանքն, և յումմէ՞ ունիցին զկոչումն.

Պ. Նումայի Պոմպիլեայ բագին կանգնեալ դստերն Կռոնոսի Եստայ, պաշտօնեայս բագնից կացոյց եօթն կուսանս պահել անշէջ զհուրն՝ որ 'ի բագնին վառէր հանապազ, և համարէր յարեգական լուցեալ: Թշուառութեան մեծի համարէր զուժկան շիջումն հրոյն այնորիկ, և դադարէին 'ի շիջանել հրոյն ամենայն հրապարակական գործք՝ մինչև քաւէին յանցանքն: Որ ոք 'ի կուսանաց անտի դրժէր ուխտի կուսութեանն, կենդանւոյն թաղէր: Զամս տասն վարժէին նոքա 'ի գործըս պաշտամանն, և նոյնչափ ամս կային

՚ի պաշտամանն, և այլ ևս ամս տասն վարժապետք նորընծայելոցն կացեալ, ապա ապաք լինէին ՚ի քրմութենէն։

Հ. Որպիսի՞ ինչ արուեստս ուսոյց Դեմետրէ մարդկան.

Պ. Դեմետրէ դուստր Կռոնոսի և Կիւբելեայ ուսոյց մարդկան երկրագործութիւն, նախ առաջին վարժապետելով յԵղևսիս. վասն որոյ տօնք նորա անուն սկզբըն կալեալ՝ Եղևսինեանք կոչին։ Կոչին և օրինաբերք, զի նա զմարդիկ յօրէնս և ՚ի քաղաքականութիւն՝ ՚ի վայրենութենէ էած, և զցորեան ընդ վայրի կաղնոյ ետ նոցա ՚ի կերակուր։

Հ. Ո՞րպէս նկարագրի Դեմետրէ.

Պ. Մանգաղ ՚ի միում ձեռին, և հասկք ցորենոյ ՚ի միւսում, և պսակ դարձեալ ՚ի հասկաց ՚ի գլուխ նորա։ Դարձեալ և յարձանս ուրեք նկարագրի նա բազմեալ ՚ի կառս լծեալ յօձից, բերելով ջահս ՚ի ձեռին։

## ԳԼՈՒԽ Գ

*Դիոս, Ամաղթեա, Տիտանեանք, Պրոմեթեոս, Հերա, Ցով և Արգոս, Իդիս.*

Հ. Ո՞ էր Դիոս.

Պ. Դիոս որ և Զեւս ըստ հելլենացւոց, Արամազդ ըստ մեզ, Ներբոմբ ըստ քուշացւոց, Բէլ ըստ բաբելացւոց, Բահաղ ըստ փղշտացւոց, Որմիզդ ըստ Պարսկաց, և Ցովիս ըստ լատինացւոց, համարէր վեհ քան զամենայն դիս և հայր անմահից և մահկանացուաց։ Էր նա որդի Կռոնոսի և Կիւբբեղեայ. և հալածեալ յերկնից զհայր իւր, տիրեաց ընդ տիեզերս ամենայն, բաժանեալ զայն ընդ երկուս եղբարս իւր, Պղուտոնի տալով զծով, և Պղուտոնի զսանդարամետս, և զերկինս կալեալ 'ի բնակութիւն իւր։

Հ. Բաժանումն տիեզերաց ընդ երեսին որդիս Կռոնոսի յի՞նչ ունի ակնարկութիւն.

Պ. Ի բաժանումն երկրի ընդ երեսին որդիս Նոյի։ Քանզի Քամ կալաւ զԱփրիկէ. և ահա էր յԵգիպտոս Դիոսուպօլիս քաղաք նուիրեալ Դիոսի, և զերահռչակեալն յԱփրիկէ Ամմոնեանն Դիոս զանուանն իսկ բերէ զՔամայ, զոր այլք

յաղգաց հնչեն համ։ Յաբեթ կալաւ զկղզիս և զծովեզերեայս և զԱրշիպեղագոս. և զինչ աւելի քան զայս նմանութիւն ընդ ծովակալին Պիսիդեայ։ Իսկ Սեմայ անկաւ բաժին Ասիա, ուր քաղաքք բազումք այրեցան՝ զգժոխոց բերելով զօրինակ զբաժնին Պղուտոնի։

Հ. Ո՞րպէս նկարագրի Դիոս.

Պ. Բազմեալ ՚ի գահոյս՝ գաւազան արքունի ՚ի միում ձեռին, և շանթք ՚ի միւսումն, և առ ոտիւք նորա արծուի թևատարած։

Հ. Զի՞նչ են ամաղթեղջերն առասպելք.

Պ. Կիւբեղեայ գաղտ ՚ի Կռոնոսէ տալով սնուցանել ՚ի Կրետէ զԴիոս ստնտուութեամբ Ամաղթեայ այծուն, կացոյց ապա Դիոս զայծն զայն յերկինս, և զմի յեղջերաց նորա պարգևեաց յաւերժհարսանց խնամակալաց մանկութեան իւրոյ. և ետ նոցա զօրութիւն յառաջ ածելոյ յեղջերէ անտի զամենայն որ ինչ ցանկայիցեն նոցա. վասն որոյ նշանակ առատութեան նկարի ամաղթեղջիւրն։ Իւ մորթով այծուն պատեաց զվահան իւր, զոր ապա պարգևեաց զայն Աթենասայ, որ և կոչէրն Եգիս՝ այսինքն է այծենապատ։ Ի վահան անդր ագուցաւ ապա օձապատ կառափն Մեդուսայ սպանելոյ ՚ի Պերսեոսէ, որով ահաւորագոյն լեալ՝ զտեսողս վիմացուցանէր։

Հ. Զի՞նչ է Տիտանեանց պատերազմն.

Պ. Տիտանեայ յուսահատեալ 'ի տիրել որդւոց կռոնոսի ընդ տիեզերս, յարոյց ընդդէմ Դիոսի զՀսկայս 'ի պատերազմ: Սոքա լերինս 'ի վերայ լերանց ամբարտակեալ, փորձեցան մերձենալ յերկինս. այլ ամբահարեալ զնոսա Դիոսի տապալեաց յանդունդս:

Հ. Ո՞ էր Պրոմեթէոս.

Պ. Մի 'ի Տիտանանց, որ անդրիս մարդկան ստեղծ. և գողացեալ հուր յերկնից՝ կենդանացոյց նոքաւ զանդրիսն. Ընդ որ ցասուցեալ Դիոսի, ետ կապել զնա Հեփեստեայ 'ի Կովկաս լերին, ուր կեղեքէր անգղ զլեարդ նորա և ճարակէր. և լերդոյն հանապազօր աճելով, մշտնջենաւոր կրէր նա զտանջանս: Իմաստք առասպելիս են, զի Պրոմեթէոս իմաստուն էր, և զանասնաբարոյս և զյոյժ անզգամս 'ի մարդկութիւն և 'ի գիտութիւն փոխակերպէր:

Հ. Ո՞ էր Լիկայոն.

Պ. Արքայ արկադացւոց անօրէն և մարդախողխող, որ զամենայն անցաւորս ընդ երկիր իւր՝ տայր սպանանել: Առսա եկաւ Դիոս, և Թագաւորն յանդգնեալ՝ կամեցաւ փորձել զամենագիտութիւն նորա, և եդ առաջի նորա խորտիկ 'ի մարմնոյ հիւրոցն սպանելոց: Բայց Դիոս եհար մաշեաց զտուն նորա շանթիւք, և զնա փոխեաց 'ի գայլ. վասն որոյ կոչի նա Լիկայոն 'ի յունական բառէս լիզու, այս ինքն է գայլ:

Հ. Ո՞վ էր Հերա.

Պ. Հերա կամ ըստ լատինացւոց Յունոն, էր դուստր Կռոնոսի, քոյր Դիոսի և մի ՚ի կանանց նորա, որ ծնաւ նմա զՀեբէ խնամակալ մանկտւոյ և մատռուակ Դիոսի նախ քան զԿանիմեդէս, և ծնաւ դարձեալ զԱրէս, և զՀեփեստոս՝ զոր ընկէց Դիոս յերկնից ՚ի ստոր վասն տգեղութեանն։

Հ. Որպիսի՞ ոք էր Հերա ըստ առասպելաց.

Պ. Նախանձոտ և հպարտ յոյժ, կործանմանն Տրովադայ պատճառք ծանօթ իսկ են, այս ինքն է նախանձ Հերայ վասն նախամեծար առնելոյ հովուին Պարիսի զգեղ Աստղկանն քան զնորայն։ Նոյն և զամենայն տարփածուսն Դիոսի և զորդիս նոցա հալածեաց։

Հ. Զի՞նչ են Յովայ և Արգոսի առասպելքն.

Պ. Դիոսի զՅով դուստր Ինաքայ և Իսմենեայ այլակերպեալ էր յարջառ, առ ՚ի ծածկելոյ ՚ի Հերայ զսէր իւր ընդ նմա։ Բայց Հերա կացոյց նմա ՚ի զգուշութիւն զԱրգոս հարիւրաչեայ ամենատես, որոյ կէսք յաչացն հսկէին ՚ի փակել կիսոցն ՚ի քուն։ Իսկ Դիոսի հրաման տուեալ Հերմեայ ՚ի ձայն սրնգի նիրհեցուցանել զԱրգոս և սպանանել զնա, դարձեալ Հերա ՚ի ձեռն գոռեխոյ, հալածեաց զՅով յԵգիպտոս, մինչև դարձոյց զնա Դիոս յա֊

ռաջին կերպարանն։ Սա է Իսիս պաշտեցեալ յեգիպտացւոց։ Եւ է ճշմարտութիւն առասպելացս այս։ Ցով կամ Իսիս փոխեալ յարջառ՝ երկիրս է, և աչք Արգեայ ամենադիտի աստեղք, Հերա՝ օդք, և Հերմէս արեգակն՝ որ ծածկէ զաստեղս։ Անցանելով սորա 'ի կերպարանս արջառոյ ընդ կիրճն Բիւզանդիոնի՝ կոչեցաւ տեղին այն Վոսփորոս, այսինքն է անցք Արջառոյ.

Հ. Զի՞նչ են սիրամարգքն լծեալք 'ի կառս Դիոսի.

Պ. Սիրամարգ սիրելի էր յոյժ Դիայ, և 'ի սպանանել Հերմեայ զԱրգոս՝ կամեցաւ Դիոս փոխել զնա 'ի սիրամարգ, և տպաւորեաց զաչս նորա 'ի ծայրս փետրոց սիրամարգին, որպէս կեղծեն առասպելք։

Հ. Ո՞ էր հրեշտակ Հերա.

Պ. Իրիս դուստր Թաւմասայ և Ելեկտրայ, զոր և փոխարէն արբանեկութեանն կացոյց Հերա յերկինս և կոչեցաւ ծիածան։

## ԳԼՈՒԽ Դ

*Ապողոն, Դափնէ, Յակինթոս, Ինն Մուսայք, Լինոս, Կիպարիս.*

Հ. Ո՞ էր Ապողոն.

Պ. Ապողոն, ըստ լատինացւոց Փեբոս, ըստ եգիպտացւոց Ովրոս, ըստ ամմոնացւոց Մողոք, ըստ մովաբացւոց Բեելփեգովր, և ըստ Պարսկաց Միհր, էր որդի Դիոսի ծնեալ 'ի Լատոնայ: Վասն որոյ Հերայ ոխացեալ ընդ Լատոնայ, յարոյց զվիշապն Պիւթոն ընդդէմ նորա, և չեթող նմա այլ ապաստան՝ բաց 'ի Դեղեայ կղզւոյ ուր ծնաւ Ապողոն, և կղզին այն ստէպ ջրասոյզ լինէր, բայց Պոսիդոն անսուզանելի զնա այնուհետև արար:

Հ. Զի՞նչ առասպելք զնմանէ պատմին.

Պ. Զի հալածեաց զնա Դիոս յերկնից վասն սպանանելոյ նորա զԿիկլոպայս դարբնողս շանթից իւրոց, և անկաւ նա 'ի Թեսաղիա, և եղև հովիւ խաշանցն Ադմետայ արքայի, վասն որոյ խնամակալ հովուաց համարի: Եւ 'ի փախչել Դափնեայ դստեր գետոյն Պենէոսի յերեսաց նորա՝ փոխեաց զնա 'ի սարդենի.

վասն որոյ՝ ծառն այն համարի նուիրա-
կան նմա, և պսակ ՚ի սարդենւոյ սահ-
մանեալ նա քաջաց քերթողաց ։ Նոյն-
պէս և զպատանեակն Յակինթոս, զապա-
նեալն ՚ի Զեփիւռէ առ նախանձու՝ փո-
խեաց Ապողոն ՚ի համանուն նորա ՚ի ծաղի-
կըն յակինթ ։ Վասն որոյ հալածեալ յազգա-
կանաց Յակինթոսի անկաւ ՚ի Տրովադա,
և եղև անդ որմադիր, օգնել Լաւոմեդո-
նի ՚ի շինուած պարսպաց քաղաքին ։ Ա-
պա վերստին դարձեալ ՚ի շնորհս Դիոսի,
ընկալաւ ՚ի նմանէ զհօտ ծաղկելոյ լոյս յաշ-
խարհ ։ Հռչակաւոր էր նա ընդ բազում
կողմանս երկրի պատգամատեղեօք, և
համարի նա քաջ աղեղնաւոր և տուիչ
բանաստեղծութեան և երաժշտութեան,
և պարիսպք Մեգարայ դաստակերտք նո-
րա հնչէին ներդաշնակք՝ վասն կախելոյ
նորա անդ սակս քնար իւր ։

Հ. Ո՞րպէս նկարագրի Ապողոն.

Պ. Միրթ աղեղն և նետք, մերթ քը-
նար ՚ի ձեռին, և պսակեալ սարդենեաւ ։
Այլ որպէս արեգակն՝ նկարագրի բազ-
մեալ ՚ի կառս, դիմեալ յՈվկիանոս՝ ուր
առասպելեն գնալ նմա հանապազօր ընդ
երեկս առ Թետիս դուստր Ներէոսի. և
թէ՝ ժամք զօրհանապազ ընդ առաւօտն
լծիցեն ՚ի կառս նորա զերիվարսն զՊիրով,
զէով, զէտով և զՓղեգոն ։ Բազմածանօթ է
և առնապատկերն Ապողոնի պղնձի հսկայ-
աձև ՚ի մուտս նաւահանգստին Հռոդոսի

կանգնեալ, հարիւր ոտնաչափ 'ի բարձրու-թիւն. ընդ որով նաւք հողմընթացք առա-գաստիւք ընդ մէջ բարձից երթեւեկէին. և 'ի կործանել նորա յերկրաշարժէ՝ ուղտք ինն հարիւր բարձին զաւերակս նորա:

Հ. Զի՞նչ սուտաստուածքն զարշելւոյ պատ-մին.

Պ. Զի էր նա դուստր արեգական և եր-կրի, վասն որոյ և կանխատարոյց քան զնա. որ և զօր ամենայն բանայ զդրունս եր-կնից, և աւետէ ընդ առաւօտս զգալուստ հօր իւրոյ: Եւ նկարի նա քրքմահանդերձ վարդամատն, ջահ 'ի ձեռին, բազմեալ յոս-կեղէն կառս: Յափշտակեալ նորա զՏիթոն որդի Լաւոմեդոնի՝ անմահացոյց զնա. այլ ոչ կարաց պահել զնա 'ի ծերութենէ, և կերպարանափոխ արար զնա 'ի ճպուռն: Ի սոցանէ ծնաւ Մեմնոն, որ եկն յօգնու-թիւն Պրիամու 'ի տրովական պատերազ-մին. և 'ի սպանանել նորա յԱքիլլեայ, աղաչանօք մօր նորա ծնան 'ի խարուկէ նորա թռչունքն Մեմնոնեանք: Եգիպտա-ցիք կանգնեցին Մեմնոնի անդրի, ուստի 'ի ծագել անդր ճառագայթից արեգական հնչէին նուագք:

Հ. Եւ զի՞նչ զՓայէթոնէ պատմին իրք.

Պ. Փայէթոն որդի գոլով արեգական, խնդրեաց 'ի հօրէ իւրմէ վարել միանգամ եթ զօրակշիռ կառսն՝ 'ի ցոյց որդիու-թեանն: Եւ ոչ կարաց հայրն ժխտել 'ի սպառ զթախանձանս որդւոյն: Բայց ձիոցն

զգացեալ զի ձեռն անհմուտ վարէր զնոսա, խոտորեցան յընդմիջաշաւղէն և բոցակիզեցին զերկինս և զերկիր։ Եւ Արամազդ պատուհասեաց զյանդգնութիւն նորա, և ընկէց զնա յԷրիդանոս գետ։

Հ. Տուր ինձ տեղեկութիւն զինունց Մուսայից.

Պ. Սոքա քորք իննեքին կուսանք՝ էին դստերք Արամազդայ ծնեալք 'ի Մնեմոսինեայ դիցն յիշողութեան, աշակերտք Ապողոնի 'ի Պառնասու լերին։ Կոչին Պիերեանք, զի ընդ ինն դստերս Պիերոսի արքային մակեդոնացւոց պայքարեալ յերգս՝ յաղթեցին. որք փոխանակ պատուամբ յանդգնութեան իւրեանց, փոխեցան 'ի կաչաղակս։

Հ. Զինչ են ինունց Մուսայից անուանք, և զինչ գործ իւրաքանչիւր.

Պ. Կալլիոպէ դշխոյ դիւցազներգութեան.

Կղիոյ դշխոյ պատմութեան.
Թալիա դշխոյ կատակերգութեան.
Երատոյ դշխոյ նուագաց սիրոյ.
Մելպոմենէ դշխոյ ողբերգութեան.
Տերփսիքոր դշխոյ պարերգութեան.
Եւտերպէ դշխոյ նուագարանաց.
Պողիմնիա դշխոյ տաղերգութեան.
Ուրանիա դշխոյ աստղաբաշխութեան։

Հ. Ո՞ էր Լինոս.

Պ. Որդի Ապողոնի ծնեալ 'ի Կալլիոպեայ կամ 'ի Տերփսիքորեայ; գտիչ քնարական

տեղից ՚ի Նաւարբի առէ՝ զնա լեալ որդի Դիոնիսի, եղբայր Ամփիոնի և Զեթեայ։ Նա ուսոյց Որփէոսի և Թամիրայ և Հերակղեայ հարկանել քնար։ Բայց Հերակղէս գժգմնեալ ընդ նմա վասն խստագոյնս ՚ի նմանէ կշտամբելոյ, հար զգլուխ նորա և խորտակեաց քնարաւն։

Հ. Ո՞ւր էր պատգամատեղի Ապողոնի.

Պ. Ի բազում տեղիս, այլ առաւել ՚ի Դեղփիս քաղաք, ուր էր նորա մեհեան մեծակառոյց։ Քրմուհին կամ հարցակն, յոր ազդէր նա զպատգամս իւր, բազմէր ՚ի փոքրիկ եռոտանւոջ որ էր պատեալ մաշկաւ Պիւթոնի վիշապին։

Հ. Որպիսի՞ ինչ էին պատգամքս այսոքիկ դից.

Պ. Առաւելագոյն մասամբ խաբէութիւնք քրմաց. բայց ոչ է մարթ ժխտել զի էր ՚ի նոսա երբեմն և դիւաց գործակցութիւն, որպէս հաստատեն սուրբ հարք և ոչ սակաւք ՚ի քաջաց աստուածաբանից։ Զի ոչ էր հնար խաբէութեան ընդ այսչափ դարս պատրել զազգս ողջոյն ՚ի հաւատս գծուծի պատգամաց կաշառոց ՚ի նշաւակել զխաբէութիւնն, եթէ արդարև չէր ՚ի նոսա դիւաց գործակցութիւն։ Եւ դարձեալ ոչ է մարթ կարծել՝ թէ մարդիկ ախորժեցին տեսանել զհաւասարս իւրեանց, և մանաւանդ զօրաւոր մանկունս և օրիորդս զենեալ զօրհանապազ ՚ի բա-

զինս՝ ըստ հրամանի պատգամաց, եթէ ոչ 'ի դիւաց թելադրէին պատգամքն։

Հ. Զի՞նչ զԿիպարեայ պատմին առասպելք.

Պ. Կիպարիս պատանեակ, սիրելի Ապողոնի, տածէր զեղն մի կամ զեղջերու. և վրիպակաւ սպանեալ զնա, այնպէս զղջացաւ ընդ այն՝ մինչև գնալ նմա զիւրովին։ Իսկ Ապողոնի տրտմեալ ընդ մահ նորա, փոխեաց զնա 'ի ծառն Կիպարիս որ և նոճ, սահմանեալ զայն նշանակ սգոյ և մահուան. որոյ և տեսիլն իսկ նսեմ և անսաղարթ ազդէ զսուգ։

Հ. Ո՞ր 'ի Թռչնոց նուիրական էր Ապողոնի.

Պ. Ագռաւն. քանզի Ապողոն խնամող էր հմայից, և բազում այն էր՝ զի 'ի Թռիչս և 'ի կռինչս ագռաւուց զննէին հըմայք. փետուրս սպիտակս աւանդեն առասպելք լեալ ագռաւու 'ի սկզբանէ. բայց Ապողոնի զայրացեալ ընդ նա վասն ձախողակի իրիք յայտնութեան, արար զնա տխրերանգ և սևափետուր։

Հ. Ո՞ էր Ոսիրիս.

Պ. Դիւցազն անուանի, որոյ շրջեալ ընդ արևելս և ընդ արևմուտս՝ հաստատեաց 'ի բազում տեղիս քաղաքական օրէնս, և արուեստս ազգիազգիս և զերկրագործութիւն, մանաւանդ յԵգիպտոս վասն որոյ ընդ վեհագոյն դիս յԵգիպտացւոց դասի, փոխանակ Ապողոնի պաշ-

անցեալ 'ի նոցանէ, և համարեալ որդի Դիոսի՝ ծնեալ 'ի Նիոբեայ դստերէ Փարոնեայ արքային Արգիացւոց, եղբայր և այր Իսիսի, և նոյն ընդ Ապիս և ընդ Սերապիս ։

## ԳԼՈՒԽ Ե ·

*Արտեմիս և Դիոնէա, Միջնեռս, Այսանգարա-մեռակյան աստք ·*

Հ · Ո՞վ էր Արտեմիս ·

Պ · Արտեմիս ըստ Յունաց, Տիանա ըստ Լատինաց, և ըստ Հայաստան Անահիտ, համարէր աղջիկն երկնից · և ըստ այսմ էր Լուսին, և կոչէր Փեբէ իբր քոյր Փեբոսի կամ արեգական ։ Համարէր և աղջիկն երկրի և ըստ այսմ կոչէր և Դիկտիննէ յանուն միոյ 'ի յաւերժհարսանց՝ որ սիրելի էր յոյժ նմա, և որ համարի գտիչ վարմից ։ Համարէր դարձեալ և աղջիկն դժոխոց, և ըստ այսմ կոչէր Պերսեփոնէ կամ Եկատէ ։ Վասն որոյ Ովրատիոս կոչէ զնա աստուածուհի եռադիմի ։

Հ · Ո՞րպէս նկարագրի Արտեմիս ·

Պ · Կօշիկք յոտս, աղեղն 'ի յուս իւր և կապարճք, և կէս լուսին 'ի ճակատուն, մերթ և բազմեալ 'ի կառս լծեալս ջեղանց ։ Ի պատճառս աղեղնաւորութեան,

զի սթափէր նա յորս 'ի վերայ երկրի ընդ վաթսուն գաւառս Ովկիանու յաւերժահարսունս, և ընդ այլ քսանեսին կուսանս՝ որք արքանեկէին նմա բերելով զգործիս որսոցն ։

Հ. Զինչ զմեհենիցն նորա պատմին, որ յԵփեսոս և որ 'ի տաւրոսեանն Քերսոն ։

Պ. Մեհեանն որ յԵփեսոս ընդ եօթանեսին հրաշակերտս 'ի համարի էր. Քտեսիփոն ճարտարապետեաց զայն, և յերկերիւր ամս կատարեցաւ շինուածն, Ասիոյ առ հասարակ զծախսն հայթայթեալ ։ Երկայնութիւն նորա էր 425 ոտնաչափ, և լայնութիւն 220, և սիւնք 'ի նմա հրաշալիք 127, բարձունք վաթսուն ոտնաչափ 'ի հարիւր քսանևեօթն թագաւորաց կանգնեալ. և երեսուն և վեց յայնցանէ քարձր քանդակաւ գեղայօրէն զարդարեալք ։ Զհրաշակերտս զայս մեհեան հրձիգ արար Երոստրատ եփեսացի, անմահ կամեցեալ թողուլ յիշատակ, զոր քաջութեամբ կամ հանճարով ոչ կարէր ։ Իսկ որ 'ի տաւրոսեանն Քերսոն էր մեհեանն, այս ինքն 'ի Թորիմ, մատուցանէին անդ 'ի զոհ ուղևորք նաւաբեկեալք զծովեզերբքն ։ Բազում մեհեանք էին Արտեմեայ և 'ի Հայս, և ականաւոր 'ի նոսա յԵկեղեաց գաւառ՝ ուր սուրբ լուսաւորիչն մեր զչարչարանսն կրեաց, ոչ յանձն առեալ պաշտօն մատուցանել դիցուհւոյն՝ զոր Տրդատ « Փառք

և կեցուցիչ ազգիս մերոյ » անուանէր ։ Եւ կոչի սա Ոսկիամայր և Ոսկիածին 'ի գիրս մեր, զի մերձ 'ի մեհեան անդր էին ոսկեհանք, և զի ըստ Պլինեայ՝ առաջին պատկեր ոսկեձոյլ, Անահտայ կանգնեցաւ, և նոյն այն երևի լեալ պատկերն՝ որ յԵրէզ յԵկեղեաց գաւառի, զոր փշրեաց Տրդատ և նու իրեաց եկեղեցւոյ ։

Հ. Զի՞նչ զկուսութենէ Արտեմեայ առասպելք պատմին ։

Պ. Թէպէտ և Արտեմիս և Ապողոն անդստին 'ի Լատոնայ երկուորեակք ծնան, բայց Արտեմիս ծնեալ նախ՝ եղև մանկաբարձ մօրն 'ի ծնանել նորա զեղբայրն ։ Եւ 'ի տեսանել զերկունսն մայրենի, խնդրեաց յԱրամազդայ զշնորհս կուսութեան, և վերակացու լինել երկանց, առ 'ի տեսանել հանապազ 'ի քանի՛ աղետից զերծաւ կուսութեամբն ։

Հ. Ո՞ էր Դիոնիս ։

Պ. Դիոնիս ըստ Յունաց, Բագոս ըստ Լատինաց, և ըստ Հայումն Սպանդարամետ, էր որդի Արամազդայ, ծնեալ 'ի Սեմելեայ դստերէ Կադմոսի ։ Եւ ընդ ծնանելն՝ ածեալ 'ի Հերմեայ 'ի Մերոս լեառն մերձ 'ի Նիսա, յանձնեցաւ յաւերժհարսանց ոմանց առ 'ի սնունդ, զորս ապա Դիոնիսոս 'ի զարգանալն իւրում փոխեաց յաստեղս, և կոչեցան Բոյլք ։ Եւ յանուանէ տեղւոյն կոչեցաւ ինքն Դիոնիսոս, այսինքն աստուած Նիսական. կամ յանուա-

նէ լերինն, որ 'ի յայն բարբառ նշանակէ ազդր կամ երանք, սկիզբն երևի լեալ առասպելելին՝ թէ 'ի բոցակիզել մօրն յերե-ւոյց ճառագայթիցն Արամազդայ, մինչ չև 'ի լոյս եկեալ մանկանն, հօրն զնա մայրա-բար յերանս իւր իջէ ծածկեալ մինչև 'ի ժամանակ ծննդեանն, և ապա 'ի լոյս ածեալ. վասն որոյ և Երկմայր աստուածն կոչի:

Հ. Ո՞վ էր Սիղենոս:

Պ. Սիղենոս ծերունի էր դաստիարակ Դիոնիսեայ, և յամենայն աշխատութիւնս նորա չոգաւ ընդ նմա հետևեալ յէջ. և 'ի դառնալն իւրում բնակեցաւ յԱրկադիա, ուր արբենայր զօրհանապազ: Եգղա յաւերժահարսն և Քրոմիս և Մնասիղոս Սատիրայք կամ Նոխազոտունք, գտին զնա յաւուր միում յարբեցութեան յայրի ուրեք, և կապեցին զձեռս նորա ծաղկամբք, և Եգղա ներկեալ զդէմս նորա սեաւ թթովք, որպէս և Նկարագրի իսկ:

Հ. Եւ ո՞րպէս նկարագրի Դիոնիսոս:

Պ. Պատանեակ առոյգ կարմրադէմ և զուարթ 'ի նշանակ գինւոյ. 'ի ձեռին նորա Նիզակ կարճառուն պատեալ ոստովք և բաղեղամբ. բազմեալ 'ի կառս լծեալս 'ի վագերց կամ 'ի յովազաց, 'ի նշանակ մոլեգնութեան՝ զոր ազդէ գինի: Մատուցանէին նմա 'ի զոհ անծեղս 'ի նշանակ շաղակրատանաց գինեբբուաց, և նոխազս զապականիչս ուռոց այգեաց:

Հ. Ո՞րպէս կատարէին սպանդարամե-տական տօնք.

Պ. Ի յորում երից ամաց, քրմուհիք Սպանդարամետին՝ որ աստուածապաշտա-րկքն կոչէին, զգեցեալ զվագրենիս, հեր-արձակք, և ջահ 'ի միում ձեռին և 'ի միւ-սումն նիզակ կարճաբուն սաղարթապատ, ընթանային ընդ լերինս՝ կարդալով մեծա-ձայն զաստուածն իւրեանց։ Իւ բազմա-գոչ աղաղակաւ և նշաւակութեամբք կա-տարէին տօնքն։ Զդստերս Մենիայ Թեբա-ցիս, որք 'ի գործ արուեստին իւրեանց պատրաստեալ 'ի հենուլ զորգս՝ անարգեցին զաստուածն, և ոչ գնացին 'ի տօնս նորա, պատուհասեաց Դիոնիսոս փոխեալ զնոսա 'ի բու. և զվաստակս նոցա 'ի բաղեղն։

Հ. Պատմեա ինձ զհանգամանս ասպա-տակութեանցն Դիոնիսեայ.

Պ. Դիոնիսեայ զօրաժողով արարեալ զարս և զկանայս բազումս, դիմեաց 'ի Հնդիկս։ Զօրք նորա թմբուկս փոխանակ վահանաց, և փոխանակ զինուց նիզակս կարճաբունս բաղեղնապատս կրէին. և յերեւաց բազմամբոխ բանակին զարհու-րեալ, ընկալան զնա ամենայն ազգք որ-պէս զաստուած. զի ոչ առ 'ի տալ օրէնս ազգաց նուաճելոց գնայր 'ի վերայ նոցա, այլ առ ուսուցանելոյ զկարևոր պէտս կե-նաց, և մանաւանդ զմշակութիւն այգեաց։ Բայց Հնդիկս խնա ոչ զամենայն աշխարհն մինչև ցԳանգէս, այլ միայն որ անդր քան

զՄիջերկրականն տարածանի ծով զԱրկադիա և զԱսորիս ։ Եւ 'ի դառնալն իւրում 'ի պատերազմէ, ած կնութեան զԱրիադնէ դուստր Մինովայ զարձակեալն 'ի Թեսեայ, և պարգևեաց նմա պսակ ոսկի ականակապ զմի 'ի հրաշակերտից գործածոց Հեփեստեայ, որ յետ մահուան դշխոյին ընդ համաստեղս դասեցաւ ։

Հ. Յո՞ առաւելապէս ունէին ակնարկութիւն առասպելքն Դիոնիսեայ.

Պ. Դիոնիսեայ երկմայր յորջորջումն, առաջնորդել նորա բազմամբոխ բանակի արանց և կանանց, և զօրացն 'ի ձայն թմբկի զարհուրեցուցանել զթշնամիս, ընդունել նորա մերձ 'ի Նիսա լեառն, այս ամենայն 'ի Մովսէս ունէին զակնարկութիւնն, և դարձեալ զի եղջերք երկու 'ի գլուխ նորա նկարին որպէս Մովսիսի, և հանգոյն նմին սքանչելիս մեծամեծս առնի արարեալ նորա 'ի Տիտանանց պատերազմին կարճաբուն նիզակաւն ։

## ԳԼՈՒԽ Զ

*Հերմէս, Աստղիկ, Ադոնիս, Լեւկադեան սար, Երոս.*

Հ. Ո՞վ էր Հերմէս.

Պ. Հերմէս ըստ Յունաց, և ըստ Լատինացւոց Մերկուրիոս, էր որդի Արամազդայ և յաւերժհարսին Մայայ, բազմավաստակ քան զամենայն դիս յՈղիմպոս։ Որպէս պատգամաւոր և թարգման դից հանդիսանէր ամենայն ուրեք։ Նմին իրի և թեւք ի գլուխ նորա և յոտս նկարին։

Հ. Առ ինչ էր քարոզակն 'ի ձեռին նորա։

Պ. Առ 'ի ցուցանել զաջողութիւն նորա 'ի պատգամաւորութիւն և 'ի հաստատել զխաղաղութիւն. քանզի գաւազանն այն պատեալ 'ի կրկնակ օձից՝ էր նշանակ խաղաղութեան. զի 'ի պատերազմել երբեմն օձից երկուց ընդ միմեանս՝ բաժանեաց զնոսա, և արար խաղաղութիւն. Նմին իրի և հրեշտակք խաղաղութեան կրեն 'ի ձեռին զքարոզակ։ Դարձեալ և շղթայ ոսկի 'ի ցոյց ճարտարխօսութեան կախէր 'ի բերանոյ նորա։ Նշանակէր և ևս գաւազանն այն զիշխանութիւն Հերմեայ ածելոյ 'ի դժոխս զհոգիս մեռելոց. քանզի

կարծէին հեթանոսք՝ թէ չէր մարթ մեռա-
նել նոցա, եթէ ոչ Հերմէս բերկանէր զա-
ւազանաւն զկապ կցորդութեան հոգւոց
նոցա ընդ մարմնոց ։

Անդրիք նորա կանգնէին 'ի կիցս ճա-
նապարհաց ուղեցոյցք անցաւորաց. և
յոլովք յանդրեաց նորա էին խարիսխ
քառակուսի, զգլուխ և եթ նորին կրելով.
Էր զի և 'ի վերայ անդրեաց այլոց դից
դնէին Հռոմայեցիք զգլուխ նորա. զերկուս
'ի մի կցորդելով դիս. որով Հերմաթենաս
կոչէր կցորդեալն ընդ Աթենասայ, Հերմե-
րակղէս՝ կցորդեալն ընդ Հերակղեայ, այ-
լովքն համանգերձ ։

Հ. Էին արդեօք և այլ Հերմէսք.

Պ. Այո ամենևին. ոմն աստուած բժշ-
կութեան, այլ ոմն վաճառականութեան, և
այլն. այլ ապա ամենեցուն փառք ժողո-
վեցան 'ի նմին ։ Երևելագոյն 'ի նոցանէ էր
Եռամեծն անուանեալ արքայ Եգիպտացւոց,
որ սուղ ինչ յետոյ քան զՄովսէս եկաց ։
Եւ ներհուն յերկրաչափական մակացու-
թիւնս, ուսոյց Եգիպտացւոց լարաբաժին
առնել զանդաստանս իւրաքանչիւր՝ որոց
բառնային ստէպ սահմանք յողողմանէ Նե-
ղոսի ։ Նա եղև գտանող դպրութեան և մե-
հենական մատենիցն առ Եգիպտացիս ։

Իսկ Հերմէսն Յունաց եկաց հռչակաւոր'ի
Տիտանեանս. զի էր նա խորամանկ և հնա-
րագէտ, և չոգաւ բազում անգամ յԵգիպ-
տոս՝ ուսանել անդ զմոգութիւն, յոր և

քաջ գտաւ. վասն որոյ և Համարէր զնոսա հաւահմայից և Թարգման Ցիտանանց` որք հարցանէին զնա հանապազ. ուստի և քերթողք Թարգման դից կոչեցին զնա: Սա ինքն համարի գտիչ քնարի և երաժշտութեան, վաճառականութեան, բժշկութեան, զօտէմարտութեան, մոգութեան, և այլոց արուեստից բազմաց:

Հ. Զի՞նչ մատուցանէին Հերմեայ նուէրս հեթանոսք՟.

Պ. Զլեզուս զոհիցն այրէին 'ի բագին նորա, դաւանելով զնա աստուած ճարտարխօսութեան: Նմա յանձն առնէին զդրունս տանց, և զպատկեր նորա զնէին զդրամբք առ 'ի զարգ, և առ 'ի գողոց պահպանութիւն:

Հ. Ո՞ էր Ափրոդիս.

Պ. Ափրոդիս ըստ Յունաց, Վէնուս ըստ Լատինացւոց, և ըստ Հայուսն Աստղիկ, էր դուստր Արամազդայ և Դիոնեայ, կամ ըստ այլոց ծնեալ 'ի փրփրատեսակ ալեաց ծովու: Եւ ածեալ 'ի Կիպրոս 'ի Զեփիւռեայ, յանձնեցաւ ժամուց սնուցանել զնա: Նկարագրի նա բազմեալ փոխանակ կառաց 'ի խեցի ծովային լծեալ 'ի կաքաւեաց կամ յաղաւնեաց, և ընդ մէջ նորա կամար գօտի` զոր յոյժ գեղեցիկ նկարագրէ Հոմերոս, և յորում համարէին լինել ամենայն ողորկիչ զօրութիւնք և հրապոյրք: Մեհեանն` որ 'ի Կիթերա` համարէր հնագոյն քան զամենայն մեհեանս նորա,

որ էին 'ի Ցուցաստան . վասն որոյ կարծեցաւ նա ծնեալ 'ի ծովէ մերձ 'ի կղզի անդր ։

Հ. Ո՞ւր առաւել յաճախեալ էր Աստղըկանն պաշտօն .

Պ. ՅԱմաթուս , յԻդալիոն , 'ի Կիթերա , 'ի Պափոս և 'ի Կիպրոս , յորս յաճախագոյն գործէին նշաւակութիւնք 'ի պաշտօն դիցուհւոյն ։ Եւ էին նուիրականք նմա մրտենի , զի ընդ հովանեաւ մրտենեաց թագուցանէր երբեմն յերեսաց Պայեց. վարդ՝ զի յառաջագոյն սպիտակ էր , և ապա ներկաւ բոսորագոյն յարենէ Ադոնի՝ որ 'ի փշոց նորա վիրաւորեցաւ . և աղաւնի՝ զի Երոս 'ի մրցելն ընդ Աստղըկան 'ի ծաղկաքաղ , Պերիստերիա յաւերժահարսն եհաս զօրաւիգն դիցուհւոյն , և Երոս փոխեաց զնա յաղաւնի ։ Վասն որոյ տօն Վարդավառին , յորում և թռչունք աղաւնեաց , որ 'ի սկզբանէ կատարէին 'ի Հայս առ 'ի յիշատակ նշանելոյ Նոյի 'ի տապանէն , ապա 'ի ժամանակս հեթանոսութեանն երևի փոխեալ 'ի պաշտօն Աստղըկան . զոր ապա Լուսաւորիչն մեր փոխեաց 'ի տօն Այլակերպութեանն Քրիստոսի ։

Հ. Պատմեա ինձ զԲերենիկեայ վարսիցն աստղակերպս .

Պ. Սովորութիւն էր կանանց նուիրել Աստղկան զվարսակս իւրեանց . և զչնաղն Բերենիկէ առ 'ի յաջողութիւն առն իւրոյ 'ի պատերազմին ընդդէմ Սելևկեայ , մա

տոյց զգլխակ իւր արգադիր նուէր 'ի մե-
հեան դիցուհւոյն. այլ 'ի փաղիւ անդր
չգտաւ գիսակն 'ի մեհենի անդ, և համարե-
ցաւ յաստեղս'ի դիցուհւոյն փոխադրեալ,
որ և ցարդ իսկ մի 'ի համաստեղութեանցն
կրէ զանուն նորա ։

Հ. Ո՞յք էին որդիք Ասողկան.

Պ. Գլխաւորք 'ի նոցանէ Երոս կամ
Կուպիդոն, Պրիապոս, Հիմէն, Ենէաս,
խարիթայք երեքին Շնորհք՝ այսինքն է
Աղլայիա, Թալիա և Եւփրոսինէ, որ նկա-
րին միշտ ձեռն 'ի ձեռն տուեալ։ Բայց
կրկին են Երոսք, մին որդի Ուրանեայ
Մուծայի համեստ, և միւսն Հեփեստեայ
որդի՝ ծնեալ յԱսողկանէ, ապէրիշ անհա-
մեստ սիրոյ ։

Հ. Ո՞ էր Ադոնիս.

Պ. Ադոնիս՝ որ և Թամուզ՝ էր որդի
Կինիրայ արքային Կիպրացւոց և Միւռայ;
զոր տարփանօք սիրէր Ասողիկ։ Նախան-
ձեալ Արիսի ընդ այն, յարոյց 'ի վերայ
Ադոնի վարազ վիթխարի, որ յօշատեաց
զնա ։ Տարաժամ սուգ եղև Ասողկան. և
զգլխակն սիրեցելոյն փոխեաց յանիմոն
ծաղիկ. և եդ դաշն ընդ Պերսեփոնեայ՝
ունել զնա զամիսս վեց 'ի դժոխս, և
զվեց ամիս թողուլ նմա կալ 'ի վերայ եր-
կրի ։ Այս ամենայն առասպելք ակնարկեն
'ի վէպս Ադոնի արքային Փիւնիկեցւոց.
վասն որոյ և պաշտօն Ադոնի դիցն սկիզբն
կալաւ 'ի Փիւնիկէ, և անտի տարածեցաւ

Եգիպտոս և 'ի Հրէաստան, որպէս կշտամբքն ստէպ մարգարէքն զՀրէայս վասն անօտի պաշտամանն: Անտի էանց 'ի Յունաստան, ուր տօնք նորա կատարէին ութ օր, ամենեցուն առ հասարակ զգեցեալ հանդերձ տխրութեան, և ողբս առեալ. և կանայք կատարողք պաշտամանն՝ գերծեալ գլխով, բախելով զկուրծս ընթանային ընդ քաղաքն:

Հ. Զի՞նչ են վազքն ընդ Լևկադ.

Գ. Էր 'ի Լևկադիա մերձ 'ի Նիկոպօլիս սար մի բարձր յոյժ, ուստի առվոր էին տարփաւորք ընկենուլ զանձինս 'ի ծով առ 'ի բժշկութիւն տարփանացն, և ոչ ինչ հատանէր նոցա չար: Փոխանակ յառաջ քան զամենեսին վազեաց 'ի սարէ անտի, ըստ Պղուտարքեայ. դարձեալ և Սափփով քերթողուհի վազեաց ընդ այն: Էր և Սիզեմնոս գետ մերձ 'ի Պատարա, յոր մկրտեալքն մոռանային զսէր:

Հ. Ո՞ էր Փսիքէ.

Գ. Էր նա աստուած գրգանաց, և նկարէր 'ի կերպարանս թիթռան՝ որ շուրջ գայր զիւրև: Եւ այնքան նախանձեալ Աստղկան ընդ գեղեցկութիւն նորա, և ընդ տարփանս՝ որով որդի իւր Կուպիդոն սիրէրն զնա, զի հալածեաց զնա մինչև 'ի մահ. բայց Դիոսի վերակենդանեալ զնա, անմահացոյց:

Հ. Ո՞ էր Կուպիդոն.

Գ. Կուպիդոնք, կամ, ըստ Յունաց

Էրոսք, բազումք եղեն. այլ ամենեցուն նոցա առասպելք ընծայեցան այսպա միումն, որ էր որդի Արիսի, ծնեալ յԱստղկանէ. Ընդ ծնանել նորա գիտացեալ Արամազդայ որ ինչ աղմուկք մեծամեծք 'ի պատճառս նորա յառնելոց էին ; առաքեաց ըզ-մայր նորա 'ի սպանանել զնա. այլ մայրն թաքոյց զնա յանտառս, ուր գազանք վայրենիք դիեցուցին զնա. Ընդ լինել մանկանն կարող յաղեղնաւորութիւն՝ առնոյր իւր աղեղն 'ի հացւոյ, և նետս 'ի նոճւոյ, և նախ յերէ վայրի, յետոյ և 'ի մարդիկ սկսաւ նետաձգել։ Ու ապա ապար իւր աղեղն և կապարճս ոսկիս, և ուսուն նման թեւք կապուտակք և ծիրանիք և ոսկեղոյնք։

## ԳԼՈՒԽ Է

Ասկղեպիոս, Պիւթոն, Ամփիարիոս, Տրի-տոնք, Սիրենայք, Պրոտէոս, Գղաւկոս, Ի-նով, Սկիլլա, Փարիբդիս, Աղկիոնեք.

Հ. Ո՞ էր Ասկղեպիոս.

Պ. Էր որդի Ապողոնի և Կորոնեայ, զոր սնոյց Քիրոն յուշկապարիկ։ Եկաց նա զամենայն կեանս իւր 'ի պարտէզս, և ուսաւ զամենայն զօրութիւնս բուսոց, և գտաւ բժշկութիւնս մեծամեծս, որպէս

Իպպողիտեայ որդւոյ Թեսէոսի՝ որով յարուցիչ նորա կոչեցաւ։ Եւ այնչափ զարգացոյց զարուեստ բժշկութեան, մինչև Պղուտոնի զայրացեալ՝ բողոք կալաւ զնմանէ առ Արամազդ, և սա ամպահարեացզնա։ Եւ իբրև ողբայր Ապողոն զորդին իւր սիրելի, Արամազդ առ 'ի սփոփել զնա՝ դասեաց զԱսկղեպիոս յաստեղատունս, և է օձակալ համաստեղութիւնն։ Քանզի նշանակ իսկ է նորին օձ, և նկարագրի նա ունելով ցուպ օձապատ 'ի ձեռին։ Դարձեալ և աքաղաղ նշանակ է նորին վասն արթնութեան. վասն որոյ և Սոկրատ 'ի մեռանելն իւրում պատուիրեաց մատուցանել նմա զայն 'ի զոհ։

Հ. Ո՞յք եղեն որդիք Ասկղեպեայ.

Պ. Ամենայն բժիշկք երևելիք որք 'ի վաղ ժամանակս կացին, համարեցան որդիք Ասկղեպեայ. այլ որդիք նորա բըժիշկք հռչակաւորք եղեն Մաքաւոն և Պոդալիր, որք ընդ բանակին Յունաց չոգան 'ի Տրովադա։

Հ. Ո՞ւր առաւելապէս պաշտէր Ասկղեպիոս.

Պ. Յեպիդաւրոս քաղաք 'ի Պեղոպոնէս, ուր էր նորա մեհեան մեծակառոյց։ Հրեշտակք 'ի Հռոմայեցւոց երթեալ 'ի Դեղփիս առ Ապողոն աղերսաւորք վասն սրածութեան ախտին դադարելոյ 'ի Հռոմ, ընկալան պատգամ յԱպողոնէ՝ դիմել յԵպիդաւրոս առ Ասկղեպիոս։ Եւ եկեալ

անդր աղաչէին զբնակիչս քաղաքին՝ Թողուլ նոցա տանել զպատկեր աստուածոյն 'ի Հռոմ առ 'ի դադարումն ախտին: Մինչ դեռ ուազանին երկպառակեալ կայր 'ի խորհրդեան, 'ի գիշերին յայնմիկ Ասկղեպիոս ցուպ օձապատ 'ի ձեռին՝ երևեալ գլխաւորի պատգամաւորացն, խոստացաւ 'ի վաղիւ անդր 'ի կերպարանս օձի գնալ ընդ նոսա 'ի Հռոմ. զոր և արար իսկ: Եւ ծերակոյտն Հռոմայ և Եստեայ կուսանքն եկին ընդ առաջ նորա բազում հանդիսիւ յերգր Տիբերի. և Ասկղեպեայ հաճեցեալ ընդ կղզեակ մի 'ի մէջ գետոյն, անդ կամեցաւ իւր մեհեան. և առեալ անդրէն զկերպարանս իւր, դադարեցոյց զախտն:

Հ. Ո՞վ էր Պոսիդոն.

Պ. Պոսիդոն, կամ ըստ Լատինացւոց Նեպտոն, էր որդի Կռոնոսի և Ռպեայ, եղբայր Արամազդայ. և 'ի բաժանել աշխարհաց, անկաւ նմա բաժին ծովակալութիւն: Գաւազան նորա էր եռաժանի; կառք նորա խեցի՝ լծեալ յորթուց ծովայնոց, կամ 'ի ձիոց՝ որոց յետոյք էին կերպարանք ձկան, և արբանեակք նորա մարդաձկունք կամ Տրիտոնք՝ որք զհետ գնային նմա զփողս հնչեցուցանելով:

Հ, Ո՞ էր Ամփիտրիտէ.

Պ. Էր նա կին Պոսիդոնի. յորդորեալ 'ի ձեռն միոյ 'ի դլփնաց 'ի հարսանիսն. վասն որոյ Պոսիդոն ընդ համաստեղս եդ դլփինն զայն դասեցոյց: Ովկիան որդի

Պոսիդոնի ծնեալ յԱմփիտրիտեայ՝ համարէր հայր գետոց, ևած իւր կնութեան զԹետիս, յորմէ ծնան նմա Ներէոս և Դորիս. որոց ամուսնացեալ ընդ միմեանս ծնան զՅաւերժհարսանց պար։ Կէսք 'ի սոցանէ անտառաց և դաշտաց էին տեսուչք, և կոչէին Դրիադք և Համադրիադք, այլք աղբերաց և գետոց էին պահապանք՝ և կոչէին Նայադք. իսկ որք 'ի լերինս բնակէին, կոչէին Որէադք. և Կէսք դարձեալ իշխէին ընդ ծով, և սոքա յանուն հօր իւրեանց կոչէին Ներեայք։ Երևելագոյն 'ի Ներեայս դուստր Թետիս, որ և 'ի սէր իւր ձգեաց զԱրամազդ։ Բայց Արամազդայ գիտելով զհրամանս ճակատագրին՝ զի ծնանելոց էր 'ի նմանէ որդի մեծագործագոյն քան զհայրն, ետ զնա Պեղէոսի կնութեան, յորմէ ծնաւ Աքիլլէս։ Վասն որոյ ոչ է պարտ այլ ընդ այլոյ անուանել զյետինս զայս Թետիս ընդ առաջնումն։

Հ. Ո՞յք էին Տրիտոնք կամ մարդաձկունք։

Պ. Առաջինն 'ի նոցանէ, յորմէ այլք կալան զանուանակոչութիւնն, էր որդի Պոսիդոնի ծնեալ յԱմփիտրիտեայ կամ 'ի Կեղենեայ։ Մինչև ցմէջս կերպարանք մարդոյ էին նմա, և 'ի միջոյ 'ի խոնարհ տեսակ կրկնակ որպէս զձկանց. և էր նա փող Պոսիդոնի, որ և 'ի հնչել նորա 'ի պատերազմին զկից ընդդէմ Տիտանեանց՝ սոքա 'ի փախուստ դարձան։ Եւ էին Տրիտոնք պաշտպանք նաւորդաց։

Հ. Ո՞յք էին Սիրենայք.

Պ. Սիրենայք, որ 'ի մերս բարբառ Համբարուք կոչին, էին օրիորդք բնակեալք 'ի ծայրս մերձ 'ի Սիկիլիա, որոց ձգեալ անդր 'ի հրապոյրս քաղցրութեան երգոցն զանցաւորս՝ կորուսանէին զնոսա։ Գլխաւորագոյնք 'ի սոցանէ էին Լևկոսիա, Լիգիա, և Պարթենոպէ՝ յորոյ անուն կոչէր քաղաքն Նէապոլիս, և փագարիս 'ի շինելն զայն վերստին՝ փոխեաց զանուն նորա 'ի Նէապոլիս, այսինքն է Նոր քաղաք։ Սիրենայք էին դստերք Աքելովայ գետոյ և Կալլիոպայ յաւերժահարսին. սոքա ևս 'ի միջոյ և 'ի խոնարհ նկարագրէին որպէս զՏրիտոնս տանաւորք. Էին նոցա և Թևք 'ի սկզբանէ. այլ 'ի զրգռելոյ Հերայ պայքարեալ նոցա ընդ ինն Մուսայս վասն քաղցրութեան երգոց՝ յաղթեցան, և 'ի հատանել Մուսայիցն զԹևս նոցա՝ ընկեցին զանձինս 'ի ծով։

Հ. Ո՞ էր Պրոտէոս։

Պ. Որդի Պոսիդոնի կամ Ովկիանու ծնեալ 'ի Թետեայ հովիւ նախրաց, հօրն փոկաց կամ որթուց ծովային։ Գուշակ էր նա ապառնեաց, այլ չտայր երբէք առոյգ պատասխանի եթէ ոչ կապեալ և բռնի. և դժուարին իսկ էր ունել զնա, քանզի այլափերպեալ 'ի կենդանիս կամ 'ի տարերս անյայտ լինէր. վասն որոյ կոչէր Վերտումնոս, այսինքն այլայլափոխ։

Հ. Ո՞ էր Գլաւկոս.

Պ. Զհնարս ածէ, որոյ զփորձ առեալ զօրութեան բանջարոյ իրիք, զի որ ուտէին զայն ձկունք՝ առնուին զօրութիւն մեծ և զերծանէին 'ի ձեռաց նորա, եկեր և ինքն, և ընկեցեալ զինքն 'ի ծով՝ համա-բեցաւ ընդ աստուածս ծովու։ Զնա Դիո-նիսոս պատուհասեալ վասն յափշտակելոյ նորա զԱրիադնէ, կապեաց ուռովք որ-թենեօք։

Հ. Զի՞նչ են առասպելքն Ինովայ և Մելիկերտայ.

Պ. Ցորժամ Աթամաս արքայ Թեբա-ցւոց արձակեաց զկին իւր Նեփեղէ, հարա-նացոյց իւր զԻնով, Փրիքսոս և Հելլէ ծը-նեալք 'ի Նեփեղեայ երկուցեալ 'ի մալեգ-նութենէ մօրուին, հեծան 'ի խոյ ոսկեգի-սակ և փախեան. այսինքն է բարձեալ զմե-ծութիւնս 'ի տանէ, և ելեալք 'ի նաւ՝ որոյ նշանակ խոյ էր։ Իսկ այլք ասեն՝ թէ դայ-եակն, որ ապրեցոյցն զնա, խոյ կոչէր։ Ամ յանցանելն ընդ ծով անկաւ անդր Հելլէ, յորմէ կոչեցաւ ծովն այն Հելլես-պոնտոս. իսկ Փրիքսոս հասեալ ողջամբ 'ի Կողքիս նուիրեաց անդ Արամազդայ զխոյն, որ ապա ընդ կենդանակերպս դա-սեցաւ։ Բայց Հերա առ 'ի պատուհասել զԻնով՝ զրգռեաց զԱթամաս 'ի սպանա-նութիւն նորին։ Ինովայ զգացեալ զմիտս առնն, փախեաւ հանդերձ որդւովն իւրով Մելիկերտաւ, և ընկէց զինքն 'ի ծով. և Պոսիդոնի գթացեալ 'ի նա, դասեցոյց

զնա ընդ դիս ծովային, Լևկոդոյէ անուանեալ զմայրն, և Պաղեմոն զորդին՝ զոր Լատինք կոչեցին Պորտումնոս, և նկարագրէին զնա բռնեալ 'ի ձեռին որպէս պահապան նաւահանգստից։

Հ. Ո՞ էր Սկիլլա.

Պ. Որդի Փորկոսի, որ էր մի 'ի դից ծովայնոց, և Եկատեայ։ Պիտիդոնի սիրելով զնա, Ամփիտրիտէս առ նախանձու թունաւորեաց զաղբիւրն. յոր լուանայր նա, և անտի մոլեգնեալ Սկիլլայ՝ փոխեցաւ ի նհանգ ծովային կամ 'ի ժայռ յորձանուտ։ Հոմերոս ասէ ունել նմա եօթն գլուխս, և յիւրաքանչիւրսն երիս շարս ատամանց. և զի կլանէր նա զնաւս ողջոյն, և զգօտւով նորա էին շունք՝ որ կլանէին զմարդիկ։

Հ. Ո՞ էր Նիսոս.

Պ. Արքայ Մեգարացւոց յԱքայիա, որոյ 'ի գագաթան էին հերք ծիրանեգոյն՝ զորս պահէր զգուշութեամբ. որպէս արքայութեան իւրոյ. քանզի պատգամ լեալ էր նմա գոլ անհնկուն մինչև պահէին 'ի նմա հերքն։ Այլ 'ի պաշարել Մինովայ արքային Կրետացւոց զՄեգարա, Սկիւղէ դուստր Նիսոսի առ 'ի հաճոյ լինել Մինովայ և հարսնանալ նմին՝ հնարիւք եհատ զհերան 'ի գլխոյ հօր իւրոյ, և մատնեցաւ քաղաքն 'ի ձեռս թշնամեաց։ Բայց Մինովայ զարշեցեալ 'ի նենգաւորէն ելից զնա. և փոխեցաւ նա 'ի լորամարգի, և Նիսոս 'ի

քաղէ՝ հալածելով անդադար զդուստրն ։ Ի Սամիսոնի իրուն ակնարկեն առասպելքր ։

Հ. Ո՞ էր Քարիբդիս ․

Պ. Կին անողորմ, որ աւազակէր զուղեւորս ․ նա և զՀերակլեայ նախիրսն գողացեալ, պատուհասեցաւ, փոխեալ 'ի նհանգ ծովային, կամ մանաւանդ 'ի ժայռն յորձանուտ, որ այժմ կոչի Գալիփոր հանդէպ Սկիլլայ ։

Հ. Զի՞նչ են Աշկիոնք ․

Պ. Թռչունք ծովայինք՝ որ դնեն զբոյնս իւրեանց 'ի մէջ ալեաց 'ի ձմերայնի, և մինչև 'ի ծնանել ձագուցն հանդարտի ծով զաւուրս չորեքտասան՝ սկսեալ 'ի քըսան և չորս օրէ դեկտեմբերի ։ Աշկիոնէ էր կին Կէիւքսի արքային Տրաքինեայ ․ և տեսեալ յանուրջս զնաւաբեկել առն իւրոյ՝ որ երթեալն էր 'ի Դեղփիս, դիմեաց ընդ արշալոյսն 'ի ծովեզր անդր, և տեսեալ 'ի մկանունս ծովու զդիակն 'ի հեռուստ, մինչ կամէր գնալ ընդ ալիս և զիրկս արկանել նմա, գթացեալ 'ի նա դից՝ փոխեցին զնա և զայր նորա 'ի թռչունս Աշկիոնս ։

## ԳԼՈՒԽ Ը

*Պղուտոն, Պղուտոս, Պերսեփոնէ, Եւմենեայք, Ստիւքս գետ, Քարոն, Կերբեր, Դժոխք հեթանոսաց եւ Եղիսեան դաշտն.*

Հ. Ո՞ էր Պղուտոն.

Պ. Ի բաժանել իշխանութեան տիեզերաց ընդ Դիոս, ընդ Պիսիդոն եւ ընդ Պղուտոն, սմա տարտարոն կամ սանդարամետք անկան բաժին. վասն որոյ կոչի եւս Այիդէս ըստ Յունաց, եւ Որկոս ըստ Լատինացւոց, որ թարգմանի դժոխք։ Եւ մականուանէր նա Ագեղայոս, այսինքն է անծաղր կամ անժպիտ, քանզի հեռի է ծաղր 'ի դժոխոց։ Եւ նկարէին զնա այր խոժոռադէմ՝ բազմեալ 'ի կառս լծեալ 'ի չորից սեաւ երիվարաց, ունելով 'ի ձեռին երեքժանի եւ փականս. եւ ճարակ ձիոց նորա՝ դիակունք մարդկան։ Ոչ կանգնէին նմա մեհեան կամ բագին ուրուք, եւ զոհ նմա ցուլս սեաւս մատուցանէին. եւ զամենայն արկածս եւ զգոյժս նմա համարէին։

Հ. Ո՞ էր Պղուտոս.

Պ. Համարեալ աստուած մեծութեանց, զոր Լատինք կոչէին Դիս. եւ էր նա որդի Դեմետրեայ եւ Յասոնի, եւ նկարէր կոյր. քանզի ասէին Դիոսի զնա կուրացուցեալ։

Ընդ դիս սանդարամետականս դասի սա, քանզի մեծութիւնք 'ի խորոց երկրի ելուզանին։

Հ. Զի՞նչ են առասպելք Պերսեփոնեայ.

Պ. Պղուտոն մերժեալ յամենայն աստուածուհեաց վասն խոժոռադէմ տգեղութեանն, բռնի կալաւ առ Դիոս եղբայր իւր, և մտաքերեաց յափշտակել զՊերսեփոնէ՝ մինչ հաւաքէր նա ծաղիկս 'ի վերայ միոյ 'ի լերանցն Սիկիլիոյ։ Մի 'ի Յաւերժհարսանց խաւսիւ զնա 'ի յափշտակելն կշտամբեալ, փոխեցաւ յաղբիւր. և հարեալ Պղուտոնի երկաթանեաւն երաց զերկիր, և դարձաւ 'ի սանդարամետս։

Հ. Ո՞յք էին արբանեակք Պղուտոնի.

Պ. Դատաւորք երեք՝ Մինովս, Էակոս և Հռադամանթոս. և դարձեալ Եւմենեայք կամ Կատաղիքն անուանեալ. վերակացուք պատժոց երեք, Տիսիփոն, Մեգերա և Ալեկտով։ Նկարագրէին 'ի ձեռս ոտցս ջահ վառեալ, և օձս փոխանակ վարսից հիւսեալ ընդ խոեարս։

Էին նորա արբանեակք և Պարկայք երեքին քորք, դստերք՝ Երեբոսի և Գիշերոյ, վերակացուք օրհասի, որք մանէին զբախտս մարդկան. կրտսերագոյնն 'ի նոցանէ Կղոտով ունէր զաղէկան, Լաքեսիս զիլն, և Ատրոպէ մահաբեր մկրատիւն հատանէր զթել կենաց մարդկան։ Առաջինն խնամակալ է ծննդեան մարդկան,

երկրորդն ընթացից կենաց նոցա, իսկ երրորդն մահուան: Քերթողք համարին հիւսել նոցա զկեանս քաջազանց նարօտ մետաքսեայ ոսկեթել խառնեալ ընդ ասր սպիտակ, իսկ զկեանս թշուառս 'ի սեաւ ասուէ:

Հ. Քանի՞ ինչ են որպիսի՞ք դատս առասպելեն 'ի դժոխս.

Պ. Առաջին զԱխերոն, որ վասն մատուցանելոյ ջուր յարբումն Տիտանեանց՝ ընկրկեցաւ 'ի դժոխս: Երկրորդ զՍտիւքս, յոր սովոր էին դիք երդնուլ, և որ երդմնազանց ոք 'ի նոցանէ գտանէր, զրկէր յաստուածըմպելեաց զամս հարիւր: Եւ երրորդ զԿոկիտոն՝ որոյ ջուրք էին արտասուք: Էր անդ և Փղեգեթոն գետ, որոյ ալիք բոցեղէնք էին. և Լեթէ, որ մոռացումն առնէր անցելոց իրաց. վասն որոյ 'ի փոփոխել հոգւոյ յայլ մարմինս՝ յետ ընդունելոյ զհատուցումն առաջին կենաց իւրեանց 'ի դժոխս կամ յԵղիսեան դաշտս՝ ըմպէին 'ի գետոյ անտի առ 'ի մոռանալ 'ի սպառ զառաջնոյ կենացն իրս:

Հ. Ո՞ էր Քարոն.

Պ. Նաւավար դժոխոց, որ նաւակաւ յայնկոյս 'ի դժոխս զհոգիս մեռելոց կրէր. և նկարագրի նա ծերունի:

Հ. Զի՞նչ էր Կերբերոս.

Պ. Շուն եռագլխի պահապան արքունեացն Պղուտոնի, որ չթողոյր ումեք ելանել անտի: Հերակղէս արկ զնա 'ի շղթայս,

Որփէոս Նիրհեցոյց զնա քնարաւն, և Սի-բիլլայն առաջնորդ Ենէասայ թմրեցոյց զնա փոխնդով։

Հ. Ո՞յք են ականաւորք 'ի դատապարտելոց ըստ առասպելեաց.

Պ. Տիտանեանք ապստամբեալք 'ի Դըժոխս, և ընկճեալք ընդ Ետնեաւ հրաբուղխ լերամբ՝ որ համարի մի 'ի բերանոց դժոխոց։ Սիսիփոս՝ որ աւազակերն զԵլլադա, և դատապարտեցաւ 'ի հանել ըզժայռ մեծ 'ի ծայր լերին՝ ուստի անդրէն գլորեալ վայրաբերէր։ Սաղմոնէոս արքայ Եղիսացւոց, որ ժպրհեցաւ հաւասարել Դիոսի՝ արձակելով որոտընդոստ շանթիս, և ընդ կամուրջ բարձրաբերձ պղնձի կառարշաւ գնալով՝ շուրջ պատեալ 'ի ջահից. զոր Դիոս ամբահարեալ ընկէց 'ի խորս Տարտարոսին։ Փղեգիա՝ որ հրձիգարար զմեհեան Ապողոնի, և զգլխով նորա ժայռ մեծ 'ի կախ կայ յարհաւիրս մշտընջենաւորս։ Տիտիոս՝ զորոյ անգեղք կրծեն հանապազ զլեարդն, և նոյն անդրէն գոյանայ առ 'ի ճարակ նոցին, փոխանակ խնդրելոյ նորա ապականել զԼատոնա։ Իքսիոն փոխանակ տռփանացն ընդ Հերա՝ կապեցաւ յանիւ մշտաշարժ։ Տանտաղոս՝ որ տկէր հանապազ 'ի սովոյ և 'ի ծարաւոյ, թէպէտ և ցշրթունսըն ընկղմեալ 'ի ջուր, և մերձ 'ի ծառ պտղալից. քանզի սորա հրաւիրեալ զդիս 'ի կոչունս, առ 'ի փորձելոյ զնոսա՝ ընդ այլ խորտիկս եդ ա-

ռաջին նոցա զմարմին որդւոյ իւրոյ Պեղո-
պայ խորովեալ. և 'ի սպառել Դեմետրեայ
զմի կողմն քամակին յանդգնոս, զգացեալ
Դիոսի զխաբէութիւնն՝ դատապարտեաց
զՏանտաղոս 'ի տանջանսն, և զՊեղոպս
կենդանացոյց՝ հաստեալ նմա քամակ
փղոսկրեայ, որ եղև նշանակ Պեղոպեանց։

Հ. Ո՞յք են Դանայեանք։

Պ. Դանայոս և Եգիպտոս որդիք էին
Բելայ, Բէլ Եպափոսի, և Եպափոս Դիո-
սի և Յովայ։ Եգիպտոս տիրեաց աշխար-
հին՝ որ զանուն նորա ցարդ կրէ, և վա-
րեաց 'ի բաց զեղբայր իւր։ Իսկ Դանա-
յոս կալաւ զթագաւորութիւն Աթենեգեայ
արքային Արգիացւոց, և ծնաւ դստերս
յիսուն յայլ և այլ կանանց, և Եգիպտոս
ուստերս նոյնչափ։ Եւ ամուսնացեալ դստե-
րաց նորա ընդ ուստերս սորին, պատուի-
րանաւ հօրն իւրեանց սպանին իւրաքան-
չիւր զայր, քանզի գոյր պատգամ՝ զի Դա-
նայոս 'ի միջէ 'ի փեսայիցն իւրոց հան-
դերձեալ էր մեռանել։ Միայն Իպերմ-
ներս մի 'ի դստերացն ապրեցոյց զայր
իւր զԼինկէոս՝ որ փախեաւ 'ի Լիրկէ
մերձ յԱրգոս, և ինքն 'ի Լարիսա։ Եւ
ապա Լինկէոս ել 'ի վերայ Դանայոսի 'ի
պատերազմ, և սպանեալ զնա՝ կալաւ զթա-
գաւորութիւն նորա՝ և Դանայեանք դա-
տապարտեցան 'ի դժոխս արկանել անդադար
ջուր 'ի կարասս ծակ, և մի՛ զերծանել 'ի
պատուհասէն՝ մինչև լցցեն զայն ջրով։

Հ. Ուստի՞ առին պատճառս առասպելք հեթանոսական դժոխոցն .

Պ. Պատմէ Դիոդոր զի մերձ 'ի Մեմփիս էր լիճ մի կոչեցեալ Աքերուսիոն . և յայն կոյս նորին գերեզմանք ։ Եգիպտացւոց զմեռեալ զդիակունս մեռելոց ածէին յեզր գետոյն , և դատաւորք քննէին զկեանս նոցա , և ըստ բարեաց կամ ըստ չարաց գործոց նոցա՝ հրաման տային ածել նաւակաւ զդիակունսն 'ի թաղումն , և կամ անթաղ ընկենուլ զնոսա 'ի ժահր ։ Եւ էին յայն կոյս գետոյն ծառաստանք զըւարճալիք , և մեհեան Եկատեայ հովանաւոր , և լիճ՝ Կոկիտոն և Լեթէ ։ Յայսցանէ Որփէոս առեալ յօրինեաց զառասպելսն , յուղևորելն իւրում յԵգիպտոս ։

Հ. Ո՞ւր համարէին նախնիք զԵղիւսեան դաշտս .

Պ. Յերանելեաց կղզիսն, որ արդ կոչին Քանարեան կղզիք . քանզի անդ համարէին զծագ աշխարհի , և առ նմին զհանգիստ արեգական յալիսն Ովկիանու ։ Եւ անդ առասպելէին մշտնջենաւոր ունել հոգւոց բնակութիւն. պարառութեամբ ամենայն բարեաց ։

## ԳԼՈՒԽ Թ

*Արէս, Արիսպագոս, Արեթուսա, Արաքնէ, Հեփեստոս, Ասկղոպիայք, և Երիքթէոս.*

Հ. Ո՞վ էր Արէս.

Պ. Արէս ըստ Յունաց, և Մարս ըստ Լատինացւոց, էր որդի Արամազդայ ծընեալ 'ի Հերայ. և համարէր նա աստուած պատերազմի, վասն որոյ և նիզակ 'ի ձեռին նկարագրի միշտ, և կոչի դարձեալ 'ի լատինացւոց Կուիրեան, զի Կուիրիս կամ Քուրիս նշանակէ առ նոսա նիզակ. վասն որոյ և Հռոմուլոս կոչեցաւ Կուիրեան, զի յԱրիսէ համարէր սերեալ: Քուրմք նորա էին պահապանք երկոտասան վահանացն, յորոց մին համարէր երկնընկէց:

Հ. Զի՞նչ էր Արիսպագոսն.

Պ. Ատեան Աթենացւոց. ուր ատենախօսաց պարտ էր առանց ինչ սեթևեթեալ ձևոց ճարտարախօսել, զի մի գուցէ 'ի պատրանս արուեստին ըմբռնեալ, վրիպակ ինչ վճիռ տացեն դատաւորք. նմին իրի և 'ի մթան գումարէին՝ առ 'ի չտեսանելոյ զդէմս ճարտարախօսին: Արդ ատեանս այս կոչեցաւ Արիսպագոս յանուանէ Արիսի, զի նախ քան զամենեսին առաջի երկոտասան դից դատեալ եղև անդ Արէս,

և անպարտ դատաւ : Վասն որոյ և երկոտա-սան ատենակալք էին Արիոպագին :

Հ. Մի՞ ոք էր Արէս, թէ այլևայլք.

Պ. Ըստ գաւառաց իւրաքանչիւր էին Արէսք այլևայլ, ամենեցուն զիշխանս իւ-րեանց քաջամարտիկս յանուն Արիսի կո-չելով. զորոց արութիւնս առ հասարակ միումն ընծայեցին Յոյնք : Մի յիշխանաց անտի և գլխաւորագոյն էր Բէլ, համա-րեալ ճարտարապետ զինուց և ռազմ կար-գելոյ :

Հ. Ո՞ էր Աթենաս.

Պ. Էր աստուածուհի գիտութեանց պատերազմի, վասն որոյ և նկարագրի սաղաւարտ 'ի գլուխ, և 'ի վերայ նորա բու, նիզակ 'ի միում ձեռին, և 'ի միւսում ասպարն Եգիս այծենապատ՝ պարգևեալ նմա յԱրամազդայ, յորում էր քանդա-կեալ գլուխ Գորգոնեայ օձապատ ահար-կու : Կոչի աստուածուհիս այս 'ի Լատինա-ցւոց Մինէրուա որպէս աստուած գիտու-թեանց, և համարի ծնեալ յուղղոյ Արամա-զդայ. իսկ որպէս աստուած պատերազմի կոչի Պալլաս : Էր սորա պատկեր փայ-տակերտ հռչակաւոր, Պալլադիոն կոչե-ցեալ, նիզակ յաջում ձեռին, և 'ի ձախումն իլ և աղեկատ. և դարանեալ 'ի նմա փոր-ձարանք՝ որովք շարժէին անդամք նորա : Համարէր պատկերս այս երկնընկեցիկ, Դիոսի արկանելով զայն մերձ 'ի խորան Իղոսի 'ի կառուցանել նորա զԻղիոն. և

նորա հարցեալ զդիս և պատգամ ընկա-լեալ շինել մեհեան Աթենասայ 'ի դղեկին, և անդ զետեղել զպատկերն, և պահել զայն զգուշութեամբ, զի ցորչափ պատ-կերն այն կայր, անառիկ սահմանեալ էր լինել քաղաքին տրովացւոց։ Վասն որոյ Յոյնք 'ի դիմելն 'ի վերայ քաղաքին. հնա-րեցան նախ գողանալ զպատկերն զայն։ բայց Դարդանոսի Նախահօր զգուշա-թեամբ զյարեւնման պատկերին արարեալ էր, և զայն բարձին Յոյնք. իսկ զբնիկն զայն ած Ենէաս ընդ իւր 'ի Հռոմ։

Հ. Զիա՞րդ Աթենացւոց քաղաքն կոչե-ցաւ յանուն Աթենասայ.

Պ. Աթենաս և Պոսիդոն վիճէին ընդ-միմեանս, կամելով երկաքանչիւր յիւր ա-նուն կոչել զքաղաքն։ Երկոտասան դիք մեհենականք դատաւոր բազմեալ ետուն վճիռ, զի որ յերկոցունց 'ի նոցանէ պիտա-նեգոյն ինչ հանցէ յերկրէ՝ 'ի նորին անուն կոչեսցի քաղաքն։ Պոսիդոն եհան ձի, և Աթենաս ձիթենի. և սորա յաղթող ե-ղեալ, ետ զանուն իւր դաստակերտին կեկրոպայ.

Հ. Ո՞ էր Արաքնէ.

Պ. Դուստր Իդմոնի լիւդացւոյ, օրիորդ ճարտար 'ի գործել գործս նկարէնս հան-դէպ Աթենասայ. ընդ որ նախանձեալ աս-տուածուհւոյն, եղծ զգործած նորա, եկկոցուն ծակոտեաց զդէմս նորա։ Իսկ 'ի յուսահատեալ Արաքնեայ 'ի խեղդ անձին ար

յուսահատութեան, կերպարանափոխ արար զնա 'ի սարդ։

Հ. Ո՞ էր Հեփեստոս.

Պ. Որդի Արամազդայ ծնեալ 'ի Հերայ, զոր Լատինք Վուլկանոս անուանեն։ Համարէր նա ստեղծիչ հրոյ և տեսուչ դարբնաց, որ և գործակցութեամբ Կիկղոպայց դարբնէր շանթս Դիոսի և զէնս դից ընդդէմ հսկայից Տիտանանց. որպէս և զէնք Աքիլլեայ և Ենէասայ և այլոց դիւցազանց 'ի նմանէ համարին դարբնեալ։ Յայտնապէս տեսանելս այս ակնարկէ 'ի Թօբէլ ճարտարապետ դարբին պղնձոյ և երկաթոյ ըստ գրոյ. որ և ըստ անուանն ոչ յոյժ տարաձայնի 'ի Վուլկանեայ, զի զԹօբէլ կոչեն Լատինք Թուբալկային։

Հ. Որպէս նկարագրի Հեփեստոս.

Պ. Դարբին կաղ յոտից՝ գործելով շանթիս, և առ նմա արծուին Արամազդայ։ Եւ պատճառք կաղութեանն, զի 'ի ցասնուլ Արամազդայ ընդ Հերայ վասն յարուցանելոյ նորա տարապարտ մրրիկ, և 'ի կախել զնա ընդ օդս երկաթեումբք ծանրաբեռն սալիւք, Հեփեստեայ յօգնութիւն հասեալ մօրն՝ պատուհասեցաւ յԱրամազդայ, և ստորանկեալ 'ի Լեմնոս կղզի, կաղացաւ յանկմանէն։

Հ. Ո՞յք էին Կիկղոպայք.

Պ. Կիպղոպայք էին նախնի բնակիչք Սիկիլիոյ առ Ետնա լերամբ, որ համարէին զմի ևեթ ունել ակն մեծաբոլոր 'ի ճա֊

կատու, որպէս անուն իսկ նոցա Կիկղոփս ստուգաբանի յունարէն Բոլորորակն. զի վահանակք էին զիմաց նոցա, ծակ 'ի միջի ունելով: Եւ քանզի սոքա ճարտարք համբաւին լեալ 'ի դարբնութեան, համարին արքանեակք Հեփեստեայ 'ի դարբնել զշանթս Արամազդայ, և լեառն Եթնէ համարի դարբնոց նոցա, որպէս թէ 'ի բովուց նոցա զհուրն ժայթքիցէ, և յունադղորդ բաղխմանէ սալիցն թնդիւնքն լսիցին: Զսոսա զամենեսին սպան Ապողոն, վասն դարբնելոյ նոցա շանթս Արամազդայ առ 'ի սպանանել զԱսկղեպիոս:

Հ. Ո՞ էր Երիքէթէոս կամ Երիքթոնիոս.

Պ. Որդի Հեփեստեայ՝ համբերեալ անմայր. զոր Աթենաս ընդ ծնանելն փակեալ 'ի կողովի՝ ետ 'ի պահ երեցունց դստերաց Կեկրոպայ, պատուիրեալ մի՛ երբէք բանալ զայն: Ագլաւրա մի 'ի նոցանէ չկարացեալ ժոյժ ունել, եբաց զայն. և գտին 'ի նմա մանուկ՝ 'ի ծնգաց և 'ի վայր օձաձև: Պատճառք առասպելիս են, զի Երիքթոնիոս արքայ Աթենացւոց թիւր և տգեղ ունելով բարձս՝ հնարեցաւ զկառս քառաձիս, որ չև ևս էր յԵլլադա. վասն որոյ և յետ մահուն համարի փոխեալ յերկինս, և ընդ համաստեղս դասեալ:

## ԵՐԿՐՈՐԴ ԿԱՐԳ

## ՅԱՂԱԳՍ ԵՐԿՐԱԲՆԱԿ ԴԻՑ

---

### ԳԼՈՒԽ Ժ

*Պան, փաւնք, Սատիրայք, Պալէս, Պամոնա, փլորա, Թերաւիք, Դիէք, Տերմինոս; Պրիապոս, Յաւերժհարսունք, Մոմոս, Ե-ոլոս, Հարպիայք.*

Հ. Ո՞վ էր Պան.

Պ. Վեհագոյն 'ի դիս վայրի, աստուած գեղջկից, և գտիչ հովուական սրնգի։ Կերպարան նորա 'ի միջոյ և 'ի վեր մարդակերպ մորուանի. այլ եղջերք կրկին 'ի գլուխ նորա որպէս զայծու՝ հանգոյն իմն և ոտք այծենի 'ի միջոյ և 'ի խոնարհ։ Եգիպտացիք յանուն նորա պաշտէին զտիեզերս առ հասարակ, յոր ակնարկէ և կոչումն անուանն Պան՝ որ 'ի յոյն բարբառ նշանակէ Ամենայն։

Հ. Ուստի՞ պատճառս կոչաւ ասել երկիւղ պանական.

Պ. Ցորժամ Վրէն զօրաւոր փաղղիա։

ցուց զնայր ասպատակել զՆեգփիս, ահ ա-նակնկալ պատեաց զնոսա յաղաղակէ կո-չելոյ Յունաց յօգնութիւն զՊան. և ա-տի սովորութիւն եղև կոչելոյ պանական զարհաւիրս յանկարծականս : Իսկ այլք համարին փոխաբերաբար առեալ զկոչումն զայն, քանզի համարին Պան բնակել յան-տառս, և անտառք առ դոյզն ինչ կասկած երկիւղի ազդեն զարհաւիրս :

Հ. Ո՞ էր Փաւոն.

Պ. Որդի Պիկոսի արքային Լատինաց, որ եմոյծ յիտալիա զպաշտօն դիցն Հելլե-նաց, վասն որոյ կոչի երբեմն հայր աս-տուածոց, և շփոթի ընդ Կռոնոսի : Սա զարգացոյց յոյժ զմշակութիւն, վասն որոյ և յետ մահուն դասեցաւ ընդ դիս դաշ-տականս, և նկարագրի շուրջ պատեալ 'ի Սատիրայից յանտառային դից :

Հ. Ո՞յք էին Փաւոնայք.

Պ. Դիք շինականք բնակեալք յանտառս և 'ի դաշտս, սերեալք 'ի Փաւոնէ որդւոյ Պիկոսի : Սոքա ևս համարին եղջերաւորք և նոխազոտունք հանգոյն Սատիրայից :

Հ. Ո՞յք էին Սատիրայք կամ Պայք նո-խազոտունք.

Պ. Դիք շինականք մարդադէմք եղջե-րաւորք, 'ի միջոյ և 'ի վայր այծակերպք : Ծերագոյնք 'ի նոցանէ կոչէին Սիղենայք, որպէս Սիղենոս դաստիարակ Դիոնիսեայ, որոյ յաւանակն ընդ համաստեղս կարգե-ցաւ վասն նպաստ. 'ի կռիւ լինելոյ դիցն

ընդդէմ հսկայից, և Դիոնէսեայ յաստա-տակելն 'ի Հնդիկս:

Հ. Ո՞ էր Պալէս.

Պ. Աստուածուհի հովուաց պաշտեցեալ առ Հռոմայեցիս. և կատարէր տօն նորա ամի ամի 'ի սկիզբն ամսեանն մայիսի, 'ի տարեդարձ շինուածոյ քաղաքին Հռո-մայ, գշեղջս յարդից բորբոքելով հովուաց, և փոգս զնովաւ առնելով· որպէս և ա-նուն իսկ աստուածուհւոյն նշանակէ 'ի լա-տին բարբառ Ցարդ:

Հ. Ո՞ էր Պոմոնա.

Պ. Աստուածուհի պտղոյից, կին Վերտումնոսի, առեալ զանուանակոչու-թիւնն 'ի լատին բառէս Բոմում այսինքն խնձոր կամ պտուղ. և նկարագրի բազ-մեալ 'ի վերայ պտղալից կողովոյ, ունե-լով ոստս պտղալիցս 'ի ձեռին:

Հ. Ո՞ էր Փլորա.

Պ. Աստուածուհի ծաղկանց, առեալ զյորջորջումն 'ի լատին բառէս Փլոս՝ այս ինքն է Ծաղիկ. այլ ըստ Յունաց կոչէր Քլորիս՝ այսինքն է Դալարի. և նկարագրէր կին ծաղկապսակ, ունելով անօթ ծաղկա-լից 'ի ձեռին:

Հ. Զի՞նչ էին Թերափք.

Պ. Աստուածք խնամակալք թագաւո-րութեանց, քաղաքաց, ճանապարհաց, տանց և իւրաքանչիւր մարդկան: Իբր ոչ եթէ այլք էին, որքա յառաջնոց գիցն, այլ ընտրեալք յայնցանէ ըստ հաճոյս 'ի խնա-

մակալութիւն՝ կոչէին Թերափք. և գրոշեալք նոցա մանունք պահէին 'ի ներքնային վայրս տանց, և վառէին նոցա ճրագունք, և զոհէին ընտանի կենդանեակք։

Հ. Զի՞նչ կարծիք էին հեթանոսաց զդիւաց.

Պ. Իւրաքանչիւր ումեք երկուս դևս կարծէին ունել, զմին բարի, և զմիւսն չար, 'ի ծննդենէ մինչև ցմահ առընթեր բակիցս նմին։ Դևն բարի հնարէր նմա առնել բարիս, իսկ չարն չարիս. որպէս զի իւրաքանչիւր ուրուք բախտ սահմանէր յաղթութեամբ միոյ 'ի նոցանէ ի վերայ միւսոյն։ Սոքա 'ի կերպարանս տղայոյ նկարագրէին, ունելով 'ի միում ձեռին ըմպանակ, և 'ի միւսումն զեղջիւր առատութեան։ Համարէին և վայրաց իւրաքանչիւր ունել դևս, և երևել նոցա 'ի կերպարանս օձի. դարձեալ և ազգաց իւրաքանչիւր և ժողովրդոց համարէին խնամակալ և թշնամի դևս։ Որ այս ամենայն անկնարկեն 'ի ճշմարիտ վարդապետութիւն սուրբ եկեղեցւոյ յաղագս պահապան հրեշտակաց, և դիւաց չարաց՝ որ փորձեն զմարդիկ։

Հ. Ո՞վ էր Տերմինոս.

Պ. Աստուած սահմանաց, որպէս և անունն իսկ նորին նշանակէ 'ի լատին բարբառ. Սահման կամ Եզր։ Վասն որոյ 'ի բաժինս արտօրէից կանգնէին անդրիք նորա կոթող 'ի քարէ կամ կոճղ ծառոյ կամ իրան

անձեռն և անոտն 'ի նշանակ անփոփոխ հաստատութեան։ Եւ որ յանդգնէին եր-բէք փոխել զնոսա, մատնէին կատաղեաց դժոխոց, և օրէն էր սպանանել զնոսա։

Հ. Ո՞ էր Պրիապոս.

Պ. Համարեալ պահապան պարտիզաց յամփոփակեցի նշաւակագոյն 'ի դիս հեթա-նոսաց. որպէս Բելփեգովր յարևելս։ Զէշ միայն յանասնոց օրէն էր մատուցանել նմա 'ի զոհ. զի 'ի վիճել նորա երբեմն ընդ իշոյ և յաղթել նմա, յարձակեցաւ 'ի վե-րայ նորա էշն, և սպան զնա։ Նկարագրէր որպէս զՏերմինոս իրան անոտն և անբա զուկ, և 'ի գլուխ նորա ականջք և եղ-ջիւրք որպէս զայծու, և պատկ յուռոց կամ 'ի դափնոյ։ Եւ կանգնէին 'ի պար-տէզս անդրիք նորա 'ի պահպանութիւն և 'ի զարդ։

Հ. Զի՞նչ էին Նիմփայք կամ Ցաւերժ-հարսունք.

Պ. Դստերք Ովկիանու և Թետեայ աս-տուածուհիք դաշտաց անտառաց և աղբե-րաց. սոքա համարէին օրիորդք նորահար-սունք երկարակեացք՝ այլ ոչ անմահք։ և բազմութիւն յոյժ սոցա համարէր ամենայն ուրեք զօլ ընդ տիեզերս, մանաւանդ 'ի պարտէզս և յանտառս հովանաւորս։ Կո-չէին յաւերժահարսունք և Հոգիք մեռե-լոց։ Քանզի նախ զառասպելս եղիւսեան դաշտացն և տարտարոսին՝ համարէին հոգիք մեռելոց 'ի զուարճալի վայրս դեգե-

թել. Նախն իրի և անդ յաճախագոյն մատուցանէին զոհք ։ Եւ անունն իսկ նոցա յունական Նիմֆի, նոյն է ընդ բառիս Նեֆեշ՝ որ Եբրայեցերէն նշանակէ Հոգի ։

Հ. Ո՞ էր Մոմոս.

Պ. Որդի քնոյ և գիշերոյ ըստ առասպելաց, և իշխանութիւն էր նորա քննել զգործս դից և մարդկան, և յանդիմանել զնոսա. վասն որոյ համարի աստուած խեղկատակութեան, և նկարագրի միաձեռանի, և ցուպ 'ի ձեռին նշաւակիչ ախտից մարդկան ։ Ընտրեցաւ նա դատաւոր ձեռակերտացն Պիսիդոնի, Հեփեստեայ և Աթենասայ, և ոչ զմիոյ 'ի նոցանէ արարած եգիտ անստգտանելի. ստգտեալ զՊիսիդոն՝ թէ ընդէ՞ր ցլու զեղջիւրսն ոչ առաջի աչացն զետեղեաց, զՀեփեստոս՝ թէ ընդէ՞ր ոչ պատուհան ինչ առ սրտիւ մարդոյ ներգործեաց երևելի առնել զգաղտնիս նորա, և զԱթենաս՝ եթէ ընդէ՞ր ոչ տեղի 'ի տեղւոջէ փոփոխելի կառոյց իւր տուն, որպէս զի ընդ չար դրացւոյ հարկ լինէր նմա բնակել ։

Հ. Ո՞ էր Եւողոս.

Պ. Որդի Արամազդայ վերակացու հողմոց, և իշխէր յԵւողեան կղզիս 'ի հիւսիսակողմն Սիկիլիոյ. ուր էին դարբնոցք Հեփեստեայ ։ Անդ նա զհողմս արգելեալ պահէր յահագին ուրեք քարանձաւի, և արձակէր զնոսա յորժամ կամէր՝ շնչել 'ի վերայ երկրի ։ Դէպ եղև նմա երբեմն

մտանելոյ զդուռն քարանձաւին 'ի բաց, և հողմոյն 'ի դուրս յարձակեալ յարուցին մրրիկ ահեղ 'ի ծովու, մինչև յուժգին ալեկոծութենէն անջատել Սիկիլիայ յԻտալիոյ :

Հ. Ո՞յք էին արբանեակք Եւողոսի .

Պ. Հողմք. և մանաւանդ գլխաւորք 'ի նոցանէ Նոտոս՝ որ է հարաւ, Բորէաս՝ որ է հիւսիսի, Եւրոս՝ որ է արևելեան, և Զեփիւռ՝ որ է արևմտեան : Սոքա են ընդ աստուածս համարէին, որպէս և իմաստունն յիշատակէ զնոսա ընդ դիս հեթանոսաց. և նախ քան զնաւարկել ընդ ծով՝ զոհս մատուցանէին սոցա ուղևորք, որպէս և Վիրգիլիոս զԵնէասայ ասէ՝ թէ զոչխար սպիտակ եզեն աջողակ Զեփիւռոյ :

Հ. Զի՞նչ զԶեփիւռոսէ վիպեն առասպելք·

Պ. Զի պնդէր նա զհետ Փլորայ դիցուհւոյ ծաղկանց և բուրաստանաց. և զի եհաս զյետ նորա, քանզի թեթևընթացքան զնա էր : Եւ նկարագրի Զեփիւռ պատանի առոյգ ծաղկապսակ, և թևք թիթռան 'ի թիկունս նորա :

Հ. Եւ զի՞նչ զԲորէասայ վիպեն առասպելք .

Պ. Զի ծնաւ նա յՈրիթիայ դստերէն Երիքթոնեայ արքային Աթենացւոց երկուս որդիս թևաւորս զԿալայիս և զԶեթէս, որք ընդ արգոնաւորդս նաւեցին, և զՓի-

նէոս արքայ 'ի Հարպեայց ազատեցին, և սպանան 'ի Հերակղեայ։ Բայց Ճշմարտութեամբ Բորէաս էր արքայ Թրակացւոց, և վասն զի Որիթիա 'ի հողմոց բռնութենէ անկաւ 'ի ծով և հեղձաւ, անտի պատճառս առին առասպելքն։

Հ. Զինչ էին Հարպիայք.

Պ. Քորք երեքին ճիւաղք յափշտակողք, որք և Ստիմփաղեան հաւքն կոչէին. դէմք նոցա որպէս օրիորդի, կերպարան անգեղ, և մագիլք 'ի ձեռս նոցա. և յափշտակէին որ ինչ միանգամ դէպ լինէր նոցա, կամ կեղեքէին մագլօքն։ Արամազդ առ 'ի պատուհասել սովալլուկ զՓինէոս արքայ Թրակիոյ վասն յանդգնութեանն՝ յայտնելոյ մարդկան զգաղտնիս դից, առաքեաց 'ի վերայ նորա զՀարպիայս՝ յափշտակել որ ինչ առաջի դնէր նմա կերակուր։

---

# ԵՐՐՈՐԴ ԿԱՐԳ

## ՅԱՂԱԳՍ ԿԻՍԱՍՏՈՒԱԾՈՑ ԿԱՄ ԴԻՒՑԱԶԱՆՑ

---

### ԳԼՈՒԽ ԺԱ

*Պերսէոս, Մեդուսա, Անդրոմեդէ, Պեգասոս, Քիմերա, Հերակղէս, Քիրոն, Կակոս, Անտէոս, Թզուկք, Ատլաս, Ոմփաղէ.*

Հ. Ո՞ էր Պերսէոս.

Պ. Որդի Արամազդայ ծնեալ 'ի Դանայեայ կնոջէ Անդրոմեդեայ, առ որ մըտեալ էր Արամազդ 'ի կերպարան անձրևոյ ոսկւոյ։ Եւ քանզի խոհական էր Պերսէոս և արի, համարեցան քերթողք Աթենասայ տուեալ նմա զվահան իւր. որով յաղթեաց նա Մեդուսայ և բնակչաց Ատլասայ լերին, և զԱնդրոմեդէ ազատեաց 'ի ծովային նհանգէ և 'ի հալածանաց Փինէոսի. և 'ի դառնալն իւրում սպան նա յանդէտս զհաւ իւր զԱկրիսիոս։ Եւ տրտմեալ ընդ աղետալի արկածն, մեկնեցաւ յԱրգոսէ և կայք 'ի Տիրինթոս. և 'ի սահմանս նորա

չինեաց զՄիկէնս, ուր զաւակ նորա Թագաւորեաց զամս իբր հարիւր. սիրէր նա զբանաստէրս, և կառոյց նոցա վարժարան։ Եւ համարեցան զնա քերթողք ընդ համաստեղս դասեալ, որպէս զմի 'ի վեհագունից դիւցազանց։

Հ. Ո՞ էր Մեդուսա, և ո՞յք Գորգոմնայք.

Պ. Գորգոմնայք կոչէին երեքին քորք՝ Մեդուսա, Ստենով և Եւրիաղէ, դստերք Փորկոսի. որոց ակն և ատամն և եղջիւր հասարակաց էին, կարգաւ 'ի կիր առնլով նոցա զայնոսիկ 'ի միմեանց։ Ցասուցեալ Աթենասայ երբեմն ընդ Մեդուսա 'ի պատճառս Պոսիդոնի, փոխեաց զվարսս նորա յօձս։ Արդ ընդդէմ երեցունց այսոցիկ քերց ել Պերսէոս 'ի հանդէս քաջութեան իւրոյ, և նախ զակն նոցա և զատամն եբարձ, և ապա ամրացեալ այծենապատ վահանաւն Աթենասայ՝ գլխատեաց զՄեդուսա։ Վասն որոյ 'ի վահանի անդ քանդակեցաւ գլուխ Մեդուսայ օձախառն, որ զտեսողս վիմատաւէր։

Հ. Ո՞ էր Անդրոմեդէ.

Պ. Դուստր Կեփէոսի արքային Եթովպացւոց, որ գեղեցիկ քան զՀերա զանձն հպարտացեալ կարծէր. և Պոսիդոն առ վրէժ քինու առաքեաց 'ի սահմանս Կեփէոսի ճիւաղ ահարկու, որ աւերէր զերկիրն։ Եւ հարցեալ զդիս, ընկալան պատգամ՝ կապել 'ի ժայռի ուրեք զԱնդրոմե֊

դէ 'ի ճարակ նշանգի իւրք ծովայնոյ ։ Բայց Պերսեայ դէպ լեալ անցանել ընդ այն Պեգասեաւն, խզեաց զշղթայս Անդրոմեդեայ, և կատարումն Մեդուսայ վիմատառեալ զմասն ինչ նշանգին՝ եհար ուսերաւն զմիւս մասն, և հարսնացոյց իւր զԱնդրոմեդէ ։

Հ. Զի՞նչ զՊեգասեայ վիպեն առասպելք ·

Պ. Ի հատանել Պերսեայ զգլուխ Մեդուսայ, 'ի ճապաղեաց արեանն յերկիր՝ ծնաւ Պեգասոս ձի օդապար թեւաւոր, և թռեաւ 'ի լեառն Եղիկոն. և 'ի դափր հատանելն բղխեցոյց անդ զՀիպպոկրենեան աղբիւրն. Աթենաս նուաճեաց զձին զայն, և ետ Պելլերոփոնի 'ի պարգև՝ պատերազմել նովաւ ընդդէմ Քիմերայ, որ աւերէրն զԼիկիա ։ Որ ապա երիվարն այն հանդերձ հեծելովն ընդ համաստեղս դասեցան ։ Եւսեբի 'ի Պաղեստինեայ ասէ՝ թէ նաւ էր Պեգասոսն այն ։

Հ. Զի՞նչ զՔիմերայ վիպեն առասպելք ·

Պ. Քիմերա խառնադազան իմն էր, Եղջերուաքաղ 'ի մերս անուանեալ բարբառ ։ Գլուխ նորա առիւծու, իրան այծու, ձետ վիշապի, որ և հուր 'ի բերանոյ շնչէր ։ Եւ քանզի 'ի Լիկիա էր լեառն հրաբուղխ՝ որջ առիւծուց և այծուց և վիշապաց, և Պելլերոփոն զերծոյց զերկիրն յաւերանաց նոցա, ասաց պատճառս առին առասպելք

Քիմերայ, և նուաճելոյ Գեղլերոփոնի զնա։

Հ. Ո՞ էր Հերակղէս.

Պ. Բազումք եղեն Հերակղեսք քաջամարտիկք. որպէս և մերս Վահագն վասն մեծամեծ քաջութեանցն կոչի Հերակղէս. բայց քերթողք զամենեցուն նոցա զքաջութիւնս միում ևեթ հռչակաւորին քան զամենեսեան տան, որ համարէր որդի Արամազդայ՝ ծնեալ յԱղկմենայ կնոջէ Ամփիտրիոնի արքային Թեբայեցւոց։ Կոչէ նա և Աղկիդաս յանուանէ հաւուն իւրոյ Աղկէոսի, կամ վասն քաջութեանն, զի Աղկիդէս ՚ի յոյն բարբառ նշանակէ Հուժկու։ Հերա Թէպէտ և հակառակ էր Հերակղեայ անդստին ՚ի յղութենէ նորա, բայց զիջեալ յաղաչանս Պալլասայ՝ դիեցոյց իսկ զնա ՚ի ծնանելն. և ՚ի կաթնածուծն լինել Հերակղեայ՝ զեղեալ կաթինն ընդ. երկինս, փոխեցաւ ՚ի բազմութիւն աստեղացն որ կոչի ծիր կաթին։ Այլ առ մեզ կոչի սա Յարդգող կամ Յարդգողի հետք. քանզի ՚ի խիստ ձմերան գողացեալ ասեն Վահագնի զյարդ Բարշամայ Ասորեստանեայց, և զճանապարհայն մղեղք ՚ի նմանէ անկեալ՝ և յաստեղս փոխեալ իցեն։ Եւ զաստիարակեցաւ Հերակղէս ՚ի Քիրոնէ մարդաձիոյ։

Հ. Ո՞ էր Քիրոն.

Պ. Որդի Կռոնոսի և Փիլլիրայ յաւերժհարսին պատեր Ովկիանու, ծնեալ ՚ի

նոցանէ որպէս հրէշ իմն մարդ ձիախառն։ Բայց մանկանն յարբունս հասեալ զտաւ հանճարեղ յոյժ, և նա համարի լեալ ուսուցիչ օրինաց դատաստանի և երգման և զոհից և պաշտամանց գից։ Էր նա հմուտ 'ի գուշակութիւն աստղաց և յաստեղագիտութիւն, զոր և Հերակղեայ ուսոյց դաստիարակ կացեալ նմին, որպէս և Ասկղեպեայ զբժշկութիւն, և Աքիլլեայ և կաստորի և Պոզիտեկեայ այլ գիտութիւնս. և ընդ Յասոնի նաւարկեաց՝ գողով Արգոնաւորդացն բժիշկ։ Բայց կամելով նորա երբեմն ձգել զնետս Հերակղեայ մխեալս յարիւն Լեռնեան վիշապին, անկաւ մի 'ի նոցանէ 'ի վերայ ոտինն, և ցաւեցուցանէր զնա այնպէս դառնակսկիծ՝ մինչև պաղատել նմա առ դիս բառնալ 'ի նմանէ զանմահութիւն, և տալ նմա մահ։ Որ և լսելի լեալ Դիոսի, փոխեցաւ յաստեղատունս, և է կենդանակերպն Աղեղնաւոր։

Հ. Ո՞ էր Ամփիտրիոն.

Պ. Իշխան Թեբայեցի, որդի Աղկէոսի. սորա կին եղև Աղկմենէ մայր երկուորեակ եղբարց՝ Հերակղեայ և Իփիկղեայ, որոց մայր յայտնի էր՝ այլ հայր նոցա անյայտ վասն խառն անկողնոյ մօր քուրեանց. բայց առասպելք համարեցան հայր Հերակղեայ զԴիոս, և Իփիկղեայ զԱմփիտրիոն։ Ի գիմել Հերակղեայ 'ի Լերնեան լիճն՝ ուր բունեալն էր Հիդրայն

կամ բազմագլխի վիշապն, իբրև անկարանայր գլխատել զնա, քանզի ընդ միոյ միոյ 'ի գլխոցն հատելոց՝ եօթն այլ գլուխք բուսանէին, Յոլաս որդի Իփիկղեայ առեալ ջահ մեծ՝ խարէր զտեղի հատելոց գլխոցն, և այնպէս հնար եղև սատակել զվիշապն :

Հ. Զի՞նչ և քանի՞ են գլխաւոր նահատակութիւնք Հերակղեայ.

Պ. Երկոտասան, և են այսոքիկ.

Ա. Խեղդել նորա զառիւծն ահեղի 'ի Նեմեան անտառին, զորոյ զմորթն տանէր զանձամբ :

Բ. Սպանանել նորա 'ի հուր և 'ի սուր զվիշապն եօթնագլխի չարաթոյն բունեալ 'ի Լերնեան լճին։

Գ. Կենդանւոյն ըմբռնել նորա զկինճն վայրենի՝ որջացեալ յԵրիմանթոս լերին, որ ապականէրն շուրջանակի զԱրկադիա :

Դ. Հասանել նորա զհետ Մենաղեան պղնձոտն և ոսկեղջիւր եղին, որ նուիրականն էր Արտեմեայ. զամ մի հալածեալ զնա, և ապա յեզր Լադոնայ գետոյ կալեալ զնա և ստանձնեալ բերել 'ի Միկենս :

Ե. Բնաջինջ առնել նորա զՀարպիայս՝ որ 'ի վերայ Ստիմփաղ լճին ճախր առեալ, և բազմութեամբն իւրեանց աստուերացուցանէին զարեգակն :

Զ. Ունել նորա զցուլն կատաղի բոցաշունչ, զոր Պիսիդոնի առ վրէժ քինու

'ի սահմանս Թագաւորութեան Մինովայ արձակեալ էր, վասն դրժելոյ նորա ուխտին և չմատուցանելոյ 'ի զոհ աստուածոյն զցուլարակն խոստացեալ։

Է. Սպանանել նորա զԲուսիրիս բռնակալ եգիպտացւոց, որ զենկս անցաւորս զոհէր գից իւրոց. և զԴիոմեդէս արքայ Թրակացւոց, որ զերիվարս իւր մարդկեղէն մարմնով կերակրէր։

Ը. Նուաճել նորա զԱմազոնս, և զզօրախոյն նոցա զՀիպպողիտա տալ Թեսեայ աջակցին իւրում կնութեան։

Թ. Դարձուցանել նորա զընթացս Ալփեայ գետոյ' առ 'ի մաքրել զասպաստանս, Աւգիայ արքային արգիացւոց, զոր ապաստան վասն չտալոյ նորա զխոստացեալ վարձսն։

Ժ. Ցաղթել նորա Գերիոնի հսկայի բռնաւորին Սպանիոյ' որում մարմինս երիս ընծայեն առասպելք։

ԺԱ. Բառնալ նորա խնձորս յերեկարնական պարտիզաց, ուր վիշապ անհարկուցոյր պահապան։

ԺԲ. Կապել նորա շղթայիւք զԿերբերոս, և ազատել յարգելանաց դժոխոց զԹեսէոս։

Հ. Զի՞նչ են Հերակղեայ արձանքն.

Պ. Հերակղեայ վաստակաբեկ 'ի նահատակութեանցն հասեալ 'ի կիրճն Կալպեայ, որ արդ կոչի Ճիպրալթէրրա, անջրպետեաց զկիրճս երկուց լերանց առ 'ի կցորդութիւն

Ովկիանական ծովուն ընդ Միջերկրականին, և անդ սիւնս երկուս կանգնեաց 'ի նշան յաղթութեանց իւրոց, և որպէս ծայր սահմանաց աշխարհակալութեան։

Հ. Ո՞ էր Կակոս.

Պ. Որդի Հեփեստեայ եռագլխի, յերրեցն ևս հուր ժայթքելով։ Սա առ Տիբերիս գետով աւազակէր, և գողացեալ զարջառս երկուս զՀերակղեայ, ած զնոսա յայր իւր՝ յետս ընդդէմ ձգելով 'ի քարշ զագեաց նոցա, որպէս զի մի 'ի հետոցն մատնեսցի։ Այլ 'ի բառաչելոյ նոցա զգացեալ Հերակղեայ զնենգն, եհաս յայր անդր, և լախտիւն հարեալ սատակեաց զԿակոս։

Հ. Ո՞ էր Անտէոս.

Պ. Արքայ ափրիկեցւոց հսկայ վիթխարի, որդի կարծեցեալ Պոսիդոնի ծնեալ յերկրէ, որում առասպելք ընծայեն վաթսուն և չորս կանգուն բարձրութիւն։ Սա դարանեալ 'ի Լիբիա, մենամարտէր ընդ անցաւորս, և խողխողէր զնոսա. և ուխտ եդեալ էր կառուցանել մեհեան հօր իւրում Պոսիդոնի 'ի գանկից մարդկան։ Ընդ սմա մենամարտեալ Հերակղէս, բազում անգամ զգետնեաց զնա, այլ 'ի զուր. քանզի մայր նորա երկիր զօրացուցանէր զնա անդրէն 'ի գգետնելն։ Զոր զգացեալ Հերակղեայ՝ ամբարձ զնա յօդս, և 'ի վերայ բազկաց իւրոց սպան զնա։

Հ. Ո՞ւք էին Թզուկք.

Պ. Ազգ տառապեցեալ 'ի Թրակիա երկ-ոտնաչափք հասակաւ. որ եռամեայք ծնանէին որդիս, և ութամեայք ալևորէին. և հանապազ պատերազմ էր նոցա ընդ կռունկս, որ յաճախ յափշտակէին զնոսա։ Մինչ Հերակղէս խոնջ յարշաւանաց հանգչէր 'ի քուն յաւազուտս Լիբիոյ, բազմութիւն յոյժ Թզկաց 'ի վրէժ քինու մահուանն Անտէոսի՝ ընդ որոյ իշխանութեամբ էին՝ յարձակեցան 'ի վերայ Հերակղեայ։ Այլ նորա զարթուցեալ, ծրարեաց զամենեսին զնոսա յառիւծենւոջն, և ած զնոսա առ Եւրիսթէոս արքայ Միկենաց։

Հ. Զի՞նչ անցք ընդ Ադմետ և ընդ Աղկեստէ անցին.

Պ. Աղկեստէ էր տիկին Ադմետոսի արքային Թեսաղացւոց. և այնպէս սիրէր զայր իւր, զի 'ի հիւանդանալ նորա մերձ 'ի մեռանել՝ յանձն էառ զոհել զանձն փոխանակ նորա եթէ այսպէս հաճոյ թուէր դից կեցուցանել զնա. 'ի նմին իսկ աւուր, յորում մատուցաւ նա 'ի զոհ, եհաս անդր Հերակղէս. և 'ի գութ շարժեալ վասն առաքինութեան կնոջն, մարտեաւ ընդ մահու, և թափեալ զԱղկեստէ 'ի ձեռանէ նորա՝ դարձոյց առ այր նորա։

Հ. Ո՞ էր Ատլաս.

Պ. Թագաւոր մաւրիտանացւոց, համարեալ որդի Կռոնոսի, քաջ աստեղաբաշխ, որ հանապազ 'ի ծայրից բարձանց զննէր զընթացս աստեղաց. ուստի պատ-

ճառս ասին առասպելք՝ թէ նա 'ի լեառն փոխեալ իցէ, և զերկինս յուս իւր բարձեալ կրիցէ, և թէ Հերակղեայ կարեկից լեալ ընդ նմա վասն ծանու բեռինն՝ օգնեալ իցէ նմա բառնալով զայն առ ժամանակ մի։

Հ. Ո՞ էր Եսպերոս.

Պ. Եսպերոս 'ի յոյն բարբառ նշանակէ Երեկոյ. և էր նա արքայ ափրիկեցւոց, եղբայր Ատղասայ, քաջ աստեղագէտ. և առասպելք ունին զնմանէ այսպէս, թէ նա յաստղ երեկորին փոխեալ իցէ, անուանեալ Գիշերավար՝ զհետ արեգական մտանելով, և Լուսաբեր կամ Արուսեակ՝ կարապետելով նմին։

Հ. Զի՞նչ էին Եսպերեան կամ երեկորեական պարտէզք.

Պ. Եսպերիդեայք էին քորք երեք՝ դըստերք Եսպերոսի, Եգղէ՝ Արեթուսա և Իպերթուսա։ Եւ էր նոցա դրախտ զուարճալի յԱփրիկէ, ուր կային ծառատունկք ոսկեպտուղք և 'ի պահ պտղոցն կայր վիշապ ահագին բազմագլխի, որում հարիւր գլուխք էին, և նոյնչափ ազգի ազգի բարբառք ահեղագոչք և հսկէր նա անդ զտիւ և զգիշեր. բայց Հերակղէս հրամանաւ Եւրիսթեայ արքային Միկենաց սպանեալ զվիշապն, եբեր 'ի պտղոց անտի առ Թագաւորն։

Հ. Ո՞ էր Ոմփաղէ.

Պ. Դուստր արքային Լիւդացւոց՝ յորոյ

ի սէր Հերակղէս յետ այնչափ քաջայաղթ նահատակութեանցն՝ փոխեաց զլախտ իւր յաղեկատ, և զառիւծենին 'ի զգեստ կանացի :

Հ. Ո՞ էր Նեսոս.

Պ. Մի 'ի կենտաւրոսաց, որոյ առեալ զԴէանիրա կին Հերակղեայ առ ափն գետոյ՝ զի չկարէր անցանել յայն կոյս. եբարձ զնա հրամանաւ Հերակղեայ յուս իւր, քանզի էր լուղորդ քաջ, և անցոյց զնա յայն կողմն : Իսկ Հերակղեայ արձակեալ զնետս իւր զկնի նորա, կարեվէր եհար զնա. և նորա զառանցեալ, խորհեցաւ 'ի մեռանելն իւրում խնդրել վրէժ. և թաթաւեալ յարենէ իւրմէ զհանդերձն ետ Դէանիրայ իբրու հմայս ինչ : Եւ 'ի զգենուլ զայն Հերակղեայ՝ մոլեգնեցաւ, և անձամբ զանձն այրեաց 'ի խարուկի : Եւ ընկալան զնա դիք յերկինս, անմահացուցեալ զնա :

Հ. Որպիսի՞ ինչ էին նետք Հերակղեայ.

Պ. Մխեալք յարիւն Լեռնեան վիշապին, որով մահացու էին ամենայն հարուածք նոցա. նոքօք նա և զՆեսոս ձիացուլ եհար 'ի յափշտակել նորա զԴէանիրա զամուսին իւր: Փիլոկտետեայ բարեկամի իւրում եթող ապա զնետսն, պատուիրեալ նմա մի ումեք յայտնել զտեղի թաղմանն : Բայց քանզի հրամանք դիցն էին չմարթել առնուլ զՏրովադա՝ առանց յայտնելոյ տեղւոյն, Փիլոկտետես առ 'ի չդրժելոյ

Երդմանն՝ ստամբ եւեթ նշանակեաց զայն ։ Սակայն 'ի գնալն 'ի Տրովադա , անկաւ մի 'ի նետիցն 'ի վերայ ոտինն՝ որ մատն եղեւ անեղւոյն , եւվէրքն նեխեցան . մինչեւ հարկ լինել թողուլ զնա 'ի Լեմնոս կղզի ։ Այլ ապա վասն կարեւորութեան նետիցն զորս չմարթէր այլ ոք ձգել , ածաւ 'ի պաշարումն Տրովադայ . եւ անդ Մաքաւոն որդի Ասկղեպեայ ողջացոյց զնա 'ի վիրացն ։

Հ . Ընդէ՞ր կաղամախ համարի նուիրական Հերակղեայ .

Պ . Զի յիջանելն 'ի դժոխս պսակեալ էր սաղարթիւք կաղամախեօք . նմին իրի իսկ երկգոյն են տերեւք նորա , ներքին կողմանցն մնալով սպիտակ , իսկ արտաքնոցն սեւացեալ 'ի մեղծոյ ։

## ԳԼՈՒԽ ԺԲ

*Թեսէոս , Մինոտաւրոս , Պերիթոս , Կենտաւրոսք , Ամազոնք , Դեդալոս .*

Հ . Ո՞ էր Թեսէոս .

Պ . Որդի Եգէոսի արքային աթենացւոց յազգէ Երեքթեայ , բայց համարէր որդի Պիսիդոնի ։ իսկ ըստ մայրենի ազգին սերեալ էր 'ի Պեղոպայ հզօրագունէն 'ի Թագաւորս Պեղոպոնեսայ ։ Քանզի Պիթէոս մի յորդւոց Պեղոպայ շինեաց զՏրէ-

զեն քաղաքն. ուր Եգէոսի երթեալ, ծնաւ 'ի դստերէ նորա յԵտրայ զԹեսէոս, որոյ 'ի հասանելն յարբունս թողեալ զՏրեզեն, չոգաւ առ հայր իւր։ Այլ 'ի գնալն բնա-ջինջ արար զաւազակս և զգազանս, որ զարանէին ուղևորաց. զառաջինոյն յաւա-զակաց զոր ասյան՝ կապտեալ զլախտն պղնձի՝ կրէր 'ի նշանակ առաջնոյ յաղթու-թեանն իւրոյ։ Հասեալ առ հայր իւր եգիտ խռովութիւն մեծ յարքունիսն, ուր ապա-տանեալ Մեդէա աքսորեալն 'ի Կորըն-թոսէ վասն յանցանաց՝ որսացեալ էր ըզ-միտս Եգէոսի 'ի սէր իւր։ Սա իբրև լուաւ զգալուստ Թեսէոսի, գիտաց զի ոչ եւս յաջողէր նմա լինել կնութեան թագաւո-րին վասն որոյ կասկածանս արկ 'ի միտս նորա զԹեսեայ, և հաւանեցոյց դեղամահ առնել զնա 'ի կոչունս։ Բայց Թեսեայ պատճառանօք մերկացեալ զսուսեր իւր նախ քան զբազմելն 'ի սեղան, ծանուցաւ որդի Եգէոսի, զբաժակ դեղոյն կործա-նեալ՝ ընկալաւ զնա յորդի իւր և 'ի ժա-ռանգ։

Հ. Պատմեա ինձ զառասպելս Մինո-տաւրոսի.

Պ. Աթենացիք և Մեգարացիք նախան-ձեալ ընդ Անդրոգէոսի որդւոյ Մինովայ արքային կրետացւոց, զի նա յաղթեաց նոցա 'ի մենամարտի, սպանին զնա աւա-զակաբար. Եւ Մինովս 'ի վերայ նոցա մեծաւ պատերազմաւ, և նկուն արարեալ

զնոսա, եւ հարկս նոցա՝ առաքել ամի ամի 'ի Կրետէ եօթն պատանեակս և նոյնչափ օրիորդս մինչև ցինն ամ, զորս տայր արկանել 'ի բաւիղն Կրետեայ ճարակ Մինոտաւրոսի ։ Եւ էր Մինոտաւրոս մարդցլախառն, ծնեալ 'ի Պասիփայեայ կնոջէ Մինովայ, և արգելեալ 'ի Մինովայ 'ի բաւիղ անդր դաստակերտ Դեդալեայ ։ Քանզի էր 'ի Կրետէ երիտասարդ ոմն Տաւրոս անուն՝ որ Թարգմանի Ցուլ, և 'ի սմանէ ծնեալ Պասիփայեայ զմանուկն՝ որ վասն բերելոյ զնմանութիւն Մինովայ և զՏաւրոսի կոչեցաւ Մինոտաւրոս՝ պատճառս եւս առասպելին, իբր թէ 'ի ցլոյ զմարդացուլն ծնեալ ։ Արդ չեւ զերեամ մի առաքելոյ աթենացւոց զհարկն 'ի Կրետէ, Թեսէոս մատոյց զանձն 'ի թիւ զոհիցն՝ 'ի մտի եդեալ կորնչել կամ ազատել զհայրենիսն իւր յանողորմ հարկէն ։ Արիադնէ դուստր Մինովայ հարեալ 'ի սէր պատանւոյն, մատոյց նմա կծիկ ասղանւոյ 'ի մտանելն 'ի բաւիղ անդր. որով եւ նա անտի հանդերձ ընկերօքն, յետ սպանանելոյ զմարդացուլն ։ Բայց Եգէոսի պատուէր տուեալ էր նաւապետին և Թեսեայ՝ 'ի դառնալ այսրէն ողջամբ ազատակ և կամ կարմիր պարզել առագաստ, քանզի նաւուն՝ որ զզոհսն ածէր՝ սեաւ էին առագաստ ։ Այլ ուրախութեան ոչ ներելով նոցա յիշել զպատուէր Թագաւորին, իբրև ետես նա 'ի հեռաստանէ զնշանակ սգոյն՝

առ յուսահատ տրտմութեանն ընդ մահ որդեկին ընկէց զինքն 'ի ծով. որ անտի իսկ կոչեցաւ զանունն, կոչի Եգէան ծով։

Հ. Ո՞ էր Պերիթոս.

Պ. Արքայ Լապիթայց. որոյ լուեալ զհամբաւ Թեսէոսի, կամէր զփորձ առնուլ քաջութեան նորա։ Այլ 'ի գալ նոցա առ միմեանս, փոխանակ մենամարտելոյ՝ երդուան ընդ միմեանս բարեկամութիւն։ Յետ սուղ ժամանակի Պերիթեայ 'ի կնութիւն ածելով զԴէիդամէա կամ զԻպպոդամէ դուստր Ադրասեայ, անդ 'ի հարսանիս պատերազմեցան Կենտաւրոսք ընդ Լապիթայս՝ յափշտակել զօրիորդն. և վանեաց զնոսա Թեսէոս։

Հ. Ո՞ էր Իպպողիտոս.

Պ. Հերակղէս աջակցութեամբ Թեսէոսի նուաճեաց զԱմազոնս, ետ նմա կնութեան զդշխոյ նոցա զԱնտիոպէ կամ զԻպպողիտա, յորմէ ծնաւ Իպպողիտոս։ Բայց Թեսէոսի ածեալ իւր կնութեան և զՓեդրա դուստր Մինովսի և Պասիփայեայ դքոյր Արիադնեայ, և կասկածեալ զի Իպպողիտոս ընդ ակամբ հայեցի ընդ եղբայր իւր ոչ համամայր, որ հանդերձեալն էր ծնանել 'ի Փեդրայ, յղեաց զՓեդրա 'ի Տրեզեն առ հաւ իւր Պիթէոս։ Բայց տիկնոջն տեսանելով զնա յուզեկցել նորա երբեմն ընդ Թեսէոսի, հարու 'ի սէր նորա. այլ 'ի յայտնել զտարփանս իւր նմա՝ փոխանակ սիրոյ զարհուրանս ազդեալ 'ի

նա, զայրացաւ առ նախանձուն. և զրպար-տեաց զնա առ Թեսէոս, իբր դարանակալ պարկեշտութեան իւրոյ: Հաւատաց նմա Թեսէոս, և առ զայրոյթ սրտին խնդրեաց 'ի վերայ որդւոյն զվրէժխնդրութիւն Պի-ոսիդոնի: Եւ մինչդեռ Իպպողիտոս գնայր կա-ռօք ընդ ծովեզրն, նհանգ 'ի ծովէ ահարկու սարսոյց զերիվարս նորա, և հարեալ ընդ ժայռս խորտակեցին զկառսն, և զնա սպա-նին: Զնա Ասկղեպիոս յարոյց, բայց Փեդ-րա տանջեալ 'ի խղճէ՝ յայտնեաց Թեսէոսի զմեղանսն, և չոգաւ զիւրովին:

Հ. Ո՞յք էին Կենտաւրոսք.

Պ. Ազգ Թեսաղիոյ՝ որ առաջինք եղեն 'ի նուաճել զերիվար, և հեծեալք պատե-րազմել, զի յառաջագոյն հետևակ ևեթ կամ կառամարտիկ գոյր պատերազմ: Կեն-տաւրոս 'ի յոյն բարբառ նշանակէ Ցլա-վար, և համարէր հրէշ ինչ յառաջոյ կող-մանէ մարդակերպ և յետոյ ցլակերպ, վա-սն որոյ 'ի մեզ կոչի Մարդացուլ կամ Ցուլքապարիկ, կոչի դարձեալ և Ձիա-ցուլ, համառօտեալ 'ի յունականէն Իպ-պոկենտաւրոս՝ որ նշանակէ Ձիացլավար: Իսկ առասպելքն պատմեն այս եղեն. 'ի փախչել՝ երբեմն ցլուց, պնդեցան զհետ նոցա ձիաւորք Թեսաղացիք, և հասեալ առ նոսա խթանօք վարեցին և դարձուցին զնոսա. իսկ չինականք՝ որոց չև էր տե-սեալ զայր հեծեալ, տեսանելով զնոսա 'ի հեռաստանէ խառն ընդ ձիանն և ընդ-

ցուլս՝ կարծեցին նորանշան ինչ կենդանիս զնոսա գոլ մարդացուլ ձիախառն։ Եւ առասպելեցին զարձեալ զնոցանէ ծնեալս յամպոյ, զի առաւելագոյնք 'ի նոցանէ էին 'ի Նեփելէ քաղաքէ Թեսաղիոյ՝ որ Թարգմանի Ամպ։

Հ. Ո՞րպէս միայն առասպելք զԹեսեայ էջսն 'ի դժոխս.

Պ. Թեսէոս աջակցեալ Պերիթեայ յարձակեցան 'ի Տարտարոսն՝ յափշտակել ըզՊերսեփոնէ կին Պղուտոնի. այլ ընդ հասանելն մօտ առ դուրս՝ Կերբերոս շուն եռագլխի պահապան դրանց դժոխոց յարձակեալ 'ի վերայ Պերիթոսի, սատակեաց զնա. իսկ Թեսէոս վտանգեալ ըմբռնեցաւ 'ի ներքս անդ, մինչև եկեալ Հերակղեայ ազատեաց զնա։

Հ. Ովք էին Ամազոնք.

Պ. Հասարակապետութիւն կանանց՝ ընդ որս ոչ բնակէին ամենևին արք, այլ միանգամ 'ի տարւոջ գնային նոքա առ արս. և զամենայն արու մանուկ սպանանէին, և զիգացն անդստին 'ի տղայ տիոց խարէին զմի 'ի ստեանց զաջակողմեանն՝ վասն աջողագոյն նետաձգութեան։ Վասն որոյ և Ամազոնք կոչէին, այսինքն է Անստինք. որ առ մեզ Միաստինք կոչին։ Արդ 'ի դիմել Անտիոպեայ կամ Իպպողիտեայ դշխոյի նոցա պատերազմաւ յԵլլադա, Թեսէոս աջակցեալ Հերակղեայ՝ պարտեաց զզօրս նորա զԱմազոնս, և զդշխոյն էառ իւր կնութեան։

Հ. Ո՞վ էր Դեդաղոս.

Պ. Էր նա անդրիագործ ճարտար յԱթենս, զորմէ դրոշեալ ասեն անդրիս շարժունս. քանզի սա նախ զոտս պատկերաց 'ի միմեանց զատոյց: Սորա կասկածեալ զթոռանէ իւրմէ՝ թէ յաղթեսցէ իւր 'ի ճարտարութեան, սպան զնա դաւով, և ինքն Իկարեաւ որդւով իւրով փախստեայ անկաւ 'ի Կրետէ առ Մինովս արքայ: Անդ շինեաց զբաւիղն ականաւոր՝ բանդ անել: Եւ իբրև կամէր նա մեկնել 'ի կղզւոյն, արգել զնա Մինովս 'ի բաւղին, և Դեդաղեայ հնարս խորհեցեալ, շինեաց թևս իւր և որդւոյն մածուցիկս մոմով, և թռուցեալ նոքօք դիմէր յԻտալիա: Բայց Իկարեայ ոչ 'ի միջասահմանին կալով բարձրութեան, այլ թևակոխեալ 'ի կամարն հրեղէն, այրեցան թևք նորա, և անկաւ 'ի ծովն՝ որ յանուն նորա կոչի Իկարեան: Իսկ Դեդաղոս եհաս ողջամբ 'ի Կաղաբրիա, և յետ ժամանակաց դարձ արարեալ 'ի կողմանս Եգիպտոսի, սպանաւ անդ: Ի նմին բաւղի սպան Թեսէոս ըզմարդացուլն Մինոտաւրոս:

## ԳԼՈՒԽ ԺԳ

*Կաստոր և Պողիտևկէս, Յասոնն, Ոսկի Գեղմն, Մեդիա, Որփէոս, Կադմոս, Եւրոպա, Ամփիոն.*

Հ. Ո՞յք էին Կաստոր և Պողիտևկէս.

Պ. Դիոսի փոխեալ զԱստղիկ 'ի կերպարանս արծուոյ, և ինքն զկերպարանս կարապոյ առեալ իբրու հալածական յարծուոյն փախեաւ առ Ղեոտվ դուստր Տինդարոսի արքային սպարտացւոց: Սորա յղացեալ ձուս կրկին, 'ի միոջէն ծնաւ զՊողիտևկէս և զՀեղինէ, և 'ի միւսմէն զԿաստովր և զԿղիտեմնեստրա: Եւ թէպէտ ամենեքին իսկ Տենդարեանք կոչին, բայց դստերքն ևեթ համարին ծնեալք 'ի Տինդարոսէ, իսկ ուստերքն 'ի Դիոսէ, նըմին իրի և Դիոսկուրք կամ Դիոսկուրացիք կոչին: Սոքա յարշաւանս ոսկի գեղմանն հանդիսացան քաջութեամբ, և ապա դիմեցին պատերազմաւ 'ի վերայ աթենացւոց՝ թափել զքոյր իւրեանց զՀեղինէ 'ի ձեռաց Թեսէոսի. և գտեալ զնա յԱփիդնա քաղաք, առեալ տարան զնա 'ի միասին ընդ Եթրայ մօր Թեսէոսի: Մենամարտեցան սոքա ընդ Ղինկէոսի և Իդասայ որդւոց Ափարեայ առ ստամբ Տայգետայ

լերին, և սպանաւ Կասատոր 'ի Ղինկէոսէ։ Պողիտևկիս՝ որ ոգւով չափ սիրէր զԿաստոր զեղբայր իւր, տեսանելով զնա մեռեալ և զինքն միայն անմահ, աղաչեաց զԴիոս՝ բաժանել զանմահութիւն իւր ընդ նմա. վասն որոյ ընդ մեռանել միոյն՝ միւսն վերակենցաղէր, մինչև երկոքին ևս փոխեցան յաստեղս, և կացին Երկուորեակք անուանեալ ընդ կենդանակերպս 'ի զօդիակին։ Յերկոցունց աստեղացն՝ որ են 'ի համաստեղութեան երկուորեկին՝ փոխանակաւ զհետ միմեանց երևելոյ և ծածկելոյ, պատճառս առին առասպելք փոխառութեան կենաց երկոցունց եղբարցն զհետ միմեանց։

Հ. Զի՞նչ պարծանք քաջութեան եղեն Դիոսկուրացւոցն.

Պ. Պողիտևկիս ախոյեան գտաւ յոյժ 'ի բռնամարտի, և նախատիպ եկաց ըմբշաց, իսկ Կաստոր գերահռչակ 'ի նուաճել զերիվարս. և երկոքինչիւր միանգամայն անուանի եղեն՝ բնաջինջ առնելով զհէնս ծովախուժարարիկս, վասն որոյ և 'ի նաւատեաց պաշտէին որպէս դիք խնամակալք նաւարկութեան, որպէս և նաւն աղեքսանդրացի յիշեալ 'ի Գործս առաքելոց (1) կրէր զդրօշ նոցին։

Հ. Ո՞ էր Յասոն.

Պ. Որդի Եսոնի արքային Թեսաղա-

1 Գործ. առաք. ԻԸ. 11։

ցուոց, առաջնորդ երթելոցն 'ի Կողքիս յառումն Ոսկի գեղմանն։ Սորա զումարեալ ընդ իւր զարս երևելիս 'ի Յունաց, և 'ի նաւ մի, զոր յայն սակս իսկ կառուցեալ էր ըստ օրինակին՝ զոր եցոյց նմա Աթենաս, 'ի փայտից Դոդոնեան անտառին՝ որ էր պատգամատեղի. և ապա նաւն այն ընդ համաստեղս դասեցաւ, և էր անուն նորա Արգոյ՝ զոր պէսպէս ստուգաբանեն քննիչք, նմին իրի և որք 'ի նմայն էին՝ Արգոնաւորդք կոչեցան։ Տիփիւս էր ղեկավարին անուն, Ղինկէոս՝, որ կորովաբիբն էր՝ դէտ կայր ծայրից և խթից, և Որփէոս երգովքն և քնարաւ սփոփէր ըղվիշտս նաւարկութեանն։

Հ. Եւ զի՞նչ զՈսկի գեղմանէն վիպեն առասպելք.

Պ. Փրիքսոս և քոյր նորա Ելլէ որդիք Աթամասայ արքային Թեբացւոց փախեան 'ի ձեռաց մօրուին իւրեանց Ինովայ հեծեալք 'ի խոյ ոսկեգեղմն. և իբրև անցանէին ընդ կիրճ սեաւ ծովուն, Ելլէ ծովահեղձ եղև, 'ի նմանէ ծովն այն կոչեցաւ Ելլեսպոնտոս։ Իսկ Փրիքսեայ հասեալ ողջամբ 'ի Կողքիս, նուիրեաց անդ Արէսի զգեղմն խոյոյն, և պահէր անդ զգուշութեամբ. քանզի ազդ եղև 'ի պատգամաց, զի որ զայրն յափշտակել զայն՝ սպանանելոց էր զթագաւորն։ Զգոյր ինչ բազմավտանգ քան զյափշտակութիւն գեղմանն այնորիկ, զի հարկ էր անցա-

նել նախ ընդ ցցապատնէշ, որում պահ ունէին ցուլք չորք հրաշունչք. ապա հարկ էր սերմանել զատամունս օձին զոր կալմեալ սպանեալ էր, և պատերազմել ընդ սպառազէնս՝ որ յատամանց անտի բուսանելոց էին. և ապա հարկ էր մարտնչել ընդ վիշապին մեծի՝ որ գանձուն էր պահապան: Բայց Մեդէա դուստր Այետայ արքային ՚Կողքիսացւոց հարեալ ՚ի սէր Յասոնի, օգնեաց նմա ՚ի ստացուած գեղմանն ուսուցանելով նմա սանձել զցուլսն, և թմրեցուցանել զվիշապն ահագին. և ընդ նմա փախեաւ ՚ի Թեսաղիա: Եւ յօշեալ զկրտսեր եղբայր իւր Աբսիրտ՝ ցանեաց զանդամս նորա զճանապարհայն, որպէս զի հայրն ՚ի հետամուտն լինել նոցա յամեսցէ յուղւոջ, ժողովելով զցրուեալ անդամս որդեկին. և պարապ լիցի իւր փախչելոյ: ԶՄեդեայ առասպելեն ևս վհուկ լեալ, և զԵսոնն զհայրն Յասոնի ՚ի մանկութիւն փոխեալ, և զյաւերժհարսունս դայեակս Դիոնիսեայ ըստ աղաչանաց նորա մանկացուցեալ, և զդըստերս Պեղեայ հօրեղբօր Յասոնի նովին յուսով պատրեալ և հայրասպանս զնոսա արարեալ, տալով նոցա յօշատել զՊեղիաս, և եռացուցանել զանդամս նորա՝ ՚ի հուր, առ ՚ի վերէժխնդրութիւն կոտորածի ընտանեացն Յասոնի, զորս Պեղիասայ կոտորեալ էր ՚ի բացակայութեան նորա: Բայց Մեդէա թողեալ ապա ՚ի Յասոնէ, առ

զայրացութեան սպան զԳղաւկա զերկրորդ կին նորա և զորդիս իւր. և Յասոնն առ ցաւոցն՝ անձին ճարար:

Հ. Ո՞ էր Որփէոս.

Գ. Ճարտարագոյն 'ի Նախնիս երաժիշտս, որդի Ապողոնի և Կալլիոպեայ. որ երգովքն իւրովք և քնարաւ զգետս սըրընթացս ստնակաւէր, զգազանս վայրենիս զգօնացուցանէր, և զմայրիս և զժայռս գնացուցանէր: Որ և զՊղուտոն և զՊերսեփոնէ 'ի դժոխս զմայլեցուցեալ, հրաման 'ի նոցանէ ընկալեալ դարձուցանելոյ 'ի կեանս զկին իւր զԵւրիդիկէ: Բայց արգելեալ էր նմա՝ մի՛ հայել 'ի կին իւր մինչև հասեալ յերկիր. և զի չկարաց ժոյժ ունել, կորոյս անդրէն զկին իւր 'ի դժոխս: Եղեն և այլ Որփէոսք, այլ ամենեցուն նոցա իբր ընծային երևելւոյս այսմիկ՝ որ և ընդ Արգոնաւորդս էր ուղեկից, և քնար նորա ընդ համաստեղս դասեցաւ:

Հ. Ո՞ էր Կադմոս.

Գ. Որդի Ագենորայ արքային փիւնիկեցւոց և Մելեայ յաւերժհարսին: Էր նորա քոյր մի Եւրոպա անուն՝ գեղեցիկ յոյժ, մինչև Դիոսի 'ի կերպարանս ազնուական ցլու իջանել 'ի ծովեզրն՝ ուր Եւրոպա զբօսնոյր ընդ ընկերս իւր. այսինքն է, զի նաւուն Դիոսի նշանակ ցուլ էր: Իսկ Եւրոպայ հարեալ 'ի գեղ ցլուն, մատեաւ առ նա, և գգուեաց զնա, և հեծաւ 'ի վերայ նորա: Իսկ ցլուն տարաւ 'ի ծովանդք մեր-

ձեռըն յարձակեցաւ ընդ այնս, և ած զնա 'ի Կրետէ, և անդ փոխեցաւ Դիոս 'ի կերպարանս իւր: Իսկ Ագենոր հայր օրիորդին յուսահատեալ յղեաց զԿադմոս որդի իւր 'ի խնդիր քեռն, գնալ ընդ ամենայն կողմանս աշխարհի, և մի դառնալ մինչև գտեալ զնա: Կադմոս յետ շրջելոյ 'ի խնդիր նորա ընդունայն, եհարց զդիս և ընկալաւ պատգամ՝ շինել քաղաք յոր վայր մի յարջառաց առաջնորդեսցէ նմա, զոր և շինեաց՝ և կոչեաց զայն Թեբէ, յանուն Թեբայ քաղաքին եգիպտացւոց. և զվայրըն շուրջանակի Բէովտիա, 'ի յունական անուանէ արջառոյն ունելով զստուգաբանութիւն: Յաւելուն առասպելք, զի Կադմեայ յղելով զընկերս իւր յաղբիւրն Դիրկեայ զջրոյ՝ եկուլ զնոսա վիշապ օձն դարանեալ մօտ աղբերն: Իսկ նորա 'ի վերայ հասեալ՝ սպան զվիշապն, և ըստ խրատուն Աթենասայ ցանեալ յերկիր զատամունս նորա՝ վերաբուսեալ եղեն արք սպառազէնք. որոց մարտուցեալ ընդ միմեանս սպանին զիրեարս, և մնացին 'ի նոցանէ հինգ արք որք օգնական եղեն նմա 'ի շինուած քաղաքին Թեբայ:

Հ. Ո՞յք էին Ամփիոն և Զեթէս.

Պ. Որդիք Դիոսի ծնեալք յԱնտիոպեայ՝ զուսանական գործեաց ճարտարապետք: Ամփիոն ած իւր կնութեան զՆիոբէ դուստր Տանտաղոսի. և զի էր ճարտար յոյժ 'ի հարկանել զքնար, առասպե-

լեն 'ի ձայն քնարի նորա կանգնեալ պարըսպացն Թեբայ՝ ինքնին զետեղլով քարանցըն 'ի վերայ միմեանց ։ Իմա զի նա ինքն ճարտարխօսութեամբն իւրով յորդորեաց զբիրտ և զչինական մարդիկն գալ 'ի քաղաքականութիւն, և պարսպել զվայր բնակութեան իւրեանց ։ Եւ հպարտացեալ նորա 'ի ճարտարութիւն իւր, և ընդ Ապողոնի պայքարեալ 'ի կռիւ՝ պատուհասեցաւ յազգատոհմ իւր, և չոգաւ զիւրովին . և տանջի 'ի դժոխս զրկեալ յաչացն և 'ի քնարէն ։

## ԳԼՈՒԽ ԺԴ

*Իդիպոս, Սփինքս, Տրովադա և պատերազմ նորա, Ոդիսևս, Իփիգինէ, Աքիլլէս :*

Հ. Ո՞ էր Իդիպոս.

Պ. Որդի Ղայոսի արքային Թեբացւոց։ Ղայոս գիտացեալ 'ի պատգամաց, զի որդին՝ որ ծնանելոցն էր նմա՝ հանդերձեալ էր սպանանել զնա, հրամայեաց Յոկաստայ տիկնոջ իւրում սպանանել զմանուկն ընդ ծնանելն ։ Այլ գութ մօրն չկարացեալ առնել զայն, բայց առ 'ի կեցուցանել զայրն՝ ետ միում 'ի զինուորաց զմանուկն՝ տանել արկանել զնա 'ի բացի։ Իսկ զինուորին գթացեալ 'ի մանուկն, որպէս զի մի լիցի ճարակ գազանաց՝ կախեաց զնա

յանտառի զտաւիցն, զի ինքնին մեռցի: Եւ մինչդեռ մանուկն կախեալ կայր և լայր, եկն 'ի անդի անդր Փորբաս հովիւ Պողիւբեայ արքային Կորնթացւոց. և գթացեալ 'ի տղայն՝ իջոյց զնա, և առեալ տարաւ զնա առ դշխոյն Մերոպէ: Որ քանզի անորդի էր, կապեցաւ ոգի նորա ընդ մանկանն, և եա դարմանել զնա՝ մինչև ողջացան ուռոյցք ոտիցն՝ զորոց էր կախեալ, վասն որոյ և կոչեաց զնա Իդիպոս, որ նշանակէ յունարէն Ուռուռոյց: Եւ զարգացեալ մանկանն՝ գիտաց զի ոչ էր որդի Պողիւբեայ, և 'ի խնդիր հօրն հարցեալ զԱպողոն, պատգամ ընկալաւ՝ զի 'ի Փովկիս էր հայր նորա: Եւ դիմեալ անդր, հանդիպեցաւ Ղայոսի յանձուկ ուղւոջ. և 'ի պահանջել սորա զանցս գոռոզութեամբ, ձգեաց Եդիպոս զսուսեր, և ելից յանդէտս զգուշակութիւն պատգամախօսին: Այլք 'ի քաղաքական աղմկի ուրեք ասեն սպանեալ նորա զհայրն:

Հ. Ո՞ էր Սփինքս.

Պ. Հրէշ իմն չորքոտանի առիւծակերպ թեւաւոր և վիշապատուտն՝ ծնեալ յԵդինայ և 'ի Տիփոնէ, զոր Հերա յարոյց ընդդէմ Թեբացւոց. քանզի դարանեալ նորա 'ի Փիկէոն լերին՝ յարձակէր 'ի վերայ անցաւորաց, և առաջկեալ նոցա առեղծուածս դժուարինս՝ զորս Մուսայք Թելադրէին նմա, 'ի չկարել նոցա առեղծանել զայնս՝ կլանէր զնոսա: Արդ 'ի մեռանել Ղայոսի,

Կրէոն անեւր նորա տեսուչ կացեալ աշխար-
հին՝ յայտ արար, զի որ զիմացրանէր ոք
առեղծանել զառեղծուած Սփինգայ և
ազատէր զաշխարհն յարհաւրաց, նա ժա-
ռանգէր զթագաւորութիւն ։ Եւ առեղ-
ծուածն այս ինչ էր . « Ո՞ր այն կենդանի
« իցէ , ընդ առաւօտս չորքոտանի , ՚ի հա-
« սարակ աւուր երկոտանի , և ընդ երեկս
« եռոտանի » ։ Իդիպոսի յանձն առեալ
զվտանգն , ետ այսպէս զլուծումն . զի կեն-
դանին այն մարդ էր՝ որ ՚ի տիս. տղայու-
թեան առ չկարելոյ յոտին կալ , յափս ՚ի
թերս գնայ իբր քառոտանի . և ՚ի զարգա-
նալն քայլէ երկոտանի . իսկ ՚ի ծերութեան
առեալ իւր նեցուկ գաւազան , գնայ ե-
ռոտանի ։ Ընդ որ զամօթի հարեալ Սփին-
գայ , զահավիժեալ ընդ ժայռս սատակե-
ցաւ ։ Իսկ Թեբացւոց ազատեալ յարհաւ-
րացն ՚ի ձեռն Իդիպեայ՝ զոր համարէին
որդի Պողիբեայ , թագաւորեցուցին զնա ,
տուեալ նմա կնութեան զՅոկաստա կին
Ղայիոսի , որ էր նորին ինքեան Իդիպեայ
մայր ։ Եւ յետ ծնանելոյ նորա ՚ի նմանէ
ուստերս երկու և դստերս , ախտ սրածու-
թեան ճարակեցաւ յաշխարհին , և պատ-
գամ ՚ի գիցն յայտ արար՝ զի ոչ դադարէր
ախտն մինչ չև աքսորեալ սպանողին Ղա-
յոսի ։ Եւ յետ բազում հետազօտութեանց
ծանեաւ Իդիպոս՝ զի ինքն լեալ էր սպանող
թագաւորին , հայրասպան և մծղնեայ , և
թողեալ զթագաւորութիւնն երկուց որդ-

ւոց իւրոց՝ Թագաւորել փոխանակաւ ամ՝
ըստ ամէ, մեկնեցաւ ինքն յԱթէնս։

Հ. Պատմեա ինձ զսկիզբն տրովացւոց.

Պ. Առաջին Թագաւոր նոցա եկաց Դար֊
դանոս որդի Դիոսի և Ելեկտրայ։ Սա յետ
Թագաւորելոյ յԻտալիա, սպանեալ յան֊
դէտս զՅասիոս զեղբայր իւր մեկնեցաւ
գնաց՝ի Փռիւգիա, և ածեալ իւր կնութեան
զդուստր Տեւկրեայ իշխանի աշխարհին,
կառոյց անդ քաղաք հանդէպ Թրակեանն
Վոսփորի, իբր 700 ամաւ նախ քան զշի֊
նուած քաղաքին Հռոմայեցւոց։ Զհետ
Դարդանեայ յաջորդեաց Երիքթոնիոս որ֊
դի նորա, և զհետ Երիքթոնեայ որդի, նո֊
րա Տրովս՝ յորմէ քաղաքն այն կոչեցաւ
Տրովա, և գաւառն շուրջանակի Տրովա֊
դա։ Սորա եղեն որդիք երեք, Գանիմե֊
դէս՝ զոր յափշտակեաց Դիոս, և արար
իւր զնա մատռուակ. Ասարակոս հաւ Ան֊
քիսեայ, և Իղոս՝ որ կառոյց զդղեակն Ի֊
ղիոն յամրութիւն Տրովայ, ուստի և քա֊
ղաքն կոչեցաւ Իղիոն։

Հ. Ուստի՞ պատճառս էառ Տրովական
պատերազմն։

Պ. Յորժամ Ապողոն հալածեալ յեր֊
կնից՝ զհովուական յանձն էառ կենցաղ,
և ապա եղև որմնադիր՝ օգնել Լաւոմե֊
դոնի որդւոյ Իղոսի 'ի շինուած պարսպաց
հայրենի զաստակերտին, և Լաւոմեդոն
չետ նմա զվարձսն, արձակեաց նա հրէշ
'ի վերայ աշխարհին, որ զծով 'ի բերանոյ

բղխեալ՝ ողողէ զաշխարհն. և առ 'ի դա-
դարումն պատուհասին հրաման եղև 'ի դից՝
արկանել ամի ամի օրիորդ մի 'ի ճարակ
հրէշին: Մի յօրիորդաց անտի մատուցե-
լոց 'ի սպանդ եղև Եսիոնէ դուստր Լաւո-
մեդոնի. բայց Հերակղէս յարշաւանս յա-
փըշտակութեան ոսկի գեղմանն սպանեալ
զհրէշն, ազատեաց զԵսիոնէ՝ զոր Լաւո-
մեդոնի խոստացեալ էր նմա ընդ այլ բա-
զում պարգևս, բայց ապա 'ի դրժել խոստ-
մանն, Հերակղէս հար աւար զքաղաքն,
սպան զնա ինքն, և զորդի նորա զՊրիա-
մոս կալաւ գերի, զոր ապա գրաւաթափ
արարին տրովացիք, և յաջորդեաց փո-
խանակ հօր իւրոյ: Նա ամրացոյց զքա-
ղաքն պատնիշօք, և եղեն նմա որդիք բա-
զումք զորոց ետես զվախճան ընդ կոր-
ծանման բարգաւաճ տէրութեան իւրոյ:
Իսկ Եսիոնէ տուաւ 'ի Հերակղեայ 'ի կնու-
թիւն Տեղամոնի արքային Սաղամինայ՝ որ
մի էր յԱրգոնաւորդաց. Պարիս որդի
Պրիամու առ 'ի թափել զհօրաքոյր իւր՝
սպառազինեալ հրամանաւ հօր իւրոյ տոր-
միղ բազմախումբ նաւաց, եհաս 'ի Լակե-
դեմոն յարքունիս Մենեղաւեայ որդւոյ
Ատրէոսի եղբօր Ագամեմնոնեայ. և յափըշ-
տակեալ զկին նորա զՀեղինէ, դուստր
Արամազդայ և Լետովայ և քոյր Դիոս-
կուրացուցն՝ երդուաւ չդարձուցանել զնա
առ այր իւր՝ եթէ ոչ Եսիոնէ հօրաքոյր իւր
հատուսցի նմա: Սակայն իշխանք Եղլա-

դայ յամառեալ խնդրէին զՀեղինէ և ոչ կամէին տալ 'ի բաց զՆսիոնէ. վասն որոյ ամենեքին նիզակակիցք եղեն, տալ պատերազմ ընդդէմ տրովացւոց ։

Հ. Եւ ընդէ՞ր Հերա հակառակ էր տրովացւոց.

Պ. Քանզի 'ի հարսանիս Թետեայ ընդ Պեղէոսի հրաւիրեցան դիք առ հասարակ, բաց յԱրիսէ և 'ի Բելլոնայ, իսկ սոցա դժգմնեալ, առ վրէժ քինու արկին 'ի խընջոյս անդր խնձոր ոսկի, մակագրեալ 'ի վերայ նորա՝ Գեղեցկագունին ։ Եւ 'ի վիճել Հերայ, Աստղկան և Աթենասայ վասն մրցանակին, դատաւոր կացոյց նոցա Արամազդ զՊարիս որդի Պրիամու, և նա Աստղկան զխնձորն ոսկի ետ ։ Ընդ որ այնպէս ծանրացաւումն լեալ Հերայ, զի զամենայն ազգն տրովական ատեայր ոխութեամբ. մանաւանդ զի և Գանիմեդէս տրովացի զինեպաշտ լեալ Դիոսի փոխանակ Եբէի դստեր իւրոյ՝ պաշտել դից զաստուածըմպելին, գրգռէր և ևս զնախանձ նորա ։

Հ. Ո՞ էր Ոդիսևս.

Պ. Որդի Լայերտայ արքային Իթակայ և Գուեղքիայ կղզեաց յոնիական ծովուն ճարտարամիտ և խորագէտ, որ առ սէր կնոջ իւրոյ Պենելոպայ կամելով հրաժարել 'ի նիզակակցութենէ Յունաց 'ի տրովական մարտին պատճառէր զյիմարութիւն, փոխանակ արջառոց լծելով հեն-

դանիս անպատկանաւորս յարոց, և զնա-
ւազ առ եզր ծովու արօրադիր ամանելով, և
զաղ անդ փոխանակ ցորենոյ սերմանե-
լով։ Բայց Պաղամեդէս որդի Նաւպլեայ
արքային Եւբիոյ կասկածեալ զհնարսն,
զՏելեմաք զորդի նորա մանուկ ստնդեայ
առեալ եդ յակօսն առաջի խոփին։ Իսկ
Ոդիսևս առ 'ի չմեղանչելոյ մանկանն
շրջան արարեալ զնովաւ, մատնեաց զկեղ-
ծիսն, և հարկ եղև նմա գումարել ընդ
յունական բանակին։

Հ. Պատմեա ինձ զԻփիգինեայ իրսն.

Պ. Ի գումարել նաւացն Յունաց յԱւ-
ղիս գաւառ Բէովտիոյ, ուր էր զօրաժողո-
վոյ նոցա տեղի, Արտեմիս դադարեցոյց
զհողմն կարևոր նոցա 'ի նաւարկութիւն,
և ճարակեցոյց սրածութիւն 'ի զօրսն. քան-
զի զայրացեալ էր ընդ Ագամեմնոնայ ար-
քային արգիւացւոց զօրավարի նոցա, որդ-
ւոյ Ատրէոսի վասն հարկանելոյ նորա
յորս զեղն սիրելի դիցուհւոյն։ Հարցան
պատգամախօսք, և եղև պատգամ՝ զե-
նուլ զԻփիգինէ դուստր Ագամեմնոնայ 'ի
քաւութիւն։ Հարկ եղև Ագամեմնոնայ տալ
զդուստր իւր առ 'ի չգրգռելոյ զամենայն
բանակն ընդդէմ իւր. այլ իբրև մատու-
ցին զաղջիկն 'ի բագինն, գթացաւ 'ի նա Ար-
տեմիս։ և փոխանակեալ ընդ նորա զեղն,
յափշտակեաց տարաւ զօրիորդն 'ի Տաւ-
րիա՝ լինել անդ քրմուհի 'ի մեհենին իւ-
րում։

Հ. Ո՞վ էր Աքիլլէս.

Պ. Որդի դիցուհւոյն Թետեայ և Պեղէոսի որդւոյ Էակեայ, որ ընդ ծնանելն յանձնեցաւ Քիրոնի՝ որ էր հայր հանոյ նորա Ենդէիսեայ. և սնայց զնա Քիրոն ուղղովք առիւծուց, վասն որոյ Աքիլլէս անուանեցաւ՝ այսինքն է Անկերակուր, իբր ոչ սովորական կերակրովք սնեալ։ Թետիս մայր նորա մխրճեաց զնա 'ի ստիւգեան լիճն՝ անխոցելի առնել զնա, այլ քանզի զկրնկանէն ունէր զնա 'ի մխրճելն, զօրութիւն ջրոյն ոչ ներգործեաց 'ի մասն յայն մարմնոյն. ընդ որ և ընկալաւ խոց առա զմահ։ Ազդ եղև Թետեայ զօրաժողովն Յունաց ընդդէմ Տրովադայ. և զի յայտնեալ 'ի պատգամաց՝ ոչ էր մարթ նոցա առնուլ զքաղաքն զայն առանց մեռանելոյ որդւոյն 'ի պատերազմի, հնարս պէսպէս հնարեցաւ խափանելոյ զնա յարշաւանաց անտի, և թագոյց իսկ զնա 'ի Սկիրոս յարքունիս Լիկոմեդեայ 'ի մէջ դստերաց նորա 'ի ձև կանացի։ Բայց խորագիտութեամբն Ոդիսեայ 'ի յայտ եկեալ հնարիցն, իբրև ստիպեցաւ յղել զնա 'ի պատերազմն՝ ետ կազմել Հեփեստեայ սպառազինութիւնս նմա ամրածածուկս անթափանցս զինուց։ Բայց Աքիլլեայ 'ի պատերազմի անդ զըժգմնեալ ընդ Ագամեմնոնի վասն յափշտակելոյ նորա զդուստր քրմին, 'ի բաց եկաց. այլ իբրև լուաւ զմահ բարեկամին իւրոյ Պատրոկղի 'ի Հեկտորէ եղբօ-

րէ Պարիսի, զայրացեալ դարձաւ անդրէն, և սպան զՀեկտոր ։

Հ. Եւ որպէս և յումմէ՞ սպանաւ Աքիլլէս.

Պ. Ի պաշտաման քաղաքին տեսեալ Աքիլլեայ զդուստր Պրիամու զՊողիքսենա 'ի վերայ պարսպացն՝ հարաւ 'ի սէր նորա, և խնդրեաց զնա իւր 'ի կնութիւն. խոստանալով հօր նորա ձեռն տալ յօգնականութիւն ։ Ցանձն էառ զայն Պրիամոս՝ այլ 'ի հաստատել զդաշինն 'ի մեհենի տիմբրեանն Ապողոնի, Պարիս որդի Պրիամու մթերեալ 'ի մտի ունելով զոխ ընդ Աքիլլեայ՝ վասն սպանանելոյ նորա զՀեկտոր զեղբայր իւր չարաչար մահուամբ ընդքարշ ածելով զհետ կառացն, եհար զնա նետիւ՝ զոր Ապողոն ուղղեաց 'ի գարշապար նորա, և սպան զնա ։ Եւ ետուն Յոյնք զդիակամբ նորա պատերազմ սաստիկ զօրն ողջոյն. և Թետեայ լուեալ ըզմահ որդւոյն՝ դիմեաց 'ի տեղի անդ հանդերձ Յաւերժհարսամբքն յողբս, և Ներեայք շուրջ զնովաւ պար առեալ կականաւորք ընդ ինն Մուսայս լացին զնա զաւուրս եօթնեւտասն, և Յոյնք առ հասարակ ընդ նոսա ։ Եւ ապա այրեալ զդիակն նորա եդին զաճիւն նորա յոսկեղէն սափորի ընդ աճիւն դիականն Պատրոկղի մտերիմ նորին բարեկամի՝ զոր Հեկտոր սպանեալ էր. և համարեցաւ Աքիլլէս ընդ կիսաաստուածս ։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

Էաս, Աքայեան Ցրուվարոյ, Մեմնոն, Իդոմենէ, Ագամեմնոն, Փիլոկտետէս, Արկածք Ոդիսեայ։

Հ. Ո՞վ էր Էաս.

Պ. Որդի Տեղամոնի արքայ Սաղամինայ, նշանաւոր քաջութեամբ յետ Աքիլլեայ. վասն որոյ և վիճեալ ընդ Ոդիսեայ՝ իբր անկ համարէր ժառանգել զզէնս քաջին դարբնեալս 'ի Հեփեստեայ։ Այլ իբրև դատաւորք ետուն զիրաւունս Ոդիսեայ, խելայեղեալ դիմեաց 'ի դաշտ, և կոտորեաց զանդեալս՝ 'ի նոցանէ զվրէժ կարծելով առնուլ. և յուշաբերելն՝ առ ամօթոյ չոքաւ զիւրովին. և զարենէ նորա առասպելեն փոխեալ 'ի յակինթ ծաղիկ, զի յակինթ 'ի յոյն բարբառ ստուգաբանի Էաս ծաղիկ։ Եւ առասպելեն դարձեալ, թէ վահանն Աքիլլեայ անկեալ 'ի ձեռաց Ոդիսեայ 'ի ծով, և վարեալ ջեց յալեաց 'ի տեղի անդր՝ ուր թաղեալն էր Էաս, յայտ լինել այսպէս արդարեւ՝ զի նմա էր անկ։

Հ. Եւ որպէս առին Ցոյնք զքաղաքն Տրովադացւոց.

Պ. Պատճառաւանօք իբր թէ տաղտկա-

ցեալք 'ի բազմաժամանակեայ պաշարմանէն՝ կեղծաւորեցան դառնալ յետս. և կազմեալ երիվար մի մեծ փայտակերտ, և լցեալ զնա սպառազէն զօրօք, թողին զնա անդ, և ինքեանք մեկնեցան 'ի Տենեդոն կղզի: Տեսեալ տրովացւոց զհսկայաձև զերիվարն, երկեան առնուլ զայն 'ի ներքս. և Լաւոկոն ամենայն զօրութեամբ իւրով ջանացաւ խափանել զնոսա: Բայց Սինոն խրատուք Ոդիսեայ անձնամատն լեալ տրովացւոց, փարատեցոյց զերկիւղ նորա ասելով թէ ոչ առ այլ ինչ թողեալ էր Յունաց զայն՝ բայց փոխարէն թշնամանացն զոր արարին Աթենասայ՝ յափշտակելով զՊալլադիոն զպատկեր նորա երկնընկեցիկ: Խաբեցան տրովացիք, և խրամատ մեծ գործեալ 'ի պարիսպն՝ մուծին ընդ այն զերիվարն 'ի քաղաք անդր: Եւ մինչ դեռ ընկղմեալ կային յարբեցութեան որպէս թէ զերծեալ 'ի ձեռաց թշնամեաց, եբաց Սինոն զկողս ձիոյն, և խուժեցին զօրքն սպառազէնք 'ի դուրս. և 'ի հուր և 'ի սուր սպառեցին զքաղաքն: Եւ Պիւռոս որդի Աքիլլեայ, որոյ նախ քան զամենեսին մտեալ էր 'ի ձին փայտակերտ, կոտորածս մեծամեծս արար, և զնոյն ինքն զՊրիամոս սպան՝ խողխողելով անխնայ զծերունին զարքայն տրովացւոց: Եւ Պարիս հարեալ 'ի Փիլոկտետեայ միով 'ի նետից Հերակլեայ, ետ տանել զինքն յԻդաս լեառն առ կին իւր Ինոնէ յաւերժահարսն՝ զոր

թողեալն էր . և ինքն յայնժամ 'ի նմանէ թողեալ, մեռանէր ։

Հ. Ո՞ էր Մեմնոն.

Պ. Որդի Արշալուսոյ և Տիթոնի եղբօր Պրիամու, որ բիւրուք եթովպացւովք չոքաւ՝ յօգնութիւն Տրովադայ, և արար անդ արութիւնս բազումս, և սպան զԱնտիղոքոս որդի ծերունւոյն Նեստորի, և սպանաւ ինքն յԱքիլլեայ ։

Հ. Ո՞ էր Իդոմենէ .

Պ. Որդի Դևկալիոնի, առ որով դևկալիոնեան ջրհեղեղն . և էր նա մի 'ի զօրագլխաց յունական բանակին 'ի պատերազմին Տրովադայ ։ Սա 'ի դառնալն իւրում 'ի պատերազմէ անտի հանդիպեալ սաստիկ մրրկի, ուխտեաց զոհել դիցն որ նախ ընդառաջ ելցէ նմա 'ի հասանել յերկիր իւր ։ Եւ ել նմա ընդ առաջ որդի նորա, բայց ժողովուրդն չեթող նմա կատարել զուխտն. և թողեալ նորա զԿրետէ՝ ուր թագաւորէրն , մեկնեցաւ գնաց ինքնահալած 'ի Կաղաբրիա , և անդ հիմնեցոյց թագաւորութիւն նոր ։

Հ. Որպիսի՞ անցք անցին ընդ Ագամեմնոն յետ տրովական մարտին .

Պ. Մինչդեռ Ագամեմնոն 'ի պատերազմին էր , Կլիտեմնեստրա կին նորա հարաւ 'ի սէր Եգիստեայ որդւոյ Ատրէոսի թոռին Պեղոպեայ . և 'ի դառնալ նորա, խորհեցան դաւով սպանանել զնա ։ Ի միում աւուրց Կլիտեմնեստրա աղաչեաց զԱգա-

մեմեռն մերկանալ զհանդերձն փոխուզացի՛ զոր յետ առմանն Տրովադայ կրէր, և զզենուլ զգործեցեալն յիւրմէ 'ի տարակայութեան նորա, և հաւանեցաւ Թագաւորն : այլ 'ի զզենուլն զայն՝ արգելան 'ի նմա բազուկք նորա, և դաւաճանացն յարուցեալ սպանին զնա ։ Կամէին և զճետ նորա կորուսանել . բայց Ովրեստէս որդեակ նորա ապրեցաւ առ Ստրոփիոս արքայ 'ի Կոզքիս՝ որ զքոյր Ագամեմնեայ ածեալ էր կնութեան ։ Եւ ապա դարձ արարեալ յԱրգոս 'ի վրէժխնդրութիւն մահու հօր իւրոյ, եգիտ անդ զքոյր իւր զԵլեկտրա տուեալ կնութեան սոսկականի ումեք 'ի սինլքոր խուժանէն, որպէս զի մի ժառանգս ծնցի թագաւորութեան ։ Բայց Ելեկտրա համբաւ սուտ հռչակեցոյց զմահուանէ Ովրեստեայ. և իբրև Եգիստոս և Կլիտեմնեստրա չոգան 'ի մեհեան գոհանալ զդից, Ովրեստէս եմուտ անդր զօրօք, և սպան իւրովի զմայրն հանդերձ հոմանեաւն ։ Եւ յետ սուղ ժամանակի սպան և զՊիւռոս զորդի Աքիլլեայ 'ի մեհենին Ապողոնի, և Թափեաց 'ի նմանէ զԵրմիոնէ զդուստր Մենեղաւեայ հօրեղբօր իւրոյ, որ նմա էր սահմանեալ կնութեան ։

Հ. Զի՞նչ անցք անցին ընդ Ովրեստէս յետ մայրասպանութեանն .

Պ. Լլկեալ 'ի ճիւաղաց դժոխոց՝ որ հանապազ առաջի աչաց նորա նկարէին զարհաւիրս մայրասպանութեանն, եհարց

զգիս։ Նորա ետուն պատգամ գնալ 'ի Տաւրիս 'ի Սկիւթիա, և բարձեալ բերել անտի զաղտ 'ի Յունաստան զպատկերն Արտեմեայ յերկնից իջեալ, որպէս զի ազատութիւն լիցի նմա 'ի տանջանացն։ Եւ չուէ ընդ իւր Ոռեստ զՊիղադէս քեռորդի Ագամեմնոնեայ հօր իւրոյ. ընդ որում սերտ սիրելութեամբ կցորդեալ յարքունիս Ստրոփեայ հօր նորա՝ գործակից իւր ունէր զնա յամենայնի, և հասին 'ի Տաւրիս։ Օրէնք էին աշխարհին՝ յեկաց իջելոց 'ի ծովեզր անդր զոհել զմին Արտեմեայ. անդ երկոքին բարեկամք վիճեալ ընդ միմեանս՝ փոխանակ իրերաց կամելով տալ զանձինս 'ի մահ՝ վիճակաւ սահմանեցաւ մահ Ոռեստեայ։ Եւ իբրև մատուցանէր զնա քրմուհին Իփիգենէ 'ի բագին անդր, ծանեաւ զնա զի եղբայր իւր էր. և սպանին ըզԹոասս թագաւոր երկրին՝ որ և քրմապետն էր Արտեմեայ, և փախեան երեքեան 'ի միասին՝ բարձեալ զպատկերն ընդ իւրեանս։ Եւ ապա Ոռեստէս ազատեալ 'ի չկանացն, և առեալ իւր կնութեան զԷրմիոնէ, և հարսնացուցեալ Պիղադայ ըզքոյր իւր, թագաւորեաց ոչ միայն յԱրգոս և 'ի Միկենս՝ այլ և զՍպարտա յաւել 'ի սահմանս իւր։

Հ. Ո՞ էր Եգիսթոս.

Պ. Որդի Թիեստեայ և դստեր նորա Պեղոպեայ։ Մայր նորա առ 'ի ծածկել ըզչարիսն՝ ընկէց զտղայն յանտառս. և ու-

րումն 'ի հովուաց գտեալ զնա՝ անոյց կաթամբ այծից. վասն որոյ և կոչեցաւ մանուկն Եգիսթոս, որ թարգմանի Այծաբոյծ։ Եւ 'ի յարբունս հասանել նորա, եղև այր զօրաւոր. և սպան նա զհօրեղբայր իւր զԱտրէոս, և զորդի նորա զԱգամեմնոն։ Այլ ապա սպանաւ և ինքն յՈվրեստեայ որդւոյ Ագամեմնոնի։

Հ. Պատմեա ինձ զանցս Ոդիսեայ.

Պ. Ոդիսևս ակամայ ստիպեալ երթալ 'ի պատերազմն Տրովադայ, զօրավիգն եղև յառումն քաղաքին խորագիտութեամբ իւրով՝ որչափ Էաս և Դիոմեդէս քաջութեամբ։ Զամս տասն կրեալ նորա զվիշտս պաշարմանն, ապա նոյնչափ ևս ամս ընդդէմ արկածից բախտին մարտեաւ. և անցք նորա Ոդիսական գրոցն Հոմերի ետուն պատճառս։ Վարեալ նորա 'ի մրրկէ յերկիրն Լուտասակերաց յԱփրիկէ, բազումք յընկերաց նորա կերեալ զլուտաս՝ ոչ ևս կամեցան դառնալ 'ի հայրենիսն. քանզի առասպելեն զբուսոյս, զի որ ուտէ ոք յայնմանէ՝ մոռանայ զհայրենիսն։ Եւ 'ի Սիկելիա Պողիփեմոս 'ի Կիկղոպայց հռչակաւոր եկեր զվեց յընկերաց նորա. իսկ Ոդիսեայ, զոր յետ ամենեցուն կլանելոցն էր, արբեցուցեալ զնա, և խլեալ զակն նորա՝ որ միակ էր 'ի ճակատուն, զերծաւ 'ի ձեռաց նորա մազապուր։ Դարձեալ և արեգակն՝ յարոյց ընդդէմ նորա մրրիկ, փոխանակ զի ընկերք նորա առ քաղցի

յափշտակեցին զհօտ Փայետոուսայ զստեր իւրոյ . և կորեան ամենեքեան 'ի մրրկէ անտի բաց յՈդիսեայ , որ բուռն հարեալ 'ի տախտակ մի՝ զերծաւ յՈգիգիա կղզի , ուր Կալիփսով յաւերժահարսն ընկալաւ զնա , և զեօթն ամ կալաւ զնա առ իւր ։ Բայց նա ընտրելագոյն համարեցաւ զՊենելոպէ զկին իւր հաւատարիմ և զհայրենիսն՝ քան զդիցուհին և քան զխոստացեալ 'ի նմանէ զանմահութիւնն ։ Եւ հասեալ յետ բազում այլ ևս արկածից 'ի հայրենիս իւր , և սպանեալ զամենայն հրապուրիչս կնոջ իւրոյ , թագաւորէր խաղաղութեամբ 'ի կղզւոջ իւրում ։ Այլ ապա սպանաւ 'ի միոջէ յորդւոց իւրոց յանծանօթս ։

## ԳԼՈՒԽ ԺԶ

### Ենէաս և յաջորդք նորա, Դիդէ, Սիբիլլայք.

Հ. Ո՞ էր Ենէաս .

Պ. Տրովայ արքայի եղեն որդիք երեք , Իղոս , Գանիմեդէս և Ասարակոս ։ Ասարակեայ որդի Կապիս , և սորա Անքիսէս , որ ծնաւ յԱստղկանէ զԵնէաս , որպէս վիպեն առասպելք ։ Յառնուլ Տրովադայ փախուցեալ սորա ընդ հօր իւրում Անքիսեայ և ընդ Ասկանեայ որդւոյ իւրում 'ի նաւահանգիստ ուրեք Փռիւգիոյ ոչ ինչ կարի

հետի յիպաս ընռնէ՝ եմուտ 'ի նաւ դէմ ն-
դեալ 'ի Թրակիա, անտի յԵպիրոս, ան-
տի 'ի Միկիլիա՝ ուր մեռաւ հայր նորա Ան-
քիսէս, և անտի յերկիրն Լատինոսի։
Ուր իբրև այն ինչ մերձեալն էր, յարոյց
ընդդէմ նորա Եւողոս ըստ Թախանձա-
նացն Հերայ մրրիկ սաստիկ, որ ցան և
ցիր զնաւատորմ նորա արար։ Բայց նաւն
Ենէասայ վարեցաւ 'ի Կարքեդոն. և անդ
հանգուցեալ առ ժամանակ մի, անց ան-
դրէն 'ի Միկիլիա կատարել զտարեդարձ
մահու հօր իւրոյ. և 'ի Կումա հարցեալ
զՍիբիլլայն, եհաս 'ի բերան Տիբերի, և
միջամուխ եղև մինչև յաշխարհն Լաւրեն-
տայ։ Խորհէր նա հաստուած 'ի Թրակիա
բնակել, և շինել անդ քաղաք. բայց դիք
կոչեցին զնա յիտալիա. սակայն բազում
ինչ խափան եղեն նմա 'ի գնալն, մինչև
եհաս անդր։

Հ. Ո՞ էր Դիդէ և զի՞նչ անցք նորա.

Պ. Դիդէ էր դուստր Բեղոսի արքային
տիւրացւոց, կին Ակերբայ կամ Միքէոսի
ընչաւէտ քրմի։ Սա 'ի բռնանալ Պիգմա-
լիոնի եղբօր իւրոյ՝ սպանանելով զայր իւր
զՄիքէոս՝ առ 'ի ժառանգել զգանձս նո-
րա, երկուցեալ 'ի մոլեգնութենէ եղբօրն՝
ժողովեաց որչափ ինչ կարէր յընչից առն
իւրոյ, և մեկնեցաւ 'ի Կիպրոս. և անտի ան-
ցեալ յԱփրիկէ՝ շինեաց անդ զԿարքեդոն
քաղաք, և հզօրացեալ եկաց տիրուհի
աշխարհին։ Ի հնչել համբաւոյ նորա ընդ

ամենայն տեղիս, յղեաց առ նա Յարբաս թագաւոր գետուլացւոց, և կամէր զնա կնութեան՝ պառնալեօք պատերազմի։ Իսկ նա, որ 'ի սէր առն իւրոյ Սիքէոսի անցուցանէր զաւուրս իւր 'ի սուգ, և ուխտեալ էր չլինել առն այլում, ժամադիր եղև՝ տալ յետ երից ամսոց պատասխանի։ Եւ ետ կանգնել փայտակոյտ մեծ, և նուիրեալ 'ի խարոյկ անդր նուէրս բազումս 'ի պատիւ առն իւրոյ, ել անդր սուսեր 'ի ձեռին, և չոգաւ զիւրովին։ Աւանդեն 'ի գործոց քաջութեան առեալ սորա զանունն Դիդէ, որ թարգմանի կին քաջ. զի առաջին անուն նորա էր Եղիսա։

Հ. Եւ որպէս յաջողեաց Ենէասայ բնակեցուցանել զգաղթական իւր յերկրին Լատինոսի.

Գ. Լատինոս ընկալաւ զնա սիրով, և զդուստր իւր զԼաւինիա խօստացաւ նմա կնութեան։ Բայց Տուրնոս արքայ Հռուտուլաց՝ ազգական և սիրելի Ամատայ տիկնոջ Լատինոսի՝ յուսալով առնուլ իւր 'ի կնութիւն զԼաւինիա, եղև ոխերիմ թշնամի Ենէասայ։ Այլ դիւցազինն տրովացւոց գըտեալ ուստեք ուստեք օգնականութիւն մանաւանդ, 'ի մօրէ իւրմէ յԱստղկանէ՝ որ եղև զօրաւիգն նմա ընդդէմ Հերայ ոսոխի տրովացւոց, եւ ընդդէմ Նորա. և յաղթեալ նմա պատերազմաւ՝ էառ իւր կնութեան զԼաւինիա, և ժառանգեաց զթագաւորութիւն Լատինայ, և շինեաց զԼաւինիոն քաղաք

յանուն կնոջ իւրոյ։ Եւ սպանաւ Ենէաս 'ի պատերազմի ուրեք 'ի Տուսկաց. բայց այլք կորուսեալ զնա ասեն 'ի Նումիկիոն գետ, վասն որոյ համարեցաւ դասակարգեալ 'ի Դիոսէ ընդ դիս ըստ աղաչանաց Ասողկան։

Հ. Եւ ո՞յք եղեն յաջորդք Ենէասայ.

Պ. Յետ մահուն նորա թագաւորեաց Յուլոս, որ և Ասկանիոս, որդի նորա՝ ծնեալ 'ի Կրեւսայ։ Սա ինքն կառոյց զքաղաքն Ալբա, որ թարգմանի սպիտակ. ըստ յառաջագոյն ազդեցութեան պատգամաց. զի 'ի զոհել երբեմն Ենէասայ գտց զխոզ մատակ սպիտակաստե, զերծեալ զոհին 'ի բագնէն՝ դիմեաց 'ի բլուր մի, և ծնաւ անդ խոճքորս երեսուն. և յայտնեցաւ Ենէասայ պատգամաւ, զի յետ երեսուն ամի 'ի տեղւոջ անդ շինելոց էր քաղաք։

Յուլոս 'ի խնդիր եղև մօրուին իւրոյ Լաւինիայ, որ փախուցեալ էր յերեսաց նորա յանտառս, և դարձոյց զնա մանկամբն՝ զոր անդ ծնեալ էր, որ և կոչեցաւ Սիլուիոս՝ այսինքն է անտառային, և Պոստումոս՝ որ թարգմանի յետին, զի յետ մահուան հօր իւրոյ և յետին յորգիս նորա ծնաւ։ Եւ թէպէտ Յուլոսի գոյր որդի, բայց ժողովուրդն թագաւորեցոյց զՍիլուիոս, քանզի Ենէաս 'ի մօրէ նորա ժառանգեաց զթագաւորութիւն. իսկ որդւոյ Յուլոսի տուաւ քրմապետութիւն յազգէ յազգ. և

յաջորդէ նորա էր Յուլիոս Կեսար ։ Եւ ամենայն յաջորդք Ենէասայ մինչև ցՆումիտոր հաւ Հռոմուլեայ եղեն չորեքտասան, որք թագաւորեցին յերկրին Լատինոսի ։

Հ․ Ո՞յք էին Սիբիլլայք ․

Պ․ Կուսանք ոմանք մարգարէուհիք կարծեցեալք, որք էին ըստ Վարրոնի և ըստ Լակտանտեայ տասն․ պարսկայինն, լիբիականն, դեղփեանն, կումայն իտալացի, երեթրեանն, սամեցին, կումայն եւոլացի, ելլեսպոնտականն՝ որ առ Տրովադիւ և Կրեսեաւ, փռիւգացին՝ որ յԱնկիւրիա բնակէր, և տիբուրականն ։ Գերահռչակեալն ՚ի սոցունց էր կումականն, որ ՚ի Կումս քաղաք Իտալիոյ բնակեալ. և ոմանք յարդեաց առ տի գիտնոց համարին՝ զի չիցէ լեալ այլ ոք Սիբիլլա բաց ՚ի սմանէ, և զի իրք սորա և է վայրաց ՚ի վայրս ուղևորութիւնք համարեալ իցեն և այլոց ։ Արդ սա ՚ի Նկուղ մի մեհենին Ապողոնի տայր զպատգամս․ և էին ՚ի տեղւոջ անդ հարիւր դրունք, ընդ որս ձայնք ահագինք հնչեցեալ՝ ազդէին զգուշակութիւնս մարգարէուհւոյն ։ Սա ինքն էր և քրմուհի Եկատեայ, տեսուչ ՚ի նմանէ կացեալ անտառացն դժոխոց․ նմին իրի Վիրգիլիոս առ նա ածէ զԵնէաս ՚ի ստորէջսն ՚ի սանդարամետս ։ Որում և մեհեան կանգնեցին հռոմայեցիք ՚ի տեղւոջ ուր զպատգամսն տայր, և պաշտէին զնա որպէս զմի ՚ի դիցուհեաց․

և զպատգամս նորա գրեալս հեղլեն տաղիւ, որպէս և այլ ամենայն պատգամք Սիբիլ-լայից էին գրեալ, բազում զգուշութեամբ պահէին 'ի ծածուկ, հաւաքեալ 'ի մի գիրս, և պահապանք հնգետասան սահմանեալ էին 'ի պահն ։ Եւ այնպէս հաւատարիմ էին նոցա պատգամքն, զի յամենայն դէպս կարևորս դիմէին առ այնոսիկ և առ այ-լոց Սիբիլլայիցն պատգամս, որ բազմա-դիմիք էին և առ ամենայն ժամանակս և դէպս պատկանաւորք. և աւագանին տայր նոցա իմաստս ըստ կամի, և յեռայր 'ի նո-սա ըստ պիտոյից իւրաց ժամանակին՝ որ ինչ հաճոյ թուէր նմա ։ Որպէս կուսակիցք Կեսարու յաւելին՝ թէ նուաճումն Պար-թևաց պահեալ էր հռովմայեցւոյ ումեք թագաւորի, որպէս զի թագաւոր զնա ծո-ղովուրդն անուանեսցէ ։

Արդ գիրք պատգամացս այսոցիկ, յորոց և սուրբ հարք ածէին վկայութիւնս ինչ ընդդէմ հեթանոսաց իբր ընդունելիս նո-ցա, ոչ են են 'ի միջի. այլ որ այժմս կան, 'ի գնոստիկեանցն աղանդաւորաց ծախո-ղակի կրօնասիրութեանէ յերկրորդումն դա-րու քրիստոնէութեան յերիւրեալ են ըստ նմանութեան կորուսելոցն, և յաւելեալ 'ի նոսա կանխատացութիւնք զՔրիստոսէ. որ ամենայն հանդամանօք զխաբէութիւն յօրինողացն նշաւակեն ։

## ԳԼՈՒԽ ԺԵ

Դևկալիոն, Արձագանգ, Նարկիս, Ատալանտա, Մեղեագրոս, Միդաս, Արիստեոս, Կիրկէ, Եպիմենիդէս, Գորդեան հանգոյցն, Մաւսոլէոն, Կղէոպիս և Բիտոն, Հիպնոս, Պանդորա, Ոսիրիս:

Հ. Ո՞ էր Դևկալիոն.

Պ. Որդի Պրոմեթեայ և Պանդորայ, և կին նորա Պիւռա դուստր Եպիմեթեայ։ Զսա Դիոս վասն կրօնաւորութեանն պահեաց հանդերձ կնաւն իւրով ՚ի կորուսանելն ջրհեղեղաւ զազգ մարդկան, և ապրեցան նոքա մակուկաւ ՚ի վերայ Պառնասեայ լերին։ Իսկ ՚ի դադարել ջրհեղեղին, հարցին զքուրմն Թեմեայ մօր Աստրէայ վասն բազմանալոյ անդրէն ազգի մարդկան. և նա ետ պատգամ, ընկենուլ ՚ի թիկունս իւրեանց զոսկերս մայրենիս։ Խելամուտ եղև Դևկալիոն իմաստից բանին, զի ոսկերք մայրենիք էին քարինք երկրի, որ է մայր հասարակաց, և ՚ի կատարել նոցա զպատուէր քրմին՝ քարինք ՚ի նմանէ ընկեցեալք փոխեցան յարս, իսկ որ ՚ի կնոջէն ընկեցեալք՝ փոխեցան ՚ի կանայս։

Հ. Ո՞ էր Արձագանգ, և արտաքնոցն զինչ կարծիք էին զնմանէ.

Պ. Էր նա յաւերժահարսն հանճարեղ յոյժ, որ հաճոյ եղև Հերայ. և զբաղեցուցանէր զնա 'ի վէպս՝ տալով պարապ Դիոսի զուարճանալոյ ընդ սիրուհիս իւր: Բայց Հերայ ղգացեալ զխաբէութիւնն, եբարձ 'ի նմանէ զբարբառ. և դատապարտեաց զնա չկարել երբէք բարբառել՝ բայց զհետ այլոյ ուրուք կրկնելով եւեթ զյանգ խօսիցն: Հարաւ նա 'ի սէր Նարկիսեայ, և շրջեալ ընդունայն զհետ նորա յանտառս՝ մեռաւ առ վշտին, և ոսկերք նորա փոխեցան 'ի վէմս:

Հ: Ո՞ էր Նարկիս.

Պ. Որդի Կեփիսեայ գետոյ և յաւերժահարսին Լիրիոպեայ. եղև 'ի ծննդեանն նորա պատգամ՝ երկայնակեաց զոլոյ նմա մինչև ցալևորեալ ծերութիւն՝ եթէ միայն անտես լիցի յաչաց մարդկան: Տարփացան նմա յաւերժահարսունք առ հասարակ, և մանաւանդ Արձագանգ. այլ նա արհամարհեաց զնոսա, նմին իրի և պատուհասեալ զնա ասեն: Զի 'ի դառնալ երբեմն յորսոց խոնջ և պապակեալ, մատեաւ յաղբիւր, և տեսեալ 'ի նմա զպատկեր իւր՝ այնպէս հարաւ 'ի գեղ նորա, մինչև մեռանել 'ի կրիցն: Գթացեալ 'ի նա դից, փոխեցին զնա 'ի ծաղիկն անուանակիր նորա, որ և նուիրեցաւ Եւմենեայց:

Հ. Ո՞ էր Մեղէագրոս.

Պ. Որդի Ենէոսի արքային Ետողիոյ: Մինչ մայր նորա Ալթէա յերկունս էր,

Գարկոյք եդին խանձող մի 'ի հուր, և զուգաւոր ընդ խանձողին այնմիկ վճռեցին զկեանս մանկանն՝ որ հանդերձեալ էր ծնանել։ Բայց Ալթէա 'ի բաց էառ զխանձողն 'ի հրոյն, և շիջուցեալ պահէր զնա զգուշութեամբ։ Մեղէագրեայ 'ի ժամանակին յայնմիկ զոհս գոհացողականս մատուցանելով դից վասն առատութեան տարւոյն, ոչ ինչ զոհեաց Արտեմեայ. և դիցուհւոյն զայրացեալ, արձակեաց կինճ մի վայրենի՝ ապականել զերկիրն շուրջ զԿալիդոնեաւ։ Թեսէոս, Յասոն, Կաստոր և Պողիկևտիս և ամենայն քաջք Ելլադայ գումարեցան 'ի վերայ գազանին, և Մեղէագրոս առաջնորդ նոցա, որ և սպան զգազանն։ Բայց քանզի Ատալանտայ տարփածուի նորա տուեալ էր գազանին զառաջին հարուածսն, սովին պատճառանօք Մեղէագրոս նմա պարգևեաց զկառափն գազանին. և եղբարցն Ալթէայ 'ի նախանձ մտեալ խորհեցան յափշտակել զայն յԱտալանտայ, և աստի գրգռեցաւ մարտ. և Մեղէագրեայ սպանեալ զնոսա, էած իւր կնութեան զԱտալանտա։ Յայնժամ Ալթէա վասն սիրոյ եղբարցն մոռացեալ զգութ մայրենի, արկ զօրհասական խանձողն 'ի հուր. և զոյգ ընդ նմին մաշեալ իբրև 'ի հրոյ աղիքն Մեղէագրեայ սպառեցան։ Բայց Ալթէա տանջեալ 'ի խղճէ, չոգաւ զխուրովին։

Հ. Պատմեա ինձ զանցս Միդասայ.

Պ. Միդաս էր արքայ փռիւգացւոց. և յանցանել Դիոնիսի ընդ սահմանս նորա յորժամ արշաւէրն 'ի Հնդիկս, գիտելով Միդասայ՝ զի Սիղենոս դաստիարակ նորա գինեմոլ էր, եղխեցոյց գինի 'ի միոջէ յաղբերաց. ուստի Սիղենեայ արբեալ գինեհատեցաւ և հարկ եղև նմա կալ մնալ յարքունիս անդ։ Եւ 'ի դառնալ Դիոնիսի յարշաւանացն անդրէն, այնքան գովեաց զհիւրընկալութիւն Միդասայ, զի Դիոնիսոս խոստացաւ տալ նմա որ ինչ և խնդրեսցէ։ Իսկ Միդաս խնդրեաց զի յոր ինչ և մերձեսցի՝ ոսկի լինիցի. և կատարեցան իղձք նորա, այլ կերակուր իսկ 'ի հպել 'ի բերան նորա ոսկիացեալ լինէր, վասն որոյ տանջէր նա սովալլուկ։ Դիմեաց անդրէն առ Դիոնիս, և նա պատուէր ետ նմա առ 'ի դարման չարեացն՝ լուանալ 'ի Պակտողոս գետ, ուրում հաղորդեալ զօրութեան նորա, մինչև ցայժմ ալիք գետոյն խառն ընդ աւազոյ բերեն ոսկի։

Պան ընդ Ապողոնի եկն երբեմն 'ի պայքար նուագաց, և դատաւորք կացին Միդաս և Տմողոս արքայ լիւդացւոց. Պան հնչեցոյց զսրինգ իւր, և Ապողոն զմայլեցոյց քնարաւն զամենայն լսելիս։ Տմողոս յաղթող դատեցաւ զԱպողոն, իսկ Միդասայ հաճոյ ևս թուեցան հովուական նուագքն։ Ընդ որ զայրացեալ Ապողոնի բուսոյց Միդասայ ականջս իշոյ։

Հ. Ո՞ էր Արիստէոս.

Գ. Որդի Ապողոնի և Կիւրենեայ յաւերժահարսին արքայ արկադացւոց. որ եղև առաջին մեղուաբոյծ, և ուսոյց 'ի կիր առնուլ զմեղր, մակարդել զկաթն, տընկել զձիթենիս, և այլ ինչ ինչ կարևոր առ 'ի կեանս մարդկան։ Կորեան երբեմն յախտէ պարք մեղուաց նորա. իսկ նա դիմեաց առ մայր իւր Կիւրենէ, և Կիւրենէ յղեաց զնա առ Պրոտէոս՝ հարցանել զնա վասն գիւտի վերածնութեան մեղուաց։ Բայց խրատ ետ նմա հասանել 'ի վերայ ծերունւոյն մինչ դեռ 'ի քուն կայր, և կապել զնա զի մի խուսափեսցէ կամ կերպափոխեալ ծածկեսցի յաչաց։ Եւ Արիստեայ արարեալ ըստ բանի մօրն, ուսաւ 'ի Պրոտեայ զհընարս կենդանածնելոյ զմեղուս. որպէս քաջ նկարագրէ զայս Վիրգիլ 'ի մշակականին։

Հ. Ո՞ էր Կիրկէ.

Գ. Դուստր արեգական և Պերսիդայ յաւերժահարսին. քոյր Այետայ արքային Կողքիսացւոց, վհուկ հռչակաւոր՝ որ արբուցմամբ դեղոց փոխէր զմարդիկ 'ի կերպարանս անասնոց։ Նա ամուսնացեալ ընդ արքային սարմատացւոց, դեղամահ արար զնա. և 'ի բռնակալել իւրում, հալածեցաւ 'ի բնակչաց երկրին. և փախըստեայ անկեալ յԻտալիա, բնակեցաւ 'ի Լատեան լեառն յերկրին Վոլսկաց. ուր ընթանային առ նա բազումք 'ի հեռաւոր վայրաց վասն համբաւոյ կախարդութեան

նորա : Սա և զընկերս Ոդիսեայ դարձոյց ի կերպարանս անասնոց. բայց Ոդիսևս զերծաւ 'ի հնարից նորա 'ի ձեռն բանջարոյ իրիք զոր ետ նմա Դիոս, և կոչէր այն Մոլի. և սուսեր 'ի ձեռին ստիպեաց սպառնալեօք զԿիրկէ դարձուցանել անդրէն զընկերս իւր յառաջին կերպարանսն: Եւ ապա ածեալ իւր զնա 'ի կնութիւն, ծնաւ 'ի նմանէ զՏեղեգոնոս :

Հ. Ո՞ էր Եպիմենիդէս.

Պ. Իմաստասէր կրետացի, որ վասն մենակեաց առանձնութեանն և բազմապատիկ գրուածոցն ստացաւ անուն մեծ իբր պատգամախօս դից, մինչև Պղատոնի կոչել զնա այր դիցանման. և Առաքեալն 'ի նմանէ իսկ ածէ զբանն. « Կրետացիք « հանապազ ստեաք, չարագազանք, դատար- « կափորք »: Արդ զմանէ առասպելեն նմջեցեալ զամս յիսուն, և 'ի զարթնուլ նորա ամենայն ինչ կերպարանափոխ լեալ էր. և 'ի սմանէ իսկ իւրմէ արտաքսէր, բայց եղբայր մի նորա կրտսեր՝ որ զառամեալ իսկ էր՝ ծանեաւ զնա: Եւ 'ի հնչել համբաւոյն, դիմէին առ նա ամենեքին՝ որպէս առ բարեկամ դից և պատգամախօս :

Հ. Զի՞նչ էր Գորդեան հանգոյցն.

Պ. Գորդիոս էր հայր Միդասայ արքային փռիւգացւոց. սորա առեղն կառացն այնպիսի դժուարակնճիռ հանգուցիւ էր զօդեալ ընդ ծոց կառացն. զի ոչ զսկիզբն

նորա և ոչ փծայր հնար էր ումեք գտանել, և նուիրեաց զայն Թագաւորն 'ի մեհեան Ապողոնի։ Եւ եղև պատգամ, զի որ զհանգոյցն զայն լուծանէր՝ նա հանդերձեալ էր նուաճել զԱսիա։ Վասն որոյ Աղեքսանդր մակեդոնացի եհատ զայն սուսերաւ փոխանակ լուծանելոյ։

Հ. Ընդէ՞ր չիրիմք մեծակառոյցք Մաւսոլէոնք կոչին.

Պ. Զանզի Մաւսոլ էր արքայ Կարիոյ. և Արտեմիսիա գշխոյ նորին ետ կառուցանել նմա շիրիմ այնպիսի՝ որ ընդ եօթն հրաշակերտս աշխարհի 'ի համարի եղև։ Զորեքհարիւր և մետասան ոտնաչափ էր շրջապատ նորա, և բարձրութիւն նորա հարիւր և քառասուն ոտնաչափ։ Զորեքին գերահռչակ ճարտարապետք Ելլադայ կանգնեցին զայն. բայց Արտեմիսիա և ոչ զայն շատ համարեալ, հրաւիրեաց զամենայն երևելի քերթողս. և զճարտարախօսս առ 'ի պանծացուցանել զյիշատակ առն իւրոյ, մրցանակս մեծամեծս առաջի եդեալ նոցա. և զաճիւն առնն իւրոյ խառնեալ 'ի բաժակի էարբ։

Հ. Ո՞յք էին Կղէովպիս և Բիտոն.

Պ. Որդիք քրմուհւոյ ուրումն արգիացւոյ, որք 'ի կառս մօր իւրեանց լծեցան առ 'ի չգոյէ ձիոց, և տարան զնա 'ի մեհեան։ Իսկ մայր նոցա խնդրեաց 'ի դից շնորհել նոցա փոխարէն մայրասէր մեծարանացն, որ ինչ 'ի վեր է քան զամենայն բարիս. և

դիք ետուն նոցա երագահաս մահ, իբր այն թէ երանութիւն մարդոյ հաստատեալ իցէ յազատութեան ևեթ 'ի վշտաց կենցաղոյս :

Հ. Ո՞ էր Հիպնոս.

Պ. Համարեալ աստուած քնոյ, որդի Երեբոսի և գիշերոյ, եղբայր մահուան և յուսոյ, բնակեալ 'ի Կիմմերեան լերինս. և նկարագրի պատկեալ կակաչիւք 'ի խաւարչտին այրի, ընկողմանեալ 'ի մահիճս յոպնիազ փայտից, և շուրջ զնովաւ երազք թռուցեալք: Մորփէոս էր նորա որդի, անուանեալ թագաւոր դից և մարդկան. և նկարի պատանեակ 'ի քուն, և փունջ մեկոնից 'ի ձեռին նորա :

Հ. Պատմեա ինձ զՊանդորայ առասպելսն.

Պ. Պանդորա առաջին կին եկաց յաշխարհի, ստեղծեալ 'ի Հեփեստեայ հրամանաւ Դիոսի : Եւ 'ի կալ նորա առաջի դից քող արկեալ զերեսօքն, իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ մեծարեաց զնա պարգևօք, նմին իրի և Պանդորա անուանեցաւ, այսինքն է Ամենապարգև : Աթենաս ետ նմա զիմաստութիւն, Ապողոն զերաժշտութիւն, Հերմէս զճարտարխօսութիւն, և այլք այլ պարգևս : Եւ 'ի գողանալ Պրոմեթեայ ըղհուրն յերկնից առ 'ի կենդանագործել զիւրաստեղծ մարդիկն, բարկացեալ Դիոսի՝ յղեաց առ նա յերկնից զՊանդորա. ունելով 'ի ձեռին անօթ ամրափակ՝ յորում

էին ամենայն թշուառութիւնք ։ Պրոմե֊
թեայ զգացեալ զվտանգն, չէառ յանձն
բանալ զանօթն. այլ Եպիմեթէոս եղբայր
նորա բարելից զանօթն զայն կարծեցեալ,
եբաց զայն, և անդէն զեղան յաշխարհ
աղէտք և թշուառութիւնք ։ Նա թէպէտ
փութացաւ խնուլ զայն անդրէն, այլ յոյս
միայն 'ի յատակ անօթոյն էր մնացեալ ։ Ի
նախամայրն Եւայ ամենայն հանգամանօքն
ակնարկեն առասպելքս այս ։

# ՉՈՐՐՈՐԴ ԿԱՐԳ

## ՑԱՂԱԳՍ ԼԱՒՈՒԹԵԱՆՑ ԵՒ ՑՈՌՈՒԹԵԱՆՑ ԴԱՍԱԿԱՐԳԵԼՈՑ ԸՆԴ ԴԻՍ

---

### ԳԼՈՒԽ ԺԶ

*Բախտ, Համբաւ, Աստրէա, Արպոկրատ, Վակոնա, Նիկիա, Դիք ոսրոտակրանք, Բեղլոնա, Երոնիա, Աշերոշենկեան դիք.*

*Հ. Ո՞ էր Բախտն.*

*Պ. Դուստր Ովկիանու, մի 'ի յաւերժահարսանց՝ որք ընդ Պերսեփոնեայ քաղէին ծաղկունս՝ յորժամ յափշտակեցաւ նա. և համարէր իշխեցող դիցն ամենեցուն: Մերթ նկարագրէր նա 'ի կերպարանս կընոջ ամաղթեղջիւր 'ի ձեռին, և երկինք զգլխով. և մերթ 'ի կերպարանս պատուոյ, հուր յաջում ձեռին, և 'ի ձախումն ջուր. է զի կոյր ոմն մանուկ՝ ունելով թևս յոտս, և միով յոտից կացեալ ուղղորդ 'ի գընտի. և է զի դարձեալ՝ օրիորդ յեցեալ յանւոջ: Հռոմայեցիք՝ 'ի Յունաց առեալ զպաշտօն սորա, յայլևայլ դէմս պաշտէին*

զնա. զի այլ էր առ Նոսա Բախտ աջողակ և այլ ճախողակ, այլ արանց և այլ կանանց, այլովքն հանդերձ. և ամենեցուն սոցա այլևայլ մեհեանք էին: Յորոց առնական բախտին մեհեան այժմ փոխեալ յեկեղեցի սրբոյն Մարիամու եգիպտացւոյ 'ի Հռոմ, է 'ի ձեռս մերոյ ազգիս, պահելով զձև հնոյ ճարտարապետութեանն:

Իսկ Հարկն համարէր մայր Բախտի, և Նկարագրէր 'ի կերպարանս կնոջ, ունելով ձեռս պղնձիս, և բևեռս 'ի ձեռին երկայնս:

Հ. Ո՞ համարէր Համբաւ.

Պ. Դուստր Տիտանայ և երկրի, պաշտեցեալ իբրև զմի 'ի դիցուհեաց. և նկարագրէր բազմաչեայ, և թևք նորա և փետուրքն առ հասարակ լի ակնջօք և լեզուօք:

Հ. Ո՞ էր Աստրէա.

Պ. Աստուածուհի արդարութեան, որ յոսկեղինին դարուն բնակէր 'ի վերայ երկրի. այլ ապա յանիրաւութեանց մարդկան հալածեալ՝ ել յերկինս, և եկաց 'ի Զոդիակին 'ի կերպարանս Կուսի ընդ համաստեղս, թողեալ զվերջին հետս իւր 'ի չէնս ըստ Վիրգիլեայ: Նկարագրէր նա կոյս ահաւորահայեաց՝ կշիռ 'ի միում ձեռին, և 'ի միւսումն սուսեր:

Հ. Ո՞ էր Նեմեսիս.

Պ. Նեմեսիս պաշտօնեայ էր Աստրէայ

աստուածուհւոյն արդարութեան 'ի պատուհասել զանիրաւս. և նկարագրէր նա թեւաւոր՝ 'ի նշանակ երագ հասանելոյ իւրոյ 'ի վերայ անիրաւութեանց:

Հ. Ո՞ էր Արպոկրատ.

Պ. Արպոկրատ եգիպտացւոց, զոր Յոյնք Սիգալիոն կոչէին, էր աստուած Լռութեան՝ որդի Ոսիրեայ. և նկարագրէր այր՝ զմատն 'ի վերայ շրթանց ունելով: Անդրի նորա առ դրունս մեհենաց կանգնէր, իբր պատուիրելով մտանողաց պահել անդ լռութիւն, և կամ ըստ Պլուտարքեայ՝ մի՛ ճառել զանհաս բնութենէ դից:

Հ. Ո՞ էր Վակոնա.

Պ. Աստուածուհի պղերգութեան, որում կրայս և խղնջանս մատուցանէին հեթանոսք 'ի զոհ: Եւ հակառակ նորին Ագենորիա կամ Ստրենուա պաշտէր որպէս աստուածուհի ժրութեան:

Հ. Ո՞ էր Նիկիա.

Պ. Նիկիա ըստ Յունաց, և ըստ լատինացւոց Վիկտորիա, էր աստուածուհի յաղթութեան. և նկարագրէր 'ի կերպարանս կնոջ՝ ունելով արմաւենի 'ի միում ձեռին. և 'ի միւսումն պսակ: Իսկ 'ի խելս նաւաց նկարագրեալ ցուցանէր զյաղթութիւն 'ի նաւամարտի:

Հ. Ո՞յք էին դիք Ուրուականք.

Պ. Ուրուականք, զորս Լատինք կոչէին Մանէս, էին ոգիք պահապանք մեռելոց, և ստուերաց նոցա՝ որ շուրջ զգերեզմա-

նօքն յածէին ըստ հաւատոց հեթանոսաց։ Վասն որոյ 'ի վերայ գերեզմանաց քանդակէին միշտ սկզբնատառք բառից Դից Ուրուականաց. և հեղուին նոցա յաճախ նըւէրք զգերեզմանօք։

Հ. Ո՞ էր Բելլոնա.

Պ. Աստուածուհի պատերազմի. քոյր Արիսի, որ պատրաստէր զկառս եղբօրն 'ի հեծանել նորա 'ի պատերազմ։ Նկարագրէր նա հերարձակ, և ջահ 'ի ձեռին։ Քուրմք նորա Բելլոնականք անուանեալ ցտէին զմարմինս իւրեանց՝ նուիրելով նմա զարիւնն հոսեալ 'ի վիրաց անտի։

Հ. Ո էր Փերոնիա.

Պ. Աստուածուհի ազատութեան, զոր պաշտէին մանաւանդ ստրուկք։ Հռոմայեցիք կառուցին նմա մեհեանս բազումս, և կանգնէին նմա անդրիս ամենայն ուրեք. և էր նշանակ նորա գլխարկ 'ի ձեռին։

Հ. Ո՞յք էին Աւերունկեանքն անուանեալ դիք.

Պ. Զսոսա Հռոմայեցիք պաշտէին առ 'ի զերծանել 'ի չարեաց, զի զօրութիւն էր նոցա զչարիս ևեթ գործելոյ։ Ընդ սոսա 'ի համարի էին Երկիւղ, Դալուկն, Տենդ, Մրրիկ, Զրպարտութիւն, Աղքատութիւն Նախանձ, այլովքն հանդերձ. որոց ամենեցուն էին մեհեանք ուրոյն կամ բագինք, առ Հռոմայեցիս. հանդոյն սոցին և այլոց ցոփութեանց և առաքինութեանց էին դիք խնամակալք ուրոյն, և կամ կէսք յա-

ռաջնոց դից յայլ և այլ դէմս ըստ այլ և այլ ստորոգելեաց պաշտեցեալք. որպէս Դիոս իբր խնամակալ դաշանց և հաւատարմութեան՝ Փիդիոս անուանեալ, և Աստղիկ որպէս խնամակալ յուղարկաւորութեան մեռելոց Լիբիտինէ յորջորջեալ, և այլք ևս ըստ սոցին օրինակի։

Նոյնպէս և դևք առ հասարակ պաշտէին 'ի հեթանոսաց որպէս մարք յաւերժհարսանց. և վիհն իսկ համապարփակ, զոր Յոյնք և Լատինք Քաւոս անուանեն, պաշտէր 'ի նոցանէ որպէս ծնող երկրի. և 'ի նմանէ համարէին ծնեալ զճակատագիր, որ նկարէր սափոր բախտից 'ի ձեռին, և զԵրեբոս շահապետ դժոխոց և այր Գիշերոյ։

---

# ՑԱՆԿ

